# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 5

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

ВИЗАНТИЙСКИЕ ИСТОЧНИКИ

I

# ПРОКОПИЙ КЕСАРИЙСКИЙ

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
Р. М. БАРТИКЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1967

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Ա

# ՊՐՈԿՈՊԻՈՍ ԿԵՍԱՐԱՑԻ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ,
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆԻ



ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1967

## ՄԱՏԵՆԱՇԱՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ



Հատորի խմբագիր
Գ. Խ. ՍԱՐԳՍՅԱՆ

1—6—4

# ՊՐՈԿՈՊԻՈՍ ԿԵՍԱՐԱՑԻՆ ԵՎ ՆՐԱ ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ[1]

*Պրոկոպիոս Կեսարացին բյուզանդական խոշորագույն պատմագիրն է. ծնվել է V դարի վերջում կամ VI դարի սկզբում՝ Պաղեստինի Կեսարիա քաղաքում։ Նրա կենսագրության մասին շատ բան չգիտենք, և մեր հիմնական աղբյուրները Կեսարացու ուսումնասիրությունների մեջ հանդիպող առանձին տվյալներն են։ Նա 527 թվականին դառնում է Միջագետքի դուքս նշանակված զորավար Բելիսարիոսի խորհրդականը կամ քարտուղարը* (ξύμβουλος, πάρεδρος *կամ* ὑπογραφεύς) *և 527—531 թթ. մասնակցում առաջին պարսկական պատերազմին։ 533—534 թթ. նա Բելիսարիոսի հետ մասնակցում է Աֆրիկայի վանդալների դեմ կայսրության մղած պատերազմին, իսկ Բելիսարիոսի հեռանալուց հետո ծառայում է դոմեստիկոս Սողոմոնի մոտ։ 536 թվականին նա արդեն Իտալիայում էր, ուր մասնակցում է Բելիսարիոսի իտալական արշավանքին՝ ընդդեմ օստրոգոթերի։ 542 թ. Կեսարացին լինում է Կոստանդնու-*

---

[1] *Պրոկոպիոս Կեսարացու մասին կա հսկայական գրականություն։ Անցյալ դարում լույս տեսած լավագույն գործերից է.* *F. Dahn,* Prokopius von Caesarea, ein Beitrag zur Historiographie der Völkerwanderung und des sinkenden Römertums, Berlin, 1885. *Նորագույն ուսումնասիրություններից հիշատակում ենք հետևյալները.* *E. Stein.* Histoire du Bas-Empire, t. II, Paris-Bruxelles-Amsterdam, 1949, pp. 709-723, 837: *З. В. Удальцова.* Прокопий Кесарийский и его „История войн с готами". В кн. Прокопий из Кесарии. Война с готами, перевод с греческого С. П. Кондратьева, Москва, 1950, стр. 3—60: *O. Veh,* Zur Geschichtschreibung und Weltauffassung des Prokop von Caesarea, I—III. Bayreuth, 1951—1953; *B. Rubin,* Prokopius von Kaisareia, Stuttgart, 1954: *Վերահրատարակվել է Pauly-Wissowa* Real-Enzyclopädie der classischen Altertumswissenschaft, Bd. XXII, 2։ *Լիակատար բիբլիոգրաֆիան կարելի է գտնել հետևյալ գործերում.* *M. E. Colonna,* Gli storici bizantini dal IV al XV secolo. I. Storici profani, Napoli, 1956, pp. 105—111; *G. Moravcsik,* Byzantinoturcica, Bd. I. Die byzantinischen Quellen der Geschichte der Türkvölker. Zweite durchgearbeitete Auflage, Berlin, 1958, S. 489—500: *Տես նաև* Procopii Caesariensis Opera omnia, recognovit *J. Haury,* vol. I, editio stereotypa correctior, Lipsiae, 1962, p. LXXVII—LXXXVII:

պոլսում, ուր ստանում է իլլյուստրիոսի աստիճան։ Այնուհետև նա լինում է Բյուզանդիայի արևելյան շրջաններում՝ բյուզանդա-պարսկական երկրորդ պատերազմի ամբողջ ընթացքում։ Պրոկոպիոսի մահվան ճշգրիտ թվականը հայտնի չէ, համենայն դեպս 563 թվականին նա դեռ կենդանի էր[2]։

Կեսարացին ապրել է Հուստինիանոս կայսեր ժամանակաշրջանում, որը Բյուզանդիայի պատմության ամենափայլուն, բայց միաժամանակ ամենամռայլ էջերից մեկն է[3]։ Հուստինիանոսը 527 թ. տիրանալով բյուզանդական գահին, նպատակ է դնում վերականգնել Հռոմեական կայսրության վաղեմի սահմանները, նրա անցյալի փառքը։ Այդ է պատճառը, որ նրա երկարամյա թագավորության ընթացքում չէին դադարում պատերազմները պարսիկների դեմ Արևելքում, գոթերի դեմ Արևմուտքում, վանդալների դեմ Լիբիայում։ Ճիշտ է, Հուստինիանոսին հաջողվեց զգալի չափով ընդարձակել պետության սահմանները, որոնց պաշտպանության համար երկիրը ծածկեց բերդերի, ամրոցների և այլ ամրությունների խիտ ցանցով, բայց այդ բոլորը կատարվում էին աշխատավոր բնակչության ամենաանխիղճ շահագործման ու կեղեքման գնով։ Նրա հրապարակած օրենսդրական փաստաթղթերի մեծ մասում կարմիր թելի նման անցնում է մի պահանջ՝ հարկերը հպատակներից ժամանակին հավաքելու մասին։ Գյուղացիությունը, չկարողանալով տանել կեղեքումները, փախչում էր գյուղերից դեպի քաղաքները՝ իր գոյությունը մի կերպ քարշ տալու համար։ Հուստինիանոսը ջանում էր այդ փախուստը կանխել, հրապարակելով բազմաթիվ օրենքներ, բայց անօգուտ։ Նման պայմաններում խորացավ գյուղատնտեսական ճգնաժամը, որն էլ ավելի կրճատեց պետության առանց այն էլ սպառվող ռեսուրսները։

Հսկայական չափերի հասավ կաշառակերությունը։ Կաշառքով կարելի էր տիրանալ քաղաքական և ռազմական ամենաբարձր պաշտոններին, կարելի էր գնել նաև հոգևոր ամենաբարձր պաշ-

---

[2] Աղբյուրների տվյալների համաձայն 562—563 թթ. ընթացքում Կոստանդնուպոլսում հիշատակվում է Պրոկոպիոս անունով մի Praefectus urbis — քաղաքապետ, որ ուսումնասիրողների կարծիքով ոչ այլ ոք է, քան մեր պատմիչը։

[3] Հուստինիանոսի և նրա ժամանակաշրջանի մասին կա հսկայական գրականություն։ Բացի Ն. Ադոնցի մեծարժեք աշխատությունից՝ Армения в эпоху Юстиниана, նորագույններից նշում ենք հետևյալները. *E. Stein*, Histoire du Bas-Empire, t. II; *P. N. Ure*, Justinian and his Age, London, 1951; *B. Rubin*, Das Zeitalter Justinians. Persönlichkeit, Reichsidee, Ostpolitik, Berlin, 1960։

տոնները։ Suffragium, ահա այս էր կաշառքի պաշտոնական անվանումը։ Կաշառակերությունը մուտք էր գործել նույնիսկ արդարադատության մեջ, մի հիմնարկություն, որը կոչված էր պաշտպանել օրենքները։ Կաշառքով կարելի էր մուտք դործել նույնիսկ արքունական գվարդիայի մեջ։ Պրոկոպիոս Կեսարացին իր «Գաղտնի պատմության» մեջ մեծ դառնությամբ է գրում, որ արքունական գվարդիան, որն անցյալում կազմվում էր ելնելով հավաքագրվողների բացառապես ռազմական և ֆիզիկական կարողություններից ու ընդունակություններից, գվարդիա, ուր մուտք էին գործում միայն հայերը, Հուստինիանոսի ժամանակ մատչելի դարձավ ամեն մի վճարողի համար. գվարդիայի անգամ կարող էր դառնալ նույնիսկ ստրուկը, եթե դրամ ուներ։ Բյուզանդական պետության վերոհիշյալ ախտերը տարածված էին նաև Բյուզանդական Հայաստանում։ Մենք ունենք փաստաթուղթ, որը վկայում է կաշառակերության լայն տարածման մասին նաև Առաջին Հայքում, Երկրորդ Հայքում և Մեծ Հայքում։ Աշխատավոր ժողովրդի ընդվզումը Հուստինիանոսի ռեժիմի դեմ հանդես էր գալիս զանազան աղանդների քողի տակ, աղանդներ, որոնք տվյալ ժամանակաշրջանում տարածվել էին ամբողջ կայսրության մեջ։ Հուստինիանոսի թագավորության շրջանում հսկայական չափերի հասան տարբեր աղանդների կողմնակիցների հալածանքները, որոնց նպատակներից մեկն էլ աղանդավորների ունեցվածքի բռնագրավումն էր։ Աշխատավոր մասսաների ցասումը Հուստինիանոսի դեմ արտահայտվեց նաև «Նիկայի» 532 թ. նշանավոր ապստամբությամբ, որը, սակայն, խեղդվեց արյան մեջ կայսեր զորավարների կողմից։ Կայսրության կողմից ստրկացված ժողովուրդների ընդվզումը հանդես էր գալիս անդադար ապստամբությունների ձևով՝ ընդդեմ կայսրության։ Հուստինիանոսի թագավորության օրոք հայերը և լազերը մի քանի անգամ ապստամբության դրոշ են բարձրացրել։

Հուստինիանոսի թագավորությունը մի աղետ էր հայ ժողովրդի գլխին։ Նա վերջնական հարված հասցրեց հայկական ինքնուրույն պետականության պահպանված նշույլներին, այն է հարավային Հայաստանի նախարարություններ-սատրապություններին, փորձեց սասանել հայոց ժառանգական դարավոր իրավունքը[4]։ Բյուզանդա-

[4] Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, гл. VII. Նաև Հ. Սանանդյան, *Հուստինիանոսի նովելները հայերի ժառանգելու կարգի մասին, հետևյալ հրատարակության մեջ. «Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության», հտ. Բ, Բ մասի նյութեր, Երևան, 1960, էջ 125—140։*

կան Հայաստանը Հուստինիանոսի ժամանակաշրջանում վերածվեց մի սովորական կայսերական նահանգի բյուզանդական զորահրամանատարի՝ Magister militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes—գլխավորությամբ։ Հայկական զինված ուժերը, որոնք այնքան անհրաժեշտ էին հայրենիքի պաշտպանության համար, պաշտպանում էին կայսրության շահերը Աֆրիկայում, Իտալիայում, Թրակիայում, Լազիկայում և այլուր։ Պրոկոպիոսը հանվանե հիշատակում է 17-ից ոչ պակաս հայ զորահրամանատարներ բյուզանդական բանակում՝ Հուստինիանոսի ժամանակաշրջանում[5], անխտիր ընդգծելով յուրաքանչյուրի ռազմական մեծ ընդունակությունները և քաջությունը։ Նշանավոր Արտավան և Արշակ Արշակունիներ, ամենակարող Նարսես ներքինի, Սիտտաս, Հրահատ, Սահակ և Նարսես Կամսարականներ, Ակակիոս, Ադոլիոս, Արտավազդ, Հովհաննես Գուզես, Համազասպ, Գիլակիոս-Գլակ, Անզալաս-Ընջուղ, Ֆազաս և շատ ու շատ ուրիշներ, ահա այն փայլուն զորավարների անունները, որոնք բոլորն էլ ընկան ռազմի դաշտում՝ պաշտպանելով իհարկե ոչ թե հայ ժողովրդի շահերը, հաճախ նույնիսկ գործելով ընդդեմ հայ ժողովրդի։ Հուստինիանոսը հարկերի հսկայական բեռ դրեց իրեն ենթակա Հայաստանի վրա։ Այդ բոլորը չէր կարող չցնել հայերի համբերության բաժակը, չէր կարող չգրգռել հայերի ատելությունը ընդդեմ կայսեր և չնայած Բյուզանդիայի բոլոր ժողովուրդներն էին հեծում Հուստինիանոսի լծի տակ, բայց միայն հայերն էին, որոնք փորձեցին վերջ տալ այդ բանին, ճիշտ է անհաջող, մահափորձ կատարելով Հուստինիանոսի դեմ։

Ահա այսպիսի ժամանակաշրջանում էր ապրում Պրոկոպիոս Կեսարացին և այդ շրջանի պատմությունն է շարադրել իր բազմաթիվ գործերում։ Առանց նրա աշխատությունների մենք լրիվ պատկերացում չէինք ունենա Հայաստանի, հատկապես V դարի վերջի և VI դարի առաջին կեսի Բյուզանդական Հայաստանի սոցիալ-տնտեսական, քաղաքական վիճակի, այնտեղ կատարված քաղաքաշինության, բերդաշինության և այլ հարցերի մասին։ Պրոկոպիոս Կեսարացու երկերը և Հուստինիանոս կայսեր՝ Հայաստանին վերաբերող մի քանի օրենսդրական փաստաթղթերն են մեր հիմնական աղբյուրները դեպքերով լի այդ կարևոր ժամանակաշրջանի ուսումնասիրության համար։

Կոստանդնուպոլսում Պրոկոպիոս Կեսարացին 549—550 թվականների ընթացքում գրում է իր նշանավոր «Պատերազմների մա-

[5] *P. Charanis*, The Armenians in the Byzantin Empire, Lisboa, 1963.

*մին» (Ὑπὲρ τῶν πολέμων) աշխատությունը, որը հրապարակ է գալիս 551 թվականին։ Այդ բաղկացած է 7 գրքից և բովանդակում է Հուստինիանոս կայսեր պատերազմների պատմությունը՝ շարադրված աշխարհագրական սկզբունքով։ Առաջին երկու գրքերում պատմվում է Բյուզանդիայի՝ պարսիկների դեմ մղած պատերազմների մասին Անաստասիոս կայսեր ժամանակվանից մինչև 549 թվականը։ Երրորդ և չորրորդ գրքերում խոսվում է այն պատերազմների մասին, որ կայսրությունը մղել է վանդալների դեմ մինչև 548 թ., իսկ հինգերորդ, վեցերորդ և յոթերորդ գրքերում՝ օստրոգոթերի դեմ Իտալիայում։ Պրոկոպիոսը 553 թ. լույս է ընծայում իր պատմական երկի ութերորդ գիրքը, որն ի տարբերություն մնացած յոթի, չի շարադրված աշխարհագրական սկզբունքով։ Այնտեղ տրված են 551—553 թթ. դեպքերը, որոնք տեղի ունեցան պետության բոլոր սահմաններում։ Այսպիսով, լրանում է Պրոկոպիոս Կեսարացու «Պատերազմների մասին» ութ գրքից բաղկացած պատմական աշխատությունը, ինչպես որ այն վերնագրված է Փոտ պատրիարքի կողմից (Ἱστορικὸν ἐν βιβλίοις ὀκτώ), որն իր նշանավոր* Βιβλιοθήκη *կամ* Μυριόβιβλος*-ում տալիս է նրա համառոտ բովանդակությունը*[6]*։ Հրատարակիչները վերոհիշյալ գրքերը վերնագրել են հետևյալ կերպ. առաջին երկու գիրքը* De Bello Persico *(Պարսկական պատերազմի մասին), երրորդ և չորրորդ գրքերը՝* De Bello Vandalico *(Վանդալական պատերազմի մասին), իսկ մնացածները՝* De Bello Gotthico *(Գոթական պատերազմի մասին)։*

*Կեսարացին 555 թ. Հուստինիանոս կայսեր պատվերով գրում է այդ կայսեր ներբողյանը՝ վեց գլխից բաղկացած «Կառուցումների մասին» գիրքը, որն աշխարհագրական, տեղագրական, տնտեսական և պատմական տեղեկությունների մի անսպառ աղբյուր է։ Պրոկոպիոսը այս գրքում պատմում է Հուստինիանոս կայսեր ժամանակ Բյուզանդիայի տերիտորիայի վրա տեղի ունեցած քաղաքացիական, ռազմական, եկեղեցական և այլ շինարարության մասին։*

*X դարի հեղինակ՝ Սուիդասը իր հռչակավոր բառարանում Պրոկոպիոս անվան տակ ցույց է տալիս, որ պատմիչը բացի նշված աշխատություններից գրել է նաև մի աշխատություն՝ «Անեկդոտա» (Ἀνέκδοτα). այսինքն հրապարակման ոչ ենթակա, գաղտնի գիրք, որի մեջ ծաղր ու ծանակի են ենթարկված Հուստինիանոս կայսրը*

[6] *Photius*, Bibliotheque. Texte etabli et traduite par *René Henry*, tome I, Paris, 1959, p. 64—76, cod. 63:

և նրա կին Թեոդորան, ինչպես նաև զորավար Բելիսարիոսը և նրա կինը[7]։ «Անեկդոտա»-ն կամ «Գաղտնի պատմություն»-ը, ինչպես նա հայտնի է գիտության մեջ (Historia arcana) հայտնաբերվեց 1623 թվականին՝ Վատիկանի գրադարանի ձեռագրերից մեկում՝ Ալեմանիի կողմից։ Գրքի հրատարակումից հետո գիտական հասարակայնության մեջ բուռն վիճաբանություններ սկսվեցին այդ գործի՝ Պրոկոպիոսի գրչին պատկանելու շուրջը։ Պրոկոպիոսը ճանաչված էր որպես մի հեղինակ, որն իր բոլոր մինչ այդ հայտնի աշխատություններում միմիայն գովաբանել է Հուստինիանոսին և նրա թագավորությունը, իսկ «Գաղտնի պատմության» մեջ ամեն ինչ ենթարկվում է սուր քննադատության, ամենավերջին խայտառակության։ Այդ աշխատության մեջ ծաղրի է ենթարկվում Հուստինիանոսի քաղաքական, ռազմական, տնտեսական և շինարարական գործունեությունը, դեռ ավելին, նրա անձնական ու ընտանեկան կյանքը։ Հուստինիանոսը, այդ «աստծու ընտրյալը» ինչպես նա հանդես է գալիս Պրոկոպիոսի մյուս աշխատություններում, այստեղ բռնակալ է, դաժան, ավազակ, նա «դևերի արքան» է (τῶν δαιμόνων ἄρχων)։ Այդ գործի մանրազնին ուսումնասիրությունը գիտնականներին բերեց այն եզրակացության, որ «Գաղտնի պատմությունը» պատկանում է Պրոկոպիոս Կեսարացու գրչին և գրվել է 550 թվականին, երբ Պրոկոպիոսը գրեց «Պատերազմների մասին» իր աշխատության 7 դըրքերը։ Կայսրության վիճակն այն ժամանակ անասելի վատ էր և՛ քաղաքական, և՛ տնտեսական, և թե՛ ռազմական տեսակետից։ Նա հուսախաբ և դառնացած գրի է առնում իր մտքերը Հուստինիանոսի և ընդհանրապես պետության մասին, նպատակ չունենալով հրապարակել դրանք։ Գոյություն ունեցող ռեժիմի պայմաններում նա չէր էլ կարող մտածել այդ գործը լույս աշխարհ հանելու մասին, այլ ուզում էր այն թողնել ապագա սերունդներին։ Նա «Գաղտնի պատմության» ներածության մեջ գրում է, որ այն, ինչ դրված է այնտեղ, հնարավոր չէր բացահայտել, արձանագրել իր նախորդ գործերում, որ նա իր մյուս գործերում բազմաթիվ փաստեր լռության է մատնել, վախենալով կայսեր հաշվեհարդարից։ Ամբողջ երկրով մեկ, գրում է նա, վխտում են լրտեսները։ Այնպիսի վիճակ է ստեղծվել, որ նույնիսկ ազգականների և ամենամոտիկ բարեկամների վրա հույս դնել չի կարելի[8]։ Չնայած այդ բոլորին, Պրոկո-

---

[7] *Suidae* Lexicon, s. v. Προκόπιος.
[8] Historia arcana, pr.

պիոսը իր «Պատերազմների մասին» աշխատության մեջ միշտ չէ, որ փառաբանում է Հուստինիանոսին։ Նա իր բացասական վերաբերմունքը դեպի կայսրը մեծ վարպետությամբ արտահայտում է պատմության մեջ հանդես եկող Բյուզանդիայի թշնամիների բերանով։ Գոթերի առաջնորդ Ուիտտիգիսի երկու դեսպանները, գնալով պարսից արքա Խոսրովի մոտ, ասում են նրան հետևյալը Հուստինիանոսի մասին. «Նա (իմա՛ Հուստինիանոսը) ի բնե նորամուծությունների սիրահար է, իրեն չվերաբերող հարցերի շուրջը վեճեր սարքող և չկարողանալով բավարարվել ունեցածով, ցանկանում է ամբողջ աշխարհին տիրանալ, ջանք է թափում հափշտակել բոլոր պետությունները»։ Ամենից սուր քննադատությունը Հուստինիանոսի հասցեին Պրոկոպիոսը տալիս է ապստամբ հայերի միջոցով։ Վերջիններս Վասակի գլխավորությամբ գնալով Խոսրովի մոտ ի միջի այլոց ասում են նրան և հետևյալը. «...բեզ խոսքով բարեկամ, բայց գործով թշնամի (Հուստինիանոսը), չմտահոգվելով ոչ բարեկամների և ոչ էլ թշնամիների մասին, մարդկային ամեն ինչ խառնել է ու տակնուվրա արել։... Նա սահմանվածից ո՞ր մեկը չխախտեց։ Նա տակնուվրա չարե՞ց ամեն մի ներդաշնակություն։ Նա չէ՞ր. որ մեզ վրա սահմանեց հարկերի աննախընթաց գումար։ [Նա չէ՞ր], որ մեր սահմանակից և անկախ ապրող ճաներին ստրկացրեց, իսկ դժբախտ լազերի թագավորի վրա նշանակեց հռոմայեցի կառավարիչ։ Այդ բոլորը բնության հակառակ են և ոչ մի ձևով հնարավոր չէ արդարացնել։ ...Ամբողջ աշխարհը նրան [փոքր է թվում], նա չի կարողանում այնտեղ տեղավորվել։ Նրա համար քիչ է ամբողջ մարդկության վրա տիրելը։ Նա իր հայացքը հառել է երկինքին և հետախուզում է օվկիանոսից վերև գտնվող խորշերը, ցանկանալով ձեռք բերել ինչ-որ ուրիշ երկիր էլ»[10]։

Պրոկոպիոսը իր աշխատությունը շարադրելիս աշխատել է նմանվել իր խոշոր նախորդներին՝ Հերոդոտոսին և Թուկիդիդեսին՝ օգտագործելով նրանց ոճը և շարադրելու ձևը։ Նա, ինչպես Թուկիդիդեսը, իր աշխատության մեջ օգտագործում է դիալոգների, ճառերի և ելույթների ձևը, դիալոգներ, որոնք, անկասկած, երբեք էլ տեղի չեն ունեցել, բայց ինչ խոսք, որ նրանց մեջ օգտագործվել են իսկապես իրական փաստերը։

Պրոկոպիոսի աղբյուրները ծով են և բազմազան։ Խոսելով նրա

---

[9] De bello Persico, II, 2:
[10] De bello Persico, II, 3:

աղբյուրների մասին, պետք է նախ և առաջ ընդգծել, որ նա իր նկարագրած իրողությունների մեծ մասի ականատեսն է։ Այդ մասին նա բազմիցս է հիշատակում։ «Պատերազմների մասին» աշխատության հենց սկզբում ցույց է տալիս, որ «նրա (իմա՝ Պրոկոպիոսի) բոլորից լավ գիտենալու և այդ բոլորը գրի առնել կարողանալու միակ պատճառն այն է, որ դեպքերի բերմամբ ընտրվելով զորավար Բելիսարիոսի խորհրդականը, նա տեղի ունեցած բոլոր իրադարձությունների մասնակիցն էր»[11]։ Բայց Պրոկոպիոսը չի բավարարվել իր տեսածով միայն։ Նա օգտվել է ամենաբազմազան սկզբնաղբյուրներից։ Նրանից մի փոքր հետո ապրած բյուզանդական պատմիչ Ագաթիասը, գրելով Պրոկոպիոս Կեսարացու մասին, նշում է, որ նա խոշոր գիտելիքների տեր մարդ էր և կարդացել էր ամբողջ պատմությունը[12]։ Մենանդր Պրոտեկտորը[13] VI դարի վերջում և Փոտ պատրիարքը[14] IX դարում ընդգծում էին Պրոկոպիոսի անմար փառքը։ Երբ Պրոկոպիոսը մի որևէ իրողության ականատես չէ, ապա դիմում է ականատեսներին՝ մանրամասնություններ իմանալու համար։ Պրոկոպիոսի հետաքրքրասիրությունը չափ ու սահման չունի։ Նա դիմում է ամեն մեկին, նոր տեղեկություններ ստանալու համար։

Ասվածը վերաբերում է Պրոկոպիոս Կեսարացու սեփական դիտողականությանը և նրա բանավոր աղբյուրներին։ Սակայն նա ունեցել է նաև գրավոր սկզբնաղբյուրներ, որոնցից հաճախ օգտվում է։ Եվ, ի պատիվ Պրոկոպիոսի, այդ աղբյուրները ոչ միայն հունալեզու են և լատինալեզու, այլև գրված են ուրիշ ժողովուրդների լեզուներով։ Մեզ համար առանձնապես մեծ հետաքրքրություն է ներկայացնում նրա օգտագործած «Հայոց պատմությունը»։ Նա «Պատերազմների մասին» աշխատության մեջ երկու անգամ հիշատակում է «Հայոց պատմությունը» մեկ անգամ ἡ τῶν Ἀρμενίων συγγραφή (De bello Persico, I,5) և մյուս անգամ ἡ τῶν Ἀρμενίων ἱστορία (De bello Persico, I,6) ձևով։ Իսկ «Կառուցումների մասին» աշխատության մեջ նորից է հիշատակում մի ինչ-որ գիրք, որտեղ գրված է եղել հայոց հին պատմությունը[15]։ Պրոկոպիոս Կե-

[11] De bello Persico, I. 1:

[12] *Agathiae* Historiae, IV, 26, p. 264 (ed. Bon.)։

[13] *Menandri Protectoris* Fragmenta Historicorum Graecorum, t. IV, (frgm. 27).

[14] *Photius*, Bibliothèque, cod. 160.

[15] De aedificiis, lib. III, 1.

սարացին օգտվել է նաև անտիկ ժամանակաշրջանի հեղինակների գործերից։ Նա հանվանե հիշատակում է Հոմերոսին, Հերոդոտոսին, Թուկիդիդեսին, Էսքիլեսին, Արիստոտելին, Արրիանոսին, Ստրաբոնին և շատ ու շատ ուրիշներին։

Պրոկոպիոս Կեսարացին իր օգտագործած աղբյուրներին քննադատաբար է մոտենում, մեջ բերելով աղբյուրների տվյալները, միաժամանակ ցույց է տալիս իր վերաբերմունքը և արտահայտում իր սեփական կարծիքը։ Եթե այս կամ այն հաղորդումը հավանական է թվում Պրոկոպիոսին, ապա նա չի մոռանում ընդգծել, որ ինքը համաձայն է դրան։ Նրա աշխատության մեջ շատ հաճախ կարելի է հանդիպել այսպիսի դարձվածքների. «ասում են և ինձ թվում է, որ դա ճիշտ է» և այլն։ Սակայն լինում են դեպքեր, երբ հաղորդված փաստը Պրոկոպիոսին անհավանական է թվում, բայց և այնպես նա մեջ է բերում այն, միաժամանակ ընդգծելով, որ ինքը դրան չի հավատում, որ ինքը համաձայն չէ դրան, բայց չի էլ ուզում իր կարծիքը փաթաթել ընթերցողի վզին, վերջինիս թողնելով հանդելու իր եզրակացությանը։

Եթե Պրոկոպիոսի ձեռքի տակ եղած աղբյուրները հակասական տվյալներ են տալիս, ապա պատմիչը ընդգծում է այդ։ Լինում են դեպքեր, երբ նա արձանագրում է նույն դեպքի մասին իր ձեռքի տակ ունեցած երկու իրար հակասող տվյալներ և թողնում ընթերցողին, որ ընդունի այդ երկու փաստերից մեկն ու մեկը։

* * *

Ձեռնարկելով Պրոկոպիոս Կեսարացու Հայաստանին և հայերին վերաբերող տվյալների թարգմանությանը, մենք որոշ չափով ավելի լայն ենք ընդգրկել նյութը այն իմաստով, որ չենք անտեսել նաև հայերին սահմանակից լազերին և իբերներին վերաբերող փաստերը, քանի որ նրանք հայ ժողովրդի պատմության հետ սերտ առնչություն ունեն։ «Պատերազմների մասին» աշխատության առաջին և երկրորդ գրքերը թարգմանել ենք ամբողջությամբ, չնայած առանձին, ծավալով փոքր մասեր, հայ ժողովրդի պատմության հետ անմիջական կապ չունեն։ Դա արել ենք այն նպատակով, որ չանդամահատենք մի ամբողջական գործ։ Նույն տեսակետից ենք մոտեցել նաև Պրոկոպիոսի «Կառուցումների մասին» աշխատության։ Բացի երրորդ գրքից, որն ամբողջությամբ վերաբերում է Հայաստանին, մենք թարգմանել ենք նաև նրա երկրորդ գիրքը, որը վերաբերում է Ասորիքին և Միջագետքին, որովհետև երկրորդ գրքի

*բովանդակությունը անմիջականորեն կապվում է «Պարսկական պատերազմի մասին» աշխատության հետ և հաճախ լրացնում այն։ «Վանդալական պատերազմի մասին» և «Գոթական պատերազմի մասին» աշխատություններից վերցվել են առանձին հատվածներ, որոնք որպես կանոն լույս են սփռում բյուզանդական բանակում ծառայող հայ գործիչների գործունեության վրա, գործունեություն, որը ծավալվում էր գերազանցապես Հայաստանի սահմաններից դուրս։ Բացառություն է կազմում, իհարկե, «Գոթական պատերազմի մասին» աշխատության չորրորդ գիրքը, որի մեջ տրվում է նաև պարսկա-բյուզանդական պատերազմի մասին շարադրանքի շարունակությունը։ «Գաղտնի պատմությունից» մեջ բերված հատվածները լրացնում են «Պատերազմների մասին» աշխատության առաջին և երկրորդ գրքերը։ Ծանոթագրությունները գրելիս գլխավոր ուշադրությունը սևեռել ենք «Պարսկական պատերազմի մասին» և «Կառուցումների մասին» աշխատությունների վրա, քանի որ այդ աշխատությունների տվյալներն անմիջականորեն վերաբերում են բուն Հայաստանին։*

*Պրոկոպիոս Կեսարացու աշխատությունների թարգմանությունը կատարել ենք Յ. Հաուրիի գիտական հրատարակության հիման վրա, որը լույս է տեսել Լայպցիգում մի քանի հատորով*[16]*։*

*Մեր աշխատության վերջում որպես հավելված տրվում է Հուստինիանոս կայսեր Հայաստանին և հայերին վերաբերող չորս օրենքների բնագրի թարգմանությունը։ Այդ փաստաթղթերը, ժամանակակից լինելով Պրոկոպիոս Կեսարացու գործերին, լրացնում են նրանց և հնարավորություն տալիս ավելի լիակատար պատկերացում կազմելու հայ ժողովրդի պատմության մասին VI դարի առաջին կեսում։*

---

[16] *Procopii Caesariensis* Opera omnia, recognovit *Jacobus Haury*, Lipsiae, 1905—1913: *Հաուրիի կազմած բնագիրը վերահրատարակվել է 7 գրքով Loeb-ի հույն և լատին հեղինակների հայտնի մատենաշարում. Procopius*, with an English translation by *H. B. Dewing*, in seven volumes, Cambridge London, 1954, *ինչպես և Լայպցիգում չորս հատորով 1962—1964 թվականների ընթացքում։*

# «ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ» ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

## [ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ]

*1. Պրոկոպիոս Կեսարացին գրեց Հուստինիանոս կայսեր[1] արևելքի և արևմուտքի բարբարոսների[2] դեմ մղած պատերազմների մասին, թե ինչ տեղի ունեցավ յուրաքանչյուր [պատերազմի]* ժամանակ, որպեսզի անեզր ժամանակը մոռացության չտա նշանավոր դեպքերը, և նրանց հիշատակը, գրի առնված չլինելու պատճառով, լրիվ չջնջվի։ [Պրոկոպիոսի] կարծիքով, հիշատակությունն այդ մասին կարևոր է և օգտակար՝ ներկա և ապագա սերունդների համար, երբ նրանք հանդիպեն նմանօրինակ իրադարձությունների։ Նման պատմությունը պիտանի է պատերազմի կամ մարտի պատրաստվող մարդկանց այն իմաստով, որ ցույց է տալիս նրանց, թե ինչպիսի վախճան ունեցան անցյալում նմանօրինակ իրադարձությունները։ Այն միաժամանակ ակնարկում է, թե մոտավորապես ինչ վախճան կունենա տվյալ իրադրությունը, եթե մարդ խելացիորեն տնօրինի գործերը։ Նրա [Պրոկոպիոսի] բոլորից լավ գիտենալու և այդ ամենը գրի առնել կարողանալու միակ պատճառն այն է, որ դեպքերի բերմամբ ընտրվելով զորավար Բելիսարիոսի[3] խորհրդական, տեղի ունեցած բոլոր իրադարձությունների մասնակիցն էր։ Նա առաջնորդվում է այն սկզբունքով, որ հռետորության վայել է ուժը, պոեզիային՝ առասպելներ հորինելու հմտությունը, իսկ պատմությանը՝ ճշմարտությունը։ Նա լռության չմատնեց նույնիսկ իր ամենամտերիմ մարդկանց արատավոր գործերը, այլ ընդհակառակը, ճշգրիտ կերպով գրի առավ յուրաքանչյուրի կատարածը, լինի այն լավ կամ վատ։*

*Ճշմարտության դեմ չմեղանչելու համար պետք է ասել, որ հիրավի այս պատերազմներից ավելի կարևոր ու սարսափելի պատերազմներ չեն եղել։ Սրանց ժամանակ տեղի ունեցան այնպիսի զարմանալի դեպքեր, որ ամեն ինչով գերազանցում են այն բոլորը,*

---

* ( ) Կլոր փակագծերի մեջ վերցված բառերը հեղինակինն են։
[ ] Քառակուսի փակագծերի մեջ վերցված բառերը թարգմանչինն են։

ինչ մենք գիտենք անցյալի մասին, եթե իհարկե չգտնվի այնպիսի մեկը, որ կարդալով սույն գրվածքը, նախապատվությունը տա անցյալին, իսկ իր ժամանակի դեպքերը համարի հիացմունքի ոչ արժանի։ Ինչպես օրինակ, այժմ որոշ մարդիկ զինվորներից ոմանց [արհամարհաբար] պարզապես անվանում են աղեղնավորներ, իսկ հնագույն [զինվորներին] կոչում ձեռնամարտիկներ և վահանակիրներ. նման անուններ տալով, նրանք գտնում են, որ վերջիններիս արիությունը ներկա ժամանակներին ամենևին չի հասել, և դրանով իսկ ցույց են տալիս, որ այդ հարցում միանգամայն մակերեսային և իրականությունից կտրված հասկացություն ունեն։ Նրանք անգիտանում են, որ ովքեր Հոմերոսի մոտ իրենց կոչման առիթով արհամարհաբար աղեղնավորներ են անվանվել, չեն ունեցել ո՛չ ձի, ո՛չ նիզակ, պաշտպանվելու համար՝ վահան, ո՛չ էլ մարմինը պաշտպանող զրահ։ Նրանք մարտի էին գնում հետիոտն և ստիպված էին պաշտպանվել ընկերոջ վահանի, կամ էլ որևէ մահարձանի ետև, այնպես որ ո՛չ փախուստի դիմելով կարող էին փրկվել, ո՛չ էլ հարձակվել փախուստի մատնված թշնամու վրա. նրանք ի վիճակի չէին նույնիսկ բաց մարտի բռնվել, միշտ թաքնված էին վարում մարտը։ Այդ բոլորից բացի նրանք այնպես ապաշնորհ կերպով էին օգտվում աղեղից, լարը ձգելով մինչև կուրծքը, որ բաց թողած նետը լինելով թեթև և անուժ, հակառակորդին որևէ վերք հասցնել չէր կարող։ Ահա այսպիսին էր հնում աղեղնավորների վիճակը[4]։

Իսկ ժամանակակից աղեղնավորները մարտի են գնում զրահակիր, հագնելով նաև մինչև ծնկները հասնող սռնապաններ։ Նրանց աջ կողմից կախված է լինում կապարճը. իսկ ձախից՝ թուրը։ Կան և այնպիսիք, որոնք [այդ բոլորից բացի] կրում են նաև նիզակ և ուսերից կախված փոքր, առանց բռնակի վահան՝ դեմքն ու ծոծրակը ծածկելու համար։ Նրանք առաջնակարգ հեծյալներ են և կարող են աղեղը լարել նույնիսկ ձիու ամենասրընթաց վազքի ժամանակ և հարվածել թշնամուն նրա հարձակման և փախուստի միջոցին։ Նրանք աղեղի լարը ձգում են մինչև ճակատը, նույնիսկ մինչև աջ ականջը և նետն այնպիսի ուժ է ստանում, որ նրա թափին չի կարող դիմանալ ո՛չ վահանը, և ո՛չ էլ զրահը։ Ահա [այժմ] կան այնպիսի մարդիկ, որոնք մոռանալով այս բոլորը, գովում են անցյալը և հիանում նրանով՝ ոչ մի արժեք չտալով նորագույն հայտնագործություններին։ Այսպիսով, անժխտելի է, որ այս պատերազմների ժամանակ տեղի ունեցան ամենամեծ և արժանահիշատակ իրադարձություններ. Ես կսկսեմ մի քիչ հեռվից պատմել հռոմայեցիների[5] և մարերի[6] պա-

տերազմների ժամանակ փոխադարձ կերպով նրանց կատարածն ու կրածը։

2. Երբ Բյուզանդիոնում հռոմայեցիների կայսր Արկադիոսը[7] վախճանվելու վրա էր (նրա Թեոդոս[8] որդին դեռ կրծքի երեխա էր), նա մտահոգության մեջ էր և՛ որդու և՛ կայսրության համար, որովհետև չէր կարողանում ո՛չ մեկի և ո՛չ մյուսի համար որևէ ելք գտնել։ Նա մտածում էր, եթե Թեոդոսի համար պետության խնամակալ նշանակի, ապա ինքը իր ձեռքով նախապատրաստած կլինի որդու սպանությունը՝ ստեղծելով թագավորական իշխանությամբ օժտված թշնամի, իսկ եթե որդուն մենակ թողնի իշխանության գլուխը, շատերը, հենվելով երեխայի անօգնականության վրա, ինչպես պետք է սպասել, ձեռք կկարկառեն դեպի իշխանությունը։ Նրանք ապստամբելով, առանց դժվարության կսպանեն Թեոդոսին և կգրավեն իշխանությունը, որովհետև ինքը Բյուզանդիոնում ոչ մի ազգական չուներ, որը կարողանար նրան նեցուկ լինել։ Երեխայի հորեղբորորդի Հոնորիոսի[9] վրա բոլորովին հույս չէր դնում, որովհետև Իտալիայում դրությունն արդեն վատ էր[10]։ Նրան պակաս չէր հուզում նաև մարական[11] [վտանգը]։ Նա վախենում էր, որ այդ բարբարոսները, տեսնելով կայսեր մանկահասակությունը, մեծ վնասներ կպատճառեն հռոմայեցիներին։ Այսպիսի անելանելի դրության մեջ էր Արկադիոսը։ Թեպետև ինքը շատ էլ խելացի մարդ չէր, բայց կա՛մ խորհրդակցելով արքունիքում եղած բազմաթիվ իմաստուն մարդկանցից մեկի հետ, կա՛մ աստուծո ներշնչմամբ մի ելք է հղանում, որ իսկապես փրկարար դարձավ և՛ որդու, և՛ թագավորության համար։ Նա կտակ գրեց, որի համաձայն գահը թողեց իր որդուն, իսկ խնամակալ նշանակեց պարսից արքա Հազկերտին[12], որին նա կտակում աղաչում էր փրկել Թեոդոսի իշխանությունը՝ ուժով և իմաստությամբ։ Արկադիոսը ահա այսպես կարգի բերելով իր պետական և անձնական գործերը, վախճանվեց։ Պարսից արքա Հազկերտը, որն հռչակված էր իր արտակարգ մեծահոգությամբ, երբ ստացավ այդ դրությունը, ցուցաբերեց զարմանալի առաքինություն։ Նա մեծագույն խնամքով կատարեց Արկադիոսի կտակը, երկարատև կայուն խաղաղություն հաստատելով հռոմայեցիների հետ և փրկելով Թեոդոսի իշխանությունը։ Անմիջապես նամակ գրեց հռոմայեցիների սենատին, որ չի առարկում լինել Թեոդոս կայսեր խնամակալը և [սպառնում էր] պատերազմ սկսել, եթե որևէ մեկը փորձի ոտնձգություն կատարել Թեոդոսի դեմ։

Երբ Թեոդոսը հասունացավ և հասակ առավ, իսկ Հազկերտը մահացավ, պարսից արքա Վարարանը[13] մեծ զորքով հարձակվեց հռոմայեցիների երկրի վրա, բայց ոչ մի վնաս չհասցնելով, վերադարձավ իր երկիրը։ Դա պատահեց այսպես. Թեոդոսը Արևելքի զորավար[14] Անատոլիոսին մենակ ուղարկել էր Պարսկաստան որպես դեսպան։ Բավական մոտենալով մարաց զորքին, նա իջավ ձիուց և ոտքով գնաց դեպի Վարարանը։ Վերջինս նրան տեսնելով, հարցրեց ներկաներին, թե ով է ներկայացողը։ Նրանք պատասխանեցին, թե հռոմայեցիների զորավարն է։ Արքան զարմացավ իրեն ցուցաբերված այդ մեծ պատվից, շրջեց ձիու ընթացքը և ետ շարժվեց, իսկ պարսից ամբողջ զորքը հետևեց նրան։ Ոտք դնելով իր երկիրը, նա մեծ սիրալիրություն ցուցաբերեց դեպի դեսպանը և հաշտություն կնքեց Անատոլիոսի ցանկացած պայմաններով, որոնց համաձայն, ոչ ոք իրավունք չուներ սահմանամերձ դոտում որևէ նոր ամրություն կառուցելու[15]։ Այդ կատարելուց հետո սակայն երկու կողմերն էլ իրենց ուզածն էին անում։

3. Որոշ ժամանակ անց պարսից Պերոզ արքան [16] հոների հփթաղ ցեղի[17] դեմ, որոնք սպիտակ [հոներ] են կոչվում, սահմանային վեճերի պատճառով պատերազմ սկսեց և մեծ զորքի գլուխն անցած արշավեց նրանց վրա։ Հփթաղները թեև հոնական ժողովուրդ են, բայց չեն շփվում և հարաբերության մեջ չեն մտնում այն հոների հետ, որոնց մենք գիտենք, որովհետև ոչ սահմանակից են նրանց, ոչ էլ նրանց մոտիկ են բնակվում, այլ ապրում են Պարսկաստանի հյուսիսային հեռավոր ծայրամասերից մեկում, ուր գտնվում է Գորգո քաղաքը[18]։ Ահա այս վայրում հաճախ սահմանային [վեճերի] կապակցությամբ կռիվներ էին ծագում։ Սրանք հոնական մյուս ժողովուրդների նման քոչվոր չեն, այլ վաղուց նստակյաց են՝ բարեբեր երկրի վրա։ Այդ [ժողովուրդը] առանձին երբևիցե որևէ արշավանք չի կատարել հռոմեական երկրի վրա, այլ միայն պարսից զորքի հետ միասին։ Հոներից միայն սրանք են սպիտակամորթ և տգեղ չեն։ Բացի դրանից, սրանց կենցաղը տարբերվում է մյուս [հոների] կենցաղից, և անասնական կյանք չեն վարում ինչպես նրանք։ Սրանք ղեկավարվում են թագավորի կողմից, օրինական պետություն ունեն. միմյանց, ինչպես և հարևանների հետ վարվում են օրինավոր և արդար կերպով, ոչ պակաս, քան հռոմայեցիներն ու մնացած բոլոր [ժողովուրդները]։ Սրանց հարուստներն ընտրում են մինչև քսան ընկեր, գուցե և ավելի, որոնք հավիտ-

յան սեղանակիցներ են դառնում։ Նրանց բոլոր դրամական միջոցները ընդհանուրին են, և յուրաքանչյուրը տնօրինում է հավասար իրավունքներով։ Երբ նրանցից որևէ մեկը վախճանվում է, ապա, ըստ սովորության, [մնացած] բոլոր տղամարդիկ նրա հետ ողջ-ողջ ղերեզման են իջնում։

Երբ Պերոզը արշավում էր այդ հեփթաղների վրա, նրա մոտ էր Եվսեբիոս անունով մի դեսպան, որին ուղարկել էր Զենոն կայսրը[19]։ Հեփթաղները ձևացրին, թե վախեցած նրանց հարձակումից փախուստի են դիմում և սրընթաց հասան մի վայր, որը բոլոր կողմերից շրջապատված էր զառիթափ և անտառախիտ լեռներով։ Լեռների միջով երևում էր մի լայն ու բավական երկար ձգվող ճանապարհ, որը սակայն ելք չուներ և վերջանում էր լեռների կազմած շրջանակով։ Պերոզը բոլորովին անգիտանալով թշնամու խորամանկությունը, նաև չուզենալով հասկանալ, որ թշնամու երկրով է գնում, առանց մտածելու հալածում էր [նրանց]։ Հոներից միայն քչերն էին փախչում, շատերը դժվարանցանելի վայրերից գաղտագողի անցան թշնամու զորքի թիկունքը։ Նրանք չէին շտապում հայտնվել, սպասում էին, որ [թշնամիներն] ավելի խորանան թակարդի մեջ և ընկնելով լեռնային վայրերը, չկարողանան ետ վերադառնալ։ Այդ զգացին մարերը (որովհետև վտանգն արդեն որոշ չափով ակնհայտ էր), սակայն վախենալով Պերոզից լռում էին։ Նրանք թախանձագին պաղատում էին Եվսեբիոսին, որպեսզի նա հումոզի արքային՝ հրաժարվել այդ վտանգավոր գործից, խոհեմություն հանդես բերի և մտածի փրկության որևէ ելքի մասին, անտեղի քաջություն չցուցաբերի։ Եվսեբիոսը գնաց Պերոզի մոտ, բայց ամենևին չխոսեց սպառնացող վտանգի մասին։ Նա սկսեց մի առակ պատմել, թե ժամանակին առյուծը հանդիպեց նոխազին, որը ոչ շատ բարձր տեղում կապված մայում էր։ Առյուծը հարձակվեց զոհի վրա հոշոտելու և ուտելու, բայց ընկավ մի խոր փոս, որտեղ կար կլոր և նեղ մի ճանապարհ՝ առանց որևէ ելքի։ Նոխազի տերերը դիտմամբ էին այդ սարքել և փոսի վրա կապել նոխազին, որպես խայծ առյուծի համար[20]։ Պերոզը լսելով այդ, երկյուղի մեջ ընկավ, որ մի գուցե թշնամիների վրա հարձակվելը մարերի գլխին դժբախտություն բերի։ Նա դադարեցրեց առաջխաղացումը և կանգ առնելով սկսեց մտածել իրերի վիճակի մասին։ Արդեն բացահայտորեն հետևող հոները բռնեցին վայրի մուտքը, որպեսզի թշնամիներից և ոչ ոք ի վիճակի չլինի նահանջել։ Այն ժամանակ պարսիկների համար պարզ դարձավ, թե ինչ աղետալի դրության մեջ են ընկել և կորցրին

վտանգից խուսափելու բոլոր հույսերը։ Հեփթաղների թագավորը[21] իր մարդկանցից մի քանիսին ուղարկեց Պերոզի մոտ՝ պախարակելու նրան՝ իր անմիտ քաջության համար և խոստացավ, որ չի սպանի նրան, ոչ էլ պարսիկներից որևէ մեկին, տեղի կտա, մի խոսքով, նրանց փրկություն կշնորհի, եթե Պերոզը իրեն երկրպագի որպես տիրոջ և երդվելով իր հայրենի երդումներով, հավաստիացնի իրեն, որ պարսիկներն այլևս երբեք չեն արշավի հեփթաղ ցեղի վրա։ Լսելով այս, Պերոզը խորհրդակցեց ներկա եղող մոգերի[22] հետ, թե կարելի՞ է արդյոք ընդունել հակառակորդի պայմանները։ Մոգերը պատասխանեցին, որ երդման հարցը նա կարող է լուծել ըստ իր ցանկության, բայց ինչ վերաբերում է երկրորդ հարցին, ապա նա պետք է խորամանկությամբ գերազանցի թշնամուն։ [Պարսիկների համար] օրենք է ամեն օր երկրպագել արևածագը։ Նրանք խնդրեցին, որ ճիշտ ժամանակը նկատի առնելով, առավոտյան հանդիպի հեփթաղների թագավորին և ծագող արևի դեմ կանգնած երկրպագի։ Այդ ձևով նա կկարողանա խուսափել անպատվաբեր արարքից։ Պերոզը [հեփթաղների թագավորին] տվեց խաղաղության հավաստիացումները, երկրպագեց թշնամուն այն ձևով, ինչպես խորհուրդ էին տվել մոգերը, և մարերի ամբողջ զորքով, ուրախությամբ ու անվնաս ճանապարհ ընկավ դեպի իր երկիրը։

4. Քիչ ժամանակ անց Պերոզը, ցանկանալով վրեժ լուծել հոներից՝ իրեն պատճառած խայտառակության համար, դրժեց իր երդումը։ Ամբողջ երկրից հավաքելով պարսկական և դաշնակից [զորքերը], նա շարժվեց հեփթաղների վրա։ Իր որդիներից միայն մեկին՝ Կավադին[23] չվերցրեց (որովհետև այն ժամանակ նա դեռ պատանի էր), իսկ մնացած բոլորին՝ շուրջ երեսուն հոգի, տարավ իր հետ։ Հեփթաղները, իմանալով նրա արշավանքի մասին, զայրացան, որովհետև խաբվել էին թշնամիներից և կշտամբում էին իրենց թագավորին, որ նա ամբողջ գործը թողեց պարսիկներին։ Նա ծիծաղելով հարցնում էր, թե իր ունեցվածքից ի՞նչն է թողել պարսիկներին՝ երկիրը, զենքերը, և կամ էլ որևէ ուրիշ շատ կարևոր բան։ Նրանք պատասխանեցին, ոչ այլ ինչ, բայց հարմար առիթը, որը մնացած բոլորն արժե։ Նրանք մեծ պատրաստակամություն հայտնեցին դիմադրելու, սակայն [թագավորը] արգելեց այդ, որովհետև դեռ ոչինչ պարզ չէր [պարսիկների] արշավանքի մասին և նրանք իրենց երկրից դեռ դուրս չէին եկել։ Տեղում մնալով նա ձեռնամուխ եղավ հետևյալ գործին։ Մի դաշտում, որտեղից պարսիկները պետք

է մտներին հեփթաղների սահմանները, լայն տարածության վրա փորեց բավական խոր և լայն մի փոս, մեջտեղում թողնելով չփորված մի փոքր տարածություն, այնքան, որ բավական լինի նրա վրայով տասը ձի անցնելու համար։ Փոսը նա ծածկեց եղեգով, եղեգն էլ հողով և այդ ձևով լավ քողարկեց։ Այնուհետև նա կարգադրեց հոներին փոքր խմբերով դանդաղ նահանջել, անցնել այդ նեղ ամուր գետնի վրայով, խուսափելով փոսն ընկնելուց։ Իր թագավորական դրոշի ծայրին նա կախել էր այն աղը, որով նախապես երդվել էր Պերոզը[24], բայց դրժելով իր երդումը՝ արշավել հոների վրա։ Քանի դեռ նա լսում էր, որ թշնամիներն իրենց երկրում են, նա հանգիստ էր։ Բայց երբ լրտեսների միջոցով իմացավ, որ նրանք հասել են Գորգո քաղաքը, որը գտնվում է պարսից երկրի ամենահեռավոր սահմանների վրա, և որ այնտեղից ճանապարհ են ընկել դեպի իրենց, հեփթաղների [երկիրը], ապա նա իր զորքի մեծ մասով մնաց փոսի ներսի կողմում, իսկ մի մասին հրամայեց, որ հեռվից երևան հակառակորդներին՝ դաշտում և միայն նրանց կողմից նկատվելուց հետո շտապ ետ փախչեն, չմոռանալով իր խորհուրդները, երբ մոտենան փոսին։ Նրանք այդպես էլ արեցին և երբ մոտեցան անցնելու տեղին, քիչ-քիչ բոլորն էլ անցան և միացան մնացած զորքին։ Պարսիկները. ոչինչ չիմանալով խորամանկության մասին և անչափ զայրացած լինելով, ամբողջ թափով հալածում էին թշնամուն տափարակ դաշտի վրայով։

Այդպիսով բոլորն էլ ընկան փոսը՝ ոչ միայն առաջից ընթացողները, այլև նրանք, որ ետևից էին գալիս։ Մեծ թափով, ինչպես ասացինք, հալածելով [թշնամիներին] և տեղյակ չլինելով այն դժբախտությանը, որ պատահեց առջևից գնացողներին, նրանք ձիերով ու նիզակներով ընկան նրանց վրա և, ինչպես պետք էր սպասել, սպանեցին, իրենք էլ ոչ պակաս չափով կոտորվելով։ Նրանց մեջ էր նաև Պերոզն իր բոլոր որդիների հետ միասին[25]։ Պատմում են, որ Պերոզը զգաց դժբախտությունը և երբ ընկավ փոսը, իր աջ ականջից կախված շատ սպիտակ, չափազանց մեծ ու թանկագին մարգարիտը հանեց ու գցեց, որպեսզի իրենից հետո ոչ ոք չկրի։ Այդ մարգարիտը շատ գեղեցիկ էր, և նրա նմանը [Պերոզից] առաջ ոչ մի թագավոր չէր ունեցել։ Ես չեմ հավատում այս պատմությանը, որովհետև նման աղետի պահին Պերոզը դժվար թե այդպիսի բանի մասին մտածեր։ Ինձ թվում է, որ այդ դժբախտության ժամանակ նրա ականջը կտրվել է [մարգարիտի] հետ միասին, իսկ մարգարիտը անհայտացել։ Հռոմայեցիների կայսրն այն ժամանակ մեծ

ցանկություն ուներ գնել այն հփթաղներից, սակայն ոչինչ գուրս չեկավ, որովհետև բարբարոսները, թեև շատ փնտրեցին այն, բայց չգտան։ Պատմում են նաև, որ հփթաղները գտան այն և հետագայում տվեցին Կավադին։ Այնուամենայնիվ, ինչ որ պարսիկներն են պատմում այդ մարգարիտի մասին, արժանի է հիշատակության, որովհետև նրանց պատմածը վստահելի է, այնքան էլ անհավանական չի թվում։

Պարսիկները պատմում են, որ այդ մարգարիտը գտնվում էր Պարսից ծոցում մի խխունջի մեջ, որը լողում էր ծովափից ոչ շատ հեռու։ Երբ խխունջը բացվում էր, երևում էր մարգարիտը՝ մի չտեսնված գեղեցիկ պատկեր։ Նրա նմանը ոչ մեծությամբ, ոչ էլ գեղեցկությամբ գեռևս չէր եղել։ Հսկայական և ահավոր մի շնաձուկ այս տեսարանի սիրահարը դարձած, ոտնկոխ հետևում էր նրան՝ գիշեր ու ցերեկ։ Երբ նա ստիպված էր լինում իր սնունդը հոգալ, նայում էր շուրջը, գտնում որևէ ուտելու բան, շտապ կլանում և նորից հասնելով խխունջին, դիտում էր հաճելի տեսարանը։ Պատմում են, որ մի ձկնորս տեսավ այդ, սակայն վախենալով գիշատչից, չհամարձակվեց որևէ բան անել, բայց ամեն ինչ պատմեց Պերոզ արքային։ Երբ այդ լսեց Պերոզը, պատմում են, որ նա մեծ ցանկություն հայտնեց տիրանալ մարգարտին և երկար համոզեց ու հուսադրեց ձկնորսին։ Պատմում են, որ վերջինս չկարողացավ մերժել »տիրոջ խնդրանքը և Պերոզին ասաց. «Ո՜վ տեր, մարդուն իհարկե, »ցանկալի է դրամը, դրանից ավելի թանկ է կյանքը, սակայն բոլո- »րից թանկ են երեխաները, որոնց սիրո համար մարդ ստիպված է »լինում ամեն ինչի դիմել։ Ես հուսով եմ, որ կկարողանամ գիշատ- »չին (սպանել) և քեզ մարգարտի տեր դարձնել։ Եթե այդ փորձու- »թյունից հաղթող դուրս գամ, հասկանալի է, կգասվեմ այսպես »կոչված երանելիների շարքը, իսկ դու, որպես արքայից արքա »լիուլի կփոխհատուցես ինձ բոլոր բարիքներով և ինձ գոհ կթողնես։ »Եթե նույնիսկ դու ինձ ոչինչ չտաս, այնուամենայնիվ ես բավա- »րարված կլինեմ, որ կարողացա ծառայություն մատուցել իմ »տիրոջը։ Բայց եթե ես այդ գիշատչի զոհը դառնամ, քո պարտքը »լինի, ով արքա, հոր մահվան համար փոխհատուցում տալ իմ »երեխաներին. թեև ես վախճանված կլինեմ, այնուամենայնիվ »կվարձատրվեմ՝ ի դեմս իմ սիրելիների, իսկ դու ձեռք կբերես շատ »առաքինի մարդու համբավ։ Օգտակար լինելով երեխաներին, դու »ինձ ես լավություն արած լինում, հոգ չէ, որ ես քո բարեգործու- »թյան շնորհքը բոլորովին չեմ տեսնելու։ Իսկական երախտագի-

ծտությունը վախճանվածներին ցուցաբերվողն է»։ Նա այսքանն ասաց ու հեռացավ, հասավ այն վայրը, ուր լողում էր խխունջը, իսկ շնաձուկն էլ ըստ իր սովորության հետևում էր նրան, և մի ժայռի վրա նստած սպասում էր հարմար առիթին, երբ մարգարիտը իր սիրահարից հեռու լինի։ Այնպես պատահեց, որ շնաձուկն զբաղված էր իր կերակրով. ձկնորսը ծովի ափին թողնելով իր օգնականներին, անմիջապես հասավ խխունջին, բռնեց և շտապեց դուրս գալ։ Շնաձուկը տեսնելով նրան, աճապարեց նրա ետևից։ Ձկնորսը զգալով, որ շուտով բռնվելու է, որսը ամբողջ ուժով նետեց ափ, իսկ ինքը [շնաձկի] զոհը գարձավ։ Ափում կանգնած մարդիկ մարգարիտը տարան արքային և պատմեցին կատարվածի մասին։ Ահա և մարգարտի մասին պարսիկների պատմածը։ Իսկ ես վերադառնում եմ [ընդհատածս] պատմության շարունակությանը։

Այսպես ուրեմն, Պերոզը և պարսիկների ամբողջ զորքը ոչնչացվեց։ Եթե նույնիսկ նրանցից որևէ մեկը պատահմամբ փրկվեց, նա էլ սպանվեց թշնամու ձեռքով։ Դրանից հետո պարսիկների համար օրենք դարձավ՝ օտար երկրով գնալիս ոչ մի դեպքում չհալածել թշնամուն, նույնիսկ եթե նա գլխովին փախուստի է դիմում։ Նրանք, ովքեր Պերոզի հետ դուրս չէին եկել արշավանքի, և մնում էին իրենց երկրում, արքա հայտարարեցին Պերոզի ամենակրտսեր որդի Կավադին[26], որովհետև [որդիներից] միայն նա էր ողջ մնացել։ Այն ժամանակներից սկսած պարսիկները հարկատու դարձան հեփթաղներին, մինչև Կավադը հզորացավ և դադարեց վճարել տարեկան հարկը։ Այգ բարբարոսները պարսիկների վրա տիրեցին երկու տարի։

5. Կավադն սկսեց չարաշահել իշխանությունը և զանազան փոփոխություններ մտցրեց պետության մեջ։ Նա օրենք հրապարակեց կանանց ընդհանրացման մասին[27], մի բան, որ բոլորովին դուր չեկավ ժողովրդին։ Այդ կապակցությամբ ապստամբություն բռնկվեց, Կավադը տապալվեց և շղթայակապ բանտ նետվեց։ [Ապստամբներն] իրենց արքա հայտարարեցին Վլասին՝[28] Պերոզի եղբորը, որովհետև ինչպես ասվեց, Պերոզից ոչ մի արու զավակ չէր մնացել, իսկ պարսից օրենքների համաձայն, եթե արքայական սերունդը լրիվ վերացած չէ, իրավունք չկա գահ բարձրացնել հասարակ ծագում ունեցող մարդուն։ Վլասը, իշխանության գլուխն անցնելուց հետո, իր մոտ հրավիրեց պարսից մեծամեծներին խորհրդակցելու՝ ինչպես վարվել Կավադի հետ, որովհետև շատերը չէին ուզում մա-

հապատժի ենթարկել նրան։ Այնտեղ բազմաթիվ թեր և դեմ կարծիքներ արտահայտվեցին։ Պարսից մեծամեծներից մեկը՝ Գուսանաստադես[29] անունով, որ խանարանգեսի[30] աստիճան ուներ (պարսիկների մոտ դա զորավարի պաշտոն է), և տիրում էր Պարսկաստանի՝ հփթաղներին սահմանակից հեռավոր վայրերից մեկին, ցույց տալով մի մատնաչափ երկարություն և մատի մեկ երրորդ մասից էլ պակաս լայնություն ունեցող դանակը, որով պարսիկներն իրենց եղունգներն են կտրում, ասաց. «Տեսնում եք այս փոքրիկ »դանակը։ Ինչքան էլ նա փոքր լինի, նրանով այժմ կարելի է անել »այն գործը, որը մի քիչ անց, ո՜վ ամենասիրելի պարսիկներ, երկու »բյուր զրահակիր մարդիկ ի վիճակի չեն լինի գլուխ բերել»։ Նա այսքանն ասաց, հասկացնելով, որ եթե Կավադին չսպանեն, վերջինս փրկվելով՝ պարսիկների գլխին փորձանք կբերի։ Մյուսները չէին ուզում սպանել արքայական արյուն ունեցող մարդուն, և առաջարկեցին բանտարկել նրան մի բերդում, որը կոչվում էր Անհուշ բերդ[31]։ Այդպես էր կոչվում այն, որովհետև օրենքի համաձայն, ով հիշատակեր այն մարդու անունը, որ այդ բերդում էր բանտարկված, նրա դատավճիռը մահն էր։ Ահա այդ էր պատճառը, որ պարսիկները նշված բերդը այդպես կոչեցին։ Հայոց պատմությունը[32] պատմում է, թե Անհուշ բերդի մասին պարսկական օրենքը միայն մի անգամ խախտվեց՝ հետևյալ կերպ։

Պարսիկների և հայերի միջև պարսից Պակուր արքայի[33] և հայոց Արշակ Արշակունու[34] ժամանակ երեսուն երկու տարի չհայտարարված պատերազմ էր գնում։ Այս պատերազմի երկարատևության պատճառով երկու կողմերն էլ անչափ վնաս կրեցին, մանավորապես հայերը։ Երկուսի միջև անվստահությունն այնքան խորացավ, որ ոչ ոք չէր կարողանում բանակցությունների մեջ մտնել մյուս կողմի հետ։ Այդ միջոցին պատերազմ ծագեց պարսիկների և հայերից ոչ հեռու բնակվող այլ բարբարոսների միջև։ Հայերը, ցանկանալով պարսիկներին ցույց տալ դեպի նրանց ունեցած իրենց բարյացակամությունը և հաշտություն կնքելու պատրաստակամությունը, անսպասելիորեն հարձակվեցին այդ բարբարոսների երկրի վրա (նախօրոք տեղյակ պահելով պարսիկներին) և թշնամիների գրեթե բոլոր տղամարդկանց կոտորեցին։ Պակուրը կատարվածից անչափ գոհ մնալով, Արշակի մոտ ուղարկեց մեծամեծներից ոմանց, հավատարմության նշաններ տվեց և հրավիրեց իր մոտ։ Երբ վերջինս հասավ [Պակուրի] մոտ, արքան նրան հյուրընկալեց և եղբոր նման հավասար համարեց։ Այնտեղ երկուսն էլ մեծ

երդում տվեցին, որ պարսիկները և հայերը միմյանց բարեկամ են և դաշնակից, որից հետո Պակուրը թողեց, որ Արշակը գնա իր հայրենիքը։ Քիչ ժամանակ անց, ոմանք զրպարտեցին Արշակին, իբր նա ուզում է ապստամբություն բարձրացնել։ Այդ բանին Պակուրը հավատաց և անմիջապես Արշակին իր մոտ կանչեց, ասելով, որ լավ կլիներ բոլոր հարցերի շուրջը նրա հետ խորհրդակցել։ [Արշակն] իսկույն գնաց նրա մոտ՝ իր հետ տանելով ամենառազմունակ հայերից ոմանց, ինչպես նաև Վասիկիոսին[35], որը նրա զորավարն էր և խորհրդականը՝ շատ քաջ և խելացի։ Պակուրը և՛ Արշակին և՛ Վասիկիոսին սկսեց բացեիբաց պախարակել և ամբաստանել, որ նրանք դրժել են երդումը և ուզում են շուտով ապստամբություն բարձրացնել, մի բան, որ նրանք մերժեցին, անվերջ երդվելով, որ իրենք երբեք նման մտադրություն չեն ունեցել։ Պակուրն սկզբում նրանց կալանավորեց, ապա հարցրեց մոգերին՝ ինչպես վարվել նրանց հետ։ Մոգերը արդար չէին համարում դատապարտել, քանի որ նրանք չէին ընդունում մեղադրանքը և բացեիբաց չէին խոստովանում և խորհուրդ տվեցին այնպես անել, որ Արշակը ստիպվի ինքն իրեն մեղադրել։ Մոգերը առաջարկեցին արքայական վրանի հատակը ծածկել գոմաղբով՝[36] կեսը պարսից երկրի, իսկ մյուս կեսը՝ հայոց։ Արքան այդպես էլ արեց։ Այն ժամանակ մոգերը վրանի շուրջը մոգություններ կատարելուց հետո առաջարկեցին արքային, որ նա Արշակի հետ պտույտ կատարի և մեղադրի Արշակին դաշինքը խախտելու և երդմնազանցության մեջ։ Մոգերը ևս պետք է ներկա լինեին այդ խոսակցությանը՝ որպես զրույցի վկաներ։ Պակուրը հրավիրեց Արշակին, նրա հետ շրջեց վրանում, ուր ներկա էին մոգերը, և հարցրեց՝ թե ինչու է նա, դրժելով երդումը, պատճառ դառնում պարսիկների և հայերի մեծ դժբախտության։ Քանի դեռ խոսակցությունը տեղի էր ունենում այն մասում, ուր պարսկական հողն էր փռված, Արշակը չէր ընդունում մեղադրանքը, ամենասարսափելի երդումներով հաստատում էր և վստահեցնում, որ ինքը Պակուրի հավատարիմ ծառան է։ Բայց երբ խոսակցության ընթացքում հասնում էին վրանի կենտրոնը, ապա անցնում հայոց երկրի գոմաղբով ծածկված վայրը,ահա այստեղ Արշակը անսպասելի կերպով, չգիտեմ ինչից դրդված, ոչ միայն փոխում էր խոսակցության շեշտը դեպի ավելի հանդուգնը՝ սպառնալով Պակուրին և պարսիկներին, այլև հայտարարում էր, որ վրեժ կլուծի նման անպատվության համար, երբ ինքը շուտով իր անձի տերը դառնա։ Համարձակությամբ այդ ասելով նա ճեմում էր,

մինչև որ շրջելով հասավ պարսից երկրի գոմաղբը։ Այստեղ նա նորից նույն երգն էր երգում, որ ինքը Պակուրի ծառան է և այլ ողորմագին խոսքեր ասում։ Երբ նորից հասավ հայոց հողի վրա, նա անցավ սպառնալիքներին։ Եվ այսպես բազմիցս մի հողի վրայից մյուսն անցնելով, ոչ մի գաղտնի բան չթողեց։ Ահա դրանից հետո մոգերը մեղադրեցին նրան դաշինքը խախտելու և երդմնազանցության մեջ։ Պակուրը Վասիկիոսին մորթազերծ արեց[37], մորթին լցրեց ծղոտով և կախեց շատ բարձր ծառից։ Իսկ Արշակին (քանի որ չէր կարող սպանել արքայական արյուն ունեցող մարդուն) բանտարկեց Անհուշ բերդում[38]։

Որոշ ժամանակ անց, Արշակին պարսից երկիրը ուղեկցող ամենամերձավոր մարդկանցից[39] մի հայ մասնակցեց պարսիկների արշավանքին՝ բարբարոս մի ժողովրդի դեմ։ Պակուրը, տեսնելով այդ մարդու՝ պատերազմում ցուցաբերած քաջագործությունները և այն, որ նա պարսիկների հաղթության պատճառ դարձավ, պահանջեց նրանից ուղածը խնդրել, խոստանալով բավարարել նրա ամեն մի ցանկությունը։ Սա միայն մի բան խնդրեց, որ իրեն թույլատրվի մեկ օր ծառայել Արշակին։ Դա [արքային] շատ դժվար դրության մեջ գցեց, որովհետև նա ստիպված էր խախտել վաղեմի օրենքը, սակայն ցույց տալու համար, որ իր խոսքի տերն է, թույլ տվեց, որ խնդիրքը կատարվի։ Արքայի թույլտվությամբ նա մտավ Անհուշ բերդը, համբուրեց Արշակին և երկուսը գրկախառնված ողբացին իրենց ճակատագիրը[40] և հազիվհազ իրարից բաժանվեցին։ Ողբից հետո, հայը լողացրեց Արշակին և արեց ինչ որ ընդունված էր. հագցրեց նրան արքայական հանդերձանքը ու բազմեցրեց բազմոցի վրա։ Այնտեղ Արշակը արքայավայել, ըստ նախկին սովորության, հյուրասիրեց ներկա եղողներին։ Ճաշկերույթի ժամանակ բազմաթիվ կենացներ խմվեցին և այլ խոսքեր ասվեցին, որոնք շատ դուր եկան Արշակին։ Գինարբուքը երկարեց մինչև գիշեր և խոսակցությամբ շատ ուրախացան և անչափ բավարարություն ստացած հազիվ բաժանվեցին իրարից։ Պատմում են, որ այն ժամանակ Արշակն ասել է, թե լավագույն օրն է անցկացրել, հանդիպել է իր ամենասիրած մարդուն, և որ այլևս ի վիճակի չէ տանել կյանքի տառապանքները։ Այդ ասելուց հետո ինքնասպանություն է գործել այն դանակով, որ ճաշկերույթի ժամանակ դիտմամբ թաքցրել էր, և ահա այդ ձևով վախճանվել։ Արշակի մասին այս [վկայությունը] Հայոց պատմությունն է[41] տալիս և, ինչպես վերևում ասվեց, այդ ձե-

վով Անհուշ բերդի մասին օրենքը խախտվեց։ Իսկ ես շարունակում եմ ընդհատածս [պատմությունը]։

6. Բանտ նետված Կավադին սպասավորում էր կինը, որ կարողացել էր մուտք գործել նրա մոտ և բերում էր ինչ որ անհրաժեշտ էր։ Այդ շատ գեղեցիկ կնոջը սիրահարվեց բանտապետը։ Երբ Կավադն այդ մասին իմացավ [իր] կնոջից, ասաց նրան, որ թույլ տա մարդուն անել ինչ որ ուզում է։ Այդպիսով բանտապետը հարաբերության մեջ մտավ կնոջ հետ, սիրեց նրան կաթոգին և թույլ տվեց, որ առանց որևէ արգելքի, ցանկացած ժամանակ ազատ ելք ու մուտք ունենա իր ամուսնու մոտ։ Այգ բանտին մոտիկ էր բնակվում պարսից մեծամեծներից մեկը՝ Սեոսես[42] անունով, որ Կավադի շատ մոտիկ ընկերն էր և հարմար առիթի էր սպասում, որ նրան ազատի։ Կնոջ միջոցով նա լուր ավեց Կավադին, որ ձիերն ու մարդիկ պատրաստ են և գտնվում են բերդից ոչ հեռու, տալով վայրի անունը։ Մի գիշեր Կավադը համոզեց կնոջը, որ տա իր շորերը, իսկ կինը, հագնելով նրա հագուստները, նստի բանտում, որտեղ որ ինքը, Կավադն էր նստում։ Ահա այդ ձևով Կավադը բանտից դուրս եկավ։ Բանտապահները տեսնելով նրան, ենթադրեցին, որ կինն է և ոչ մի արգելք չհարուցեցին, ոչ էլ որևէ անհանգստություն պատճառեցին։ Նույնիսկ ցերեկը, երբ սենյակում տեսան ամուսնու հագուստները հագած կնոջը, դեռ չէին հասկանում, թե ինչ է կատարվել և ենթադրում էին, որ դա Կավադն է։ Նրանք այդպես էլ կարծում էին բազում օրեր, երբ Կավադն արդեն հասել էր մի հեռավոր վայր։ Հետագայում թե ինչ պատահեց այդ կնոջ հետ, երբ բանն իմացվեց, և ինչպես նրան պատժեցին, ճշգրիտ չեմ կարող ասել, որովհետև այդ մասին պարսիկների պատմածները իրար չեն համընկնում, դրա համար էլ ես այդ զանց եմ առնում։

Կավադը բոլորից աննկատ Սեոսեսի հետ միասին գնաց հեփթաղ հոների մոտ[43], որոնց թագավորն իր աղջկան նրան կնության տվեց. ապա մեծ զորք տալով Կավադին, որպես իր փեսայի, Պարսկաստան ուղարկեց։ Այդ զորքին պարսիկները ի վիճակի չէին դիմադրելու և բոլորը փախուստի դիմեցին։ Երբ Կավադն հասավ իր երկիրը, որի իշխանությունը գտնվում էր Գուսանաստադեսի[44] ձեռքում, ասաց պարսից մեծամեծներից ոմանց, թե նա խանարանգես[45] կնշանակի այն պարսիկին, ով առաջինը կգա իր մոտ ծառայելու։ Նա այդպես ասաց, բայց իսկույն զղջաց, որովհետև օրենքի համաձայն պարսիկներին չի թույլատրվում պատահած մարդուն պաշտոններ

տալ, այլ պաշտոն տրվում է նրան, ում այդ պատիվը պատկանում է ըստ տոհմի։ Նա վախենում էր, որ հանկարծ առաջինն իր մոտ կգա մեկը, որ խանարանգեսի ծագում չունի, և ինքն իր խոսքին հաստատ մնալու համար ստիպված կլինի խախտել օրենքը։ Երբ նա մտածմունքի մեջ էր, այնպես պատահեց, որ ո՛չ օրենքը խախտեց, ո՛չ էլ դրժեց իր խոստումը, որովհետև առաջինը նրա մոտ ներկայացավ Ադերգուդունբադեսը[46], մի երիտասարդ, Գուսանաստադեսի ազդական և քաջ պատերազմող։ Նա Կավադին տեր անվանեց և առաջինը երկրպագեց որպես արքայի և պատրաստակամություն հայտնեց որպես ծառա կատարել նրա բոլոր ցանկությունները։ Կավադը հեշտությամբ մտավ պալատ, ձերբակալեց անպաշտպան Վլասին և կուրացրեց[47] նրան այն ձևով, ինչպես պարսիկները կուրացնում են չարագործներին՝ բաց աչքերի մեջ եռացրած յուղ թափելով, կամ շիկացած ասեղ խրելով, ապա բանտարկեց նրան։ Պարսիկների վրա նա իշխել էր երկու տարի։ [Կավադն] այնուհետև սպանեց Գուսանաստադեսին և նրա փոխարեն խանարանգեսի իշխանությունը տվեց Ադերգուդունբադեսին, իսկ Սեոսեսին անմիջապես հայտարարեց ադրաստադարան սալանես[48]։ Դա քաղաքական և ռազմական գլխավոր հրամանատարի պաշտոնն էր։ Սեոսեսն առաջինն ու վերջինն էր պարսիկներից, որ արժանացավ այս պաշտոնին, որովհետև նախկինում, ինչպես և հետագայում, այդ պաշտոնը ոչ ոք չուներ և չունեցավ։ Իսկ Կավադը լինելով շատ խոհեմ և գործունյա մարդ, ամրապնդեց իր իշխանությունը և անվտանգ պահեց այն։

7. Կավադը հեփթաղների թագավորին պետք է հատուցեր իր դրամական պարտքը, սակայն ի վիճակի չլինելով այն վճարելու, խնդրեց Անաստասիոսից՝ հռոմայեցիների կայսրից, որ նա իրեն դրամ փոխ տա[49]։ Վերջինս խորհրդակցեց գործին տեղյակ մարդկանց հետ՝ խնդիրը կատարելու նպատակահարմարության մասին։ Նրանք խորհուրդ չտվեցին, ասելով, որ ձեռնտու չէ սեփական դրամով իրենց թշնամիներին բարեկամացնել հեփթաղների հետ, այլ շատ ավելի տեղին է այդ երկուսին իրար հետ կովացնել։ Դրա համար էլ Կավադը առանց որևէ առիթի որոշեց արշավել հռոմայեցիների վրա[50]։ Նախ ինքը անձամբ հարձակվեց Հայաստանի վրա[51] և մեծ ավար վերցրեց. այնուհետև անսկնկալ կերպով հասավ Միջագետքում գտնվող Ամիդ քաղաքը և ձմռանը պաշարեց այն[52]։ Ամիդցիք զբաղված լինելով խաղաղ աշխատանքով, զորք չունեին և բոլորովին անպատրաստ էին, բայց չցանկացան ենթարկվել թշնամուն

և անսպասելի մեծ դիմացկունություն ցուցաբերեցին դժվարությունների հանդեպ։

Հակոբ անունով[53] մի արդար ասորի կար, իսկական հավատացյալ։ Նա Ամիդից մեկ օր հեռավորության վրա գտնվող Էնդիելոն[54] վայրում բազմաթիվ տարիներ անապատականի կյանք էր վարում, որպեսզի կարողանա անկաշկանդ զբաղվել աստվածապաշտությամբ։ Տեղացիներն այս մարդու խնդրանքով նրա ապրած տեղը շրջապատել էին ոչ խիտ ցանկապատով, որպեսզի եկողները կարողանան նրան տեսնել և հարաբերվեն հետը. մի փոքր էլ ծածկ սարքեցին նրա համար՝ անձրևից և ձյունից պաշտպանվելու։ Այս մարդն այնտեղ վաղուց էր ապրում, տեղի չէր տալիս շոգին կամ սառնամանիքին և սնվում էր ինչ-որ բույսերով, այն էլ ոչ ամեն օր, այլ շատ հազվադեպ։ Այդ վայրերն արշավող հեփթաղներից ոմանք տեսել էին Հակոբին և շտապ լարել իրենց աղեղները, ցանկանալով նետահար անել։ Բայց նրանց ձեռքերն անշարժացել էին և չէին կարողացել գործի դնել աղեղները։ Այդ լուրը տարածվելով բանակատեղում, հասավ Կավադին, որն ուզեց անձամբ ստուգել այդ։ Կավադը և ներկա եղող պարսիկներն ականատես լինելով դեպքին ապշեցին և աղաչում էին Հակոբին ներողամիտ լինել բարբարոսների [մտադրած] չարագործության հանդեպ։ Նա անմիջապես ներեց և մարդիկ փրկվեցին դժբախտությունից։ Կավադը նրան ասաց, որ խնդրի այն, ինչ ցանկանում է։ Ենթադրելով, որ նա շատ դրամ կաղերսի, մեծամտորեն ասաց, թե ինչ որ ուզի՝ կտա։ Հակոբը խնդրեց խնայել այն մարդկանց կյանքը, որոնք այս պատերազմի ժամանակ փախչելով ապաստան են գտնում իր մոտ։ Կավադը կատարեց նրա խնդիրքը և այդ մասին գրավոր երաշխավորություն տվեց։ Այսպիսով, բազմաթիվ մարդիկ, ամեն կողմից հավաքվելով այնտեղ, փրկվում էին, քանզի այդ դեպքի համբավը տարածվել էր ամենուրեք։ Այդ մասին այսքան։

Կավադը պաշարեց Ամիդը և բաբաններով սկսեց հարվածել պարսպին։ Ամիդցիք այդ մեքենան շարունակ կեռ գերաններով ետ էին շպրտում, սակայն [Կավադը] չթուլացրեց պաշարումը, մինչև չհամոզվեց, որ պարիսպն անառիկ է։ Նա բազմիցս փորձել էր բաբանով նրա մի մասը քանդել կամ տեղից խախտել, բայց ոչ մի արդյունքի չէր հասել, որովհետև հին մարդիկ պարիսպը շատ ամուր էին կառուցել։ Կավադը անհաջողության մատնվելով, քաղաքի պարսպի կողքին մի ձեռակերտ հողաբլուր է կառուցում, որ բարձրությամբ գերազանցում էր պարսպին։ Պաշարյալները պարսպի

ներսից ստորգետնյա անցք փորեցին, որը հասնում էր մինչև այդ բլուրը, և գաղտնի կերպով հողը դուրս քաշելով՝ բլուրը ներսից գրեթե լրիվ դատարկեցին։ Դրսից բլուրը որևէ փոփոխություն չէր կրում և ոչ ոք գլխի չէր ընկնում կատարվածի մասին։ Պարսիկներից շատերը կարծես ամուր գետնի վրայով, բարձրանում էին բլրի գագաթը և մտածում բարձրից հարվածել պարսպի ետևում գտնվողներին։ Երբ պարսիկների բազմությունը վազքով բարձրանում էր բլրի վրա, վերջինս հանկարծակի փուլ եկավ և գրեթե բոլորին թաղեց։ Կավադը կատարվածից շփոթվեց, որոշեց վերացնել պաշարումը ու հրամայեց զորքին հաջորդ օրը ճամփա ընկնել։ Այդ ժամանակ պաշարվածները, կարծես վտանգն արդեն վերացել էր, պարսպի ներսից սկսեցին ծաղրել բարբարոսներին, իսկ մի քանի պոռնիկներ անամոթաբար բարձրացրին շորերը և շատ մոտիկ կանգնած Կավադին ցույց տվեցին կանացի մարմնի այն մասերը, որոնք չի կարելի տղամարդուն ցույց տալ։ Մոգերը տեսնելով այդ, ներկայացան արքային և արգելեցին հեռանալ, որովհետև նրանց կարծիքով տեղի ունեցածը նշանակում էր, որ ամիդցիք շուտով Կավադին ցույց կտան իրենց ամբողջ թաքցրածն ու պահածը։ Ահա դրա համար էլ պարսից զորքը մնաց տեղում։

Մի քանի օր հետո պարսիկներից մեկը մի աշտարակի մոտ տեսավ հին առվի հունը, որը ծածկված էր ոչ խիտ խճաքարերով։ Գիշերը նա մենակ գնաց այնտեղ, առվի հունով անցավ պարսպից ներս։ Ցերեկը նա ամեն ինչ պատմեց Կավադին։ Հաջորդ գիշերը այդ մարդը աստիճաններ պատրաստեց և մի քանի հոգով եկավ նույն տեղը։ Նրա գործի հաջողության պատճառը հետևյալն էր. առվի մոտ գտնվող աշտարակը պաշտպանում էին ամենաբարեպաշտ քրիստոնյաները, որոնց մենակյաց են անվանում։ Այնպես պատահեց, որ այդ օրը նրանք նշում էին տարին մեկ անգամ կատարվող տոն։ Գիշերը, բոլորը տոնախմբության ժամանակ շատ հոգնած լինելով, մանավանդ որ սովորության համաձայն լավ կերել ու խմել էին, քաղցր ու հանգիստ քուն էին մտել և չէին զգում, թե ինչ է կատարվում։ Պարսիկները փոքր խմբերով առվի միջով սողոսկեցին պարսպից ներս, բարձրացան աշտարակը և մենակյացներին քնած գտնելով, բոլորին կոտորեցին։ Երբ այդ իմացավ Կավադը, հրամայեց աստիճանները դնել պարսպի պատերին՝ աշտարակի մոտ։ Արդեն լուսացել էր։ Հաջորդ աշտարակը պահող ամիդցիք, իմանալով փորձանքի մասին, շտապ կերպով օգնության դիմեցին։ Այստեղ մեծ խառնաշփոթության մեջ անխնա կոտորում էին

միմյանց։ Ամիդցիք գերակշռեցին և բարձրացած թշնամիներից շատերին սպանեցին, եսւ մղելով նրանց, ովքեր ուզում էին աստիճանների վրայով բարձրանալ, և կարծես շուտով փրկվելու էին վտանգից, երբ Կավադը քաշեց դաշույնը և անցնելով աստիճանից աստիճան սկսեց ահաբեկել պարսիկներին՝ թույլ չտալով նրանց իջնել. նա մահ էր սպառնում նրան, ով կհամարձակվեր նահանջել։ Պարսիկները գերազանցելով թշնամիներին, այդ մարտում հաղթանակ տարան և քաղաքը գրոհով գրավեցին՝ պաշարման ութսուներորդ օրը[55]։ Սկսվեց ամիդցիների մեծ կոտորած[56], որը տևեց այնքան ժամանակ, մինչև որ Կավադը քաղաք մտնելուց հետո ամիդցիներից մի ծեր քահանա մոտեցավ նրան և ասաց, թե արքային վայել չէ սպանել պարտվածներին։ Կավադը դեռ ցասումով լի պատասխանեց. ինչո՞ւ էիք իմ դեմ կռվում։ Քահանան պատասխանեց, որ կռվում էինք ոչ թե մեր կամքով, այլ աստուծո, որովհետև նա ուզում էր Ամիդը ընձեռել քեզ՝ քաջիդ։ Այդ խոսքը Կավադին դուր եկավ և նա կարգադրեց այլևս ոչ ոքի չսպանել, բայց հրամայեց պարսիկներին ավարի առնել քաղաքը, ստրկացնել պարտվածներին՝ իր համար առանձնացնելով լավագույններին։

Այնուհետև մի պարսկի՝ Գլոնեսի գլխավորությամբ հազար հոգուց բաղկացած կայազոր թողնելով[57] այնտեղ, ինչպես նաև փոքր քանակությամբ խեղճ ու կրակ ամիդցիների, որոնք պետք է ծառայեին պարսիկներին, Կավադր ամբողջ զորքով և գերիներով շարժվեց դեպի իր երկիրը։ Այս գերիների հանդեպ Կավադր ցուցաբերեց արքայավայել մարդասիրություն. քիչ անց նա իր մոտից փախչելու ձևով հնարավորություն տվեց նրանց բոլորին վերադառնալ իրենց հայրենիքը։ Այդ այն ժամանակ էր, երբ Անաստասիոս կայսրը սրանց նկատմամբ հոգատար վերաբերմունք էր ցուցաբերում։ Նա քաղաքին զիջեց յոթ տարվա բոլոր հարկերը, ինչպես բոլոր քաղաքացիներին, այնպես էլ առանձին մարդկանց բազմաթիվ բարիքներ շնորհեց, որպեսզի նրանք հնարավորին չափ շուտ մոռանան իրենց տառապանքները։ Այդ բոլորը տեղի ունեցավ հետագայում։

8. Անաստասիոս կայսրը, իմանալով Ամիդի պաշարման մասին, շտապ կարգով բավական մեծ բանակ ուղարկեց։ Յուրաքանչյուր գունդ ուներ իր հրամանատարը, իսկ ամբողջ բանակը ղեկավարում էին չորս զորավար, որոնք էին մի փոքր առաջ Արևմուտքի թագավոր, իսկ այժմ Արևելքի զորավար Արեոբինդոսը՝ Օլյուբրիոսի փեսան, Կելերը՝ պալատական զորքերի հրամանատարը (Հռոմայե-

ցիները այդ աստիճանավորին անվանում են մագիստրոս), Բյուզանդիոնի զորքերի հրամանատարներ՝ Պատրիկիոս Փռյուգիացին ու կայսեր եղբորորդի Հյուպատիոսը։ Այս չորսը զորավարներ էին։ Սրանց հետ էին նաև Հուստինոսը[58], որը Անաստասիոսի մահից հետո դարձավ կայսր, Պատրիկիոլոսը իր որդի Վիտալիանոսի հետ, որը որոշ ժամանակ անց Անաստասիոս կայսեր դեմ ապստամբեց և բռնատիրեց, ապա քաջ պատերազմող, ծագումով կոլխիդացի Փարեսմանեսը[59], Գոդիդիսկլոլոսն ու Սբեսասը՝ այն գոթերից, որոնք չմիացան Թևդերիքոսին, երբ վերջինս Թրակիայից Իտալիա էր արշավում։ Երկուսն էլ անչափ քաջ էին և պատերազմական գործերի մեջ փորձված։ Հետևում էին նաև այլ բազում կռվողներ։ Պատմում են, որ հռոմայեցիները այդպիսի մեծ բանակ ո՛չ անցյալում, ո՛չ էլ դրանից հետո չեն հանել պարսիկների դեմ։ Այդ զորահրամանատարները, սակայն միասին չէին, ոչ էլ մի բանակ կազմած շարժվեցին, այլ թշնամիների վրա արշավեցին առանձին-առանձին, իրենց զինվորների գլուխն անցած։ Որպես զորքի մատակարար ուղարկվեց եգիպտացի Ապիոնը, պատրիկների մեջ ճանաչված և անչափ գործունյա մի մարդ։ Կայսրը նրան հրովարտակում հայտարարեց կայսրության տեղապահ, որպեսզի նա իր հայեցողությամբ տնօրինի ծախսերը։

Զորքը գումարվում էր շատ դանդաղ և շարժվում առանց շտապելու։ Այդ պատճառով նրան չհաջողվեց բարբարոսներին հանդիպել հռոմեական հողի վրա. պարսիկները հանկարծակի հարձակվելուց հետո, ամբողջ ավարով վերադարձել էին իրենց երկիրը, իսկ [հռոմեական] զորավարներից ոչ ոք չէր ուզում զբաղվել Ամիդում մնացած [պարսիկների] պաշարմամբ, որովհետև հայտնի էր դարձել, որ նրանք իրենց արդեն պարենով լիուլի ապահովել են։ Դրա համար հռոմայեցիները որոշեցին շտապ ներխուժել թշնամու երկիրը։ Նրանք բարբարոսների վրա արշավեցին բաժան-բաժան։ Այդ իմանալով Կավադը (նա հեռու չէր գտնվում) առանց հապաղելու հասավ հռոմայեցիների սահմանները՝ վերջիններիս առաջխաղացումը կանխելու։ Հռոմայեցիներն ամենևին տեղյակ չէին, որ Կավադը հարձակվում է իրենց վրա ամբողջ զորքով, նրանք կարծում էին, որ այդտեղ գտնվում է պարսիկների մի փոքր զորաբանակ միայն։ Արեոբինդոսի զորքը ճամբարեց Կոստանդինե քաղաքից[60] երկու օրվա հեռավորության վրա գտնվող Արզամենոն վայրում[61], իսկ Պատրիկիոսի և Հյուպատիոսի [զորաբանակները]՝ Ամիդ քաղաքից ոչ պակաս, քան երկու հարյուր հիսուն ասպարեզ հեռավո-

րության վրա գտնվող Սիփրիոս վայրում[62]: Կելերը դեռ տեղ չէր հասել:

Երբ Արեոբինդոսը համոզվեց, որ Կավադն ամբողջ զորքով հարձակման է անցել, լքեց ճամբարը և իր բոլոր մարդկանցով դիմեց փախուստի դեպի Կոստանդինե: Թշնամիները մի քիչ հետո տեղ հասան և գրավեցին ճամբարը, որտեղ և ոչ մի զինվոր չկար: Այդտեղից նրանք շտապեցին արշավել հռոմայեցիների մյուս զորքերի վրա: Պատրիկիոսի և Հյուպատիոսի զորքերը, հանդիպելով ութ հարյուր հեփթաղների, որոնք պարսից զորքի ավանգարդն էին կազմում, գրեթե բոլորին կոտորեցին: Սակայն այդ հռոմայեցիները ոչինչ չգիտեին Կավադի զորքի և [մնացած] պարսիկների մասին, և որպես հաղթողներ չէին զգուշանում: Զենքերը ցած դրած նրանք ճաշ էին պատրաստում, քանի որ այդ ժամը հասել էր արդեն: Այդ վայրով հոսող փոքր գետակում հռոմայեցիները սկսեցին լվանալ իրենց ճաշի միսը: Նրանցից ոմանք, չկարողանալով դիմանալ խեղդող շոգին, սկսեցին լողանալ և գետակի ջուրը պղտորվեց: Կավադը իմանալով հեփթաղների դժբախտության մասին, շտապ կարգով շարժվեց թշնամիների վրա: Երբ նա տեսավ գետակի պղտորված ջուրը, հասկացավ, թե ինչ է պատահել, ենթադրեց, որ հակառակորդն անպատրաստ է և հրամայեց ամբողջ ուժով հարձակվել նրա վրա: Նա [հակառակորդին] գտավ ճաշի պահին, անզեն վիճակում: Հռոմայեցիները չդիմացան հարձակմանը և չէին էլ փորձում կռվել, այլ յուրաքանչյուրը, ինչպես կարողանում էր փախուստի էր դիմում: Նրանցից ոմանք, ընկնելով թշնամու ձեռքը կոտորվում էին, մյուսներն էլ ապաստանելով մոտակա լեռներում, սարսափահար, խուճապից գլորվում էին ժայռերից: Պատմում են, որ ոչ ոք չփրկվեց. միայն Պատրիկիոսին ու Հյուպատիոսին հաջողվեց հարձակման հենց սկզբում փախչել: Դրանից հետո Կավադը, իմանալով, որ թշնամի հոները մուտք են գործել իր երկիրը, ամբողջ զորքով շարժվեց Պարսկաստան և իր երկրի հյուսիսում երկարատև պատերազմ վարեց այդ ժողովրդի դեմ: Այդ միջոցին վրա հասավ հռոմայեցիների մյուս զորաբանակը, բայց ոչ մի աչքի ընկնող բան չկատարեց, որովհետև ընդհանուր զորահրամանատարությունը մի մարդու ձեռքում չէր գտնվում. զորավարները [աստիճանով] իրար համահավասար լինելով, հակադրվում էին մեկը մյուսի կարծիքին և ոչ մի կերպ չէին ուզում միատեղ լինել: Կելերը իր զորաբանակով անցավ Նիմֆիոս գետը[63] և հարձակվեց Արզանենեի վրա[64]: Այդ գետը հոսում է Մարտիրուպոլսին շատ մոտիկ, իսկ Ամիդից՝ մոտ

երեք հարյուր ասպարեզ հեռավորության վրա։ Ավարի առնելով այդ երկրի բնակավայրերը, քիչ անց նրանք վերադարձան։ Այդ արշավանքը կարճատև էր։

9. Դրանից հետո Արեոբինդոսր կանչվեց կայսրից և դնաց Բյուզանդիոն, իսկ մյուսները, հասնելով Ամիդ, ձմռանը սկսեցին [քաղաքի] պաշարումը։ Նրանք շատ ջանք թափեցին, որպեսզի գրոհով վերցնեն քաղաքը, բայց այդ չստացվեց և որոշեցին հաջողության հասնել պաշարվածներին սովի մատնելով։ Պաշարվածները զրկված էին ամեն ինչից, բայց զորավարները այդ մասին ոչինչ չգիտեին։ Երբ նրանք տեսան, որ զինվորները դժգոհում են [երկարաձգվող] պաշարումից և սառնամանիքից, նաև, որովհետև, ենթադրում էին, որ շուտով իրենց վրա կհարձակվի պարսից զորքը, մտածեցին մի կերպ հեռանալ այդտեղից։ Պարսիկներն էլ չգիտենալով, թե ինչպիսի ելք կունենա այդ դժվարին իրավիճակը, խելացի կերպով թաքցնում էին պարենի պակասությունը, կարծել տալով, որ ամեն ինչով լիուլի ապահովված են և ուզում են պատվով գնալ իրենց երկիրը։ Նրանք բանակցությունների մեջ մտան հռոմայեցիների հետ և ասացին, թե քաղաքը կտան նրանց հազար լիտր ոսկու դիմաց[65]։ Երկու կողմերն էլ համաձայն էին այդ պայմաններին։ Գլոնեսի որդին ստանալով դրամը, Ամիդն հանձնեց հռոմայեցիներին[66]։ Ինքը՝ Գլոնեսը արդեն վախճանվել էր։ Ահա թե ինչպես։

Երբ հռոմայեցիները ճամբարել էին Ամիդ քաղաքից ոչ հեռու, գյուղացիներից մեկն[67] իր սովորության համաձայն, գաղտնի մտնում էր քաղաք և շատ թանկ գնով հավեր, հաց ու բազմաթիվ այլ մթերքներ վաճառում Գլոնեսին։ Այդ գյուղացին գալիս է զորավար Պատրիկիոսի մոտ և խոստանում է նրա ձեռքը հանձնել Գլոնեսին՝ երկու հարյուր պարսիկների հետ միասին՝ դրա փոխարեն հատուցում ստանալու պայմանով։ Պատրիկիոսը խոստացավ տալ այն, ինչ ուզում էր այդ մարդը և ճամփու դրեց նրան։ Գյուղացին պատառոտեց իր հագուստները և լալով մտավ քաղաք։ Նա գնաց Գլոնեսի մոտ և իր մազերը փետելով ասաց. «Ո՜վ տեր, գյուղից քեզ շատ
»մթերք էի բերում, բայց ինձ հանդիպեցին հռոմայեցի զինվորներր
»(նրանք փոքր խմբերով շրջում են գյուղերը և բռնանում խեղճ
»գյուղացիների վրա) և դաժան կերպով ծեծեցին ինձ, քանզի նրանց
»վաղեմի սովորությունն է պարսիկներից վախենալը և երկրագործ-
»ների վրա բռնանալը։ Ո՜վ տեր, դարձիր դու քո՛, մե՛ր և պարսիկ-
»ների պաշտպանը։ Եթե քաղաքի ծայրամասերում դու որսի դուրս

«գաս, ապա վատ որս ձեռք չես բերի, որովհետև այդ անիծյալները «ավազակությամբ են զբաղվում չորս-չորս կամ հինգ-հինգ հոգով»։ Նա այսքանն ասաց։ Գլոնեսը հավատաց նրան և հարցրեց, թե քանի պարսիկով կարելի է այդ գործը գլուխ բերել։ Նա պատասխանեց, որ հիսուն հոգին էլ բավական է, որովհետև նրան ճանապարհին հինգից ավել [հոռոմայեցիներ] չեն պատահի, բայց որևէ անակնկալից խուսափելու համար վատ չի լինի, եթե գործին մասնակից դառնան հարյուր հոգի, իսկ եթե կրկնակի չափով վերցնի, ապա լրիվ բավական է, որովհետև այդ դեպքում ոչ մի մարդ վնաս չի կրի։ Գլոնեսը ընտրեց երկու հարյուր ձիավոր և հրամայեց գյուղացուն իրենց առաջնորդի։ Վերջինս ասաց, որ լավ կլինի ինքը նախօրոք առաջ գնա հետախուզելու համար, և եթե այդ գյուղերում նկատի հոռոմայեցիների, ապա իմաց տա, որպեսզի պարսիկները ժամանակին անցնեն հարձակման։ Գլոնեսը գտավ, որ նա ճիշտ է և թույլ տվեց, որ գնա։ [Գյուղացին] եկավ զորավար Պատրիկիոսի մոտ և ամեն ինչ պատմեց։ Վերջինս ընտրեց երկու հոգի իր թիկնապահներից և հազար զինվոր ուղարկեց գյուղացու հետ։ Սա նրանց թաքցրեց Ամիդից քառասուն ասպարեզ հեռավորության վրա գտնըվող Թիալասամոն[68] կոչված գյուղում. անտառների մեջ և ծառաշատ վայրերում կարգադրեց դարան մտնել, իսկ ինքը փութաց դեպի քաղաք ու ասաց Գլոնեսին, որ որսը պատրաստ է։ Վերջինս այդ երկու հարյուրի գլուխն անցած, [գյուղացու] առաջնորդությամբ շարժվեց դեպի թշնամու դարանը։ Երբ պարսիկները հասան այն վայրը, որտեղ դարան էին մտել հոռոմայեցիները և առաջ անցան, գյուղացին Գլոնեսից և պարսիկներից աննկատ փախավ, ապա դարան մտած հոռոմայեցիներին վեր կացրեց և ցույց տվեց թշնամիներին։ Պարսիկները, երբ տեսան իրենց վրա արշավող հոռոմայեցիներին, ապշեցին անակնկալից և անելանելի դրության մեջ ընկան։ Նրանք չէին կարող ոչ նահանջել, որովհետև թշնամիներն իրենց թիկունքում էին գտնվում, ոչ էլ առաջ անցնել, որովհետև այնտեղ արդեն թշնամու երկիրն էր։ Նրանք տեղն ու տեղը մարտի պատրաստվեցին՝ դիմադրելու հակառակորդին, սակայն թվով շատ ավելի քիչ լինելով, պարտություն կրեցին և բոլորն էլ Գլոնեսի հետ միասին կոտորվեցին։ Երբ այդ մասին իմացավ Գլոնեսի որդին, շատ տխրեց, խիստ զայրացավ և չկարողանալով լուծել հոր վրեժը, հրկիզեց սուրբ Սիմեոնի տաճարը, որտեղ [Նախկինում] ապաստանել էր Գլոնեսը, հակառակ այն բանի, որ ո՛չ Գլոնեսը, ո՛չ Կավադը, ո՛չ էլ որևէ այլ պարսիկ չէր քանդել որևէ շենք, ո՛չ էլ որևէ կերպ

ավերել թե՛ Ամիդում, թե՛ նրանից դուրս[69]։ Ես վերադառնում եմ նախկին պատմության շարունակությանը։

Ահա այսպես, հռոմայեցիները դրամ տալով ստացան Ամիդը՝ թշնամիների կողմից նրա գրավվելուց երկու տարի հետո։ Երբ հռոմայեցիները մտան քաղաք, նրանց պարզ դարձավ պարսիկների պարենային անմխիթար վիճակը և տեսան որ շտապողականություն են ցուցաբերել։ Հաշվելով քաղաքում մնացած պարենամթերքը, ինչպես նաև դուրս եկած թշնամու քանակը, որոշեցին, որ քաղաքում ընդամենը շուրջ յոթ օրվա պարեն էր մնացել, հակառակ նրան, որ Գլոնեսը և նրա որդին երկար ժամանակ պարսիկներին շատ ավելի պակաս պարեն էին բաց թողնում, քան պետք էր։ Պարսիկներն իրենց հետ քաղաքում մնացած հռոմայեցի բնակիչներին, ինչպես նախապես ասացի, քաղաքը թշնամու կողմից պաշարվելու օրվանից, այլևս ոչինչ չէին տալիս։ Այդ պատճառով նրանք սկսեցին սնվել նախ չուտվող բաներով, ապա դիմեցին ամեն տեսակ զզվելի բանի, իսկ երբ արդեն սովամահ էին լինում, սկսեցին իրար ուտել։ Զորավարների համար պարզ դարձավ, որ բարբարոսների կողմից խաբվել են և պախարակում էին զինվորներին՝ նրանց անհամբերության համար, որ եթե նրանք անկարգապահություն չցուցաբերեին, հնարավոր կլիներ գրավել քաղաքը և այդքան պարսիկներին գերի վերցնել, նրանց թվում նաև Գլոնեսի որդուն։ Իսկ այժմ հռոմայեցիները թշնամուն դրամ տալով, անչափ խայտառակվեցին և Ամիդը դրամով գնեցին պարսիկներից։ Հետագայում, երբ պարսիկների և հոների միջև պատերազմը երկարեց, պարսիկները հռոմայեցիների հետ յոթ տարով հաշտություն կնքեցին[70]։ Հռոմայեցիների կողմից Կելերը, իսկ պարսիկների կողմից՝ Ասպեբեդեսն[71] էին հաշտությունը կնքողները։ Ապա երկու կողմն էլ քաշվելով իրենց երկրները, ապրեցին խաղաղության մեջ։ Ինչպես ասվեց, հռոմայեցիների և պարսիկների միջև ծագած պատերազմն ահա այսպես ավարտվեց։ Այժմ ես պատմելու եմ, թե ինչ պատահեց Կասպից դռներում[72]։

10. Կիլիկիայի Տավրոս լեռը ձգվում է Կապադովկիայի, Հայաստանի[73] և Պերսարմենիայի[74] վրայով մինչև Ալբանիա[75], Իբերիա[76] և այն մյուս ժողովուրդների [տերիտորիան], որոնք ապրում են նշված երկրներում՝ ինքնավար կամ պարսիկներին հպատակ վիճակում։ Նա շատ է երկարում և գնալով լայնանում ու բարձրանում։ Իբերիայի սահմաններից այն կողմ շատ նեղ վայրում ձոր-

վում է մի լեռնակածան, որի երկարությունը հասնում է հիսուն ասպարեզի։ Այդ լեռնակածանը վերջանում է մի գահավեժ և բոլորովին անանցանելի վայրում։ Այլևս ոչ մի անցք չի երևում, բացի մի փոքր, կարծես ձեռակերտ բնական դռնից, որը հնուց կոչվում է Կասպից [դուռ]։ Մյուս կողմից դաշտերը լայնատարած են և շատ ջրառատ. տարածության մեծ մասը տափարակ է և հարմար ձիաբուծության համար։ Այդ շրջաններում մինչև Մեոտիս լիճը[77] բնակվում են գերազանցապես հոնական ժողովուրդներ։ Նրանք լավ ձիերով և առանց որևէ դժվարության անցնում են պարսիկների և հռոմայեցիների սահմանները հիշված դռնով՝ առանց զգալու շրջանցիկ ճանապարհի կարիքը։ Նրանք չեն հանդիպում գահավեժ վայրերի, բացի վերևում հիշատակված այն հիսուն ասպարեզ երկարությամբ լեռնակածանից, որ գտնվում է Իբերիայի սահմանում։ Սակայն եթե ուզենան ուրիշ ճանապարհով գնալ, ապա կհանդիպեն մեծ դժվարությունների և չեն կարողանա օգտվել ձիերից, որովհետև ստիպված կլինեն դիմել բազմաթիվ շրջանցիկ, այն էլ զառիթափ ճանապարհների։ Փիլիպպոսի որդի Ալեքսանդրը[78] գիտեր այդ մասին և նշված վայրում դարպասներ ու ամրոց[79] կառուցեց։ Այդ [ամրոցը] ժամանակի ընթացքում շատերի ձեռքն անցավ, որոնց թվում նաև Ամբազուկեսի, որը ծագումով հոն էր և հռոմայեցիների ու Անաստասիոս կայսեր բարեկամը։ Ամբազուկեսը, երբ խոր ծերության հասավ և մահամերձ էր, մարդիկ ուղարկեց Անաստասիոսի մոտ՝ առաջարկելով դրամի դիմաց հռոմայեցիներին զիջել ամրոցը և Կասպյան դռները։ Անաստասիոս կայսրը (նա սովորություն չուներ առանց կշռադատելու գործել, ոչ էլ դյուրահավատ էր) մտածեց, որ բոլոր բարիքներից զուրկ այդ վայրում, նրա մոտակայքում՝ հռոմայեցիներին հպատակ որևէ ժողովրդի բացակայության պայմաններում անկարելի է զորք պահել, խոր շնորհակալություն հայտնեց այդ մարդուն իրեն ցուցաբերած սիրալիրության համար, բայց այդ գործին ոչ մի ընթացք չտվեց։ Որոշ ժամանակ անց Ամբազուկեսը վախճանվեց, իսկ Կավադը, բռնանալով նրա որդիների վրա, տիրացավ դռներին։

Անաստասիոս կայսրը Կավադի հետ հաշտություն կնքելուց հետո, Դարա վայրում մի անչափ ամուր և կարևոր քաղաք կառուցեց[80] և նրան շնորհեց իր անունը։ Այն գտնվում է Նիսիբիս քաղաքից[81] իննսունութ ասպարեզ հեռավորության վրա և հռոմեա-պարսկական սահմանից՝ մոտավորապես քսանութ [ասպարեզ]։ Պարսիկները ջանում էին խանգարել շինարարության գործին, բայց այդ

չէր հաջողվում, որովհետև իրենք զբաղված էին հոների դեմ մղվող դժվարին պատերազմով։ Երբ Կավադը ավարտեց [այդ պատերազմը], շտապ կարգով պատվիրակություն ուղարկեց հռոմայեցիների մոտ, մեղադրելով նրանց սահմաններին շատ մոտիկ քաղաք կառուցելու մեջ, մի բան, որ մարերի և հռոմայեցիների միջև անցյալում կնքված հաշտության պայմանագրի համաձայն արգելված էր։ Անաստասիոսը մի կողմից սպառնում էր նրան, մյուս կողմից՝ խոստանում բարեկամություն և նվերներ՝ դրամական մեծ գումար, ցանկանալով վերացնել [պատերազմի] առիթը։ Անաստասիոսը [Դարայի] նման մի ուրիշ քաղաք էլ կառուցեց Հայաստանում, Պերսարմենիայի սահմանին շատ մոտիկ, որն անցյալում գյուղ լինելով անունով էր քաղաք և Թեոդոսուպոլիս էր կոչվել Թեոդոս կայսեր կողմից[82]։ Անաստասիոսը այն շրջապատեց ամրագույն պարսպով և այդ պարսիկներին պատճառեց ոչ պակաս անհանգստություն, քան [Դարան], որովհետև երկու ամրոցներն էլ պարսիկների երկրի դեմ պատվարներ դարձան։

11. Որոշ ժամանակ անց Անաստասիոսը վախճանվեց և իշխանությունն անցավ Հուստինոսին[83], որը պաշտոններից հեռացրեց Անաստասիոսի բոլոր ազգականներին, չնայած նրանք բազմաթիվ էին և շատ երևելի։ Այդ բանը առիթ տվեց Կավադին մտահոգվելու, որ գուցե պարսիկներն էլ իր մահից հետո իր տոհմի դեմ որևէ խռովություն բարձրացնեն։ Նա շատ լավ գիտեր, որ որդիներից մեկին իշխանություն հանձնելը հաշտ ու խաղաղ չէր անցնի։ Ըստ օրենքի իշխանությունը պետք է ժառանգեր որդիներից ավագագույնը՝ Կաոսեսը[84], բայց նա Կավադին բոլորովին դուր չէր գալիս։ Հոր կամքը հակառակ էր գնում և՛ բնության, և՛ օրենքին։ Օրենքը արգելում էր նաև, որ [արքա դառնա] երկրորդ որդին՝ Զամեսը[85], որովհետև նա մի աչքից կույր էր։ Պարսիկների օրենքը չի թույլատրում, որ արքա դառնա մի աչքից կույր կամ ֆիզիկական որևէ պակասություն ունեցող անձնավորություն։ Հայրը շատ էր սիրում Խոսրովին[86], որը ծնվել էր Ասպեբեդի քրոջից[87], բայց տեսնում էր, որ գրեթե բոլոր պարսիկները հիացած են Զամեսի արիության վրա (նա քաջ կռվող էր) և խոնարհվում են նրա առաքինությունների առաջ։ Կավադը վախեցավ, որ պարսիկները ապստամբություն կբարձրացնեն Խոսրովի դեմ և մեծ փորձանքներ կբերեն իր տոհմի ու թագավորության գլխին։ Նա խելացի համարեց վերջ տալ հռոմայեցիների դեմ մղած պատերազմին ու պատերազմ ծնող առիթներին,

և Խոսրովին դարձնել Հուստինոս կայսեր որդեգիրը։ Նա գտնում էր,
որ այդ ձևով միայն հնարավոր էր ապահովել իշխանության ան-
վտանգությունը։ Այդ առթիվ նա դեսպաններ և նամակ ուղարկեց
Բյուզանդիոն. նամակում հայտնում էր հետևյալը. «Գիտեմ, որ դուք,
»հռոմայեցիներդ, արդար չեք եղել մեր հանդեպ, բայց այնուամե-
»նայնիվ ես որոշել եմ անտեսել ձեր բոլոր վատությունները, որով-
»հետև ըստ իս հաղթում են նրանք, ովքեր արդար են և կամավոր
»կերպով, հանուն բարեկամների, վիչումների են դիմում։ Այդ առ-
»թիվ քեզանից շնորհք եմ խնդրում՝ ոչ միայն մեր միջև, այլև յուրա-
»քանչյուրիս հպատակ ժողովուրդների միջև բարեկամական կապեր
»հաստատենք և խաղաղության բարիքները քաղելու հնարավորու-
»թյուն ստեղծենք։ Ես նկատի ունեմ այն, որ իմ Խոսրովը՝ թագավո-
»րության ժառանգը քո որդեգիրը դառնա»։

Այդ նամակը Հուստինոսին շատ ուրախացրեց, ինչպես նաև
կայսեր եղբորորդի Հուստինիանոսին[88], թագավորության հավա-
նական ժառանգորդին։ Շտապ կարգով նրանք գործի անցան, դրա-
վոր ձևով հաստատելու որդեգրումը, ըստ հռոմեական օրենքների,
սակայն Պրոկլոսը, մի արդար և անչափ անկաշառ մարդ, որն այն
ժամանակ կայսեր մոտ քվեստորի[89] պաշտոնն ուներ, արգելեց այդ
անել։ Նա հեշտությամբ ոչ նոր օրենքներ էր սահմանում, ոչ էլ ուզում
էր խախտել որևէ հաստատված [օրենք]։ Նա դեմ դուրս եկավ և
այդ առթիվ ասաց հետևյալը. «Ես սովորություն չունեմ նորամուծու-
»թյունների դիմել, այլ ընդհակառակը, շատ եմ վախենում դրանցից,
»լավ գիտենալով, որ նորամուծությամբ ոչ մի կերպ չես ապահովի
»անվտանգությունը։ Ըստ իս, ամենախիզախ մարդն անգամ կվա-
»խենար նման գործից և կսարսափեր դրա պատճառով պայթելիք
»փոթորկից։ Տվյալ դեպքում դուք մտածում եք մի բանի մասին, որ
»հռոմայեցիների պետությունը քաղաքավարի կերպով հանձնեք
»պարսիկներին։ Վերջիններս առանց որևէ քողարկման, բացեիբաց
»հայտնում են իրենց մտադրությունը, նրանք անամոթաբար ուզում
»են մեզ զրկել թագավորությունից՝ բացահայտ խաբեությունը քո-
»ղարկելով միամտությամբ, իսկական խայտառակությունը՝ խաղա-
»ղասիրության քողով։ Դուք պետք է բարբարոսների և՛ մեկ, և՛
»մյուս առաջարկը կտրականապես մերժեք, որպեսզի դու, ո՜վ
»կայսր, հռոմայեցիների վերջին կայսրը չլինես, և դու, ո՜վ զորա-
»վար[90], որպեսզի ինքդ թագավորությանդ համար խոչընդոտ
»չստեղծես։ Մնացած խարդավանքները նրանք մեծամասամբ սքո-
»ղում են վերամբարձ խոսքերով և հնարավոր է, որ դրանք հաճախ

»թարգմանի կարիք զգան, բայց և այնպես սույն դեսպանության
»առաջին և հիմնական նպատակն այն է, որ այս Խոսրովին, ով էլ
»նա լինի, դարձնի հռոմայեցիների կայսեր ժառանգորդը։ Ըստ իս
»ահա այսպես պետք է հասկանալ հարցը։ Ի բնե որդիք են ժառան-
»գում իրենց հորը և չնայած տարբեր ժողովուրդների օրենքները
»իրար նման չեն, և հաճախ նույնիսկ հակասում են իրար, բայց
»և այնպես այս հարցում և՛ հռոմայեցիների, և՛ բոլոր բարբարոս-
»ների օրենքները համընկնում են և համաձայն են իրար, որ հոր
»ժառանգության տերը որդիներն են դառնում։ Արդ, եթե դուք ըն-
»դունեք առաջին առաջարկը, ապա պետք է ակնկալեք նաև դրանից
»ծագած հետևանքները»։

Պրոկլոսն այսքանն ասաց։ Կայսրը և կայսեր եղբորորդին հավանություն տվեցին ասվածին և մտածում էին իրենց ձեռնարկելիքի մասին։ Այդ միջոցին Կավադը Հուստինոս կայսեր մի ուրիշ նամակ էլ ուղարկեց, խնդրելով, որ նա լիազորված մարդկանց ուղարկի իր մոտ՝ խաղաղություն կնքելու համար և գրավոր հայտնի իրեն, թե ինչ պայմաններով նա կցանկանար, որ կատարվի որդու որդեգրությունը։ Պրոկլոսը առավել քան պախարակում էր պարսիկների խորամանկությունը և հաստատակամորեն ցույց տալիս, որ նրանք որոշակիորեն ուզում են յուրացնել հռոմայեցիների պետությունը։ Նա խորհուրդ տվեց պարսիկների հետ իսկույն խաղաղություն կնքել՝ Կավադի մոտ ուղարկելով այդ գործի համար կայսեր կողմից լիազորված մարդկանց. Խոսրովի որդեգրության պայմանների մասին [արքայի] հարցին որոշակի պատասխանել, որ դա կլինի ինչպես ընդունված է բարբարոսների մոտ. բարբարոսները որդեգրությունը կատարում են ոչ թե գրավոր ձևով, այլ զենքով։ Եվ այսպես, Հուստինոս կայսրը ճամփու դրեց [պարսից] դեսպաններին՝ խոստանալով անհապաղ ուղարկել ամենահայտնի հռոմայեցիներին, որոնք բարեհաջող կերպով կլուծեն հաշտության, ինչպես նաև Խոսրովի հարցը։ Նա նույն ոգով պատասխանեց նաև Կավադի նամակներին։ Ահա [բանակցությունների համար] ուղարկվում են հռոմայեցիներից Հյուպատիոսը, նախորդ՝ Անաստասիոս կայսեր եղբորորդին, Արևելքի զորավար Պատրիկիոսը, ապա երևելի պատրիկ Հռուփինոսը՝ Սիլվանոսի որդին, որը Կավադի վաղեմի ծանոթն էր։ Իսկ պարսիկներից մեծ լիազորություններով ուղարկվում են ամենակարող Սեոսեսը[91], որն ուներ ադրաստադարան սալանեսի[92] աստիճանը, և Մեբոդեսը[93], որը մագիստրոսի աստիճան ուներ։ Նրանք հավաքվեցին հռոմայեցիների և

պարսիկների սահմանամերձ մի վայրում ու իրար հանդիպելով աշխատում էին լուծել վիճելի հարցերը և բարեհաջող հաշտություն կնքել։ Խոսրովն էլ եկավ Տիգրիս գետի մոտ, որն հոսում է Նիսիբիս քաղաքից մոտ երկու օր հեռավորության վրա, որպեսզի, եթե երկու կողմերի միջև հաշտության գործը հաջողությամբ լուծվի, գնա Բյուզանդիոն։ Այնտեղ երկու կողմն էլ երկար խոսակցություն ունեցան զանազան վիճելի հարցերի շուրջը։ Սեոսեսն ասում էր, թե Կոլխիս երկիրը, որն այժմ Լազիկա է կոչվում[91], մշտապես պարսիկներին էր հպատակ, և որ այժմ այնտեղ, առանց որևէ իրավունքի, հռոմայեցիներն են բռնությամբ տիրում։ Հռոմայեցիներին վրդովեցրեց, որ պարսիկները Լազիկայի հարցն էլ են վիճելի համարում։ Երբ [հռոմայեցիներն] ասացին, որ Խոսրովի որդեգրությունը պետք է տեղի ունենա բարբարոսական սովորույթի համաձայն, պարսիկներն այդ անընդունելի համարեցին։ Երկու կողմերն էլ վերադարձան իրենց երկիրը, իսկ Խոսրովը այդ դեպքից անչափ վիրավորված, ձեռնունայն ճամփա ընկավ դեպի իր հայրը, երդվելով վրեժ լուծել հռոմայեցիներից՝ իրեն պատճառած վիրավորանքի համար։

Մեբոդեսն այնուհետև Կավադի առաջ զրպարտեց Սեոսեսին, որը իբր միտումնավոր կերպով, վիժեցնելու համար հաշտության գործը, առանց տիրոջ հրամանի Լազիկայի մասին խոսք բացեց՝ նախապես համաձայնության գալով Հյուպատիոսի՝ կայսեր հետ սրված հարաբերություններ ունեցող մեկի հետ և այդպիսով. հնարավորություն չտվեց գլուխ բերել հաշտության և Խոսրովի որդեգրության գործը։ Սեոսեսի թշնամիները այլ մեղադրանքներ էլ էին հարուցում նրա դեմ և պահանջում դատի տալ նրան։

Պարսից ամբողջ ծերակույտը հավաքված, դատում էր ավելի նախանձից դրդված, քան թե օրենքից, որովհետև նա չէր կարող տանել այդ մարդու իշխանությունը և բնավորությունը։ Սեոսեսը բացարձակապես անկաշառ մարդ էր, արդարության ամենաթունդ պահապանը, սակայն բոլորից շատ ավելի էր տառապում մեծամտության ախտով, որ բնորոշ էր պարսից իշխանավորների համար։ Նույնիսկ նրանք գտնում էին, որ Սեոսեսի մոտ այդ կիրքը չափից անցել է։ Բացի վերոհիշյալից, ամբաստանողները նրան մեղադրում էին այն բանում, որ նա խախտում է հաստատված կանոնները, չի ուզում պահպանել պարսից օրենքները։ Նրան մեղադրում էին նաև, որ նոր աստվածներ է պաշտում, որ վերջերս վախճանված կնոջը թաղել է, իսկ պարսկական օրենքներով արգելվում է հողի մեջ թաղել մեռելներին։ Դատավորները նրան մահվան դա-

*տապարտեցին։ Կավադը ցույց էր տալիս, թե իբր ցավակցում է Սեոսեսին՝ որպես իր ընկերոջ, բայց ամենևին էլ չէր ուզում փրկել, ձևացնում էր, որ ոչ թե զայրույթն է իրեն ստիպել այդպես վարվելու նրա հետ, այլ պարսից օրենքների պաշտպանության ձգտումը, թեպետև այդ մարդուն էր պարտական իր կյանքը, որովհետև Կավադի կենդանի մնալու և արքա դառնալու գլխավոր երաշխավորը Սեոսեսն էր։ Այսպիսով Սեոսեսը դատապարտվեց և մահապատժի ենթարկվեց[95], իսկ նրանից սկիզբ առած պաշտոնը նրա հետ էլ վերացավ, որովհետև Սեոսեսից հետո ոչ ոք ադրաստադարան սալանես չդարձավ[96]։ Իր հերթին էլ Հուստինոսը կայսեր առաջ զրպարտեց Հյուպատիոսին, որի համար կայսրը վերջինիս պաշտոնանկ արեց և նրա մերձավորներից մի քանիսին ամենադաժան պատիժների ենթարկեց։ Բայց հետագայում կայսրը այդ ամբաստանության մեջ որևէ ճշմարիտ բան չգտնելով, Հյուպատիոսին ոչ մի այլ վատություն չարեց։*

*12. Կավադը, թեև ուզում էր իսկույն հռոմայեցիների երկրի վրա արշավել, այնուամենայնիվ ի վիճակի չեղավ։ Այդ բանին խանգարեց հետևյալը. Ասիայի իբերներն[97] ապրում են իրենցից հյուսիս գտնվող Կասպից դռների մոտ։ Իբերների ձախ կողմում՝ դեպի արևմուտք Լազիկան է, իսկ աջ կողմում՝ դեպի արևելք ապրում են Պարսկաստանին ենթակա ժողովուրդներ։ [Իբերները] քրիստոնյա են և հավատքի հարցում մեզ ծանոթ բոլոր ժողովուրդներից առավել նախանձախնդիր։ Նրանք պարսից արքայի վաղեմի հպատակներն են։ Ահա Կավադն ուզում էր [իբերներին] պարտադրել իր հավատքը և նրանց թագավոր Գուրգենին[98] նամակով հրամայեց ղեկավարվել պարսից օրենքներով և ի միջի այլոց մեռելներն այլևս հողի մեջ չթաղել, այլ բոլորը թռչուններին և շներին նետել։ Դրա պատճառով Գուրգենն ուզում էր Հուստինոս կայսեր կողմն անցնել և երաշխիք էր խնդրում այն մասին, որ հռոմայեցիները իբերներին երբեք չեն տա պարսիկների ձեռքը։ Հուստինոսը մեծ հաճույքով երաշխավորեց և նախկին կայսր Անաստասիոսի եղբորորդի պատրիկ Պրոբոսին մեծ գումարով Բոսպորոս[99] ուղարկեց, որպեսզի այդ դրամով նա կարողանա համոզել հոներին՝ զորք ուղարկելու իբերներին օգնության։ Բոսպորոսը ծովափնյա քաղաք է և գտնվում է Եվքսինյան Պոնտոսի ձախ կողմում, Խերսոն[100] քաղաքից՝ հռոմեական պետության ծայրագույն [քաղաքից] քսան օրվա հեռավորության վրա։ Այդ երկու [քաղաքների] միջև ընկած տարածության վրա հոներն*

են բնակվում։ Բոսպորիտները, որոնք նախապես անկախ վիճակում էին գտնվում, վերջերս ենթարկվել էին Հուստինոս կայսեր։ Այն պատճառով, որ Պրոբոսը այստեղից հեռացավ ձեռնունայն, կայսրը զորավար Պետրոսին՝ հոների մի փոքրաքանակ խմբով ուղարկեց Լազիկա՝ Գուրգենին հնարավորին չափ օժանդակելու համար։ Այդ միջոցին Կավադը մեծ բանակ ուղարկեց Գուրգենի և իբերների դեմ, պարսիկ զորավարի գլխավորությամբ, որը Վարիզի պաշտոնն ուներ[101] և կոչվում էր Բոես։ Գուրգենը տեսնելով, որ ի վիճակի չէ դիմադրել պարսիկներին, իսկ հռոմայեցիների օգնությունը բավարար չէր, իբերների բոլոր մեծամեծների հետ միասին փախավ Լազիկա, իր հետ տանելով կնոջը, երեխաներին և եղբայրներին, որոնցից ավագը Պերանիոսն էր[102]։ Հասնելով Լազիկայի սահմանները, նրանք կանգ առան և պաշտպանվելով նեղանցքներում, դիմադրում էին թշնամիներին։ Նրանց հալածող պարսիկները ոչինչ չկարողացան անել, որովհետև նրանց խանգարում էր դժվարանցանելի տեղանքը։

Այնուհետև իբերները եկան Բյուզանդիոն, իսկ Պետրոսն էլ ետ կանչվելով կայսեր կողմից, գնաց նրա մոտ։ Կայսրը տեսնելով, որ լազերը այլևս չեն ուզում միասին պաշտպանել երկիրը, հրամայեց բանակ ուղարկել Իրինեոսի գլխավորությամբ։ Լազիկայում, Իբերիայի հենց սահմանների մոտ, երկու ամրոց կա, որոնց պաշտպանությունը հնուց ընկած էր տեղացիների վրա, չնայած, որ վերջիններս շատ դժվար վիճակում էին ապրում. այստեղ ոչ հացահատիկ է աճում, ոչ որթատունկը, ոչ էլ որևէ այլ բարիք, դրսից էլ հնարավոր չէ որևէ բան ներմուծել՝ վայրի դժվարանցանելիության պատճառով։ Մարդիկ ստիպված բեռները իրենք են տեղափոխում։ Այստեղ բուսնում էր ինչ-որ կորեկ, որը լազերի սովորական սնունդն էր և որով նրանք պահպանում էին իրենց գոյությունը։ Կայսրը այդ պահակներին հեռացրեց այնտեղից և հրամայեց ամրոցների պաշտպանությունը հանձնել հռոմայեցի զինվորներին։ Լազերը սկզբում դժվարությամբ էին բերում [կայազորին] անհրաժեշտ պարենը, իսկ այնուհետև հրաժարվեցին այդ ծառայությունն անելուց և հռոմայեցիներն [ստիպված] թողեցին այդ ամրոցները, պարսիկներն էլ առանց որևէ դժվարության տիրացան նրանց։ Ահա այս բոլորը տեղի ունեցավ լազերի երկրում։

Հռոմայեցիները Սիտտասի[103] և Բելիսարիոսի գլխավորությամբ ներխուժելով պարսիկներին ենթակա Պերսարմենիա, մեծ տարածություն ավարի առան և գերեվարելով բազմաթիվ հայերի,

հեռացան։ [Սիտտասն ու Բելիսարիոսը] դեռ երիտասարդ էին, նոր էր բուսնում նրանց աղվամազը և նրանք զորավար Հուստինիանոսի՝ ապագայում իր հորեղբոր Հուստինոսի հետ միասին թագավորողի թիկնապահներն էին։ Հայաստանի վրա հռոմայեցիների մի ուրիշ արշավանքի ժամանակ անսպասելի կերպով նրանց վրա հարձակում գործեցին Ներսեսն[104] ու Արատիոսը[105] և մարտի բռնվեցին։ Վերջիններս քիչ անց կամավոր կերպով անցան հռոմայեցիների կողմը և Բելիսարիոսի հետ արշավեցին Իտալիայի վրա[106], բայց տվյալ դեպքում կռվելով Սիտտասի և Բելիսարիոսի դեմ, նրանք հաղթանակ տարան։ Հռոմայեցիների մի այլ զորք Թրակացի Լիբելարիոսի գլխավորությամբ, ներխուժեց Նիսիբիս քաղաքը, թեպետև ոչ ոք չէր դիմադրում, փախուստի դիմեց և վերադարձավ։ Այդ պատճառով էլ կայսրը պաշտոնանկ արեց Լիբելարիոսին և Դարայի զորքի հրամանատար նշանակեց Բելիսարիոսին։ Հենց այդ ժամանակ էր, որ նրա խորհրդական ընտրվեց Պրոկոպիոսը՝ այս գրքի հեղինակը։

13. Որոշ ժամանակ անց Հուստինոս կայսրը վախճանվեց, նախապես իր եղբորորդի Հուստինիանոսին իր հետ թագավորեցնելով։ Ահա նրա մահից հետո Հուստինիանոսը թագավորեց միահեծան։ Նա հրամայեց Բելիսարիոսին ամրոց կառուցել Մինդուոս վայրում[107], պարսից սահմանների մոտ՝ Նիսիբիս տանող ճանապարհի ձախ կողմում։ Վերջինս շտապ կարգով ձեռնամուխ եղավ կատարելու կայսեր հրամանը և աշխատող մարդկանց շատության պատճառով այդ ամրությունը շատ շուտով բարձրացավ։ Պարսիկները առաջարկում էին դադարեցնել աշխատանքները և սպառնում շուտով ոչ միայն խոսքով, այլև գործով խանգարել դրան։ Երբ այդ իմացավ կայսրը, հրամայեց մի ուրիշ զորք էլ ուղարկել այնտեղ, ինչպես և Լիբանանի այն ժամանակվա զորահրամանատարներ՝ Կուցեսին ու Բուզեսին, որովհետև Բելիսարիոսը իր ունեցած զորքով ի վիճակի չէր դիմադրել պարսիկներին։ Կուցեսն ու Բուզեսն եղբայրներ էին՝ Թրակիայից, և երկուսն էլ երիտասարդ լինելով, թշնամիների դեմ էին դուրս գալիս առանց երկար կշռադատելու։ Ահա հակառակորդ ուժերը հավաքվեցին և փութացին դեպի կառույցը, պարսիկները՝ ամբողջ ուժով խանգարելու համար շինությանը, իսկ հռոմայեցիները՝ կառուցողներին պաշտպանելու։ Մեծ ճակատամարտ տեղի ունեցավ, որի ժամանակ հռոմայեցիները պարտվեցին, նրանցից շատերը սպանվեցին, իսկ մի մասն էլ գերի ընկավ թշնամիների ձեռքը։ Գերիների մեջ էր նաև Կուցեսը։ Պարսիկները գերիներին

տարան իրենց երկիրը և շղթայակապ վիճակում պահում էին մի քարայրի մեջ. կառուցվող ամրոցն էլ զրկված լինելով պաշտպաններից, դեռևս հավասարվեց։

Հուստինիանոս կայսրը Արևելքի զորավար նշանակեց Բելիսարիոսին և հրամայեց արշավել պարսիկների վրա։ Նա, մեծ բանակի գլուխն անցած, եկավ Դարա։ Կայսրը նրա մոտ ուղարկեց և Հերմոգենեսին, որպեսզի միասին գլխավորեն զորքը։ Հերմոգենեսը մագիստրոսի աստիճան ուներ և նախկինում Վիտալիանոսի խորհրդականն էր, երբ վերջինս թշնամացել էր Անաստասիոս կայսեր հետ։ Կայսրը Հռուփինոսին էլ ուղարկեց որպես դեսպան և հրամայեց մինչև իր կարգադրությունը մնալ Եփրատ գետի ափին գտնվող Հիերապոլսում[108], որովհետև երկու կողմից էլ հաշտության շուրջը երկար բանակցություններ էին գնում։ Հանկարծ մեկը Բելիսարիոսին և Հերմոգենեսին հայտնեց, որ հռոմայեցիների երկրի վրա պարսիկների ներխուժում է սպասվում՝ Դարա քաղաքը գրավելու մտադրությամբ։ Նրանք լսելով այդ, պատրաստություն են տեսնում։ Դեպի Նիսիբիս նայող դարպասից ոչ հեռու՝ մեկ քարընկեց հեռավորության վրա, բազմաթիվ ելքեր ունեցող մի խոր խրամատ փորեցին։ Սակայն այդ խրամատը ուղիղ գծով չփորվեց. կենտրոնում մի կարճ և ուղիղ խրամատ փորվեց, նրա երկու ծայրին՝ ուղիղ անկյան տակ երկու այլ խրամատ, իսկ նրանց ծայրերից սկսած երկար տարածության վրա նորից ուղիղ խրամատներ։ Պարսիկները քիչ անց մեծ զորքով եկան և ճամբարեցին Դարա քաղաքից քսան ասպարեզ հեռավորության վրա գտնվող Ամմոդիոս վայրում[109]։ Նրանք ունեին բազմաթիվ զորահրամանատարներ, որոնց թվում էին Պիտյուաքսեսը[110] և միակնանի Բարեսմանասը[111]։ Ընդհանուր հրամանատարությունը գտնվում էր մի պարսկի ձեռքում, որը միրրանեսի[112] աստիճան ուներ (պարսիկները այդպես են անվանում այդ պաշտոնը), իսկ անունը Պերոզ էր։ Նա անմիջապես մարդ ուղարկեց Բելիսարիոսի մոտ և ասաց, որ բաղնիքը տաքացնեն, որովհետև ուզում է հաջորդ օրը այնտեղ լողանալ։ Դրա համար էլ հռոմայեցիները տենդագին պատրաստվում էին հաջորդ օրվա ճակատամարտին։

Արևածագին [հռոմայեցիները] տեսնելով, որ թշնամիներն իրենց վրա են շարժվում, ճակատ կազմեցին հետևյալ կերպ. ուղիղ գծով փորված ներսի խրամատի ձախ կողմում մինչև բլուրը բռնեցին Բուզեսը՝ բազմաթիվ հեծյալներով և էրուլոս[113] Ֆարասը՝ երեք հարյուր ցեղակիցներով։ Նրանցից աջ, խրամատից դուրս՝ այն անկյու-

նում, որն ստեղծվում էր երկու ուղիղ խրամատների հատման կետում, գտնվում էին Սունիկասը և Այղանը՝ ծագումով մասսագետներ[14], վեց հարյուր հեծյալներով։ Նրանց պարտականությունն էր՝ երբ Բուզեսի և Ֆարասի [զինվորները] ստիպված լինեն նահանջել, իրենք կողքից շտապ անցնեն թշնամիների թիկունքը և կարողանան հաջողությամբ պաշտպանել հռոմայեցիներին։ Աջ թևում դասավորությունը նույնն էր։ Ուղիղ խրամատի ծայրը գրավել էին բազմաթիվ հեծյալներ, որոնց գլխավորում էին Նիկիտայի որդի Հովհաննեսը, Կիրիլլոսն ու Մարկելլոսը։ Նրանց հետ էին նաև Գերմանոսն ու Դորոթեոսը։ Աջ անկյունում շարվեցին վեց հարյուր հեծյալ՝ մասսագետներ Սիմմասի և Ասկանի գլխավորությամբ, որպեսզի նույն ձևով՝ եթե Հովհաննեսի զորքը նահանջի, նրանք այնտեղից հարձակվեն, անցնեն պարսիկների թիկունքը։ Ամբողջ խրամատի երկարությամբ կանգնած էր հեծելազորն ու հետևակը, իսկ նրա հետևում, կենտրոնում շարվեց Բելիսարիոսի և Հերմոգենեսի գլխավորած զորքը։ Հռոմայեցիներն այնտեղ դուրս բերեցին քսանհինգ հազարանոց զորք, իսկ պարսիկների բանակը բաղկացած էր քառասուն հազար հեծելազորից ու հետևակից և բոլորը կանգնած էին ամբողջ ճակատով, որպեսզի այն հնարավորին չափ խոր լինի։ Երկար ժամանակ ոչ ոք չէր սկսում մարտը։ Պարսիկները հիանում էին հռոմայեցիների կարգապահությամբ և չգիտեին տվյալ դեպքում ինչ ձեռնարկել։

Երեկոյան մոտ, աջ թևը պահող հեծյալների մի խումբ, անջատվելով մնացած զորքից, հարձակվեց Բուզեսի և Ֆարասի վրա, որոնք մի փոքր նահանջեցին։ Պարսիկները նրանց չհալածեցին, այլ մնացին տեղում, ըստ երևույթին վախենալով, որ կշրջապատվեն թշնամիների կողմից։ Այնուհետև նահանջող հռոմայեցիները հանկարծակի հակահարձակում գործեցին նրանց վրա, իսկ վերջիններս առանց դիմադրություն ցուցաբերելու նահանջեցին դեպի իրենց զորաշարքը։ Բուզեսի և Ֆարասի մարդիկ նորից գրավեցին իրենց [նախկին] դիրքերը։ Այդ ընդհարման ժամանակ սպանվեց յոթ պարսիկ, որոնց դիակներն անցան հռոմայեցիների ձեռքը։ Դրանից հետո երկու կողմերն էլ ոչինչ չէին ձեռնարկում։ Մի ուժեղ պարսիկ իր ձին քշեց հռոմայեցիների զորքին շատ մոտիկ և դիմեց բոլորին, մենամարտի հրավիրելով ցանկացողին։ Ոչ ոք չխիզախեց իրեն վտանգի ենթարկել, բացի ոմն Անդրեասից, Բուզեսի մտերիմներից։ Նա զինվոր չէր, ոչ էլ երբևիցե մասնակցել էր պատերազմի։ Նա պարզապես մարմնամարզության դասատու էր, և Բյուզանդիոնում

ըմբշամարտության դպրոց ուներ։ Ծագումով բյուզանդացի էր[115] և ծառայում էր բանակում որպես Բուզեսի բաղնեպան։ Միայն նա խիզախեց և կամավոր, առանց Բուզեսի կամ որևէ մեկի հրամանի, մենամարտի դուրս եկավ պարսկի դեմ։ Նա մոտեցավ բարբարոսին և, երբ վերջինս դեռ մտածում էր ո՞ր կողմից հարձակվի, նիզակով հարվածեց նրա կրծքին։ [Պարսիկը] չդիմացավ այդ ուժեղ մարդու հարվածին և ձիուց գլորվեց։ Անդրեասը փոքր դաշույնով, կարծես պարսիկը գետնին պառկած զոհելու անասուն լիներ, մորթեց նրան։ Ե՛վ պարսպից, և՛ հռոմայեցիների ճամբարից շատ մեծ աղաղակ բարձրացավ։ Պարսիկներն անչափ տխրեցին կատարվածից, և նույն գործի համար մի ուրիշ հեծյալ ուղարկեցին, որը քաջ էր, խոշորակազմ, բայց ոչ երիտասարդ, որոշ չափով ալեհեր։ Նա մոտենալով թշնամու զորքին, անընդհատ շարժում էր մտրակը, որով սովորաբար մտրակում են ձին և մարտի հրավիրում հռոմայեցիներից՝ ով որ ցանկանար։ Ոչ ոք դուրս չէր գալիս, բայց Անդրեասը, չնայած Հերմոգենեսը նրան արգելել էր, բոլորից աննկատ ասպարեզ իջավ։ Նրանք մեծ կատաղությամբ իրար վրա շպրտեցին նիզակները, որոնք դեմ առնելով զրահներին, վայր ընկան, իսկ ձիերը իրար գլխի բախվելով տապալվեցին՝ գլորելով հեծյալներին։ Երկուսն էլ իրարից ոչ հեռու ջանում էին անմիջապես ոտքի կանգնել, բայց պարսիկին խանգարում էր իր հսկա մարմինը, իսկ Անդրեասը ավելի շուտ վեր կենալով (նա դրան սովոր էր ըմբշամարտությունից) ծնկով հարվածեց պարսիկին, երբ վերջինս փորձում էր կանգնել, նորից գետին տապալեց ու սպանեց նրան։ Պարսից և հռոմեական զորքերի կողմից ավելի ուժեղ աղաղակ բարձրացավ, քան առաջ։ Պարսիկները, խախտելով իրենց կազմած հոծ շարքը, ձգվեցին դեպի Ամմոդիոս վայրը, իսկ հռոմայեցիները հաղթական երգերով անցան պարսպի ներսը, որովհետև արդեն մթնում էր։ Երկու կողմն էլ այդպես գիշերեցին։

14. Հաջորդ օրը պարսիկներին միացավ Նիսիբիսից ուղարկված տաս հազարանոց զորքը։ Բելիսարիոսն ու Հերմոգենեսը Միրրանեսին ուղարկեցին հետևյալ բովանդակությամբ մի նամակ. «Բոլոր
»մարդիկ, եթե նրանք մի քիչ խելք ունեն, մեծագույն բարիքն են
»համարում խաղաղությունը։ Հետևապես, եթե մեկը խախտում է
»այն, դառնում է ոչ միայն իր հարևանների, այլև իր ազգակիցների
»համար չարիքների գլխավոր պատճառ։ Լավագույն զորավարը նա
»է, ով ի վիճակի է պատերազմի փոխարեն խաղաղություն հաստա-

»տել: Հռոմայեցիների և պարսիկների միջև բարենպաստ փոխհա-
»րաբերությունների գոյության ժամանակ դու, առանց որևէ պատ-
»ճառի մեզ պատերազմ ես հայտարարում, չնայած որ երկու կողմի
»թագավորներն էլ խաղաղասեր են: Հեռու չեն [մեր] դեսպանները,
»որոնք կարճատև բանակցություններով կլուծեն վիճելի հարցերը,
»եթե իհարկե քո հարձակման հետևանքով որևէ դժբախտություն
»չպատահի և մեր այդ հույսերն ի չիք վերանան: Հետևաբար, դու
»ինչքան հնարավոր է քո զորքը տար պարսից երկիրը և խուսափիր
»մի դարձիր մեծագույն բարիքներին, որպեսզի դու չդառնաս պար-
»սիկների գլխին գալիք փորձանքների պատճառը»: Միրրանեսը,
կարդալով նամակը, պատասխանում է. «Ես կընդառաջեի ձեզ,
»հավատ ընծայելով գրվածքին, եթե դա հռոմայեցիների գրած նա-
»մակը չլիներ, որոնց համար շատ հեշտ է խոստանալը, բայց խոս-
»տումն իրականացնելը՝ անհուսալի, եթե նույնիսկ երդումներով
»հաստատած լինեն համաձայնությունը: Մենք մերժում ենք ձեր
»խաբեությունը և ստիպված ենք զինված դուրս գալ ձեր դեմ, իսկ
»դուք, ով սիրելի հռոմայեցիներ, ուրիշ բանի մասին մի մտածեք,
»այլ միայն այն մասին, որ պետք է պատերազմեք պարսիկների
»դեմ: Մենք այստեղ պետք է կամ մեռնենք, կամ էլ ծերանանք,
»մինչև որ դուք գործով՝ արդար կերպով լուծեք հարցը»: Միրրանեսը
այսպես պատասխանեց, իսկ Բելիսարիոսը գրեց նրան հետևյալը.
«Միշտ պետք չէ, ով լավագույնդ Միրրանես, գոռոզությամբ տարվել
»և հարևաններին անտեղի վատաբանել: Մենք ասացինք, որ դես-
»պան Ռուփինոսը հեռու չի գտնվում և դու դրանում շուտով կհա-
»մոզվես: Եթե դուք շատ եք ցանկանում պատերազմել, ապա մենք
»աստծու օգնությամբ կդիմադրենք և հույսով ենք, որ նա վտանգի
»ժամանակ մեզ օգնության կհասնի, որովհետև նա գնահատում է
»հռոմայեցիների խաղաղասիրությունը և ատում պարսիկների գո-
»ռոզությունը, այն, որ դուք մերժեցիք մեր առաջարկած խաղաղու-
»թյունը: Ճակատամարտի ժամանակ մեր երկուսի գրածը մենք
»կամրացնենք մեր դրոշների ծայրին»: Նամակում այդքանն էր
գրված, իսկ Միրրանեսը նորից պատասխանեց այսպես. «Մենք
»նույնպես պատերազմի դուրս չենք գալիս առանց մեր աստված-
»ների, այլ նրանց հետ միասին ձեր վրա ենք հարձակվելու և հույս
»ունեմ, որ նրանք վաղը պարսիկներին կմտցնեն Դարա: Բայց դուք
»ինձ համար բաղնիքը և ճաշը պատրաստ ունեցեք պարսպից ներս»:
Բելիսարիոսն այդ կարդալով պատրաստվեց մարտի:

Հաջորդ օրը արևածագին Միրրանեսը բոլոր պարսիկներին հա-

վաքեց և այսպես ասաց. «Ես դիտեմ, որ պարսիկներին ո՛չ թե
»իրենց ղեկավարների խոսքերն են մղում արհամարհելու վտանգ-
»ները, այլ իրենց սեփական արիությունն ու փոխադարձ հարգանքը։
»Տեսնում եմ, որ դուք այժմ մտածում եք, թե ինչպես պատահեց, որ
»հռոմայեցիներն իրենց սովորության հակառակ՝ առանց խուճապի
»և անկարգության են մարտի գնում և քիչ առաջ հարձակվող պար-
»սիկներին դիմադրեցին իրենց ոչ հատուկ կարգապահությամբ։ Այդ
»առթիվ ես նպատակահարմար գտա ձեզ մի խորհուրդ տալ, որպես-
»զի դուք հանկարծ ճիշտ պատկերացում չունենալով՝ չսխալվեք։
»Մի՛ կարծեք, որ հռոմայեցիները հանկարծակիորեն քաջ պատե-
»րազմող դարձան, ոչ էլ որ նրանք ձեռք են բերել առավել արիու-
»թյուն և փորձառություն։ Նրանք նախկինից էլ ավելի վախկոտ են,
»սլարսիկներից այնքան են վախեցած, որ նույնիսկ չհամարձակվե-
»ցին ճակատ կազմել առանց դիմելու խրամատի օգնության։ Նրանք
»և ոչ մի մարտի նախահարձակ չեղան և որովհետև մենք նրանց
»դեմ մարտի դուրս չեկանք, ուրախությամբ՝ իրենց գործերը հուսա-
»ցածից էլ լավ ընթացած համարելով, դեպի պարիսպը նահանջեցին։
»Այդ է պատճառը, որ նրանք իրար չեն անցել, որովհետև դեռ պա-
»տերազմի վտանգին չեն ենթարկվել։ Բայց երբ սկսվի մարտը, ապա
»նրանք սարսափահար կլինեն և շփոթված, ըստ իրենց սովորու-
»թյան, խուճապի կմատնվեն։ Հենց այսպիսին է թշնամին։ Ձեր վրա
»է, ով պարսիկներ, արքայից արքայի դատաստանը։ Եթե ներկա
»[պատերազմում] դուք չցուցաբերեք պարսիկներին հատուկ արիու-
»թյունը, ձեզ սպասում է խայտառակ պատիժ»։ Միրրանեսն այսպի-
սի կոչով դեպի թշնամին էր առաջնորդում զորքը։ Իսկ Բելիսա-
րիոսն ու Հերմոգենեսը, բոլոր հռոմայեցիներին հավաքելով պարսպի
առաջ, դիմեցին նրանց հետևյալ խոսքերով. «Որ պարսիկները բոլո-
»րովին անպարտելի չեն, ոչ էլ անմահ, դուք դրանում համոզվեցիք
»նախկին մարտի ժամանակ։ Ոչ ոք չի առարկի այն բանի դեմ, որ
»դուք, ճիշտ է, գերազանցում եք նրանց արիությամբ և մարմնի
»ուժեղությամբ, սակայն զիջում եք կարգապահությամբ։ Բայց ձեզ
»համար դժվար չէ այդ վերացնել։ Ոչ մի ճիգ չի կարող փոխել
»բախտի անիվի ընթացքը, բայց մարդ խոհեմությամբ կարող է
»սեփական դժբախտությունները կանխել։ Արդ, եթե դուք հնազանդ-
»վեք հրամաններին, իսկույն ևեթ կշահեք պատերազմը, որովհետև
»[թշնամիները] մեզ վրա են գալիս միայն ու միայն հույս դնելով
»մեր անկարգապահության վրա։ Բայց այժմ այդ հույսից զրկված,
»նրանք, ինչպես նախկին ընդհարման ժամանակ, կնահանջեն։ Ինչ

»վերաբերում է թշնամու քանակական գերակշռությանը, որից սո-
»վորաբար վախենում են, այն արժանի է ձեր արհամարհանքին,
»որովհետև նրանց ամբողջ հետևակը ուրիշ բան չէ, քան ողորմելի
»գյուղացիների մի ամբոխ, որը կռվի է դուրս գալիս ոչ թե ինչ-որ
»նպատակներով, այլ միայն պարիսպների տակ գետնափորներ փո-
»րելու, դիակապուտությամբ զբաղվելու և զինվորներին սպասավո-
»րելու։ Դրա համար էլ նրանք հակառակորդներին հարվածելու ոչ
»մի զենք չունեն, այլ միայն առաջից տանում են ահա այսպիսի
»մեծության վահաններ, որպեսզի պաշտպանվեն թշնամիների նե-
»տերից։ Արդ, եթե դուք այս պատերազմում քաջություն ցուցաբե-
»րեք, ապա ոչ միայն կհաղթեք պարսիկներին, այլև կպատժեք
»նրանց իրենց հիմարամտության համար, որպեսզի նրանք այլևս
»հռոմայեցիների երկրի վրա երբևիցե չարշավեն»։

Բելիսարիոսն ու Հերմոգենեսը ահա այսպես սրտապնդեցին
[զինվորներին] և երբ տեսան, որ պարսիկները շարժվում են իրենց
վրա, շտապ կարգով զինվորներին դասավորեցին նախկին ձևով,
իսկ պարսիկները նրանց մոտենալով, շարվեցին ամբողջ ճակատով։
Միրրանեսը ոչ բոլոր պարսիկներին կանգնեցրեց թշնամու դեմ, այլ
միայն կեսը, իսկ մնացածներին թողեց, որ հետևում մնան։ Նրանք
պետք է փոխարինեին առաջից մարտնչողներին՝ որպես թարմ ուժ,
և բոլորը հերթով մասնակից լինեին կռվին։ Նա հրամայեց, որ միայն
այսպես կոչված անմահների գունդը[116] հանգիստ վիճակում մնա,
մինչև իր նշան տալը։ Ինքը կանգնեց ճակատի կենտրոնում, աջ
թևում կանգնեցրեց Պիտյուաքսեսին, իսկ ձախ թևում՝ Բարեսմանա-
սին։ Երկու կողմերն ահա այսպես շարվեցին։ Այն ժամանակ Ֆա-
րասը ներկայացավ Բելիսարիոսին ու Հերմոգենեսին և ասաց. «Ինձ
»թվում է, որ էրուլների հետ մնալով այստեղ, ես չեմ կարողանա
»թշնամիներին զգալի վնաս հասցնել։ Բայց եթե թաքնվենք այդ
»բարձունքի ետևում, և երբ պարսիկները սկսեն մարտը, կբարձրա-
»նանք նրա վրա, թիկունքից կհարվածենք նրանց անակնկալ կեր-
»պով և անկասկած ավելի մեծ վնաս կհասցնենք»։ Նա այսքանն
ասաց, և որովհետև Բելիսարիոսին այդ դուր եկավ, այնպես էլ վարո-
վեց անել։

Մինչև կեսօր ոչ ոք նախահարձակ չէր լինում, բայց որովհետև
կեսօրն անցնում էր, գործի անցան բարբարոսները։ Նրանք հարձա-
կումը դիտավորյալ ձգձգեցին, քանի որ իրենք սովոր են ճաշել
միայն ուշ երեկոյան, իսկ հռոմայեցիները՝ կեսօրից առաջ, և ենթա-
դրում էին, որ հռոմայեցիները չեն կարողանա սոված մարտնչել։

Սկզբում երկու կողմն էլ միմյանց դեմ նետեր էին արձակում, և [արձակված] նետերի տարափը կարծես մթագնում էր [երկինքը]. երկու կողմից էլ շատերն էին ընկնում։ Բարբարոսների նետերի տարափը շատ ավելի ուժեղ էր, որովհետև թշնամուց թաքուն փոխարինաբար թարմ ուժեր էին մասնակցում մարտին։ Հակառակ դրան հռոմայեցիները նրանց չէին զիջում. իրենց կողմից փչող բարենպաստ քամին չէր թողնում, որ նրանց նետերը նպատակին հասնեին։ Եվ երբ երկու կողմերն էլ սպառեցին իրենց բոլոր նետերը, դիմեցին նիզակներին և մարտն արդեն ստացավ ձեռնամարտի բնույթ։ Հռոմայեցիների ձախ թևը շատ էր հոգնել, որովհետև բազմաթիվ կադիշցիներ[117], որոնք Պիտյուաքսեսի հետ միասին մարտնչում էին հռոմայեցիների այս թևի դեմ, անսպասելիորեն հարձակման անցան, փախուստի մատնեցին թշնամիներին և ուժգնությամբ հալածելով փախչողներին, շատերին կոտորեցին։ Այդ տեսնելով Սունիկասն ու Այգանը մեծ թափով հարձակվեցին նրանց վրա։ Ֆարասի գլխավորած երեք հարյուր էրուլները բարձունքից անցնելով թշնամու թիկունքը, մեծ խիզախություններ ցուցաբերեցին մյուս [պարսիկների և հատկապես] կադիշցիների դեմ։ Վերջիններս, երբ տեսան, որ կողքից իրենց վրա են գալիս նաև Սունիկասի մարդիկ, փախուստի դիմեցին։ Փայլուն հաջողության պատճառն այն էր, որ հռոմայեցիներին հաջողվեց միանալ իրար և դրա հետևանքով բազմաթիվ բարբարոսներ սպանվեցին։ Աջ թևում գտնվողներից այդ կռվում սպանվեց երեք հազարից ոչ պակաս մարդ, իսկ մնացածները հազիվ հասնելով իրենց զորաշարքին՝ փրկվեցին։ Հռոմայեցիները այլևս չէին հալածում փախուստի մատնված [պարսիկներին] և երկու կողմն էլ իրար դիմաց շարվեցին։ Ահա այդպես վերջացավ այս [ընդհարումը]։

Միրրանեսը գաղտնի մի այլ բազմաքանակ զորք և այսպես կոչված անմահներին ձախ թևն ուղարկեց։ Բելիսարիոսն ու Հերմոգենեսը, նկատելով նրանց, Սունիկասի և Այգանի վեց հարյուր զինվորներին հրամայեցին գնալ դեպի աջ անկյունը, այնտեղ, ուր գտնվում էին Սիմմայի և Ասկանի զինվորները, իսկ նրանց թիկունքում կանգնեցին Բելիսարիոսի բազմաթիվ զինվորներ։ Բարեսմանասի գլխավորությամբ ձախ թևում գործող պարսիկներն անմահների հետ միասին վազքով հարձակվեցին իրենց դիմաց գտնվող հռոմայեցիների վրա։ Վերջիններս չդիմագրեցին և փախուստի դիմեցին։ Հենց այդ ժամանակ հռոմայեցիները և բոլոր նրանք, ովքեր նրանց թիկունքում էին գտնվում, մեծ արագությամբ հետապնդեցին

հալածողներին՝ կողքից հարվածելով բարբարոսներին։ Նրանց զորքը բաժանվեց երկու մասի. մեծ մասը մնաց աջ կողմում, իսկ ոմանք էլ՝ ձախ։ Բարեսմանասի դրոշակակիրը պատահմամբ այս վերջիններիս մեջ էր գտնվում, և Սունիկասը հարձակվեց նրա վրա ու նիզակահար արեց։ Պարսիկները, որոնք հալածելով առաջ էին ընկել, տեսնելով թե ինչպիսի ծանր դրության մեջ ընկան, դադարեցրին հակառակորդի հետապնդումը, շուռ եկան և հարձակվեցին հռոմայեցիների վրա, բայց այս անգամ արդեն երկու կողմից ենթարկվեցին թշնամիների հարվածին, որովհետև փախուստի դիմող [հռոմայեցիները], տեսնելով կատարվածը, նորից հարձակման անցան։ Մյուս պարսիկները և անմահների գունդը, նկատելով խոնարհվող և գետին ընկնող դրոշակը, Բարեսմանասի գլխավորությամբ հարձակվեցին այնտեղի հռոմայեցիների վրա։ Հռոմայեցիները դիմադրում էին։ Սունիկասն ամենից առաջ սպանեց Բարեսմանասին և ձիուց ցած գլորեց։ Այդ բարբարոսներին շատ սարսափեցրեց, նրանք մոռացան արիության մասին և խառնիճաղանջ փախուստի դիմեցին։ Հռոմայեցիները, շրջապատելով նրանցից մի մասին, կոտորեցին մոտ հինգ հազար մարդ։ Այսպիսով, երկու բանակներն էլ տեղից շարժվեցին, պարսիկները նահանջի էին դիմում, իսկ հռոմայեցիները՝ հալածում նրանց։ Այս մարտում պարսիկների բանակում եղած հետևակները, գցելով վահանները [փախուստի էին դիմում, բայց] ընկնելով թշնամու ձեռքը՝ անխնա կոտորվում էին։ Հռոմայեցիները սակայն երկար չհալածեցին թշնամուն։ Բելիսարիոսն ու Հերմոգենեսը թույլ չտվեցին զորքին ավելի առաջ գնալ, նրանք վախեցան, որ անտեղի հալածելով պարսիկներին, վերջիններս ստիպված կլինեն վերադառնալ և իրենց փախուստի կմատնեն. նրանք գերադասում էին արդեն ձեռք բերած հաղթանակը վտանգի չենթարկել։ Այդ օրվա մարտում ի վերջո, երկար ընդհատումից հետո, հռոմայեցիներին հաջողվեց պարսիկներին պարտության մատնել։ Ահա այսպես երկու կողմերն էլ բաժանվեցին իրարից։ Պարսիկները այլևս չէին ուզում հռոմայեցիների դեմ բացահայտ պայքար մղել։ Այնուամենայնիվ երկու կողմից էլ տեղի ունեցան անակնկալ հարձակումներ, որոնց մեջ հռոմայեցիները բազմիցս հաղթող դուրս եկան։ Ահա այսպիսին էր պատերազմական վիճակը Միջագետքում։

15. Կավադը հռոմայեցիներին ենթակա Հայաստանի վրա ուրիշ զորք ուղարկեց, որը բաղկացած էր պարսկահայերից և ալաններին

սահմանակից սունիտներից[118]։ Այդ զորքին միացան նաև երեք հազար հոներ, որոնք սաբեյրներ են կոչվում[119]։ Սրանք շատ մարտունակ ցեղ են։ Ընդհանուր զորահրամանատարն էր պարսիկ զորավար Մերմերոեսը[120]։ Հասնելով Թեոդոսուպոլսից երեք օրվա հեռավորության, ճամբարեցին Պարսկահայաստանում և նախապատրաստվում էին ներխուժման։ Հայաստանի զորավարն էր Դորոթեոսը, մի խելացի և պատերազմական մեծ փորձ ունեցող մարդ։ Իսկ Սիտտասը, Բյուզանդիոնի զորավարը, Հայաստանի բոլոր զորքերի հրամանատարն էր[121]։ Նրանք, իմանալով, որ թշնամիները Պարսկահայաստանում զորք են կուտակում, անմիջապես ուղարկեցին երկու նիզակակիր, որպեսզի հետախուզեն, իմանան և տեղեկություններ հաղորդեն թշնամու ընդհանուր ուժի քանակի մասին։ Այդ երկուսը եղան բարբարոսների ճամբարում և ամեն ինչ ճշգրիտ իմանալով, հեռացան։ Սակայն [Պերսարմենիայի] ճանապարհին, մի գյուղում անսպասելիորեն հանդիպում են թշնամի հոներին։ Նրանցից մեկը՝ Դագարիսը գերվեց, իսկ մյուսին հաջողվեց փախուստի դիմել և ամեն ինչ պատմել զորավարներին։ Վերջիններս ամբողջ զորքը մարտական վիճակի բերելով, հանկարծակի հարձակվեցին թշնամիների ճամբարի վրա, որոնք անակնկալից սարսափած այլևս չէին մտածում խիզախություն ցուցաբերելու մասին, և ամեն մեկը ինչպես որ կարող էր փախուստի էր դիմում։ Հռոմայեցիներն այստեղ շատերին կոտորեցին և ավարառելով ճամբարը, վերադարձան։ Որոշ ժամանակ անց Մերմերոեսը ամբողջ զորքի գլուխն անցած, ներխուժեց հռոմայեցիների երկիրը և Սատալա[122] քաղաքի մոտ հասավ թշնամիներին. պարսիկներն այստեղ, քաղաքից հիսուն և վեց ասպարեզ հեռավորության վրա գտնվող Օկտաբե գյուղում ճամբարեցին և հանգստանում էին։ Սիտտասը հազար հոգով թաքնվեց բլուրներից մեկի հետևում, ինչպիսիք շատերը շրջապատում են տափարակ վայրում գտնվող Սատալա քաղաքը։ Իսկ Դորոթեոսին հրամայեց մյուս զորքի հետ մնալ պարսպի ներսում, որովհետև երեսուն հազարից ոչ պակաս թշնամիներին՝ նրանց կեսը կազմող ուժով հարթավայրում դիմադրելը հնարավոր չէր։ Հաջորդ օրը բարբարոսները մոտեցան պարսպին և ջանում էին որևէ կերպ պաշարել այն։ Հանկարծ նրանք տեսան բարձունքից իրենց վրա իջնող Սիտտասի զորքերին և հնարավորություն չունենալով հաշվել նրանց քանակը (ամառ էր, նրանք շատ փոշի էին բարձրացնում, և պարսիկներին թվաց, որ շատ շատ են), հրաժարվեցին պաշարումից՝ շտապելով կենտրոնանալ մի փոքր վայրում։ Հռոմայեցիները, հաս-

նելով նրանց, բաժանվեցին երկու մասի և հարձակվեցին սլարսպից հեռացողների վրա։ Երբ այդ տեսավ հռոմեական զորքը, սրտապնդվեց և մեծ արագությամբ պարսպից դուրս հոսելով, շարժվեց հակառակորդի վրա, որը երկու կողմից հարված ստանալով փախուստի դիմեց։ Ինչպես ասվեց, բարբարոսները քանակապես գերազանցում էին թշնամիներին և դրա շնորհիվ դեռևս դիմանում էին. հանկարծ կռիվը կատաղի բնույթ ստացավ, վերածվեց ձեռնամարտի. փոխեփոխ միմյանց էին հալածում, որովհետև բոլորը հեծյալ էին։ Այստեղ թրակացի Ֆլորենտիոսը, որը հեծելազորի հրամանատարն էր, մխրճվեց թշնամիների կենտրոնը, հափշտակեց նրանց զորահրամանատարի դրոշը և այն գետին խոնարհեցնելով հնարավորին չափ արագ ետ քաշվեց։ Թեև նա ընկնելով թշնամիների ձեռքը խողխողվեց, տեղն ու տեղը սպանվեց, սակայն հռոմայեցիների հաղթանակի պատճառ դարձավ, որովհետև թշնամիները, այլևս չտեսնելով իրենց դրոշը, խուճապի և սարսափի մեջ ընկան, ետ նահանջեցին և հասնելով իրենց ճամբարը հանգստվեցին՝ մարտի դաշտում թողնելով բազմաթիվ զոհեր։ Հաջորդ օրը նրանք մեկնեցին իրենց երկիրը, թեև նրանց ոչ ոք չէր հալածում, որովհետև հռոմեական զորքերին բարբարոսների այսքան բազմությանը նրանց սեփական երկրում [սլարտություն] մատնելը, այդ մասին ես վերևում ասացի, մեծ բան էր թվում և խոսքի արժանի, ինչպես և այն, որ [պարսիկները], մտնելով թշնամու [երկիրը], անհաջողության մատնվեցին և ավելի փոքրաքանակ զորքից պարտություն կրելով՝ հեռացան։

Այդ ժամանակ էր, որ հռոմայեցիները Պերսարմենիայում գրավեցին պարսկական վայրեր՝ Բոլոս[123] ամրոցը և Ֆարանգիոն[124] կոչվածը, ուր պարսիկները ոսկի էին հանում հանքերից և բերում արքային։ Մի փոքր առաջ [հռոմայեցիներն] իրենց էին հպատակեցրել նաև ճաներին[125], որոնք վաղուց ինքնավար վիճակում բնակվում էին հռոմայեցիների երկրում։ Այժմ ես կպատմեմ, թե ինչպես տեղի ունեցավ այդ։ Հայաստանից Պարսկահայաստան գնացողի աջ կողմում է գտնվում Տավրոսը, որը ձգվում է մինչև Իբերիա և, ինչպես վերևում ասացի[126], նրա շրջակա ցեղերի [հողերը]։ Իսկ ձախից ձգվում է մի ճանապարհ, որը գնալով դառնում է զառիթափ, նրա վրա մշտապես կախված են ամպերով և ձյունով ծածկված գահավեժ լեռները։ Այնտեղից դուրս է գալիս Ֆասիս գետը[127] և հոսում Կոլխիս երկիրը[128]։ Այնտեղ ի սկզբանե բնակվում էր ճաների բարբարոսական ժողովուրդը, որը ոչ ոքին հպատակ չէր։ Հնում նրանք կոչվում էին սաներ, զբաղված էին հարևան հռոմայեցիներին կողոպտելով, վա-

րում էին շատ դաժան կյանք, և մշտապես ապրում էին կողոպուտով, որովհետև երկրում սնվելու պիտանի ոչինչ չի աճում։ Այդ իսկ պատճառով հռոմայեցիների կայսրը ամեն տարի որոշված քանակով ոսկի էր ուղարկում նրանց, որպեսզի ավարի չառնեն այդ երկրի բնակավայրերը։ Չնայած նրանք պապենական երդումներով հաստատեցին այդ, բայց հաճախ դրժելով իրենց երդումը անակնկալ հարձակվում և վնաս էին հասցնում ոչ միայն հայերին, այլև նրանց հարևան հռոմայեցիներին, ընդհուպ մինչև ծովը։ Կարճատև հարձակումներ գործելով, նրանք իսկույն վերադառնում էին իրենց տեղերը. հաճախ հանդիպելով հռոմայեցիների զորքին, մարտում պարտություն էին կրում, բայց վայրի անմատչելիության պատճառով երբեք չէին ենթարկվում։ Նախքան այս պատերազմը Սիտտասր նրանց մարտում հաղթեց, և հրապուրիչ խոսքերով ու գործերով կարողացավ ճաներին լրիվ հպատակեցնել, որից հետո նրանք սկսեցին ավելի մեղմ կյանք վարել, ծառայել հռոմեական բանակում և այսուհետև հռոմայեցիների զորքի հետ միասին դուրս էին գալիս թշնամիների դեմ. փոխեցին նաև իրենց դավանանքը, բոլորը դարձան բարեպաշտ՝ ընդունելով քրիստոնեությունը։ Ահա այսքանը ճաների մասին։

Նրանց սահմաններն անցնելուց հետո հանդիպում է մի խոր և զառիթափ կիրճ, որը ձգվում է մինչև Կովկասյան լեռները։ Այստեղ կան մարդաշատ բնակավայրեր, լավ են աճում որթը և մրգատու ծառերը։ Այդ կիրճը մոտ երեք օրվա տարածության վրա հռոմայեցիներին է ենթակա, որից այն կողմ սկսվում են Պերսարմենիայի սահմանները, ուր և ոսկեհանքերն են գտնվում, որոնց, Կավադի թույլտվությամբ տնօրինում էր Սիմեոն անունով մի տեղացի։ Այս Սիմեոնը, երբ տեսավ, որ երկուսի միջև գնացող պատերազմը գագաթնակետին է հասել, որոշեց այլևս Կավադին չվճարել դրամական մուտքը։ Նա և՛ իրեն, և՛ Ֆարանգիոնը[129] հանձնեց հռոմայեցիներին, բայց և այնպես որոշեց ոսկեհանքերից արդյունահանած ոսկին ոչ ոքի չտալ։ Հռոմայեցիները այդ բանի դեմ չէին առարկում, բավարարված լինելով, որ թշնամիները կզրկվեն այդտեղի հասույթից։ Պարսիկներն էլ տեղանքի դժվարանցանելիության պատճառով հնարավորություն չունեին ուժի դիմելու տեղացի բնակիչների դեմ։

Այդ նույն ժամանակն էր, երբ Նարսեսն ու Արատիոսը, որոնք, ինչպես ես վերևում նշել եմ[130], այս պատերազմի սկզբում մարտնչում էին Բելիսարիոսի և Սիտտասի դեմ Պարսկահայերի երկրում, իրենց

*մոր հետ միասին կամավոր անցան հռոմայեցիների կողմը։ Նրանց ընդունեց կայսեր գանձապահ Նարսեսը[131], սա ևս ծագումով պարսկահայ էր, և գրամական մեծ գումար նվիրեց նրանց։ Երբ այդ մասին իմացավ նրանց ամենակրտսեր եղբայր Իսաակեսը[132], գաղտնի բանակցությունների մեջ մտավ հռոմայեցիների հետ և Թեոդոսուպոլսի սահմաններին շատ մոտ գտնվող Բոլոս ամրոցը հանձնեց նրանց։ Նա հանձնարարել էր [հռոմայեցիներին] զինվորներ ուղարկել [ամրոցին] մոտիկ և թաքնվել, իսկ ինքը գիշերով ծածուկ բացելով դարպասը՝ նրանց ներս թողեց ամրոց։ Դրանից հետո նա ևս եկավ Բյուզանդիոն։*

*16. Հռոմայեցիների գործերը՝ահա այդպիսի վիճակում էին։*
*Իսկ պարսիկները, չնայած Դարայում Բելիսարիոսի կողմից պարտության էին մատնվել, բայց և այնպես չէին մտածում այնտեղից հեռանալ, մինչև որ Հռուփինոսը հանդիպելով Կավադին ասաց հետևյալը. «Ինձ ուղարկեց, ով արքա, քո եղբայրը[133], որպեսզի ես*
*»քեզ արդարացիորեն կշտամբեմ այն բանի համար, որ պարսիկ-*
*»ները, առանց որևէ պատճառի զինված հարձակում գործեցին իր*
*»երկրի վրա. մեծ և այնքան ուղղամիտ արքայի համար ավելի*
*»վայել է պատերազմը խաղաղության վերածել, քան թե խաղաղ*
*»իրավիճակի պայմաններում և՛ իր, և՛ հարևանների անդորրը*
*»խանգարել։ Ահա ես բարի հույսերով եմ ժամանել այստեղ, որ*
*»այսուհետև երկու կողմն էլ վայելեն խաղաղության բարիքները»։*
*Հռուփինոսն այսքանն ասաց։ Իսկ Կավադը պատասխանեց այսպես. «Ո՜վ Սիլվանոսի որդի. մի՛ փորձիր մեղքը ուրիշի վրա գցել.*
*»դու շատ լավ գիտես, որ ամբողջ խառնակության գլխավոր պատ-*
*»ճառը դուք եք, հռոմայեցիներդ։ Մենք Կասպից դռներին տիրեցինք*
*»պարսիկների և հռոմայեցիների բարօրության համար՝ վռնդելով*
*»տեղացի բարբարոսներին այն բանից հետո միայն, երբ հռոմայե-*
*»ցիների կայսր Անաստասիոսը, դու այդ գիտես, չուզեց այդ [դռնե-*
*»րը] գնել դրամով, որպեսզի ստիպված չլինի ամբողջ ժամանակ*
*»այնտեղ զորք պահել և մեծ միջոցներ վատնել երկուսիս համար*
*»էլ։ Այդ էր պատճառը, որ մենք այսպիսի մի մեծ կայազոր հաստա-*
*»տեցինք այնտեղ, որը և մինչև այժմ պահում ենք, և հնարավո-*
*»րություն տվեցինք ձեզ բարբարոսներին հարևան այդ շրջաններում*
*»անվտանգ ապրել, հեշտ ու հանգիստ տնօրինել ձեր գործերը։ Բայց*
*»կարծես դա ձեզ համար բավական չէր, դուք Դարա մեծ քաղաքը*
*»պարսիկների դեմ պատվար դարձրիք, հակառակ նրան, որ դա,*

»ըստ Անատոլիոսի՝ պարսիկների հետ կնքած հաշտության պայմա-
»նագրի[134], բացարձակապես արգելված էր։ Դրա հետևանքը եղավ
»այն, որ պարսիկների գործերը վատացան, որովհետև նրանք
»ստիպված եղան ծանրաբեռնվել երկու զորք պահելու հոգսով ու
»ծախսով, մեկը՝ որպեսզի թույլ չտա մասսագետներին աներկյուղ
»տակն ու վրա անեն մեր երկուսի երկիրը, իսկ մյուսը՝ ձեր հարձա-
»կումների առաջն առնելու։ Մենք մի փոքր առաջ բողոքեցինք դրա
»դեմ, պահանջելով ձեզանից երկուսից մեկը, կա՛մ մեզ հետ զորք
»ուղարկեք Կասպից դռները պահելու համար, կա՛մ էլ Դարա քա-
»ղաքը քանդեք։ Դուք չեք ընդունում մեր առաջարկները, այլ չարա-
»նենգորեն ուզում եք ուժեղացնել ոտնձգությունները պարսիկների
»դեմ, հիշենք գոնե Մինդուոսում կատարված շինարարությունը։
»Այժմ հռոմայեցիները թող ընտրեն՝ կա՛մ խաղաղությունը, կա՛մ
»էլ պատերազմը։ [Խաղաղություն]՝ եթե ընդունեն մեր արդար
»պահանջները և [պատերազմ], եթե մերժեն դրանք։ Պարսիկները
»զենքը ցած չեն դնելու, քանի հռոմայեցիներն արդարացիորեն
»իրենց հետ միասին չպահեն դռները և կամ էլ չքանդեն Դարա
»քաղաքը»։ Կավադն այսքանն ասելով ճամփու դրեց դեսպանին,
նախապես հասկացնելով, որ ինքը հռոմայեցիներից եթե դրամ
ստանա, վերջ կտա պատերազմի առիթներ որոնելուն։ Հռուփինոսն
գալով Բյուզանդիոն, այդ բոլորի մասին հայտնեց կայսեր։ Նրանից
մի քիչ հետո Հերմոգենեսն էլ ժամանեց։ Ձմեռը վերջանում էր, վեր-
ջանում էր նաև Հուստինիանոս կայսեր ինքնակալության չորրորդ
տարին[135]։

17. Գարնան սկզբին պարսից զորքը Ազարեթի[136] գլխավորու-
թյամբ ներխուժեց հռոմայեցիների երկիրը։ Նրանք տասնհինգ
հազար էին, բոլորը հեծյալ։ Նրանց միացավ նաև Սակկիկ Ալամուն-
դարոսը[137], բազմաթիվ սարակինոսներից բաղկացած խմբի գլուխն
անցած։ Պարսիկների այս ներխուժումը սովորականի պես տեղի
չունեցավ։ Նրանք չներխուժեցին Միջագետք, ինչպես անցյալում,
այլ հնում Կոմմագենե, իսկ այժմ Եփրատեսիա կոչված երկիրը։
Պարսիկները նախկինում ոչ մի անգամ, ինչքան մենք գիտենք,
այդտեղից չեն արշավել հռոմայեցիների վրա։ Թե ինչու այդ երկիրը
Միջագետք է կոչվում, և թե ինչու պարսիկները հարձակումը չկա-
տարեցին այդտեղից՝ այժմ ես կպատմեմ։

Հայաստանում, Թեոդոսուպոլսից քառասուն երկու ասպարեզ
հեռավորության վրա դեպի հյուսիս գտնվում է մի ոչ շատ զառիթափ

լեռ։ Այստեղից բխում են երկու աղբյուր, որոնք հենց այնտեղ կազմում են երկու գետ՝ Եփրատը աջից, իսկ Տիգրիսը՝ ձախից։ Տիգրիսը ուղիղ իջնում է Ամիդ քաղաքը և նրա հյուսիսային կողմից հոսում դեպի Ասորեստան։ Իսկ Եփրատը սկզբում որոշ տեղերում հոսում է սովորականի պես, բայց առաջ գնալով անհայտանում է, ոչ թե նրա համար, որ գետնի տակով է հոսում, այլ այն պատճառով, որ մի շատ հետաքրքիր բան է կատարվում նրա հետ։ Ջրի վրա առաջանում է տիղմի բավական հաստ շերտ՝ մոտ հիսուն ասպարեզ երկարությամբ և քսան [ասպարեզ] լայնությամբ։ Այդ տիղմի վրա առատորեն աճում է եղեգը։ Հողն այստեղ այնքան է պինդ, որ մարդկանց թվում է, թե ոչ այլ ինչ է, եթե ոչ ցամաքը։ Նրա վրայով աներկյուղ անցնում են հետիոտն մարդիկ և ձիավորներ, նույնիսկ բազմաթիվ սայլեր, առանց վախենալու, թե տիղմը կարող է տեղի տալ. ոչ ոքի մտքովն անգամ չի անցնում, որ նրա տակից ջուր է հոսում։ Տեղացիներն ամեն տարի այրում են եղեգնուտը, որպեսզի իրենց ճանապարհին արգելք չլինի, և եթե հանկարծ ուժեղ քամի է փչում, կրակը հասնում է մինչև [եղեգնուտի] արմատների ծայրը և փոքր տարածության վրա ջուրը երևում է։ Բայց որոշ ժամանակ անց հողը նորից պնդանում է և ստանում իր նախկին տեսքը։ Այստեղից գետը հոսում է Կելեսենե կոչված երկիրը[138], որտեղ գտնվում է Տավրոսյան Արտեմիսի տաճարը։ Պատմում են, որ Ագամեմնոնի [դուստր] Իֆիգենիան, Արտեմիսի արձանն առած, Օրեստեսի և Պյուլադեսի հետ հենց այստեղից փախան, որովհետև մյուս տաճարը, որը մինչև այժմ գոյություն ունի Կոմանա քաղաքում, Տավրոսյանը չէ։ Թե ինչպես պատահեց, ես կպատմեմ։

Երբ Օրեստեսը իր քրոջ հետ միասին դուրս եկավ Տավրոսից, հանկարծ հիվանդացավ։ Այդ առիթով նա դիմեց պատգամախոս մեհյանին և պատասխան ստացավ, որ նա չի առողջանա մինչև Արտեմիսին տաճար չկառուցի մի այնպիսի վայրում, որը նման լինի Տավրոսյան տաճարի [վայրին]։ Նա այնտեղ պետք է իր մազերը կտրի և քաղաքին տա նրանց անունը։ Ահա Օրեստեսը, անցնելով այդ վայրերից, հասավ Պոնտոս, ուր տեսավ մի զառիթափ լեռ, որի լանջից հոսում էր Իրիս գետը[139]։ Օրեստեսը, ենթադրելով, որ պատգամախոսը հենց այս վայրը նկատի ուներ, հիմնում է այնտեղ մի նշանավոր քաղաք և [կառուցում] Արտեմիսի տաճարը։ Նա կտրում է իր մազերը, և քաղաքին տալիս նրանց անունը, որ մինչև օրս էլ կրում է՝ Կոմանա[140]։ Թեև Օրեստեսը այդ բոլորը կատարեց, հիվանդությունը գնալով ուժեղանում էր։ Զգալով, որ նա պա-

հանջվածին պես չկատարեց պատգամարանի ասածը, նորից ճամփա ընկավ և ամենուրեք փնտրելով, Կապադովկիայում գտավ մի վայր, որը Տավրոսյան վայրին շատ նման էր։ Այդ [վայրը] ես բազմիցս տեսել եմ ու անչափ հիացել. ինձ թվում էր, որ Տավրոսում եմ գտնվում, որովհետև լեռը շատ նման էր նրան, քանի որ սա էլ Տավրոս է, իսկ Սարոս գետն[141] էլ նման է Եփրատին։ Այստեղ Օրեստեսը գեղեցիկ քաղաք կառուցեց և երկու տաճար՝ մեկը Արտեմիսին, իսկ մյուսը իր քրոջ՝ Իֆիգենիային։ Քրիստոնյաները այդ տաճարները եկեղեցիների վերածեցին՝ կառուցվածքի մեջ ոչ մի փոփոխություն չմտցնելով։ Այդ քաղաքը այժմ էլ կոչվում է ոսկե Կոմանա, Օրեստեսի մազերի անունից, որովհետև ինչպես պատմում են, նա այստեղ կտրեց իր մազերն ու առողջացավ։ Ոմանք պատմում են, թե նրա հիվանդությունը, որից նա ազատվեց, ոչ այլ ինչ էր, քան մոլեգնություն[142], որն իրեն համակել էր մորը սպանելու պատճառով։ Ես այժմ վերադառնում եմ իմ նախկին պատմվածքին։

Տավրոսյան Հայաստանից և Կելեսենե երկրի աջ կողմից հոսում է Եփրատ գետը, որը շրջահոսում է շատ վայրեր։ Նրա մեջ են թափվում ուրիշ գետեր, այդ թվում և Պերսարմենիայի հորդառատ Արսինոս գետը[143]։ Եփրատն, այսպիսով, գնալով մեծանում է և առաջ ընթանում անցյալում Լևկոսիրիա, իսկ այժմ Փոքր Հայք կոչվող երկրի միջով, որի գլխավոր քաղաքը նշանավոր Մելիտենեն է[144]։ Ապա Սամոսատայի և Հիերապոլսի մոտակայքով, այլ վայրերի միջով հոսելով հասնում է Ասորեստան, որտեղ երկու գետերը միախառնվում են և մեկի անվամբ կոչվում Տիգրիս։ Սամոսատայից սկսած Եփրատ գետից այն կողմ գտնվող երկիրը հնում կոչվում էր Կոմմագենե, իսկ այժմ այն համանուն է գետին[145]։ Գետի այս կողմը գտնվող [երկիրը], որը [Եփրատի] և Տիգրիսի մեջտեղում է, բնական է, կոչվում է Միջագետք, որի մի մասն ունի այլ անուն ևս. այսպես, մինչև Ամիդ քաղաքն [ընկած շրջանները] ոմանք անվանում են Արմենիա, իսկ Եդեսիան իր շրջակայքով կոչում Օսրոենե՝ Օսրոեսի անունով, որն անցյալում թագավորել էր այնտեղ, երբ այդ երկիրը դաշնակից էր պարսիկներին։ Պարսիկները հռոմայեցիներից Նիսիբիս քաղաքը և Միջագետքի այլ վայրերը խլելուց հետո, երբ ցանկանում էին արշավել հռոմայեցիների վրա, ավելորդ էին համարում Եփրատ գետից հեռու գտնվող երկրի վրայով գնալ ջրից զուրկ և անմարդաբնակ լինելու պատճառով։ Նրանք առանց որևէ դժվարության այստեղ էին հավաքվում ու այստեղից արշավում,

քանի որ սա իրենց սեփական երկիրը լինելով, միաժամանակ գտնը-
վում էր թշնամիների երկրին շատ մոտիկ։
Երբ Միրրանեսը մարտում պարտություն կրեց[146] և շատերին
կորցնելով մնացած զորքի հետ հասավ պարսից երկիրը՝ Կավադ
արքայից դառն պատժի արժանացավ։ Կավադը նրան զրկեց ոսկյա
և մարգարտյա պատվից[147], որ նա սովորաբար կապում էր գլխի
մազերին։ Այդ պատիվը կրողը պարսից արքայից անմիջապես հետո
ամենից բարձր դիրքն ուներ. [պարսիկների] մոտ թույլատրվում է
կրել ոսկե մատանի, գոտի, ճարմանդ և այլ նման բաներ, միայն
այն դեպքում, եթե արքան արժանացրել է դրանց։ Այնուհետև Կա-
վադը մտածում էր ինչ ձևով արշավի հռոմայեցիների վրա։ Միրրա-
նեսի նման անկումից հետո, որի մասին ասվեց, այլևս նա ոչ ոքի
վրա չէր կարող հույս դնել։ Նա շատ դժվար դրության մեջ էր, երբ
նրա մոտ եկավ սարակինոսների թագավոր Ալամունդարոսն ու
ասաց. «Պետք չէ, ով տեր, ամեն ինչ բախտին վերագրել, ոչ էլ
»մտածել, որ հնարավոր է բոլոր պատերազմներում հաղթող դուրս
»գալ։ Դա ոչ բնական է, ոչ էլ մարդկային, ընդհակառակը՝ շատ
»վնասակար է նրանց համար, ովքեր այդպես են մտածում, որով-
»հետև, ովքեր միշտ հուսով են, որ ամեն ինչ հաջող կընթանա, եթե
»հանկարծ սխալվեն և իրադրությունն այլ ընթացք ստանա, նրանց
»համար հարվածը ավելի սաստիկ կլինի։ Այդ պատճառով այն մար-
»դիկ, որոնք բոլորը չէ, որ վերագրում են բախտին, բացահայտ կեր-
»պով չեն նետվում պատերազմի վտանգի մեջ, եթե նույնիսկ իրենց
»համարում են թշնամիներից շատ ավելի հզոր. նրանք ջանում են
»խաբեությամբ և խորամանկությամբ գերազանցել հակառակորդնե-
»րին։ Հավասարազոր հակառակորդի դեմ հաղթանակ տանելն իսկ
»ապահովված չէ։ Այժմ, ով արքայից արքա, դու մի տխրիր, որ Միր-
»րանեսը անհաջողության մատնվեց, ոչ էլ նորից փորձիր բախտը։
»Միջագետքում, քո սահմաններից շատ մոտ գտնվող Օսրոենե կոչ-
»ված երկրում շատ ամուր քաղաքներ կան և զինվորների այնպիսի
»բազմություն, որ երբևիցե անցյալում չի եղել։ Եթե մենք այնտեղով
»ընթանանք, չենք կարող պայքարում մեզ ապահով զգալ։ Սակայն
»Եփրատ գետի այն կողմը գտնվող երկրում և նրանից վեր՝ Ասորի-
»քում ոչ մի ամրացված քաղաք չկա, ոչ էլ բավարար չափով զորք։
»Ես այդ մասին բազմիցս տեղեկացել եմ լրտեսության համար
»այնտեղ ուղարկված սարակինոսներից։ Ասում են, որ այնտեղ է
»գտնվում նաև Անտիոք քաղաքը, որը արևելքի հռոմեական բոլոր
»քաղաքներից առաջինն է հարստությամբ, մեծությամբ և մարդա-

»շատությամբ։ Այն ամրացված չէ, զինվորներ էլ չկան այնտեղ։
»Նրա բնակիչները տոնահանդեսներից, ցոփությունից ու թատրոն-
»ների մեջ իրար հետ վիճելուց բացի, այլ բանի մասին չեն մտա-
»ծում։ Արդ, եթե մենք անակնկալ կերպով նրանց վրա շարժվենք,
»անկասկած գրոհով կվերցնենք քաղաքը, և չհանդիպելով թշնամի
»ոչ մի զորքի, կվերադառնանք պարսից երկիրը. Միջագետքի զին-
»վորները չեն էլ իմանա կատարվածի մասին։ Դու բոլորովին մի
»մտահոգվի ջրի և կամ այլ անհրաժեշտ պարենի պակասության
»մասին։ Ես զորքը կտանեմ ամենալավ ճանապարհով»։

Կավադն այդ լսելով, ոչ կարողացավ մերժել, ոչ էլ չհավատալ Ալամունդարոսին, որովհետև վերջինս շատ խոհեմ, պատերազմի մեծ փորձ ունեցող մարդ էր, պարսիկներին անչափ հավատարիմ և շատ գործունյա։ Նա հիսուն տարի տակն ու վրա արեց հռոմայեցիների պետությունը։ Եգիպտոսից սկսելով ասպատակում էր մինչև Միջագետք ընկած երկիրը ամեն ինչ տակն ու վրա անելով, կրակի էր տալիս ճանապարհին հանդիպող շինությունները, բյուրավոր մարդկանց գերեվարում, նրանց մեծ մասին սպանում՝ առանց որևէ պատճառի, իսկ մյուսին էլ՝ մեծ փրկագնով էր վերադարձնում։ Նրան ոչ ոք չէր դիմադրում։ Հարձակումը միշտ մտածված էր անում, հանկարծակի և մեծ վարպետությամբ։ Նա իր ավարով արդեն վերադարձի ճանապարհին էր լինում, երբ [հռոմայեցի] զորավարներն ու զինվորներն դեռ նոր էին իմանում դեպքի մասին և պատրաստվում նրա վրա շարժվելու և եթե նույնիսկ նրանց հաջողվում էր որևէ վայրում հասնել նրան, այդ բարբարոսը նետվում էր նրանց վրա, նախքան նրանք կպատրաստվեին մարտի և առանց որևէ դժվարության փախուստի մատնում ու կոտորում հալածողներին։ Պատահել է, որ նա իրեն հալածող բոլոր զինվորներին իրենց հրամանատարների հետ միասին գերի է վերցրել։ Նրանց թվում էին Հուփինոսի եղբայր Դեմոստրատոսը, Ղուկասի որդի Հովհաննեսը, որոնց նա հետագայում ետ վերադարձրեց՝ որպես փրկագին ստանալով հսկայական գումար։ Մի խոսքով, այս մարդը դարձավ հռոմայեցիների ամենից ահեղ և մեծ թշնամին։ Դրա պատճառն այն էր, որ Ալամունդարոսը Պարսկաստանում ապրող բոլոր սարակինոսների միահեծան թագավորն էր և ի վիճակի էր ամբողջ զորքով արշավել հռոմեական պետության ցանկացած վայրի վրա։ Ո՛չ հռոմայեցիների զորահրամանատարներից որևէ մեկը, որոնց դուքս են անվանում, ո՛չ հռոմայեցիների դաշնակից սարակինոսների առաջնորդները, որոնց ֆիլարխոս են անվանում՝ իրենց մարդկանց հետ

ի վիճակի չէին դիմադրել Ալամունդարոսին, որովհետև չէին կարող թշնամիների դեմ դուրս բերել անհրաժեշտ քանակությամբ [զորք]։ Հուստինիանոս կայսրը [սարակինոսների] բազմաքանակ ցեղերի վրա թագավոր նշանակեց Արաբիայի սարակինոսների առաջնորդ Գաբալայի որդի Արեթասին[148], մի բան, որ հռոմայեցիների համար աննախընթաց էր։ Հակառակ այդ բոլորին, Ալամունդարոսը ոչ սակաս, այլ առավել մեծ թափով տակն ու վրա էր անում հռոմայեցիների պետությունը, իսկ Արեթասը յուրաքանչյուր արշավանքի և մարտի ժամանակ կամ իսկապես պարտություն էր կրում, կամ՝ թերևս դավաճանում էր. մեր տեղեկությունները նրա մասին հստակ չեն։ Այսպիսի պայմաններում ահա Ալամունդարոսը առանց դիմադրության հանդիպելու երկար ժամանակ ասպատակում էր ողջ արևելքը, որովհետև նա շատ երկար ապրեց։

18. Կավադը հավանություն տվեց սրա խորհրդին. նա տասնհինգ հազար մարդ ընտրեց, նրանց հրամանատար նշանակեց քաջ պատերազմող պարսիկ Աղարեթեսին, և Ալամունդարոսին հրամայեց նրանց ճանապարհ ցույց տալ։ Անցնելով Եփրատ գետը Ասորեստանում, ինչ-որ անմարդաբնակ վայրում, նրանք հանկարծակի և անսպասելիորեն ներխուժեցին Կոմմագենե կոչված երկիրը։ Որքան մենք լսել ենք, կամ այլ ճանապարհով իմացել, առաջին անգամն էր, որ պարսիկներն այստեղից ներխուժում էին հռոմայեցիների երկիրը, և դա իր անակնկալ բնույթով բոլոր հռոմայեցիներին ապշեցրեց։ Երբ այդ մասին լսեց Բելիսարիոսը, սկզբում չհավատաց, բայց հետո որոշեց շտապ կարգով օգնության հասնել։ Յուրաքանչյուր քաղաքում նա թողեց բավարար կայազոր, որպեսզի երբ Կավադը այլ զորքով այնտեղ հասնի, անպաշտպան չգտնի Միջագետքի բնակավայրերը, իսկ ինքը մնացած զորամասով մեծ արագությամբ անցավ Եփրատ գետը և առաջ շարժվեց [թշնամուն] դիմագրելու համար։ Հռոմայեցիների բանակը բաղկացած էր մոտ քսան հազար հետևակ և հեծյալ զինվորներից, որոնցից երկու հազարից ոչ պակասը իսավրացիներ էին։ Հեծյալների բոլոր հրամանատարները նրանցից էին, ովքեր նախկինում մասնակցել էին պարսիկների և Միրրանեսի դեմ Դարայի ճակատամարտին, իսկ հետևակին գլխավորում էր Հուստինիանոս կայսեր թիկնապահներից մեկը՝ Պետրոս անունով։ Իսավրացիներին առաջնորդում էին Լոնգինոսն ու Ստեֆանակիոսը։ Այստեղ եկավ նաև Արեթասը՝ սարակինոսների զորքով։ Հենց որ հասան Խալկիս[149] քաղաքը, ճամբար

դրեցին, որովհետև իմացան, որ թշնամիները գտնվում են Խալկիսից հարյուր տաս ասպարեզ հեռավորության վրա գտնվող Գաբբուլոն վայրում։ Ալամունդարոսն ու Ազարեթեսը, իմանալով այդ մասին և վախենալով վտանգից, առաջ չընթացան, այլ որոշեցին իրենց երկիրը վերադառնալ։ Նրանք նահանջում էին՝ ձախ կողմում ունենալով Եփրատ գետը, իսկ հռոմայեցիների զորքը հետևում էր նրանց և այն վայրում, ուր գիշերում էին բարբարոսները, հաջորդ գիշերը հռոմայեցիներն էին անցկացնում։ Բելիսարիոսը դիտմամբ թույլ չէր տալիս, որ զորքն ավելի առաջ անցնի, որովհետև չէր ուզում թշնամու հետ մարտի բռնվել։ Նա բավարարված էր, որ պարսիկներն ու Ալամունդարոսը, որոնք ներխուժել էին հռոմայեցիների երկիրը, այժմ ձեռնունայն վերադառնում են իրենց սահմանները։ Այդ առթիվ և՛ հրամանատարները, և՛ զինվորները գաղտնի հայհոյում էին Բելիսարիոսին, բայց ոչ ոք [չէր համարձակվում] բացահայտ նրան կշտամբել։

Ի վերջո պարսիկները ճամբարեցին Եփրատի ափին, Կալլինիկոն[150] քաղաքի դիմաց։ Հռոմեական երկրից հեռանալու համար նրանք պետք է շարժվեին անմարդաբնակ վայրի միջով, սակայն մտադիր չէին նախկինի պես գետի ափով գնալ։ Հռոմայեցիները գիշերեցին Սուրոն քաղաքում և ապա շարժվելով հասան արդեն նահանջի նախապատրաստություններ տեսնող թշնամիներին։ Հաջորդ օրը զատիկ էր[151], որը քրիստոնյաները բոլոր տոներից շատ են հարգում։ Այդ տոնի նախօրյակին չեն ուտում և չեն խմում՝ պաս են պահում ոչ միայն ցերեկը, այլ մինչև ուշ գիշեր։ Բելիսարիոսը տեսնելով, որ բոլորը վառվում են թշնամիների վրա հարձակվելու ցանկությամբ և ուզենալով ետ կանգնեցնել նրանց այդ մտքից (նույն կարծիքին էր նաև Հերմոգենեսը, որին կայսրը դեսպանության էր ուղարկել), բոլոր ներկաներին հավաքեց ու ասաց այսպես. «Ո՞ւր »եք շտապում, ով հռոմայեցիներ, կամ ինչն է դրդում ձեզ աննպա»տակ վտանգի ենթարկվել։ Մարդիկ կատարյալ հաղթանակ են հա»մարում թշնամու՝կողմից ոչ մի վնաս չկրելը, մի բան, որ ներկա »դեպքում բախտը, նաև վախը, որ մենք ներշնչեցինք հակառակոր»դին, ընձեռել է մեզ։ Արդ, նախընտրելի է չհրաժարվել առկա հաջո»ղությունից, քան թե ձեռքից բաց թողնելուց հետո փնտրել այն։ »Պարսիկները մեծ հույսերով արշավեցին հռոմայեցիների վրա, իսկ »այժմ լրիվ հուսախաբ եղած փախուստի են դիմում. եթե դուք »նրանց [ստիպեք] ակամա հրաժարվել նահանջի մասին իրենց »մտադրությունից, ստիպված կլինեն նաև կռվի բռնվել մեզ հետ



4—482

» և նույնիսկ հաղթանակի դեպքում մենք ոչինչ ավելի ձեռք չենք
»բերի։ Որովհետև ի՞նչ նշանակություն ունի նահանջողին փախուստի
»մատնելը։ Բացառված չի, իհարկե, որ մեր հաշիվները սխալ դուրս
»գան և զրկվենք նաև ձեռք բերած հաղթանակից. այդ դեպքում
»հաղթանակը մեզանից խլած են լինում ոչ թե թշնամիները, այլ
»ընդհակառակը, մենք ինքներս տված ենք լինում նրանց և կայսեր
»երկիրը բոլորովին անպաշտպան թողնելով, ստիպված կլինենք այն
»էլ տալու թշնամիներին։ Դուք պետք է հիշեք, որ աստված միշտ
»սիրով է օգնում մարդկանց՝ իրենցից անկախ և ոչ իրենց կամքով
»առաջացած դժբախտությունների ժամանակ։ [Թշնամիները] փախ-
»չելու տեղ չունենալով, իրենց կամքից անկախ քաջաբար կռվելու
»են, իսկ մեր հարձակման համար բազմաթիվ խոչընդոտներ կան,
»շատերը ոտքով են եկել, իսկ բոլորս էլ սոված ենք։ Էլ չեմ ասում,
»որ մի մասը մինչև հիմա տեղ չի հասել»։ Բելիսարիոսն ահա այս-
քանն ասաց։

Զորքն արդեն նրան նախատում էր ոչ թե լռակյաց ու թաքուն,
այլ բացահայտ և աղաղակ բարձրացնելով. նրան անվանում էին թու-
լամորթ, բուռն թափը կոտրող։ Զինվորների հետ միասին նույն սխալն
էին թույլ տալիս նաև հրամանատարներից ոմանք՝ այդ կերպ ուղե-
նալով ընդգծել իրենց քաջությունը։ Բելիսարիոսն ապշեց նրանց
անամոթության վրա, փոխեց իր մտադրությունը և հրամայեց մար-
տաշարք կազմել ու շարժվել թշնամիների վրա։ Նա ասաց նաև, որ
նախապես ինքը չգիտեր նրանց կռվելու ցանկության մասին, իսկ այ-
ժըմ տեսնում է, որ խիզախորեն և մեծ հույսերով շարժվում են թշնա-
միների վրա։ Զորքը նա շարեց ամբողջ ճակատով հետևյալ կերպ.
ձախ՝ գետահայաց թևում նա տեղադրեց ամբողջ հետևակը, իսկ աջ
կողմում, որը զառիթափ էր՝ Արեթասին և նրա բոլոր սարակինոսնե-
րին, ինքն էլ հեծյալների հետ կանգնեց կենտրոնում։ Ահա այսպես
շարվեցին հռոմայեցիները։ Իսկ Ազարեթեսը, երբ տեսավ, որ թշնա-
միները ճակատել են, այսպես սրտապնդեց [պարսիկներին]. «Դուք
»պարսիկ եք և առաքինությունը երբեք չեք փոխի կյանքի հետ, եթե
»որևէ մեկը ձեզ առաջարկի այդ երկուսի միջև ընտրություն կատա-
»րել։ Այդ հարցում ոչ ոք չի հակաճառի։ Ես կավելացնեի նաև, որ
»եթե նույնիսկ ցանկանաք էլ, դուք չեք կարող այլ ընտրություն կա-
»տարել։ Վտանգից խուսափողը անպատվության մեջ կապրի, որով-
»հետև ցանկանում է նա այդ թե ոչ, առաքինության փոխարեն
»նախընտրում է անվրդով կյանքը։ Իսկ եթե պետք է մեռնել, ապա
»ավելի լավ է փառքով մեռնել՝ թշնամու ձեռքով, քան թե խայտա-

»ռակ պատժի ենթարկվել արքայի կողմից։ Մեծ հիմարություն կլիներ »խայտառակության փոխարեն առաքինությունը չնախընտրելը։ »Դուք պետք է մտքում ունենաք ոչ միայն թշնամիներին, այլև ձեր »տիրոջը և դրանից հետո միայն այս մարտին դուրս գաք»։

Ազարեթեսը այդպես սրտապնդեց և հակառակորդի դիմաց կանգնեցրեց զորաշարքը։ Աջ կողմում էին գտնվում պարսիկները, իսկ ձախում՝ սարակինոսները։ Կռիվն իսկույն սկսվեց։ Մարտը շատ կատաղի էր։ Երկու կողմերն էլ անընդհատ նետեր էին արձակում և շատերն էին սպանվում։ Ոմանք իրար մոտենալով, կատարում էին մեծ քաջագործություններ։ Նետի հարվածներից առավելապես տուժում էին պարսիկները։ Նրանք ավելի հաճախ էին նետեր արձակում (նրանք գրեթե բոլորը նետաձիգներ են և բոլոր ժողովուրդներից շատ են պարապում նետաձգությամբ), սակայն նրանց սլաքները նետվում էին ոչ լավ ձգված աղեղներից և այդպես էլ բախվելով հռոմայեցի զինվորի զրահին, սաղավարտին կամ վահանին, ջարդվում էին և չէին կարողանում վնաս հասցնել։ Հռոմայեցիների արձակած նետերը քանակապես միշտ ավելի քիչ էին, բայց որովհետև նետվում էին շատ ուժեղ ձգված աղեղներից, դեռ ավելին, պարսիկներից շատ ավելի ուժեղ մարդկանց կողմից՝ հանդիպած մարդուն հեշտությամբ վնասում էին. ոչ մի զրահ նրանց թափին դիմանալ չէր կարող։ Օրվա երկու մասն էր անցել, բայց մարտի ելքը դեռ անորոշ էր։ Այն ժամանակ պարսից բանակի լավագույն զինվորները որոշեցին հարձակվել թշնամու աջ թևի վրա, որտեղ Արեթասն ու սարակինոսներն էին կանգնած։ Վերջիններիս զորաշարքը բաժանվեց երկու մասի և նույնիսկ կասկած առաջացավ, թե նրանք դավաճանեցին հռոմայեցիներին՝ հօգուտ պարսիկների, որովհետև հարձակվողներին ոչ մի դիմադրություն չցուցաբերելով, բոլորն էլ իսկույն փախուստի դիմեցին։ Այսպիսով, պարսիկները ճեղք առաջացնելով հակառակորդի ճակատի մեջ, անմիջապես անցան հռոմեական հեծելազորի թիկունքը։ Հռոմայեցիները և՛ ճանապարհից, և՛ լարված մարտից արդեն հոգնել էին, բացի դրանից, բոլորն էլ մինչև այդ ժամանակ պաս էին պահում, և երկու կողմից նեղվելով թշնամուց, այլևս ի վիճակի չէին դիմադրելու։ Շատերը փախուստի դիմեցին և անցան մոտակա գետի կղզիները, բայց ոմանք էլ [մարտի դաշտում] մնալով՝ հոյակապ քաջագործություններ կատարեցին։ Նրանց թվում էր և Ասկանը, որը պարսից բազմաթիվ մեծամեծներ սպանեց, բայց շատ չանցած ինքը ևս սրախողխող եղավ ու ընկավ՝ թշնամիների վրա մեծ տպավորություն գործելով։ Նրա հետ այդ մարտում քաջաբար ընկան ևս ութ

հարյուր զինվորներ, նաև գրեթե բոլոր իսավրացիներն [իրենց] հրամանատարների հետ միասին, չհամարձակվելով թշնամիների դեմ զենք բարձրացնել, որովհետև պատերազմական գործողություններում բոլորովին անփորձ էին։ Երկրագործությունը նոր թողած, նրանք ենթարկվեցին պատերազմի վտանգին։ Թեև նրանց համար դա անծանոթ զբաղմունք էր և պատերազմից գաղափար չունեին, բայց հենց իրենք էին, որ նախապես մարտի էին ձգտում և վախկոտության մեջ մեղադրում Բելիսարիոսին։ Սակայն նրանցից ոչ բոլորն էին իսավրացիներ, մասամբ լիկաոնացիներ էին։

Բելիսարիոսը փոքր զորամասով մնում էր տեղում և եղած զինվորների օգնությամբ ետ մղում թշնամիներին, քանի դեռ Ասկանի զինվորները դիմադրում էին։ Բայց երբ մի մասն սպանվեց, իսկ մյուսը՝ ինչպես կարողացավ փախուստի դիմեց, ինքը ևս իր մարդկանց հետ փախչելով եկավ Պետրոսի գլխավորած հետևակ զորաշարքը, որը թեև մեծաքանակ չէր (նրանցից շատերը փախել էին), այնուամենայնիվ շարունակում էր կռվել։ Այնտեղ նա իջավ ձիուց, հրամայեց իր բոլոր մարդկանց նույնն անել և մնացածների հետ հետիոտն կռվել։ Պարսիկներից նրանք, ովքեր հալածում էին փախստականներին, հեռու չգնացին, անմիջապես ետ վերադարձան և մնացածների հետ հարձակվեցին հետևակի և Բելիսարիոսի վրա։ Վերջիններս թիկունքով կանգնեցին դեպի գետը, որպեսզի թշնամիները չկարողանան իրենց շրջապատել և դիմադրում էին հարձակվողներին։ Մարտը նորից կատաղի բնույթ ստացավ, թեև ուժերը հավասար չէին, որովհետև իրենք հետևակ և թվով շատ քիչ լինելով, կռվում էին պարսիկների ամբողջ հեծելազորի դեմ։ Բայց թշնամիները չէին կարողանում նրանց ո՛չ փախուստի, ո՛չ էլ պարտության մատնել։ [Հռոմայեցիները] իրար մոտ կուտակվելով, պաշտպանվում էին վահաններով և շատ ավելի դիպուկ հարվածում պարսիկներին, քան թե նրանցից հարվածներ ստանում։ Բարբարոսները բազմիցս ետ մղվելով, նորից հարձակվում էին նրանց վրա՝ [հակառակորդի] շարքերում շփոթություն առաջացնելու և նրանց ցրելու նպատակով, բայց անհաջողության մատնվելով, նորից էին նահանջում, որովհետև վահանների աղմուկից նրանց ձիերը ծառս էին լինում և հեծյալների հետ խուճապի մատնվում։ Այսպիսին էր դրությունը երկու կողմերի համար էլ, մինչև օրը մթնեց։ Երբ արդեն գիշեր էր, պարսիկները շարժվեցին դեպի ճամբարը, իսկ Բելիսարիոսը ձեռք բերելով մի բեռնատար նավակ, փոքրաթիվ մարդկանց հետ անցավ գետի կղզին։ Մնացած հռոմայեցիներն էլ այնտեղ հա-

սան լողալով։ Հաջորդ օրը հռոմայեցիները փոխադրվեցին Կալլինիկոն քաղաքից ժամանած բեռնատար նավակներով, իսկ պարսիկները, դիակապտությամբ զբաղվելուց հետո, շարժվեցին դեպի իրենց երկիրը։ Նրանց սպանվածները թվով ավելի քիչ էին, քան թշնամիներինը։

Ազարեթեսը, երբ զորքով հասավ Պարսկաստան, հակառակ մարտում ունեցած իր հաջողության, հանդիպեց Կավադի մեծ ապերախտության։ Դրա պատճառը հետևյալն էր։ Պարսիկները թշնամիների վրա արշավելուց առաջ կատարում են մի արարողություն. արքան նստում է գահին, իսկ նրա մոտ դնում են զամբյուղներ։ Այնտեղ ներկա է լինում նաև այն զորավարը, որը զորքի գլուխն անցած պետք է նրան առաջնորդի հակառակորդի դեմ։ Զորքը մեկ առ մեկ անցնում է արքայի առջևից և յուրաքանչյուր զինվոր զամբյուղների մեջ է գցում մեկական նետ։ Զամբյուղներն այնուհետև արքայի կնիքով կնքվում ու պահվում են, և երբ զորքը վերադառնում է Պարսկաստան, յուրաքանչյուր զինվոր վերցնում է զամբյուղի միջից մեկական նետ։ Մնացած նետերը հաշվում են այդ գործի համար նշանակված մարդիկ և հաղորդում արքային չվերադարձած զինվորների թիվը. այդպիսով իմանում է, թե պատերազմում քանի մարդ է զոհվել։ Պարսիկների մոտ այդ սովորությունը հնուց գոյություն ունի։ Երբ Ազարեթեսը անձնապես ներկայացավ արքային, Կավադը նրան հարցրեց, արդյո՞ք նա եկել է հռոմեական որևէ քաղաք իրեն ենթարկած, որովհետև Ալամունդարոսի հետ նա պետք է արշավեր հռոմայեցիների վրա՝ Անտիոքն ավերելու նպատակով։ Ազարեթեսը պատասխանեց, որ ոչ մի քաղաք չի գրավել, բայց մարտում պարտության է մատնել հռոմայեցիներին և Բելիսարիոսին։ Կավադն այնուհետև հրամայեց, որ Ազարեթեսի զորքն անցնի [իր առջևից] և յուրաքանչյուր զինվոր, ըստ սովորության, զամբյուղի միջից վերցնի մեկական նետ։ Եվ, որովհետև, զամբյուղներում մնացին բազմաթիվ նետեր, արքան նախատեց Ազարեթեսին [այդպիսի] հաղթանակի համար և նրան զրկեց պատվից[152]։ Ահա այսպիսի վախճան ունեցավ Ազարեթեսի համար այդ հաղթանակը։

19. Այն ժամանակ Հուստինիանոս կայսրը միտք հղացավ պարսիկների դեմ դաշնակցել եթովպացիների և հոմերիտների[153] հետ։ Այժմ ես կպատմեմ, թե այդ ժողովուրդները աշխարհի որ մասում են բնակվում և ինչու կայսրը հույս ուներ, որ նրանք կմիանան հռոմայեցիներին։ Պաղեստինի արևելյան սահմանները ձգվում են

մինչև Կարմիր կոչված ծովը, որը սկիզբ առնելով Հնդկաստանից, վերջանում է Հռոմեական պետության այս մասում։ Այդ [ծովի] ափում է գտնվում Այլաս կոչված քաղաքը, որտեղ, ինչպես ասացի, վերջանում է ծովը և մի շատ նեղ ջրանցք է ստեղծվում։ Այդ ջրանցքով այս կողմից նավարկողի աջ կողմում Եգիպտոսի հարավում գտնվող լեռներն են, իսկ հանդիպակաց կողմը անմարդաբնակ է և ձգվում է դեպի հյուսիս։ Այն կողմից նավարկողի համար այս երկիրը տեսանելի է մինչև Իոտաբե կոչված կղզին, որը Այլաս քաղաքից ոչ պակաս, քան հազար ասպարեզ հեռավորության վրա է գտնվում։ Այնտեղ հնուց անկախ վիճակում ապրում էին հրեաները, որոնք Հուստինիանոսի թագավորության ժամանակ հպատակվեցին հռոմայեցիներին։ Այնուհետև բացվում է ընդարձակ ծովը։ Դեպի այն նավարկողների համար աջ կողմում գտնվող երկիրը այլևս տեսանելի չէ, իսկ հենց որ մթնում է, նրանք ձախ կողմում խարիսխ են գցում, որովհետև խութերով լի այդ ծովում մթության մեջ նավարկելն անհնարին է։ Այստեղ կան բազմաթիվ նավահանգիստներ՝ կառուցված ոչ թե մարդկանց ձեռքով, այլ բնության կողմից։ Այդ պատճառով էլ նավարկողների համար պատահած տեղը խարիսխ գցելը դժվար չէ։

Պաղեստինի սահմաններից սկսած այդ ափերը[154] պատկանում են սարակինոսներին, որոնք վաղուց հաստատված են Ֆինիկոնի մեջ։ Ֆինիկոնը ձգվում է երկար տարածության վրա[155], և այդտեղ միայն արմավենին է աճում։ Աբոխարաբոսը[156] այնտեղ ապրող սարակինոսների իշխանը, նվիրեց այդ Ֆինիկոնը Հուստինիանոս կայսեր, իսկ վերջինս էլ նրան սարակինոսների ցեղապետ նշանակեց։ Իր ամբողջ կյանքի ընթացքում նա երկիրը պահեց ապահով վիճակում, որովհետև Աբոխարաբոսը շատ գործունյա մարդ էր և հպատակ բարբարոսները, ոչ պակաս չափով նաև թշնամիները սարսափում էին նրանից։ Ֆինիկոնը ձևականորեն պատկանում էր կայսեր, բայց միանգամայն անհնարին էր այդ շրջանների վրա տիրել, որովհետև այնտեղ հասնելու համար պետք է միանգամայն անմարդաբնակ, ջրից զուրկ երկրով տասը օրվա ճանապարհ կտրել։ Ֆինիկոնն էլ մի մեծ արժեք չէր ներկայացնում, բայց որպես Աբոխարաբոսի նվեր, կայսրը նպատակահարմար համարեց վերցնել։ Ահա այսքան Ֆինիկոնի մասին։ Այդ մարդկանց հարևան են և տիրում են ափին այլ սարակինոսներ, որոնք կոչվում են մադդենոսներ և հպատակ են հոմերիտներին, իսկ հոմերիտներն էլ բնակվում են նրանցից վերև՝ ծովափին, այնուհետև մինչև մարդակեր սարակինոսներն ընկած

տարածության վրա, ինչպես պատմում են, բազմաթիվ այլ ցեղեր են ապրում։ Նրանցից հետո արդեն հնդկական ժողովուրդներն են։ Վերջիններիս մասին յուրաքանչյուրը թող պատմի ինչ որ ինքն է ցանկանում։

Հոմերիտների հանդիպակաց մայր ցամաքում բնակվում են եթովպացիները, որոնք կոչվում են ավքսումիտներ, որովհետև նրանց արքունիքը գտնվում է Ավքսումիս քաղաքում։ [Հոմերիտների և եթովպացիների] միջև ընկած ծովը, եթե որոշ չափով քամին նպաստավոր լինի, կարելի է կտրել հինգ օրում։ Այդ ծովում կարելի է նավարկել նաև գիշերը, որովհետև այստեղ ոչ մի խութ չկա։ Հիշյալ ծովը ոմանք Կարմիր են անվանում, իսկ նրանից դուրս՝ մինչև ծովափը և Այլաս քաղաքը կոչվում է Արաբական ծոց։ Այդ երկիրը մինչև Գազա քաղաքի սահմանները դեռ հնուց Արաբիա է կոչվում. անցյալում Արաբիայի թագավորի արքունիքը գտնվում էր Պետրա քաղաքում։ Հոմերիտների նավահանգիստը կոչվում է Բուլիկաս և որպես կանոն այստեղից են նավարկում դեպի Եթովպիա։ Անցնելով այդ ծովը, հասնում են ադուլիտների նավահանգիստը։ Ադուլիս քաղաքը գտնըվում է նավահանգստից քսան ասպարեզ հեռավորության վրա, այդ իմաստով ծովափնյա քաղաք չէ, իսկ Ավքսումիս քաղաքից տասներկու օրվա ճանապարհի հեռավորության վրա է։

Հնդկաստանի ջրերում և այդ ծովում նավարկող նավերը սովորականի պես չեն կառուցված։ Նրանք ոչ ձյութած են, ոչ էլ որևէ այլ նյութով պատած, տախտակներն էլ երկաթե գամերով չեն միացված, այլ իրար են կապված պարաններով։ Դրա պատճառն, իհարկե, այն չէ, ինչպես շատերն են կարծում, թե իբր այստեղ այնպիսի քարեր կան, որոնք ձգում են երկաթը. (հայտնի է, որ Այլասից դեպի այս ծովը նավարկող հռոմեական նավերը թեև բազմաթիվ երկաթե մասեր ունեն, սակայն նման բանի չեն հանդիպել), այլ այն պատճառով, որ հնդիկներն ու եթովպացիները ոչ երկաթ ունեն, ոչ էլ [նավաշինության] համար նման անհրաժեշտ բաներ։ Նրանք չեն էլ կարող դա գնել հռոմայեցիներից, որովհետև [հռոմեական] օրենքը բացարձակապես արգելում է նման բաների վաճառքը և օրինազանցը դատապարտվում է մահապատժի։ Ահա այսքան Կարմիր ծովի[157] և նրա երկու կողմերում տարածվող երկրների մասին։

Ավքսումիս քաղաքից մինչև հռոմեական պետության եգիպտական սահմանները, որտեղ գտնվում է Էլեֆանտինե կոչվող քաղաքը, արագ քայլող մարդու համար երեսուն օրվա ճանապարհ է։ Այստեղ ապրում են բազում և բազմապիսի ցեղեր, այդ թվում նաև բազմա-

մարդ բլեմիները և նոբատները։ Բլեմիները բնակվում են երկրի ներսում, իսկ նոբատները՝ Նեղոս գետի մոտ։ Անցյալում հռոմեական պետության հեռավոր սահմաններն ավելի հեռուն էին ձգվում՝ մոտ յոթ օրվա ճանապարհ։ Հռոմայեցիների կայսր Դիոկլետիանոսը, երբ եղավ այստեղ, հասկացավ, որ այդ շրջաններից ստացվող եկամուտն աննշան է, որովհետև մշակելի հողատարածությունը մի շատ նեղ շերտ է (Նեղոսից ոչ հեռու վեր խոյացող ժայռերն են գրավում մնացած տարածությունը), իսկ այդտեղ հնից հաստատված մեծաքանակ կայազորի պահպանման ծախսերը պետության համար ծանր են։ Նոբատներն էլ, որոնք նախապես բնակվում էին Օազիս քաղաքում, տակն ու վրա են անում շրջակա վայրերը։ [Դիոկլետիանոսը] համոզեց այդ բարբարոսներին լքել իրենց երկիրը և հաստատվել Նեղոս գետի մոտ, խոստանալով նրանց մեծ քաղաքներ և ընդարձակ հողատարածություններ նվիրել՝ իրենց ունեցածից շատ ավելի լավ։ Կայսրը մտածում էր, որ այդպիսով նրանք այլևս չեն կարողանա վնաս հասցնել Օազիսի շուրջ ընկած շրջաններին, իսկ յուրացնելով իրենց տրված երկիրը, արդեն որպես իրենց սեփականը կպաշտպանեն բլեմիների և մյուս բարբարոսների հարձակումներից։ Նոբատներին այդ գուր եկավ և իսկույն տեղափոխվեցին Դիոկլետիանոսի նշանակած [տեղը], ստանալով Էլեֆանտինե քաղաքից սկիզբ առնող և գետի երկու ափերին գտնվող հռոմեական քաղաքներն ու ամբողջ երկիրը։ Կայսրը կարգադրեց ամեն տարի որոշ քանակությամբ ոսկի վճարել [նոբատներին] և բլեմիներին, որպեսզի չասպատակեն հռոմայեցիների երկիրը։ Նրանք մինչև օրս էլ ստանում են [ոսկին], բայց և այնպես կողոպտում են այդ շրջանները։ Հետևաբար, ակներև է, որ հռոմայեցիները կարող են ապահոված լինել բարբարոսների հավատարմությունը՝ երկյուղ ներշնչելով միայն։ Նույն կայսրը Նեղոսի մեջ Էլեֆանտինե քաղաքին մոտ մի կղզի գտավ, որտեղ անառիկ ամրոց և հռոմայեցիների ու բարբարոսների համար ընդհանուր տաճարներ ու զոհարաններ կառուցեց, երկու կողմերից էլ քրմեր նշանակեց այնտեղ, մտածելով, որ, եթե նրանք մասնակցեն միմյանց արարողություններին, ապա բարեկամությունն առավել հաստատուն կլինի։ Այդ էր պատճառը, որ վայրը Փիլայ կոչեց[118]։ Այդ երկու ցեղերը՝ բլեմիներն ու նոբատները երկրպագում են հեթանոսական բոլոր աստվածներին, նաև Իսիսին ու Օսիրիսին, ոչ պակաս չափով և Պրիապոսին։ Բլեմիները սովորություն ունեն մարդկանց զոհաբերել արևին։ Փիլայի այդ սրբարանները բարբարոսների ձեռքում էին մինչև իմ ժամանակները, երբ Հուստինիանոս կայսրը որո-

չեց քանդել դրանք։ Ծագումով պարսկահայ Ներսեսը, որ ինչպես և վերը նշեցի, կամավոր կերպով հռոմայեցիների կողմն էր անցել[159] և նշանակվել այդ [երկրի] կայազորի հրամանատար, համաձայն կայսեր հրամանի ավերեց սրբարանները, քրմերին բանտարկեց, իսկ արձանները տեղափոխեց Բյուզանդիոն։ Ես վերադառնում եմ ընդհատած պատմությանը։

20. Այս պատերազմի ժամանակ եթովպացիների թագավոր Հելլեսթայոսը, որը քրիստոնյա էր և այդ հավատքին շատ նվիրված, իմանալով, որ դիմացի մայր ցամաքում ապրող հոմերիտները (որոնց մի մասը հրեադավան են, իսկ մյուսը՝ հին հավատքն է պաշտում, որին այժմ մարդիկ անվանում են հեթանոսական) այնտեղ ապրող քրիստոնյաների վրա հարկերի անչափ ծանր բեռ են գրել, նավատորմիղով ու զորքով արշավեց նրանց վրա[160]։ Նա մարտում հաղթանակ տարավ, սպանեց նրանց թագավորին ու բազմաթիվ հոմերիտների, հաստատեց մի նոր թագավոր, որը ծագումով հոմերիտ էր, իսկ հավատքով քրիստոնյա, անունը՝ Էսիմիֆայոս[161]։ Կարգադրելով, որ նա ամեն տարի եթովպացիներին հարկ վճարի, [Հելլեսթայոսը] վերադարձավ իր երկիրը, սակայն եթովպացիների բանակում ծառայող բազմաթիվ ստրուկներ և փորձառու չարագործներ չուզեցին հետևել [իրենց] թագավորին։ Վերջինիս թույլտվությամբ նրանք հաճույքով մնացին հոմերիտների երկրում, որովհետև նա անչափ հարուստ է։

Այս մարդիկ որոշ ժամանակ անց ուրիշների հետ ապստամբություն բարձրացրին թագավոր Էսիմիֆայոսի դեմ և նրան մի բերդում բանտարկելով, Աբրամոսին հոմերիտների թագավոր հայտարարեցին։ Աբրամոսը քրիստոնյա էր, ստրուկը մի հռոմայեցու, որը եթովպացիների Ադուլիս քաղաքում ծովային առևտրով էր զբաղվում։ Երբ այդ մասին իմացավ Հելլեսթայոսը, որոշեց պատժել Էսիմիֆայոսի հանդեպ անարդար վարվող Աբրամոսին և նրա հետ ապստամբություն բարձրացնողներին. Նրանց դեմ երեք հազարանոց զորք ուղարկեց իր ազգականներից մեկի գլխավորությամբ։ Զորքը չցանկացավ վերադառնալ իր երկիրը, ուզում էր մնալ այդ հարուստ երկրում։ Նա իր հրամանատարներից գաղտնի բանակցությունների մեջ մտավ Աբրամոսի հետ և համաձայնության եկավ հակառակորդների հետ։ Զորքը սպանեց [իր] հրամանատարին, և թշնամի զորքին միանալով, մնաց այնտեղ։ Հելլեսթայոսը շատ զայրացավ և նրանց դեմ մի նոր զորամաս ուղարկեց, որը Աբրամոսի հետ կռվի բռնվելով և մարտում չարաչար պարտություն կրելով, իսկույն վերադարձավ իր երկիրը։

Եթովպացիների թագավորը, վախեցած, այլևս Աբրամոսի դեմ չարշավեց։ Հելլեսթայոսի մահից հետո Աբրամոսը խոստացավ հարկը վճարել նրան հաջորդած թագավորին, և այդ ձևով ամրապնդեց [իր] իշխանությունը։ Դա տեղի ունեցավ հետագայում։

Երբ եթովպացիներին թագավորում էր Հելլեսթայոսը, իսկ էսիմիֆայոսը՝ հոմերիտներին, Հուստինիանոս կայսրը Հուլիանոսին նրանց մոտ դեսպան ուղարկեց, որպեսզի երկուսն էլ՝ որպես համատակիցներ մասնակցեն պարսիկների դեմ մղվող պատերազմին։ Նա առաջարկեց, որ Հնդկաստանի մետաքսը այսուհետև իրենք՝ եթովպացիները գնեն և վաճառեն հռոմայեցիներին, մի բան, որ շատ շահութաբեր է իրենց համար։ Հռոմայեցիների համար դա այնքանով էր ձեռնտու, որ այլևս ստիպված չէին իրենց դրամը թշնամուն տալ։ (Մետաքսով գործում են հանդերձներ, որոնց հին հույները անվանում էին մարական. այդ [հանդերձներն] այժմ չինական են կոչվում)[162]։ Առաջարկում էր նաև, որ հոմերիտները փախստական Կայսոսին մադդենոսների ցեղապետ նշանակեն և հոմերիտներից ու մադդենացի սարակինոսներից բաղկացած մեծ զորքով ներխուժեն պարսից երկիրը։ (Կայսոսը ցեղապետական ծագում ուներ և պատերազմական գործերի մեջ շատ հմուտ էր։ Նա սպանել էր էսիմիֆայոսի ազգականներից մեկին և փախել մի անմարդաբնակ վայր)։ Երկուսն էլ խոստացան խնդիրքը կատարել և դեսպանին ճանապարհեցին, բայց ոչ մեկն էլ խոսքի տերը չեղավ։ Եթովպացիների համար Հնդկաստանից մետաքս գնելն անհնարին բան է. ի սկզբանե այնտեղ պարսից առևտրականներն են գնում մետաքսի բոլոր բեռները, գնալով նավահանգիստները, որոնք հնդկական նավերի առաջին կայաններն են. չէ՞ որ [հնդիկները] բնակվում են հարևան երկրում։ Հոմերիտների համար դժվար էր կտրել, անցնել անապատ երկիրը՝ երկար օրերի ճանապարհ և շարժվել ավելի մարտունակ մարդկանց վրա։ Հետագայում էլ, թեև Աբրամոսը ամրապնդեց իր իշխանությունը, (նա Հուստինիանոս կայսեր բազմիցս խոստացավ ներխուժել պարսից երկիրը), բայց և այնպես մի անգամ միայն արշավեց և այն էլ իսկույն ետ վերադարձավ։ Ահա այս վիճակում էին հռոմայեցիների փոխհարաբերությունները եթովպացիների և հոմերիտների հետ։

21. Եփրատի ճակատամարտից անմիջապես հետո Հերմոգենեսը դեսպանությամբ գնաց Կավադի մոտ, բայց տեսնելով, որ նա շատ է զայրացած հռոմայեցիների դեմ, չփորձեց հաշտության բանակցություններ վարել, որի համար եկել էր, և հեռացավ։ Իսկ Բելիսարիո-

սին կայսրը կանչեց Բյուզանդիոն և վանդալների վրա արշավելու կապակցությամբ ազատեց նախկին պաշտոնից: Հուստինիանոս կայսեր կարգադրությամբ արևելք եկավ Սիտտասը, որպեսզի այն պաշտպանի: Պարսիկները մեծ զորքով, Խանարանգեսի, Ասպեբեդեսի և Մերմերոեսի գլխավորությամբ նորից ներխուժեցին Միջագետք և որովհետև ոչ ոք չէր համարձակվում կռվի բռնվել նրանց հետ, պաշարեցին Մարտիրոպոլիսը, որի պաշտպանությունը հանձնարարված էր Բուզեսին և Բեսսասին: [Մարտիրոպոլիսը] գտնվում է Սոֆանենե կոչված երկրում[163], Ամիդ քաղաքից երկու հարյուր քառասուն ասպարեզ դեպի հյուսիս: Նա Նիմֆիոս գետի ափին է, որը սահմանագիծն է հռոմայեցիների և պարսիկների երկրների միջև: Պարսիկները գրոհեցին պարսպի վրա. պաշարյալները սկզբում թեև քաջությամբ էին դիմադրում, բայց ակնհայտ էր, որ չեն կարողանա երկար դիմանալ: Պատնեշը շատ խախուտ էր և պարսիկները հեշտությամբ կարող էին այն գրավել: Բացի դրանից, բավականաչափ պարեն չունեին, էլ չեմ խոսում մեքենաների կամ պաշտպանվելու որևէ այլ միջոցների մասին: Սիտտասը և հռոմայեցիների զորքը եկան Մարտիրոպոլսից հարյուր ասպարեզ հեռավորության վրա գտնվող Ատտախաս վայրը, բայց առաջ ընթանալ չէին համարձակվում և հենց այդտեղ էլ ճամբարեցին: Նրանց հետ էր նաև Հերմոգենեսը, որ Բյուզանդիոնից էր գալիս կրկին որպես դեսպան: Այդ միջոցին այսպիսի մի դեպք պատահեց: Ե՛վ հռոմայեցիների, և՛ պարսիկների մոտ դեռևս հնուց ընդունված է պետական միջոցներով հետախույզներ պահել[164], որոնք գաղտնի մուտք գործելով թշնամու երկիրը, հանգամանորեն հետախուզում են և վերադառնալով՝ իրենց իմացածը հաղորդում իշխանավորներին: Հետախույզների մեծ մասը, բնական է, սիրով է ծառայում իր ցեղակիցներին, բայց ոմանք բացում են գաղտնիքը հակառակորդներին: Այն ժամանակ պարսիկների կողմից հռոմայեցիների մոտ ուղարկված մի հետախույզ ներկայացավ Հուստինիանոս կայսեր և բարբարոսների նախապատրաստությունների մասին զանազան ու բազմաթիվ տեղեկություններ հայտնեց: Նա ասաց, որ մասսագետների ցեղերից մեկը, հռոմայեցիներին վնասելու նպատակով շտապում է դեպի պարսից երկիրը և միանալով պարսից զորքին, շարժվելու է հռոմայեցիների վրա: [Կայսրը], լսելով այդ, առատորեն վարձատրեց նրան, որովհետև վերջինիս հավատարմությունը ստուգված էր և համոզեց գնալ Մարտիրոպոլիս, քաղաքը պաշարող պարսից զորքին և բարբարոսներին հայտնել, թե մասսագետները հռոմեական կայսրից կաշառք ստա-

նալով, որոշել են [պարսիկների] վրա արշավել։ Նա այդպես էլ արեց. հասնելով բարբարոսների ճամբարը, խանարանգեսին և մյուսներին հայտնեց, որ [պարսիկներին] թշնամի հոների մի զորք շուտով ժամանելու է հռոմայեցիների մոտ։ Նրանք, երբ լսեցին այդ, վախեցան և չգիտեին ինչպես վարվել։

Այդ միջոցին Կավադը ծանր հիվանդացավ և իր ամենամոտիկ պարսիկներից մեկին՝ Մեբոդես անունով[165], կանչեց իր մոտ խորհրդակցելու և՛ Խոսրովի, և՛ թագավորության հարցերի շուրջը։ Նա երկյուղ էր հայտնում, թե պարսիկները կարող են փորձել չկատարել իր կամքը։ [Մեբոդեսը] խորհուրդ տվեց [Կավադին] իր մտադրությունը գրավոր թողնել, վստահեցնելով, որ պարսիկները երբեք չեն խիզախի չկատարել այն։ Կավադն իսկույն Մեբոդեսի ձեռքով կտակ գրեց, համաձայն որի պարսից գահը թողնում էր Խոսրովին և վախճանվեց[166]։ Երբ արքայի հուղարկավորությունը ընդունված սովորության համաձայն կատարվեց, Կաոսեսը, ապավինելով հաստատված օրենքին, ուզում էր տիրանալ [գահին], սակայն Մեբոդեսը դիմադրեց, ասելով, որ ոչ ոք չի կարող ինքնաբերաբար արքա դառնալ, այլ միայն պարսից մեծամեծների որոշմամբ։ [Կաոսեսը] դեմ չէր, որ իշխանավորներն արտահայտեն իրենց կարծիքը, քանի որ վստահ էր, թե որևէ հակաճառություն լինել չի կարող։ Երբ պարսից բոլոր մեծամեծները հավաքվեցին այդ հարցը լուծելու, Մեբոդեսը կարդաց կտակը՝ հայտնելով Կավադի կամքը Խոսրովի մասին։ Վերհիշելով առաքինի Կավադին, բոլորն իսկույն արքա հռչակեցին Խոսրովին[167]։

Ահա այսպես Խոսրովն ստացավ իշխանությունը։ Իսկ Մարտիրոպոլսում Սիտտասն ու Հերմոգենեսը երկյուղով էին լցված, որովհետև ի վիճակի չէին պաշտպանել վտանգի ենթարկված քաղաքը։ Նրանք թշնամիների մոտ մի քանի հոգի ուղարկեցին, որոնք ներկայանալով զորահրամանատարներին, ասացին. «Դուք չե՞ք տեսնում,
»որ իզուր տեղ խոչընդոտ եք դարձել և՛ պարսից արքայի, և՛ խաղա-
»ղության, և՛ երկու պետությունների համար։ Արդեն այստեղ են
»կայսեր կողմից ուղարկված դեսպանները, որոնք գնալով պարսից
»արքայի մոտ, լուծելու են վիճելի հարցերը և հաշտություն են կնքե-
»լու նրա հետ։ Արդ, դուք անհապաղ հեռացեք հռոմայեցիների երկրից
»և հնարավորություն տվեք դեսպաններին գործելու այնպես, ինչպես
»որ երկու կողմերին էլ հարմար է։ Մենք պատրաստ ենք այդ առթիվ
»ձեզ որպես պատանդ տալ երևելի մարդկանց, որպեսզի գործը շուտ
»գլուխ գա»։ Հռոմայեցիների դեսպաններն այսքանն ասացին։ Այն ժամանակ պարսիկների մոտ արքունիքից սուրհանդակ էր եկել և

հայտնել Կավադի մահվան ու Խոսրովի գահակալության մասին, ինչպես և ստեղծված անկայուն վիճակի մասին։ Այդ պատճառով [պարսից] զորավարները ուրախությամբ ընդունեցին հռոմայեցիների առաջարկները, որովհետև նրանք հոների արշավանքից էլ էին երկյուղ կրում։ Հռոմայեցիներն իսկույն որպես պատանդ տվեցին Մարտինոսին և Սիտտասի թիկնապահներից Սենեկիոսին, իսկ պարսիկները, վերացնելով պաշարումը, անհապաղ հեռացան։ Հոներն էլ, որոնք քիչ անց ներխուժեցին հռոմայեցիների երկիրը, պարսից զորքն այնտեղ չգտնելով, կարճատև արշավանքից հետո իրենց երկիրը վերադարձան։

22. Շուտով Հերմոգենեսի դեսպանությանը եկան միացան Հռուփինոսը, Ալեքսանդրոսն ու Թովման և բոլորը միասին ներկայացան պարսից արքային՝ Տիգրիս գետի ափին։ Խոսրովը տեսնելով նրանց, պատանդներին ազատ արձակեց։ Դեսպանները մեղմելու համար Խոսրովի ղայրույթը, շոյող շատ խոսքեր ասացին, որոնք վայել չէին հռոմայեցիների դեսպաններին։ Խոսրովը փափկեց և խոստացավ հավիտենական խաղաղություն կնքել, պայմանով, որ իրեն վճարվի հարյուր տաս կենտինար[168] [ոսկի] և Միջագետքի զորահրամանատարի նստավայրը այլևս Դարան չլինի, այլ մշտապես Կոստանդինեն, ինչպես որ ընդունված էր հնում, և ասաց նաև, որ ինքը չի վիճի Լազիկայի ամրոցները, ընդհակառակը հանուն արդարության ետ է պահանջում հռոմայեցիներից Ֆարանգիոնը և Բոլոս ամրոցը։ Մեկ կենտինարը կշռում է հարյուր լիտր[169], այն [կենտինար] է կոչվում, որովհետև հռոմայեցիները հարյուրին կենտոն են ասում։ Նա պահանջում էր նշված ոսկին, պատճառաբանելով, որ հռոմայեցիները այդպիսով ստիպված չեն լինի քանդել Դարա քաղաքը, ոչ էլ կմասնակցեն պարսիկների՝ Կասպից դռների պահպանության ծախսերին։ Դեսպանները բոլոր պայմաններին հավանություն տվեցին, բացառությամբ ամրոցների խնդրի, ասելով, որ ամրոցները զիջել չեն կարող, մինչև հարցում չանեն կայսեր։ Որոշվեց Բյուզանդիոն ուղարկել Հռուփինոսին, իսկ մյուս [դեսպանները] տեղում մնան՝ մինչև նրա վերադարձը։ Հռուփինոսի ճանապարհորդությունը տևեց յոթանասուն օր։ Երբ նա ժամանեց Բյուզանդիոն և կայսեր հայտնեց Խոսրովի հաշտության պայմանները, կայսրը հրամայեց այդ պայմաններով էլ հաշտություն կնքել։

Այդ միջոցին մի սուտ լուր հասավ պարսից երկիրը, իբր Հուստինիանոս կայսրը զայրացած սպանել է Հռուփինոսին։ Այդ [լուրից]

վրդովված և գրգռված՝ Խոսրովը ամբողջ զորքի գլուխն անցած շարժվեց հռոմայեցիների վրա։ Բայց այդ ընթացքում Հռուփինոսը վերադառնալով. [Խոսրովին] հանդիպեց Նիսիբիս քաղաքից ոչ հեռու։ Նրանք մտան քաղաք և քանի որ պետք է հաշտություն կնքվեր, դեսպանները դրամը այստեղ բերեցին։ Սակայն Հուստինիանոս կայսրը, որը նախապես համաձայնվել էր Լազիկայի ամրոցները զիջել, փոխեց իր միտքը և դեսպաններին հակառակ բովանդակությամբ նամակներ հղեց, պատվիրելով [ամրոցները] ոչ մի դեպքում պարսիկներին չզիջել։ Այդ պատճառով Խոսրովը այլևս չցանկացավ հաշտություն կնքել։ Հռուփինոսը հասկացավ, որ չափազանց շտապել է դրամը պարսից երկիրը բերել և որ այն ապահով վիճակում չէ։ Հենց այնտեղ նա իրեն գետին նետեց և սկսեց ծնկաչոք աղաչել Խոսրովին, որ նա թույլ տա դրամները իրենց հետ ետ տանեն ու անմիջապես չարշավի հռոմայեցիների վրա, այլ պատերազմը հետաձգի։ Խոսրովը նրան հրամայեց ոտքի կանգնել և խոստացավ ամբողջությամբ բավարարել նրա խնդիրքը։ Եվ ահա դեսպանները դրամներով եկան Դարա, իսկ պարսից զորքը ետ վերադարձավ։

Դեսպանակիցներն այն ժամանակ Հռուփինոսի վրա շատ կասկածեցին և նրան ամբաստանեցին կայսեր առջև, փաստարկելով, որ Խոսրովն ընդառաջեց նրա բոլոր խնդիրքներին։ Բայց կայսրը դրա համար նրան չզատապարտեց։ Այնուհետև նույն Հռուփինոսն ու Հերմոգենեսը նորից Խոսրովի մոտ ուղարկվեցին և հաշտություն կնքվեց հետևյալ պայմաններով. երկու կողմերն էլ վերադարձնում են պատերազմի ժամանակ մեկը մյուսից խլած հողերը, իսկ Դարայում ոչ մի զորաբանակ այլևս չպետք է լինի. իբերների կամքին թողնվեց մնալ Բյուզանդիոնում կամ վերադառնալ իրենց հայրենիքը։ Վերջիններից շատերը մնացին, բայց քիչ չէին և նրանք, ովքեր վերադարձան իրենց հայրենի երկիրը։ Ահա, այսպիսով, կնքվեց հավիտենական կոչված հաշտությունը՝ Հուստինիանոսի ինքնակալության վեցերորդ տարին[150]։ Հռոմայեցիները Ֆարանգիոնը և Բոլոս ամրոցը դրամների հետ միասին դիջեցին պարսիկներին, իսկ պարսիկներն իրենց հերթին հռոմայեցիներին տվեցին Լազիկայի ամրոցները։ Պարսիկները հռոմայեցիներին վերադարձրին նաև Դագարիսին՝ նրա փոխարեն ստանալով մի ուրիշ երևելի մարդու։ Այս Դագարիսը հետագայում բազմիցս պարտության մատնեց հռոմայեցիների երկիրը ներխուժած հոներին և դուրս վանեց նրանց։ Նա շատ քաջ կռվող էր։ Ահա այս ձևով երկու կողմերն էլ միմյանց միջև հաշտություն հաստատեցին։

23. Շուտով երկու թագավորների դեմ իրենց հպատակների կողմից ոտնձգություններ արվեցին։ Այժմ ես կպատմեմ թե ինչպես. Կավադի որդի Խոսրովն ըմբոստ բնավորության տեր մարդ էր և նորամուծությունների չտեսնված սիրահար։ Դրա համար էլ նա անընդհատ խառնակ ու խռով վիճակում էր գտնվում և նույն դրության մեջ պահում ուրիշներին։ Նրա իշխանությունից դժգոհ պարսից մեծամեծները որոշեցին արքա դարձնել Կավադի տոհմից մի ուրիշ մարդու (նրանք շատ էին ցանկանում, որ իշխանությունը Զամեսը ստանա, սակայն աչքի վնասվածքի պատճառով օրենքը, ինչպես ասացի, նրան արգելում էր)։ Խորհրդակցելով, նրանք ամենանպատակահարմարը գտան իշխանությունը հանձնել [Զամեսի] որդի Կավադին՝ պապի անվանակցին, իսկ Զամեսն էլ, որպես երեխայի խնամակալ, թող իր ցանկության համաձայն կառավարի պարսից պետությունը։ Նրանք գնացին Զամեսի մոտ, հայտնեցին իրենց մտադրությունը և սկսեցին եռանդագին համոզել նրան՝ մասնակից լինել գործին։ Երբ վերջինս հավանություն տվեց այդ մտքին, նրանք սկսեցին Խոսրովի վրա հարձակվելու պատեհ առիթ որոնել։ Սակայն նրանց նպատակը հայտնի դարձավ արքային և գործը խափանվեց։ Խոսրովը Զամեսին ու նրա եղբայրներին, ինչպես նաև իր՝ [Խոսրովի] բոլոր եղբայրներին, ամբողջ արական սերնդով հանդերձ կոտորեց։ Նույն բախտին արժանացան պարսից այն մեծամեծները, որոնք գլխավորել էին կամ մասնակից էին եղել դավադրությանը։ Նրանց թվում էր նաև Ասպեբեդեսը, Խոսրովի քեռին։

[Խոսրովը] չկարողացավ սպանել Զամեսի որդի Կավադին, որովհետև նա դեռևս դաստիարակվում էր Ադերգուդունբադես խանարանգեսի մոտ։ [Խոսրովը] խանարանգեսին հրամայեց սպանել երեխային, և վստահ էր, որ իր կարգադրությունը կկատարվի, բայց հնարավորություն չուներ այլ կերպ նրան պարտադրելու։

Երբ խանարանգեսը ստացավ Խոսրովի հրամանը, շատ տխրեց և ողբաց, ապա արքայի կարգադրության շուրջը խորհրդակցեց իր կնոջ՝ Կավադի սնուցչի հետ։ Կինը լաց եղավ ամուսնու ոտքերն ընկնելով և խնդրեց չսպանել Կավադին։ Նրանք որոշեցին մանկանը թաքցնել մի ապահով վայրում և սնել, իսկ Խոսրովին իսկույն հայտնել, որ Կավադն սպանված է։ Եվ ահա այդպես հաղորդեցին արքային, իսկ Կավադին որոշված ձևով թաքցրին։ Գաղտնիքը ոչ ոք չգիտեր, բացի իրենց որդուց՝ Վարրամից և մի շատ հավատարիմ ստրկից։ Երբ ժամանակն անցավ և Կավադն հասակ առավ, խանարանգեսը երկյուղ կրելով, որ հանկարծ գործը կբացվի, Կավադին

դրամ տվեց և հրամայեց փախչել, հեռանալ ուր որ հնարավոր է ու փրկվել։ Խանարանգեսի արածը և՛ Խոսրովից, և՛ բոլորից գաղտնի մնաց։

Որոշ ժամանակ անց Խոսրովը մեծ զորքի գլուխ անցած ներխուժեց Կոլխիս երկիրը. այդ մասին ես ստորև գրելու եմ։ Նրա հետ էր խանարանգեսի որդին՝ Վարրամը, որին ուղեկցում էին ստրուկներ, այդ թվում և նա, որ գիտեր Կավադի գործի մասին։ Ահա այստեղ Վարրամը արքային պատմեց Կավադին վերաբերվող ամեն ինչ, անընդհատ ստրկին վկայակոչելով։ Խոսրովը անչափ զայրացավ ու վրդովվեց, որ իր ստրուկը՝ խանարանգեսը այդպիսի խաղ է խաղացել իր հետ, բայց ի վիճակի չլինելով ձերբակալել նրան, մտածեց հետևյալը։ Երբ նա Կոլխիս երկրից պատրաստվում էր հայրենիք վերադառնալ, նամակ գրեց խանարանդեսին, թե որոշել է ամբողջ զորքով ներխուժել հռոմայեցիների երկիրը, բայց ոչ թե մի տեղից, այլ պարսից զորքը երկու մասի բաժանած, այնպես, որ թշնամիների վրա կհարձակվեն Եփրատի և՛ ներքին, և՛ արտաքին կողմերից։ Զորքի մի մասը, հասկանալի է, ինքը պիտի գլխավորի դեպի թշնամու երկիրը, բայց մյուսի ղեկավարությունը, արքայական պատիվը, որ նա չէր ուզում զիջել իր ծառաներից որևէ մեկին, տալիս է խանարանդեսին՝ նրա առաքինությունների համար։ Արդ, անհրաժեշտ է, որ իր վերադարձի ժամանակ նա փութա հանդիպել իրեն, որպեսզի խորհրդակցեն և ինքը՝ արքան որոշի անել ինչ որ նպատակահարմար է զորքի համար և իր մարդկանց հրամայի հետևել իրեն։ Երբ խանարանդեսն այդ իմացավ, շատ ուրախացավ՝ արքայի իր հանդեպ ցուցաբերած նման պատվի համար։ Առանց կասկածելու իր գլխին գալիք փորձանքի մասին, նա իսկույն կատարեց կարգադրությունը։ Նա ի վիճակի չէր գիմանալ ճանապարհի դժվարություններին (մարդը շատ ծեր էր) և երբ սանձը ձեռքից բաց թողեց, ընկավ ձիու վրայից և ոտքը կոտրեց։ Բուժվելու համար նա ստիպված եղավ մնալ տեղում և հենց այդ վայրում էլ հանդիպեց արքային։ Խոսրովը նրան ասաց, որ անհնարին է այդպիսի ոտքով իր հետ արշավանքի դուրս գալ, որ նա պետք է մոտակա ամրոցներից մեկը գնա և ստանա բժիշկների օգնությունը։ Ահա այդ ձևով Խոսրովը նրան դեպի մահ ուղարկեց։ Նրան ուղեկցեցին այն մարդիկ, որոնք պետք է ամրոցում սպանեին նրան՝ պարսից անպարտելի ու հռչակավոր կորավարին, որը տասներկու բարբարոս ժողովուրդների վրա արշավելով, բոլորին ենթարկեց Կավադ արքային։ Ադերգուդունբադեսի սպանությունից հետո խանարանդեսի աստիճանը [նրա] որդի Վարրամն ստացավ։ Փոքր

անց, կամ ինքը՝ Զամեսի որդի Կավադը, կամ էլ մի ուրիշ ինքնակոչ Կավադ Բյուզանդիոն եկավ։ Այս Կավադը, իսկապես, շատ նման էր [Կավադ] արքային։ Հուստինիանոս կայսրը, թեև կասկածում էր նրա՝ Կավադ արքայի թոռը լինելու մեջ, այնուամենայնիվ մեծ սիրով ու պատվով ընդունեց։ Ահա այսպիսի վախճան ունեցան Խոսրովի դեմ ապստամբություն բարձրացրած պարսիկները։

Խոսրովը հետագայում Մեբոդեսին էլ սպանեց, հետևյալ պատճառով։ Մի կարևոր գործի ժամանակ [Խոսրովը] հրամայեց Զաբերգանեսին[171] կանչել Մեբոդեսին։ Իսկ Զաբերգանեսը Մեբոդեսի թշնամին էր։ Երբ [Զաբերգանեսն] եկավ [Մեբոդեսի] մոտ և տեսավ, որ նա կարգի է բերում իր զինվորներին, ասաց, որ արքան շտապ կանչում է նրան։ [Մեբոդեսը] պատասխանեց, որ գործն ավարտելուն պես անմիջապես կգնա, սակայն մյուսը, որ նրա հանդեպ թշնամաբար էր տրամադրված, հաղորդեց Խոսրովին, թե Մեբոդեսը չի ուզում այժմ գալ, ասելով, որ զբաղված է։ Խոսրովը զայրացած, իր մարդկանցից մեկին ուղարկեց Մեբոդեսի մոտ՝ հրամայելով, որ վերջինս գնա եռոտանու մոտ։ Ես այժմ կասեմ, թե դա ինչ է։ Արքունիքի առաջ մշտապես կանգնած է երկաթե մի եռոտանի։ Պարսիկներից որևէ մեկը, երբ իմանում է, որ արքան իր դեմ զայրացած է, իրավունք չունի ապաստան փնտրելու ո՛չ տաճարում, ո՛չ էլ այլ տեղում, և ոչ ոք չի համարձակվում նրան թաքցնել։ Նա պետք է այդ եռոտանու մոտ նստի և սպասի արքայի վճռին։ Ահա այդտեղ Մեբոդեսը ողորմելի վիճակում նստեց շատ օրեր, մինչև որ մեկը, Խոսրովի հրամանով, նրան ձերբակալեց ու սպանեց։ Ահա այսպես փոխհատուցեց Խոսրովն իր հանդեպ ցուցաբերած բարեգործությունները։

24. Հենց այդ նույն ժամանակներր Բյուզանդիոնում դեմոսն անակնկալ ապստամբություն բարձրացրեց[172]։ Այն չտեսնված ծավալ ստացավ ու մեծ վնաս հասցրեց և՛ դեմոսին, և՛ սենատին։ Ահա թե ինչպես։ Յուրաքանչյուր քաղաքում դեռ հնուց դեմոսը բաժանված էր երկու մասի՝ վենետների և պրասինոսների. շատ ժամանակ չէ, ինչ այդ անունների և [ձիարշավարանում] գրաված իրենց տեղի համար շռայլում են դրամները և մարմնական ամենադաժան պատիժների ենթարկվում։ Խայտառակ մահվան վտանգը նրանց համար նշանակություն չունի։ Նրանք կռիվ են սարքում իրենց հակառակորդների դեմ, առանց իմանալու, թե ինչի համար են իրենց վտանգի ենթարկում, բայց, ընդհակառակը, շատ լավ գիտեն, որ եթե նույնիսկ հաղթեն հակառակորդին, նրանց մնում է ոչ այլ ինչ, քան իսկույն բանտ

նետվել և տանջամահ լինել։ Միմյանց միջև թշնամությունը ծագում է առանց պատճառի, բայց մնում է հավիտյան, նա տեղի չի տալիս ո՛չ խնամիության, ո՛չ ազգակցության, ո՛չ էլ բարեկամության առաջ, նույնիսկ այն դեպքում, երբ տարբեր գույների պատկանող հակառակորդները եղբայրներ են։ Իրենց հաղթանակն ապահովելու գործում նրանք ոտնահարում են և՛ աստվածային, և՛ մարդկային [օրենքները], նրանց չի կանգնեցնում ամբարիշտ մեղսագործությունը աստծու դեմ, նրանց հոգսը չէ, որ օրենքներն ու պետությունը բռնաբարվում են ցեղակիցների կամ թշնամիների կողմից։ Եթե նույնիսկ պարենային դժվար դրություն լինի, եթե հայրենիքը ամենաանհրաժեշտ բաների կարիքը զգա, նրանք ամենևին չեն անհանգստանում, այլ մտածում են միայն ու միայն իրենց «կողմի» հաջողության մասին։ Այդպես են կոչվում նրանց կուսակցությունները։ Այդ խայտառակությանը մասնակից են դառնում նաև նրանց կանայք, որոնք ոչ միայն հետևում են իրենց ամուսիններին, այլ նաև իրերի բերմամբ հակադրվում նրանց, թեև իրենք՝ կանայք այլևս չեն հաճախում ներկայացումներին և չունեն որևէ այլ պատճառ։ Ես այդ երևույթին միայն մի անուն կարող եմ տալ՝ հոգեկան հիվանդություն։ Ահա այսպիսին է դրությունը քաղաքներում և յուրաքանչյուր դեմոսի մեջ։

Մեկ անգամ Բյուզանդիոնում քաղաքային իշխանության ներկայացուցիչները մի քանի խռովարարների տանում էին մահապատժի ենթարկելու։ Երկու [կողմերն] էլ համաձայնության գալով և դաշինք կնքելով, փախցնում են մահապարտներին և ապա մտնելով բանտ՝ բոլորին, ովքեր բանտարկվել էին խռովություն բարձրացնելու կամ որևէ այլ հանցագործության համար՝ ազատ արձակում, իսկ քաղաքային իշխանության ծառայողներին կոտորում առանց որևէ պատճառի։ Մասնակից չդարձած քաղաքացիները փախուստի դիմեցին դիմացի ափը։ Քաղաքը կրակի տրվեց, կարծես թշնամիների կողմից։ Վառվեցին ու ոչնչացան Սոֆիայի տաճարը, Զևքսիպպոսի բաղնիքը և կայսեր արքունիքը՝ պրոպիլեաներից սկսած մինչև Արեսի տուն կոչվածը, նաև Կոստանդնի անունը կրող և մինչև ագորան ձգվող մեծ ստոաները, հարուստ մարդկանց բազմաթիվ տներ և մեծ հարստություն։ Կայսրը, նրա կողակիցը[173] և մի քանի սենատորներ փակվեցին պալատի մեջ և ոչինչ չէին ձեռնարկում։ Դեմոսի նշանաբանն էր «Նիկա» [հաղթիր] բառը, այդ պատճառով էլ մինչև օրս այդ ապստամբությունը կրում է [Նիկա] անունը։

Այն ժամանակ արքունիքի էպարքոսը Հովհաննես Կապադովկա-

ցին էր, իսկ կայսեր խորհրդականը՝ քվեստորը[74], ինչպես հռոմայեցիներն են ասում՝ ծագումով պամփյուլացի Տրիբունիանոսը։ Սրանցից Հովհաննեսը չէր ուսանել ազատ գիտությունները և կրթություն չէր ստացել։ Նա բացի նամակ գրելուց ոչինչ չսովորեց, այն էլ շատ վատ։ Սակայն բնությունը նրան օժտել էր մեծ կարողությամբ՝ մեզ բոլորից շատ-շատ ավելի։ Նա մեծ հմտություն ուներ որոշելու, թե ինչ է անհրաժեշտ անել, ամենադժվար հարցերի լուծումը գտնելու։ Նա ամենաստոր մարդն էր և իր ընդունակությունները օգտագործում էր [ստորության]համար։ Նրա համար ոչ մի կարևորություն չունեին, ո՛չ աստծո խոսքը, ո՛չ մարդկային ամոթը։ [Իր] շահի համար նա պատրաստ էր բազմաթիվ մարդկանց կյանքից զրկել, ամբողջ քաղաքներ ավերել։ Կարճ ժամանակամիջոցում մեծ հարստության տիրանալով, իրեն նվիրեց չափ ու սահման չունեցող շվայտության. մինչև ճաշի ժամանակը կողոպտում էր հպատակների սեփականությունը, իսկ դրանից հետո տրվում հարբեցողության և մարմնական խայտառակությունների։ Նա չէր կարողանում իրեն զսպել, ուտում էր մինչև փսխելը, միշտ պատրաստ էր դրամ գողանալու, իսկ առավել ևս շռայլելու և ծախսելու։ Ահա այսպիսին էր Հովհաննեսը։ Իսկ Տրիբունիանոսը ընդունակ մարդ էր, բարձր զարգացում ստացած, առավել քան որևէ մեկը, բայց միաժամանակ սարսափելի դրամասեր, միշտ պատրաստ շահույթի համար ոտնակոխ անել արդարությունը. Նա ամեն օր օրենքներ էր չեղյալ հայտարարում և [նորերը] հրապարակում, և՛ մեկ, և՛ մյուս դեպքում գրամ կորզելով նրանցից, ովքեր այդ բանի կարիքն ունեին։

Քանի դեմոսի մեջ պայքարը գնում էր գույների շուրջը, խոսք չկար այդ երկուսի՝ [Հովհաննեսի և Տրիբունիանոսի] պետության հանդեպ գործած հանցագործությունների մասին, բայց երբ [գույները] ինչպես ասվեց, համաձայնության եկան և ապստամբություն բարձրացրին, բացահայտ կերպով ամբողջ քաղաքով մեկ նրանց էին հայհոյում և փնտրում՝ սպանելու նպատակով։ Կայսրը, ցանկանալով սիրաշահել դեմոսին, երկուսին էլ անհապաղ պաշտոնանկ արեց։ Նա արքունիքի էպարքոս նշանակեց պատրիկ Փոկասին, մի շատ խոհեմ մարդու և արդարության մեծ պաշտպանի, իսկ քվեստորի պաշտոնը տվեց Բասիլիդեսին, որը պատրիկների մեջ աչքի էր ընկնում իր ուղղամտությամբ և փորձառությամբ։ Հակառակ այդ բոլորին, ապստամբությունը նրանց ժամանակ է՛լ ավելի բորբոքվեց։ Հուստինիանոս կայսրը ապստամբության հինգերորդ օրը ուշ երեկոյան նախկին կայսր Անաստասիոսի քրոջորդիներ՝ Հյուպատիոսին և

Պոմպեոսին հրամայեց շուտ տուն գնալ, կամ որովհետև կասկածում էր, որ նրանք որևէ ոտնձգություն կկատարեն իր կյանքի դեմ, կամ էլ ինչպես ճակատագիրը ինքը մղում էր դեպի այդ։ Նրանք վախենալով, որ հանկարծ դեմոսը բռնությամբ իրենց կայսր կհայտարարի, մի բան, որ ինչպես տեղի ունեցավ, ասացին, որ լավ չէ իրենց կայսեր լքել այսպիսի մեծ վտանգի ժամին։ Լսելով այդ, Հուստինիանոս կայսեր կասկածը է՛լ ավելի խորացավ և նրանց հրամայեց իսկույն հեռանալ։ Այսպիսով, երկուսն էլ վերադարձան տուն և որովհետև արդեն գիշեր էր, այնտեղ հանգստանում էին։

Հաջորդ օրը արևածագին դեմոսն իմացավ, որ երկուսն էլ հեռացվել են պալատից։ Ժողովուրդը դիմեց նրանց, կայսր հռչակեց Հյուպատիոսին և բերեց նրան հրապարակ, որպեսզի նա իշխանությունը վերցնի իր ձեռքը։ Հյուպատիոսի կինը՝ Մարիան, մի շատ խոհեմ և ողջամիտ անձնավորություն, բռնեց ամուսնուց և չէր թողնում նրան, ողբում ու աղաղակում էր, դիմում բոլոր մերձավոր մարդկանց օգնության, [ասելով], որ դեմոսը նրան մահվան է առաջնորդում։ Բայց ամբոխի ճնշման ներքո, նա ակամա բաց թողեց ամուսնուն, որին ժողովուրդը, հակառակ նրա կամքի, տարավ Կոստանդինի հրապարակը և (որովհետև նրա մոտ չկար ոչ թագ, ոչ էլ թագավորական որևէ այլ բան, ինչ սովորաբար կայսրն է հագնում), մի ոսկե շղթա գլխին դնելով, նրան հռոմայեցիների կայսր հայտարարեց։ Այնտեղ եկան նաև սենատորներ, որոնք չէին մնացել կայսեր արքունիքում։ Կարծիքներ էին արտահայտվում, թե պետք է գրոհել պալատի վրա։ Սենատոր Օրիգենեսը հանդես գալով ասաց. «Ներկա իրավիճակից, »ով հռոմայեցիներ, առանց դենքի հնարավոր չէ ելք գտնել։ Հայտնի »է, որ մարդիկ շատ մեծ կարևորություն են տալիս պատերազմին և »թագավորությանը։ Արդ, կարևոր գործերը հնարավոր չէ լուծել կարճ »ժամանակում, խոհեմություն է պետք ու քրտնաջան աշխատանք և »մարդիկ դրանց [լուծման] են հասնում երկար ժամանակի ընթաց»քում։ Եթե մենք հարձակվենք թշնամու վրա, մեր գործը շատ մեծ »վտանգի կենթարկենք, կթողնենք, որ մեր բախտը վճռվի ամենա»կարճ ժամանակվա մեջ։ Բայց բոլոր դեպքերում էլ մենք կամ եր»կրրպագելու ենք բախտին, կամ էլ հայհոյելու նրան, որովհետև »շտապ կարգով ձեռնարկված ամենակարևոր գործերի ելքը գտնվում »է բախտի ձեռքում։ Եթե հանգիստ գործենք, ապա եթե ուզենք էլ, »մենք չենք կարողանա Հուստինիանոսին բռնել պալատում, որով»հետև նա սիրտի նպատակահարմար գտնի, եթե առիթը ներկայանա, »հնարավորին չափ շուտ փախչել։ Որպես կանոն արհամարհված

»իշխանությունը օրեցօր ուժասպառ է լինում և փուլ է գալիս։ Արդ,
»մենք ունենք և այլ պալատներ, Պլակիլլիանա և Հելենեի կոչված-
»ները։ Ահա այդտեղից է պետք, որ նոր կայսրը մղի պատերազմը և
»ամեն ինչ ղեկավարի հնարավոր հաջողությամբ»։ Օրիգենեսն այս-
քանն ասաց, իսկ ամբոխը,՝ ըստ իր սովորության, ավելի եռանդով
գործի անցավ և նպատակահարմար գտավ չհապաղել։ Հյուպատի-
ոսն էլ (չէ՞ որ իր գլխին պետք է փորձանք գար), հրամայեց անմի-
ջապես շարժվել դեպի ձիարշավարան։ Ոմանք կարծում են, թե նա
դիտմամբ այնտեղ գնաց, որովհետև կայսեր հետ լավ հարաբերու-
թյունների մեջ էր։

Կայսեր շուրջ եղած մարդիկ մտածում էին, թե որն է նպատա-
կահարմար՝ մնալը, թե նավերը նստելն ու փախուստի դիմելը։ Այդ
հարցի շուրջ շատ թեր ու դեմ կարծիքներ արտահայտվեցին։ Իսկ
Թեոդորա թագուհին ասաց այսպես. «Այժմ ժամանակ չէ ասել, թե
»կինը չպետք է հանդգնի տղամարդկանց մեջ քաջություն ցուցաբե-
»րել կամ տատանողական վիճակում գտնվող մարդկանց այս կամ
»այն անելու մասին խորհուրդներ տալ։ Երբ հասնում է ամենաօրհա-
»սական պահը, մարդիկ պետք է միայն մի բանի մասին մտածեն՝
»ինչպես լավագույն կերպով տնօրինել գործերը։ Ես գոնե կարծում
»եմ, որ այժմ, ինչպես երբեք, փախուստը ձեռնտու չէ, թեև այն
»փրկություն է բերում։ Լույս աշխարհ եկած մարդը վերջը պետք է
»որ մահանա. թագավոր դարձողի համար անտանելի է փախստական
»լինելը։ Ես չեմ ուզում զրկվել այս ծիրանուց, ոչ էլ ապրել այն օրը,
»երբ հանդիպողներն ինձ տիրուհի չեն անվանելու[115]։ Եթե դու որոշել
»ես փրկվել, ով կայսր, դա դժվար չէ։ Մենք շատ դրամ ունենք, ահա
»ծովը, ահա նավերը։ Սակայն տե՛ս, որ փրկվելուց հետո չգերադա-
»սես մահը՝ այդպիսի փրկությունից։ Ես սիրում եմ հին ասացվածքը,
»թե թագավորությունը լավ պատանք է»։ Երբ այդ ասաց թագուհին,
բոլորը սրտապնդվեցին, արիությամբ լցվեցին. նրանք խորհրդակ-
ցում էին ինչպես պաշտպանվել, եթե իրենց վրա հարձակում գործեն։
Բոլոր զինվորները, նաև նրանք, ովքեր ծառայում էին արքունիքում,
կայսեր հանդեպ վատ էին տրամադրված, չէին ուզում բացահայտ
գործի ձեռնարկել, այլ սպասում էին, թե ապագան ինչ ցույց կտա։
Կայսրը իր ամբողջ հույսը դրել էր Բելիսարիոսի և Մունդոսի վրա,
որոնցից Բելիսարիոսը նոր էր վերադարձել պարսկական պատերազ-
մից՝ իր հետ բերելով ուժեղ զորամաս։ Նա ուներ նաև մարտերի և
պատերազմական վտանգների մեջ կոփված նիզակակիրների և վա-
հանակիրների մի ամբողջ բազմություն։ Իսկ Մունդոսը, որ իլլիրա-

ցիների զորավարն էր նշանակված, բախտի բերմամբ, մի գործի համար. բարբարոս էրուլների գլուխն անցած Բյուզանդիոն էր կանչվել։

Հյուպատիոսը, հասնելով ձիարշավարան, բարձրացավ օրենքով կայսեր հատկացված տեղը ու նստեց արքայական գահի վրա, որտեղից կայսրը սովորաբար դիտում էր ձիարշավի մրցումներն ու մարմնամարզական խաղերը։ Մունդոսը դուրս եկավ պալատի այն դարպասից, որտեղ գտնվում է, այսպես կոչված, խխունջը[176], իր կատարյալ շրջանաձև լինելու պատճառով։ Բելիսարիոսն սկզբում շարժվեց ուղիղ Հյուպատիոսի և կայսերական գահի վրա. երբ մոտեցավ մերձակա շենքին, որտեղ հնից գտնվում է զինվորական պահակախումբը, բարձրաձայն գոչեց ու հրամայեց զինվորներին, որ անմիջապես բացեն դռները, որպեսզի նա շարժվի բռնատիրոջի վրա։ Զինվորները մտադիր լինելով ոչ մեկի դեմ չկռվել, մինչև որ երկուսից մեկի հաղթանակը բացահայտ չլինի, ձևացնում էին, թե չեն լսում։ Բելիսարիոսը վերադառնալով կայսեր մոտ պնդում էր, որ դրությունն անհուսալի է, որովհետև նույնիսկ այն զինվորները, որոնց վստահված է պալատի պահպանությունը, նրա դեմ ապստամբություն են բարձրացրել։ Կայսրը հրամայեց շարժվել դեպի Խալկե և այնտեղ գտնվող պրոպիլեաները։ Բելիսարիոսը հազիվ հազ, մեծ վտանգներով և դժվարություններով, ավերակների և կիսավառ վայրերի միջով, կարողացավ հասնել ձիարշավարանին։ Երբ մոտեցավ Վենետական կոչված ստոային, որը գտնվում էր կայսեր գահի աջ կողմը, որոշեց նախ և առաջ շարժվել Հյուպատիոսի վրա, բայց որովհետև այնտեղ տանող դարպասը փոքր էր, ապա նաև փակված և ներսից պահպանվում էր Հյուպատիոսի զինվորների կողմից, վախեցավ, որ հանկարծ նեղ վայրում դեմոսը կհարձակվի, և իրեն ու իր բոլոր մարդկանց կոտորելով, առանց դժվարության կշարժվի կայսեր վրա։ Դրա համար նա գտավ, որ պետք է շարժվել դեմոսի վրա, որն անհամար բազմությամբ գտնվում էր ձիարշավարանում և խառնիճաղանջ վիճակում իրար էր հրմշտկում։ Պատյանից քաշելով թուրը և իր մարդկանց հրամայելով նույնն անել, նա գոռալով արագորեն շարժվեց նրա վրա։ Դեմոսը, որը խառնիխուռն կուտակված էր, երբ տեսավ քաջ ու պատերազմում փորձված զրահակիր զինվորներին, որոնք անխնա սրախողխող էին անում պատահողին, փախուստի դիմեց։ Բարձրացավ մեծ աղաղակ, ինչպես պետք էր սպասել։ Մոտիկ գտնվող Մունդոսը, որն ուզում էր գործի անցնել (նա շատ խիզախ ու անվեհեր մարդ էր), բայց չգիտեր ինչ անի ներկա պայմաններում, երբ իմացավ որ Բելիսարիոսը մարտի է բռնված, անմիջապես ձիար-

շավարան մտավ՝ Նեկրա կոչված մուտքից։ Հյուպատիոսի ապրստամբներն այն ժամանակ երկու կողմից ուժեղ հարվածներ ստանալով կոտորվում էին։ Երբ դեմոսը գլխովին դիմեց փախուստի, իսկ շատերն էլ կոտորվել էին, Բորայիդեսն ու Հուստոսը՝ Հուստինիանոս կայսեր եղբորորդիները, առանց որևէ դիմադրության գահից իջեցրին Հյուպատիոսին և Պոմպեյոսի հետ միասին հանձնեցին կայսեր։ Այդ օրը դեմոսից սպանվեց ավելի քան երեսուն հազար մարդ։ Կայսրը հրամայեց խիստ բանտարկության մեջ պահել [Հյուպատիոսին և Պոմպեյոսին]։ Այնտեղ Պոմպեյոսը լաց էր լինում և ողորմածություն աղերսում, որովհետև մինչ այդ նա նման փորձանքներ չէր տեսել։ Իսկ Հյուպատիոսը պախարակում էր նրան և ասում, թե անարդարացի կերպով սպանվողները չպետք է ողբան։ Իրենք նախ ակամա, դեմոսի բռնության առաջ տեղի տվեցին, իսկ այնուհետև գնացին ձիարշավարան՝ կայսեր դեմ չունենալով ոչ մի չար նպատակ։ Զինվորները հաջորդ օրը սպանեցին երկուսին էլ և նրանց դիակները նետեցին ծովը։ Կայսրը պետության օգտին գրավեց նրանց և նրանց համախոհ բոլոր սենատորների ունեցվածքը։ Սակայն հետո բոլորին, այդ թվում նաև Հյուպատիոսի և Պոմպեյոսի երեխաներին, վերադարձրեց այն պաշտոնները, որոնք նախապես նրանք ունեին և այն հարստությունը, որը դեռ չէր բաժանել իր հավատարիմ մարդկանց։ Ահա այսպիսի վախճան ունեցավ Բյուզանդիոնի ապստամբությունը։

25. Տրիբունիանոսն ու Հովհաննեսը, որոնք պաշտոնանկ էին արվել, որոշ ժամանակ անց երկուսն էլ ստացան իրենց նախկին պաշտոնները։ Տրիբունիանոսը դեռ երկար ապրեց և ապա հիվանդանալով վախճանվեց՝ պատվի ու [փառքի] մեջ. ոչ ոքի կողմից նա վատություն չտեսավ։ Նա քաղցր լեզու ուներ և դուրեկան մարդ էր, դրամասիրության կիրքը ծածկելու մեջ շատ ընդունակ։ Իսկ Հովհաննեսը (սա բոլորի համար դաժան, կոպիտ մարդ էր, հանդիպածին վնաս էր հասցնում և առանց որևէ հիմքի հափշտակում ունեցվածքը), տաս տարի իշխանության գլուխ մնալով ի վերջո ստացավ իր ապօրինի գործունեության արժանի և արդար պատիժը։ Ահա ինչպես։

Բոլորից ավելի նրան չէր կարողանում տանել Թեոդորա թագուհին։ Նա իր ապօրինի գործողություններով վիրավորում էր այդ կնոջը, չէր մտածում սիրալիր կերպով և շնորհքով նրա սիրտն առնել. ընդհակառակը բացահայտ կերպով նրան ամբաստանում էր կայսեր առաջ՝ առանց քաշվելու կամ ամաչելու այն անսովոր սիրուց և գուրգուրանքից, որ կայսրը տածում էր դեպի Թեոդորան։ Թագու-

հին, իմանալով այդ մասին, որոշեց սպանել Հովհաննեսին, բայց ոչ մի հնարավորություն չուներ, որովհետև Հուստինիանոսը նրան շատ էր հարգում։ Հովհաննեսը, իմանալով իր նկատմամբ Թագուհու նպատակների մասին, շատ վախեցավ։ Ամեն գիշեր, երբ մտնում էր ննջասենյակը քնելու, կասկածում էր, թե բարբարոսներից որևէ մեկը իրեն սպանելու է ուղարկված և անընդհատ սենյակից դուրս էր նայում, դռները ստուգում և մնում անքուն, թեև հազարավոր հավատարիմ նիզակակիրներ և վահանակիրներ ուներ, մի բան, որ իրենից առաջ և ոչ մի [էպարքոսի] չէր վիճակվել։ Բայց լուսանալուց հետո մոռանում էր աստվածային և մարդկային արհավիրքները և բոլոր հռոմայեցիների համար մասնավոր և պետական գործերում փորձանք դառնում։ Նա սերտ շփման մեջ էր կախարդողների հետ և հավատում էր անօրեն գուշակություններին, որոնց համաձայն ինքը տիրանալու էր ինքնակալական իշխանությանը։ Նա բացարձակապես խելքը կորցրել էր և երազում էր թագավորությունն ստանալ։ Նրա անառակությունն ու անօրինությունը ոչ չափ ունեին, ոչ սահման։ Նրա համար չկար աստված և եթե նույնիսկ գնում էր որևէ սրբատեղի՝ աղոթելու և գիշերն անքնությամբ անցկացնելու, նա ոչինչ չէր անում քրիստոնյաների սովորությունների համաձայն, այլ հագնելով տրիբոնիոնը, որը վայել է հին հավատքի քրմին, հավատք, որն այժմ անվանում են հեթանոսական, ամբողջ գիշեր արտասանում էր իր սերտած անօրեն խոսքերը, որպեսզի կայսեր կամքը առավել ևս իրեն ենթարկվի, իսկ ինքն էլ ոչ ոքից վնաս չկրի։

Այդ միջոցին Բելիսարիոսն Իտալիան գրավելուց հետո կանչվեց կայսեր կողմից՝ պարսիկների վրա արշավելու համար և իր կնոջ Անտոնինեի հետ եկավ Բյուզանդիոն։ Նա արդարև բոլորի համար պատվական և շատ հարգելի մարդ էր և միայն Հովհաննեսն էր, որ նրա հանդեպ վատ էր տրամադրված և դավ էր նյութում։ Դրա պատճառը ոչ այլ ինչ էր, քան այն, որ բոլորը իր հանդեպ թշնամաբար էին տրամադրված, իսկ Բելիսարիոսն արժանացել էր ամենքի սիրուն։ Հռոմայեցիների հույսերը նրա վրա էին և նա Բյուզանդիոնում թողնելով իր կնոջը, արշավեց պարսիկների վրա։ Բելիսարիոսի կին Անտոնինեն, (որն ամեն մի դավի ընդունակ էր), ուզենալով սիրաշահել Թագուհուն, հետևյալ միտքը հղացավ։ Հովհաննեսը Եվփեմիա անունով մի դուստր ուներ, որն աչքի էր ընկնում իր համեստությամբ, բայց լինելով շատ երիտասարդ, կարող էր հեշտությամբ խաբվել։ Հայրը նրան շատ էր սիրում, որովհետև նա իր միակ երեխան էր։ Ահա Անտոնինեն բաղում օրեր փայփայեց նրան և երկար ժամանակ

կարողացավ ձևացնել, թե ինքը նրա բարեկամն է և չի վարանում
նրան իր գաղտնիքներին մասնակից դարձնել։ Մի օր, երբ մենակ
էին սենյակում, ձևացրեց, որ ողբում է իր բախտը, որ Բելիսարիոսը
թեպետ հռոմայեցիների պետության սահմանները նախկինից շատ
ավելի ընդարձակեց, երկու թագավորների գերի վերցրեց[177] և այնքան
հարստություն Բյուզանդիոն բերեց, բայց հանդիպեց Հուստինիանո-
սի ապերախտության։ Նա անարդարացիության մեջ էր մեղադրում
պետությանը։ Այդ խոսքից ուրախացած Եվփեմիան (որովհետև նա
էլ, վախենալով Թադուհուց, չէր կարող տանել ներկա իշխանությու-
նը), ասաց. «Բայց, ո՛վ ամենասիրելիս, մեղավորը դուք եք, որովհե-
»տև ուժր ձեր ձեռքում ունենալով, չեք ուզում օգտվել նրանից»։ Ան-
տոնինեն պատասխանեց ու ասաց. «Մենք չենք կարող, ո՛վ դուստր,
»միայն բանակի վրա հենվելով ապստամբության ձեռնարկել,
»առանց ներսի մարդկանց օգնության։ Եթե քո հայրն ուզենար [մեզ
»օգնել], այն ժամանակ հեշտ էր՝ աստուծո կամքով ձեռնարկել մեր
»ցանկացած գործին»։ Այդ լսելով, Եվփեմիան խոստացավ սիրով
ընդառաջել, գնաց ուղիղ հոր մոտ և հայտնեց այդ մասին։ Վերջինս
ուրախացավ (որովհետև նա ենթադրում էր, որ պատգամախոսի գու-
շակությունները՝ թագավորության տիրանալու մասին հենց այդ
ճանապարհով են իրականանալու) և խոստացավ անմիջապես գործի
անցնել, իսկ դստեր հրամայեց այնպես անել, որը ինքը հաջորդ օրը
հանդիպի Անտոնինեին և համաձայնության գա։ Անտոնինեն, իմա-
նալով Հովհաննեսի կարծիքը և ցանկանալով այդ մարդուն ոչ մի
կասկած չներշնչել, ասաց, որ ներկա դեպքում նրա համար ձեռնտու
չէ հանդիպել, որովհետև հանկարծ կասկած կառաջանա և կխափան-
վի նախապատրաստվող գործը։ Նա ասաց, որ շուտով իրեն ուղար-
կելու են արևելք՝ Բելիսարիոսի մոտ և ահա երբ ինքը, հեռանալով
Բյուզանդիոնից կհասնի այն արվարձանը (որը կոչվում է Հռուփի-
նիանե և պատկանում է Բելիսարիոսին), Հովհաննեսը իրեն պատ-
վելու և ճանապարհելու պատրվակի տակ թող գա այնտեղ և նրանք
կխոսեն ամեն ինչի մասին ու համաձայնության կգան։ Հովհաննեսն
այդ նպատակահարմար գտավ և նրանք որոշեցին գործելու ժամա-
նակը։ Իսկ Թագուհին ամեն ինչի մասին Անտոնինեից տեղյակ,
հավանություն էր տալիս նրա նախաձեռնությանը և առավել ևս
գրգռում նրա պատրաստակամությունը։

Սահմանված օրը Անտոնինեն, հրաժեշտ տալով Թագուհուն, հե-
ռացավ քաղաքից և հասավ Հռուփինիանե, որտեղից հաջորդ օրը
պետք է ճանապարհ ընկներին դեպի արևելք։ Գիշերն այնտեղ եկավ

Հովհաննեսը՝ որոշումը կատարելու համար։ Թագուհին իր ամուսնու առաջ ամբաստանեց Հովհաննեսին՝ իշխանությունը հափշտակելու ոտնձգությունների մեջ և ներքինի Նարսեսին ու պալատի կայազորի պետ Մարկելոսին բազմաթիվ զինվորներով ուղարկեց Հռուփինիանե՝ իրադրության հետ ծանոթանալու համար և եթե տեսնեն, որ Հովհաննեսը փորձում է ապստամբություն բարձրացնել, սպանեն նրան և անմիջապես վերադառնան։ Եվ ահա նրանք ուղարկեցին այդ գործի համար։ Պատմում են, որ կայսրը իմանալով այդ իրադարձությունների մասին, Հովհաննեսին հավատարիմ մարդկանցից մեկին նրա մոտ ուղարկեց, թույլ չտալու համար, որ նա որևէ կերպ գաղտնի հանդիպի Անտոնինեի հետ։ Բայց Հովհաննեսը (չէ՞ որ նրա գլխին պետք է փորձանք գար) կայսեր խորհուրդը չկատարելով, կես գիշերին հանդիպեց Անտոնինեի հետ մի ցանկապատի մոտ, որի հետևում [Անտոնինեն] թաքցրել էր Նարսեսի և Մարկելլոսի մարդկանց, որպեսզի նրանք լսեն նրանց խոսակցությունը։ Ահա այստեղ Հովհաննեսը բացահայտ կերպով համաձայնեց հարձակման անցնել և այդ հաստատեց ամենասարսափելի երդումներով։ [Այն ժամանակ] Նարսեսն ու Մարկելլոսը հանկարծակի հայտնվեցին։ Բնականաբար աղմուկ բարձրացավ և Հովհաննեսի նիզակակիրները (որոնք մոտ էին), անմիջապես վրա հասան։ Նրանցից մեկը սրով հարվածեց Մարկելոսին առանց իմանալու, թե նա ով է և այդպիսով Հովհաննեսին հաջողվեց նրանց հետ միասին փախուստի դիմել և շտապ քաղաք հասնել։ Ինձ թվում է, որ եթե նա խիզախեր անմիջապես գնալ կայսեր մոտ, նրա կողմից ոչ մի պատիժ չէր ստանա։ Բայց նա, ապաստանելով եկեղեցում, հնարավորություն տվեց թագուհուն իրականացնելու իր վատ մտադրությունները նրա անձի նկատմամբ։

Այն ժամանակ [Հովհաննեսը] էպարքոսից վերածվեց հասարակ մարդու[118] և փոխադրվեց մի այլ եկեղեցի, որը կառուցված է Կիզիկոս քաղաքի արվարձաններից մեկում։ Կիզիկոսցիներն այն անվանում են Արտակես։ Այստեղ նա բռնի հոգևորական [օծվեց], բայց ոչ եպիսկոպոս, այլ երեց և վերանվանվեց Պետրոս։ Բայց նա բոլորովին չէր ուզում հոգևորականի պաշտոնը վարել, որովհետև այդ կարող էր հետագայում խոչընդոտ դառնալ նորից իշխանության հասնելու։ Նա դեռ չէր հրաժարվել իր նպատակներից։ [Նրա] ունեցվածքը իսկույն գրավվեց, սակայն կայսրը դրա մեծ մասը թողեց նրան, որովհետև դեռ նրան խղճում էր։ Եվ ահա Հովհաննեսն աներկյուղ, ունենալով մեծ հարստություն՝ ինչքան որ կարողացել էր թաքցնել և ինչքան որ կայսեր կամքով իրեն էր թողնվել, ցոփ

կյանք էր վարում և այդ իրավիճակը պետք է բարեհաջող համարեր, եթե ինարկե խելոք մտածեր: Բոլոր հռոմայեցիները նրա դեմ շատ էին վրդովված, որ լինելով բոլոր դևերից ամենավատը, անարժանաբար նախկինից էլ ավելի բարեկեցիկ կյանք է վարում: Բայց աստված չթողեց, որ Հովհաննեսի պատիժն այդքանով վերջանա և նրա համար պատրաստեց ավելի ծանրը: Նա կրեց այդ պատիժը հետևյալ կերպ:

Կիզիկոսում կար Եվսեբիոս անունով մի եպիսկոպոս, որից բոլորն էլ դժգոհ էին՝ ոչ պակաս, քան Հովհաննեսից: Կիզիկոսցիները բողոքեցին նրա դեմ կայսեր առաջ և կոչ արեցին դատի տալ: Նրանց դիմումներն ապարդյուն անցան, որովհետև Եվսեբիոսը շատ ավելի հզոր էր, և ահա մի քանի երիտասարդներ, իրար հետ համաձայնության գալով, Կիզիկոսի հրապարակում սպանեցին նրան: Հովհաննեսը մեծ թշնամություն էր տածում դեպի Եվսեբիոսը, այդ պատճառով չարագործության մեջ սկսեցին կասկածել հենց նրան: Սենատորներ ուղարկվեցին այնտեղ՝ հետաքննելու ոճրագործությունը: Նրանք նախ և առաջ Հովհաննեսին բանտ նետեցին և նրան, որ եղել էր հզոր էպարքոս, պատրիկ էր դարձել և բարձրացել մինչև հյուպատոսական աթոռը, որից բարձր [պատիվ] հռոմայեցիների պետության մեջ գոյություն չունի, ահա նրան գողի կամ ավազակի պես մերկ կանգնեցրին և հրամայեցին մեջքին հարվածներ իջեցնել, ստիպեցին պատմել իր գործունեության մասին: Հովհաննեսին բավարար հիմքեր չունեին մեղադրելու Եվսեբիոսի սպանության մեջ, բայց աստծու արդարադատությունը նրանից պահանջում էր մարդկության դեմ գործած իր բոլոր չարագործությունների հատուցումը: Գրավելով նրա ամբողջ ունեցվածքը, մերկ, մեկ հիմատիոնով միայն, այն էլ մի քանի օբոլոս արժող կոշտ կտորից, նավ նստեցրին: Նրան ուղեկցողները ստիպում էին հանդիպած նավահանգստում մարդկանցից ծնկաչոք հաց կամ դրամ մուրալ: Ահա ամբողջ նավարկության ընթացքում մուրացկանություն անելով, նա բերվում է Եգիպտոս, Անտինոոսի [քաղաքը]: Արդեն երեք տարի է, ինչ նրան պահում են բանտում: Հակառակ իր կրած նման տառապանքներին, նա ոչ միայն չի հրաժարվել թագավորությանը [տիրանալու] իր հույսից, այլ աղեքսանդրացիներից ոմանց փորձել է մեղադրել պետությանը պարտական լինելու մեջ:

Ահա Հովհաննես Կապադովկացին տասնամյա քաղաքական գործունեությունից հետո այդպիսի պատժի արժանացավ:

26. Այն ժամանակ կայսրը Բելիսարիոսին նորից արևելքի զորա-

վար նշանակեց և ուղարկելով Լիբիա՝ տիրացավ այդ երկրին, որի մասին հետագա գլուխներում կասվի։ Երբ այդ մասին իմացան Խոսրովն ու պարսիկները, շատ զայրացան և զղջացին, որ հռոմայեցիների հետ խաղաղություն են կնքել, որովհետև համոզվեցին, որ վերջիններս շատ են հզորացել։ Խոսրովը դեսպաններ ուղարկեց Բյուզանդիոն, պատվիրելով շնորհավորել Հուստինիանոս կայսեր և կատակի ձևով պահանջել Լիբիայից ձեռք բերված ավարի մի մասը, այն պատճառաբանությամբ, որ Հուստինիանոսը վանդալներին չէր հաղթի, եթե պարսիկները հաշտություն կնքած չլինեին նրա հետ։ Հուստինիանոսը դրամ նվիրեց Խոսրովին և դեսպաններին ետ ուղարկեց։

Իսկ Դարա քաղաքում այսպիսի մի դեպք պատահեց։ Այնտեղ էր գտնվում հետևակում ծառայող ոմն Հովհաննես։ Սա ոչ բոլոր զինվորների համաձայնությամբ, այլ միայն մի քանիսի, բռնությամբ տիրացավ քաղաքին։ Նստելով պալատում, կարծես միջնաբերդում, օրըստօրե ամրապնդում էր իր իշխանությունը, և եթե այն ժամանակ պարսիկների և հռոմայեցիների միջև խաղաղություն չլիներ, սարսափելի աղետ էր պայթելու հռոմայեցիների գլխին։ Բայց, ինչպես ասացի, այս դեպքում խանգարեց հաշտությունը։ Խռովության չորրորդ օրը իրար մեջ համաձայնության եկած զինվորները, քաղաքի քահանա Մամասի և մեծամեծ քաղաքացիներից մեկի՝ Անաստասիոսի խորհրդով, կեսօրին պալատ բարձրացան, յուրաքանչյուրն իր հիմատիոնի տակ դաշույն թաքցրած։ Նրանք նախ կանանոցը տանող դարպասի մոտ հանդիպելով մի քանի նիզակակիրների, տեղն ու տեղը սպանեցին և ապա մտնելով տղամարդկանց սենյակը, հարձակվեցին բռնատիրոջի վրա։ Ոմանք պատմում են, որ այդ արեցին ոչ թե զինվորները, այլ մի ապխտավաճառ. երբ վերջիններս դեռևս սարսափահար բակում էին գտնվում, նա դաշույնով ներս թռավ և հանդիպելով Հովհաննեսին՝ անակնկալ հարվածեց։ Ստացած վերքը թեթև լինելով, Հովհաննեսը խուճապահար փախուստի դիմեց և անսպասելիորեն ընկավ վերոհիշյալ զինվորների ձեռքը, որոնք ձերբակալեցին նրան, անմիջապես այրեցին պալատը, որպեսզի խռովարարների համար այլևս ոչ մի հույս չմնա, իսկ նրան շղթայակապ բանտ նետեցին։ Նրանցից մեկը, վախենալով, որ հանկարծ զինվորներն, իմանալով բռնատիրոջի կենդանի լինելու մասին, քաղաքում նորից խռովություն կբարձրացնեն, սպանում է Հովհաննեսին և այդ ձևով վերջ տալիս խռովությանը։ Ահա այսպես վերջացավ այդ բռնատիրական փորձը։

# «ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ» ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

## [ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ]

1. Որոշ ժամանակ անց, երբ Խոսրովն իմացավ, որ Բելիսարիոսն սկսել է Իտալիան ևս Հուստինիանոս կայսեր հպատակեցնել[1], այլևս չկարողացավ իրեն զսպել և համոզիչ առիթ էր փնտրում հաշտության պայմանագիրը չեղյալ հայտարարելու։ Այդ բանում նա համաձայնության եկավ Ալամունդարոսի[2] հետ և նրան առաջադրեց պատերազմ հրահրել։ Վերջինս սկսեց մեղադրել Արեթասին[3] իր սահմանները խախտելու մեջ, և հաշտության պարագաներում կռվի բռնվեց նրա հետ ու սկսեց ասպատակել հռոմայեցիների երկիրը։ Նա ասում էր, թե ինքը չի խախտում պարսիկների և հռոմայեցիների հաշտության պայմանագիրը[4], որովհետև [պայմանագիրը կնքող] երկու կողմից էլ ոչ մեկը իրեն չի հիշատակել նրա մեջ։ Եվ դա իսկապես այդպես էր։ Հաշտության պայմանագրի մեջ երբեք սարակինոսների մասին խոսք չէր եղել, որովհետև նրանք դիտվում էին որպես պարսիկների և հռոմայեցիների հպատակներ։ Սարակինոսների վեճի առարկա երկիրը կոչվում էր Ստրատա[5] և գտնվում Պալմիրա քաղաքից[6] հարավ։ Այնտեղ ոչ մի ծառ կամ հացահատիկ չի աճում (վայրն անչափ արևակեզ է), այլ միայն դեռ հնուց սկսած որոշ չափով ոչխարաբուծությունն էր զարգացած։ Արեթասը պնդում էր, որ այդ շրջանը հռոմայեցիներին է պատկանում, վկայաբերելով [վայրի] անունը, որ բոլորը դեռ հնից տալիս էին նրան (լատիներեն Ստրատա է կոչվում սալահատակված ճանապարհը) և դիմում էր հնագույն հեղինակների վկայություններին։ Ալամունդարոսը չէր էլ ցանկանում վիճել անվան շուրջը, այլ ասում էր, որ դեռ հնուց ոչխարների տերերն արոտատեղիների վարձ էին վճարում իրեն։ Դրա համար էլ Հուստինիանոս կայսրը պատրիկ Ստրատեգիոսին, որը խոհեմ մարդ էր, ազնվական ծագում ուներ ու կայսերական գանձապահն էր, ինչպես և Պաղեստինի զորքերի հրամանատար Սումմոսին հանձնարարեց միջամտել և լուծել վիճելի հարցերը։ Սումմոսը Հուլիանոսի եղբայրն էր, այն Հուլիա-

նոսի, որ մի փոքր առաջ ուղարկվել էր եթովպացիների և հոմերիտների մոտ որպես դեսպան[7]։ Սումմոսը գտնում էր, որ հռոմայեցիները չպետք է զիջեն երկիրը։ Ստրատեգիոսն էլ երկյուղ էր հայտնում կայսեր, որ մի աննշան ու անկարևոր, անբարեբեր, չոր ու ցամաք երկրի համար պարսիկներին ցանկալի առիթ են տալիս պատերազմն սկսելու։ Հուստինիանոս կայսրն այդ հարցը քննարկման դրեց և դրա վրա երկար ժամանակ վատնվեց։

Իսկ պարսից արքա Խոսրովը սլնդում էր, որ Հուստինիանոսն է խախտել հաշտությունը, որովհետև նա իր երկրի դեմ արդեն մի շարք ոտնձգություններ է կատարել, կամեցել է դաշինք կնքել Ալամունդարոսի հետ. այսպես, նա Սումմոսին ուղարկել է [Ալամունդարոսի] մոտ իբր բանակցություններ վարելու և խոստացել դրամական մեծ գումար, եթե նա անցնի հռոմայեցիների կողմը։ [Խոսրովը] բացի դրանից, ցույց էր տալիս այն նամակները, որ Հուստինիանոս կայսրը գրել էր Ալամունդարոսին՝ դաշինքի առաջարկով։ [Խոսրովը] միաժամանակ պնդում էր, որ [Հուստինիանոսը] նամակ է ուղարկել նաև հոներից ոմանց և դրդել ներխուժել պարսից երկիրը ու թալանել նրա բնակավայրերը։ Նա ասում էր, որ հենց իրենք՝ հոներն են եկել իր մոտ և ցույց տվել այդ նամակը։ Խոսրովը հռոմայեցիներին ահա այսպիսի մեղադրանքներ էր ներկայացնում և մտածում հաշտությունը խախտել։ Ես ի վիճակի չեմ ասելու՝ նրա մեղադրանքները իրավացի էին, թե ոչ։

2. Այդ միջոցին գոթերի առաջնորդ Ուիտտիգիսը, որն արդեն պատերազմում անհաջողության էր մատնվել, [Խոսրովի] մոտ է ուղարկում երկու դեսպան, համոզելու համար [պարսիկներին] արշավել հռոմայեցիների վրա. դեսպանները գոթերից չէին, որովհետև եթե նրանք բռնվեին, այդ կխանգարեր գործին, այլ լիգուրացի հոգևորականներից[8], որոնք համաձայնվել էին այդ գործը կատարել դրամական մեծ գումարի դիմաց։ Նրանցից մեկը, որը համարվում էր աստիճանով ավելի բարձր (նա կրում էր եպիսկոպոսի կոչում, որին սակայն բոլորովին արժանի չէր), գլխավորում էր դեսպանությունը, իսկ մյուսը հետևում նրան որպես օգնական։ Թրակիայով անցնելիս, նրանք ընկերանում են մեկին, որը դառնալու էր իրենց համար ասորերենի և հունարենի թարգման և հռոմայեցիներից թաքուն հասնում պարսից երկիրը։ [Դա նրանց հաջողվեց] այն պատճառով, որ խաղաղ պայմաններում [հռոմայեցիները] շատ էլ զգոն չէին պահում սահմանները։ Հանդիպելով Խոսրովին, նրանք

ասացին հետևյալը. «Բոլոր մյուս դեսպանները, ո՛վ արքա, գնում
»են դեսպանություն գլխավորապես ելնելով իրենց շահերից, սա-
»կայն գոթերի և իտալացիների թագավոր Ուիտտիգիսը մեզ ուղար-
»կել է խոսելու քո պետության [շահերի] մասին։ Դու համարիր, որ
»նա գտնվում է այստեղ և ասում հետևյալը. Եթե մեկը քեզ ասի, ով
»արքա, որ քո թագավորությունը և ամբողջ մարդկությունը Հուս-
»տինիանոսի ձեռքն են անցնում, նա ճշմարտությունն ասած կլինի։
»Որովհետև նա ի բնե նորամուծությունների սիրահար է, իրեն
»չվերաբերող հարցերի շուրջը վեճեր սարքող, և չկարողանալով
»բավարարվել ունեցածով, ցանկանում է ամբողջ աշխարհին տի-
»րանալ, ջանք է թափում հափշտակել բոլոր պետությունները։
»Որովհետև նա մենակ չէր կարող որևէ բան անել պարսիկների
»դեմ, իսկ պարսիկների հետ պատերազմի պայմաններում չէր կա-
»րող ուրիշների վրա արշավել, ապա նա մտածեց քեզ խաբել, քո-
»զարկվելով խաղաղասիրությամբ. նա մնացածներին բռնի իրեն
»[դաշնակից] դարձնելով, մեծ ուժեր է կուտակում քո պետության
»դեմ։ Նա արդեն վերացրել է վանդալների թագավորությունը, ոչըն-
»չացրել մավրուսիոսներին, իսկ գոթերն էլ բարեկամության ան-
»վան տակ չեն խառնվում գործերին. ահա նա այժմ դրամական մեծ
»միջոցներով և զորքով շարժվում է մեզ վրա։ Պարզ է, որ երբ նրան
»հաջողվի գոթերին վերջնականապես պարտության մատնել, ապա
»մեզ և արդեն ստրկացվածների հետ կարշավի պարսիկների վրա,
»արհամարհելով բարեկամությունը և առանց ամոթ զգալու [կխախ-
»տի] իր երդումը։ Արդ, քանի մեզ մնացել է փրկության որևէ հույս,
»մի՛ թույլ տուր, որ նա շարունակի մեզ վնաս հասցնել, ոչ էլ դու
»[վնաս] կրիր, այլ մեր դժբախտությունների մեջ տես այն [դժ-
»բախտությունները], որոնք հասնելու են պարսիկներին, հիշիր, որ
»հռոմայեցիները երբեք քո թագավորության հանդեպ բարյացա-
»կամ չեն լինի և հենց որ գերազանցեցին հզորությամբ, չեն վարա-
»նի ի հայտ բերել դեպի պարսիկներն ունեցած իրենց թշնամու-
»թյունը։ Դու պետք է ժամանակին օգտագործես հզորությունդ,
»որպեսզի նրանից զրկվելուց հետո չփնտրես այն։ Առիթը կորցնե-
»լուց հետո այն այլևս չես գտնի։ Ավելի լավ է նախահարձակ լինել
»և ապահով, քան թե ուշանալ և թշնամիներից ամենամեծ խայտա-
»ռակությունը կրել»։

Երբ այդ լսեց Խոսրովը, ճիշտ գտավ Ուիտտիգիսի խորհուրդը
և առավել ևս սկսեց մտածել հաշտությունը խախտելու մասին։
Ատելությամբ լցված դեպի Հուստինիանոսը, նա ի վիճակի չէր

առողջ դատել, հասկանալ, որ այդ բոլորն իրեն ասացին մարդիկ, որոնք շատ վատ էին տրամադրված Հուստինիանոս կայսեր հանդեպ։ Երբ մարդ մի բան ցանկանում է, ապա այդ բանում նրան համոզելը շատ հեշտ է։ Նա նույնպիսի սիրալիրությամբ ունկնդրեց նաև հայերին և լազերին, որի մասին ես այստեղ կասեմ։ Ահա այսպիսի հանցագործությունների մեջ էին մեղադրում Հուստինիանոսին, թեև նրա արածը, ճիշտն ասած, ներբողների էր արժանի, որպես մի քաջ կայսեր, որը ցանկանում էր իր թագավորությունը շատ ավելի մեծ և շատ ավելի փառավոր դարձնել։ Նույնը կարելի է ասել նաև պարսից արքա Կյուրոսի և Ալեքսանդր Մակեդոնացու մասին։ Բայց արդարությունն ու նախանձը անհամատեղելի են։ Դրա համար էլ ահա Խոսրովը մտածում էր խախտել հաշտությունը։

3. Այդ միջոցին մի ուրիշ բան էլ պատահեց։ Ցարանդիոնը հռոմայեցիներին հանձնող[9] Սիմեոնը, պատերազմի թեժ պահին համոզում է Հուստինիանոս կայսեր՝ հայ մարդկանց պատկանող գյուղերը իրեն նվիրել։ Նա տիրանում է այդ գյուղերին, բայց հետո զոհ դառնում դրանց նախկին տերերի դավադրությանը։ Ոճրագործության կազմակերպիչները փախչում են պարսից երկիրը։ Նրանք երկու եղբայրներ էին՝ Պերոզի որդիները։ Կայսրն իմանալով այդ, գյուղերը տալիս է Սիմեոնի եղբորորդի Համազասպին և նրան նշանակում Հայոց իշխան։ Որոշ ժամանակ անց Հուստինիանոս կայսեր մտերիմ մարդկանցից մեկը՝ Ակակիոս անունով, Համազասպին զրպարտում է, մեղադրելով Հայաստանում չարագործություններ կատարելու և Թեոդոսուպոլիսն ու այլ քաղաքներ պարսիկներին հանձնելու մտադրության մեջ։ Դրանից հետո Ակակիոսը կայսեր համաձայնությամբ նենգորեն սպանում է Համազասպին և կայսրից ստանում Հայոց իշխանությունը։ Նա ի բնե նենգ լինելով, հնարավորություն ստացավ կատարել ինչ որ իր հոգին էր ցանկանում, և իր հպատակների համար ամենադաժան մարդը դարձավ. նա առանց որևէ պատճառի հափշտակում էր մարդկանց ունեցվածքը։ Նա հայերի վրա չորս կենտինար հարկ դրեց, մի բան, որ երբեք չէր եղել։ Բայց հայերը, ի վիճակի չլինելով տանել Ակակիոսին, համաձայնության եկան ու սպանեցին նրան և փախչելով ապաստան գտան Ցարանգիոնում։

Այդ պատճառով Բյուզանդիոնից կայսրը նրանց դեմ ուղարկեց Սիտտասին[10]. հռոմայեցիների և պարսիկների միջև հաշտության պայմաններում Սիտտասը [Բյուզանդիոնում] էր ապրում։ Երբ նա

Հայաստան եկավ, սկզբում ցանկություն ցույց չէր տալիս պատերազմելու [հայերի դեմ], այլ ուզում էր հորդորել նրանց վերադառնալ իրենց երկիրը, խոստանալով համոզել կայսեր վերացնելու նոր հարկի գանձումը։ Սակայն, որովհետև կայսրը, դրդված Ադոլիոսի՝ Ակակիոսի որդու ոտնձգություններից, շատ էր վատաբանում և պախարակում Սիտտասին՝ դանդաղկոտության համար, վերջինս անմիջապես պատրաստվում էր ընդհարվելու [հայերի հետ]։ Նախ և առաջ փորձեց մեծ գումար խոստանալով կաշառել [հայերից] ոմանց և իրեն դաշնակից դարձնել, որպեսզի կարողանա ավելի հեշտությամբ հաղթել մնացածներին։ Նրան էր ուզում հարել մեծ և բազմամարդ Ասպետյանների տոհմը[11], որ մարդ ուղարկեց Սիտտասի մոտ, խնդրելով գրավոր հավաստիացում, որ եթե իրենք, Ասպետյանները, այդ գործի ժամանակ լքեն իրենց ցեղակիցներին և անցնեն հռոմայեցիների կողմը, ոչ մի պատիժ չեն կրելու վերջիններիս կողմից և պիտի շարունակեն տիրել իրենց ունեցվածքին։ [Սիտտասն] ուրախությամբ այդ մասին գրեց մի փոքր գրություն, տվեց նրանց պահանջած հավաստիացումը և կնքելով գրությունը ուղարկեց նրանց։ Նա համոզված էր, որ [Ասպետյանների] օգնությամբ կկարողանա առանց պատերազմի հաղթել, և ամբողջ զորքով շարժվեց Օյնոքալակոն[12] վայրի վրա, որտեղ ճամբարել էին հայերը։ Սակայն գրությունն ստացողները, պատահմամբ ուրիշ ճանապարհով գնացին և չկարողացան հանդիպել Ասպետյաններին։ Այդ միջոցին հռոմեական բանակի մի զորամաս հանդիպեց [Ասպետյանների] մի փոքր խմբի և ձեռք բերված համաձայնությանն անտեղյակ կոտորեց նրանց որպես թշնամիների։ Սիտտասն էլ մի քարայրում դերի վերցրեց նրանց երեխաներին ու կանանց և սպանեց. կամ այն պատճառով, որ չիմացավ, թե ովքեր են նրանք, կամ էլ որովհետև զայրացել էր Ասպետյանների դեմ, որ հակառակ համաձայնության, չէին անցնում իր կողմը։

[Ասպետյանները] զայրացած, մյուս բոլոր [հայերի] հետ միասին պատրաստվեցին մարտի։ Որովհետև երկու կողմերն էլ գտնվում էին դժվարանցանելի և զառիթափ տեղանքում, իրար դեմ չէին կռվում մի տեղում կենտրոնացած, այլ ցրված՝ լեռների ստորոտներում և ձորերում։ Այնպես պատահեց, որ հայերի մի փոքրաթիվ խումբ և Սիտտասը իր զորքի մի փոքր մասով հայտնվեցին իրար շատ մոտիկ։ Նրանց բաժանում էր մի ձոր։ Երկու հակառակորդներն էլ հեծյալ էին։ Սիտտասը փոքրաթիվ մարդկանցով անցավ ձորը և շարժվեց հակառակորդների վրա, իսկ հայերը նա-

հանգելով կանգ առան։ Սիտտասն այլևս չէր հալածում նրանց և կանգ էր առել։ Հանկարծ հռոմայեցի զինվորներից մեկը, ծագումով էրուլոս, որը հալածում էր թշնամիներին, զայրացած ետ վերադարձավ։ Սիտտասն այդ ժամանակ գետնի մեջ էր խրել իր նիզակը. էրուլոսի ձին մեծ թափով ընկավ նիզակի վրա և ջարդեց այն. դա անչափ տխրեցրեց զորավարին։ Մի հայ ճանաչեց նրան, և հայտնեց մյուսներին, թե սա ինքը հենց Սիտտասն է։ Նրա գլխին սաղավարտ չկար, իր զորքն էլ փոքրաթիվ էր և դա հնարավորություն տվեց, որ թշնամին իրեն ճանաչի։ Սիտտասը, երբ լսեց հայի ասածը, քաշեց թուրը (իր նիզակը, ինչպես ասացինք, ջարդված ընկած էր գետնին) և որոշեց անմիջապես անցնել ձորը։ Թշնամիները մեծ արագությամբ շարժվեցին նրա վրա և մեկը ձորում հասնելով նրան, թրի շեղ հարվածով վերք հասցրեց գլխին ու թեև գանգի կաշին լրիվ տարավ, բայց մետաղը չդիպավ ոսկորին։ Սիտտասը նախկինից ավելի թափով առաջ նետվեց, սակայն Հովհաննեսի որդի Արտավան Արշակունին[13] թիկունքից հարձակվելով, հարվածեց նիզակով ու սպանեց նրան։ Ահա այսպես անփառունակ վախճան ունեցավ Սիտտասը, վախճան, որին արժանի չէր առաքինի և թշնամիների հանդեպ [քաջություն] ցուցաբերած մի մարդ։ Նա շատ գեղեցիկ էր, քաջ կռվող, լավագույն զորավար, ոչնչով չզիջող իր ժամանակի [զորավարներին]։ Ոմանք պատմում են, որ Սիտտասին սպանողը ոչ թե Արտավանն էր, այլ Սոլոմոնը՝ հայերի մեջ բոլորովին անհայտ մի մարդ։

Սիտտասի վախճանվելուց հետո կայսրը Բուզեսին հրամայեց արշավել հայերի վրա։ Վերջինս, երբ տեղ հասավ, [հայերին] նամակ ուղարկեց, որով խոստանում էր նրանց հաշտեցնել կայսեր հետ և այդ կապակցությամբ առաջարկում էր, որ մեծամեծներից մարդիկ գան իր մոտ բանակցություններ վարելու։ Սակայն [հայերը] Բուզեսին հավատալու ոչ հիմքեր ունեին, ոչ էլ նրա խոսքերին ականջ դնելու ցանկություն։ Բուզեսը մի մոտիկ ընկեր ուներ՝ [ծագումով] Արշակունի, անունը Հովհաննես, որը Արտավանի հայրն էր։ Վերջինս, հույս դնելով Բուզեսի հետ ունեցած բարեկամության վրա, իր փեսա Վասակի և մի քանիսի հետ եկավ նրա մոտ։ Նրանք հասան և ապաստանեցին մի վայրում, որտեղ հաջորդ օրը պետք է հանդիպեին Բուզեսի հետ, բայց զգացին, որ հռոմեական զորքերը շրջապատել են իրենց։ Հովհաննեսի փեսա Վասակը շատ էր աղաչում Հովհաննեսին փախուստի դիմել, բայց երբ չհաջողվեց համոզել, մենակ թողնելով նրան, հռոմայեցիներից գաղտ-

նի, մնացածների հետ նույն ճանապարհով վերադարձավ։ Այսպիսով
Բուզեսը միայն Հովհաննեսին գտավ և սպանեց, որից հետո հայերը
հռոմայեցիների հետ համաձայնության գալու բոլոր հույսերը կըտ-
րեցին․ ի վիճակի չլինելով պատերազմում պարտության մատնել
կայսեր, գործունյա Վասակի գլխավորությամբ նրանք գնացին
պարսից արքայի մոտ։ [Հայոց] մեծամեծները հանդիպելով Խոս-
րովին ասացին այսպես. «Մեզանից շատերը, ով տեր, Արշակունի-
»ներ են, այն Արշակի տոհմից, որ Պարթևների թագավորությանն
»օտար չէր՝ երբ պարսիկների իշխանությունը գտնվում էր Պարթև-
»ների ձեռքում։ Նա հռչակավոր արքա եղավ և իր ժամանակակից-
»ներին ոչնչով չէր զիջում։ Մենք այժմ եկել ենք ձեզ մոտ, մենք,
»ովքեր բոլորս վերածվել ենք ստրուկների ու փախստականների, ոչ
»կամովին, այլ բռնի, արտաքուստ հռոմայեցիների պետության
»կողմից, իսկ ըստ էության, ով արքա, քո կամքով։ Ով հնարավո-
»րություն է տալիս անարդարություն գործել ցանկացողներին,
»պետք է արդարացիորեն պատասխան տա իր կատարած գործի
»համար։ Մի քիչ ավելի հնից կպատմեմ, որպեսզի դուք հնարավո-
»րություն ունենաք հետևելու դեպքերի ընթացքին։ Մեր նախնիների
»վերջին արքա Արշակը[14] կամավոր կերպով իր իշխանությունից
»հրաժարվեց [հօգուտ] հռոմայեցիների կայսր Թեոդոսի այն
»պայմանով, որ իր բոլոր տոհմակիցները հավիտյան անկախ ապ-
»րեն և ոչ մի դեպքում հարկատու չդառնան։ Մենք կարողացանք
»պաշտպանել սահմանվածը այնքան ժամանակ, մինչև որ դուք
»կնքեցիք այս չարաբաստիկ հաշտությունը[15], որը եթե մեկն անվա-
»ներ հասարակաց դժբախտություն, սխալված չի՛ր լինի։ Որովհետև
»դրանից հետո, ով արքա, քեզ խոսքով բարեկամ, բայց գործով
»թշնամի [Հուստինիանոսը], չմտահոգվելով ոչ բարեկամների և ոչ
»էլ թշնամիների մասին, մարդկային ամեն ինչ խառնել է ու տակ-
»նուվրա արել։ Դրանում դու շուտով կհամոզվես, երբ նա վերջնա-
»կանապես ջախջախի արևմուտքի [ժողովուրդներին]։ Նա սահ-
»մանվածից ո՞ր մեկը չխախտեց։ Նա տակնուվրա չարե՞ց ամեն մի
»ներդաշնակություն։ Նա չէ՞ր, որ մեզ վրա սահմանեց հարկերի
»աննախընթաց գումար։ [Նա չէ՞ր], որ մեր սահմանակից և անկախ
»ապրող ճաներին ստրկացրեց, իսկ դժբախտ լազերի թագավորի
»վրա նշանակեց հռոմայեցի կառավարիչ։ Այդ բոլորը բնության
»հակառակ են և ոչ մի ձևով հնարավոր չէ արդարացնել։ Նա չէ՞ր,
»որ հոներին ենթակա բոսպորիտների [դեմ] զորավարներ ուղար-
»կեց և գրավեց քաղաքը[16], որի վրա և ոչ մի իրավունք չուներ։ [Նա

»չէ՞ր] եթովպացիների իշխանությունների հետ դաշինք կնքողը,
»որոնց գոյության մասին հռոմայեցիները չէին էլ լսել։ Նա արդեն
»տիրանում է հոմերիտների հողերին և Կարմիր ծովին, իսկ Փինի-
»կոնը կցել ւ հռոմայեցիների պետությանը։ Մենք զանց ենք առնում
»խոսել լիբիացիների և իտալացիների գլխին եկած փորձանքների
»մասին։ Ամբողջ աշխարհը նրան փոքր է թվում, նա չի կարողա-
»նում այնտեղ տեղավորվել։ Նրա համար քիչ է ամբողջ մարդկու-
»թյան վրա տիրելը։ Նա իր հայացքը հառել է երկնքին և հետախու-
»զում է օվկիանոսից վերև գտնվող խորշերը, ցանկանալով ձեռք
»բերել ինչ-որ ուրիշ երկիր էլ։ Իսկ դու, ով արքա, ի՞նչ ես մտա-
»ծում։ Գուցե դու քաշվում ես [խախտել] ստոր կերպով ոտնահար-
»ված խաղաղությունը, սպասում որ նա վերջում քեզ կլ ուտի։ Եթե
»դու ուզում ես իմանալ, թե ինչպես է վերաբերվում Հուստինիա-
»նոսը իրեն հարած մարդկանց, թարմ օրինակը մենք և դժ-
»բախտ լազերն ենք, իսկ եթե [ուզում ես իմանալ], թե ինչպես է վե-
»րաբերվում անծանոթներին և իր նկատմամբ ոչ մի անարդարու-
»թյուն չկատարածներին, ապա հիշիր վանդալներին, գոթերին և
»մավրուսիոսներին։ Մենք դեռ գլխավորի մասին չենք խոսել։ Ով
»հզոր արքա, նա չէ՞, որ քո ստրուկ Ալամունդարոսին հաշտության
»պայմաններում ցանկացավ խաբեությամբ իր կողմը քաշել և քո
»պետությունից անջատել։ Իսկ հոներին, որոնց նա բոլորովին ծա-
»նոթ չէր, ջանաց իր հետ բարեկամացնել՝ քո դեմ։ Դրանցից խայ-
»տառակ բան երբեւիցե տեղի չի ունեցել։ Նա արդեն կռահում է, որ
»կկարողանա արևմտականներին[17] վերջնականապես իրեն հպատա-
»կեցնել, դրա համար էլ արդեն պատրաստվում է շարժվել ձեր՝
»արևելյաններիդ վրա, որովհետև արդեն իրեն մնում է պայքարել
»միայն ու միայն պարսկական պետության դեմ։ Այսպիսով, նրա
»կողմից արդեն խախտվել է խաղաղությունը, նա վերջ է ավել հա-
»վիտենական հաշտության։ Հաշտությունը խախտած են լինում ոչ
»թե նրանք, ովքեր նախահարձակ են լինում, այլ նրանք, ովքեր
»հաշտության ժամանակ ոտնձգություններ են կատարում հարևան-
»ների դեմ։ Ոճիրը ոճիր է, թեկուզ ձեռնարկողին չի հաջողվել այն
»իրականացնել։ Թե պատերազմը ինչով կվերջանա՝ բոլորին պարզ
»է։ Ոչ թե պատերազմի առիթ տվողը, այլ այդ առիթը տվողի դեմ
»պայքարողը միշտ հաղթական է դուրս գալիս։ Մենք պայքարելու
»ենք ոչ հավասար ուժերի դեմ։ Հռոմայեցիների զինվորների մեծ
»մասը աշխարհի հեռաստաններում է գտնվում, իսկ նրանց երկու
»լավագույն զորավարներից մեկին՝ Սիտտասին մենք սպանել ենք,

»իսկ Բելիսարիոսին էլ այլևս Հուստինիանոսը չի տեսնի։ Նա արհա»մարհելով նրան, մնացել է Արևմուտքում՝ իր ձեռքում ունենալով »իտալացիների իշխանությունը։ Այնպես որ, երբ դու շարժվես թըշ»նամիների վրա, ոչ մի դիմադրության չես հանդիպի. մենք, հաս»կանալի է, կլինենք քո կողմում և տեղանքին քաջատեղյակ՝ կառաջ»նորդենք քո զորքը»։ Երբ այս լսեց Խոսրովը, հավանություն տվեց, հրավիրեց պարսից ամենաերևելիներին, հայտնի դարձրեց բոլորին Ուիտտիգիսի գրածը և հայերի հաղորդածը. նա քննարկման դրեց այն հարցը, թե ինչ պետք է անեն։ Այնտեղ արտահայտվեցին բազմաթիվ թեր ու դեմ կարծիքներ, բայց ի վերջո որոշեցին գարնանը պատերազմ սկսել հռոմայեցիների դեմ։ Դեռ աշուն էր, Հուստինիանոս կայսեր ինքնակալության տասներեքերորդ տարին[18]։ Հռոմայեցիները ոչինչ չէին կասկածում և ոչ էլ հավատում էին, որ պարսիկները որևէ կերպ կարող են խախտել, այսպես կոչված, հավիտենական հաշտությունը, թեև լսել էին, թե Խոսրովը մեղադրում է իրենց կայսեր Արևմուտքում ունեցած հաջողությունների համար, և այնպիսի բողոքներ ներկայացնում նրան, որոնց մասին քիչ առաջ հիշատակեցի[19]։

4. Այդ ժամանակ երևաց գիսավոր աստղը։ Սկզբում նա մոտավորապես մեծահասակ մարդու չափ էր, ապա շատ ավելի մեծ։ Նրա վերջավորությունը արևմուտքում էր, իսկ սկիզբը՝ արևելքում և շարժվում էր արևի ընթացքով։ Երբ [արևը] այծեղջյուրում էր, [աստղը] աղեղնավորի մեջ էր։ Ոմանք այս [գիսավոր աստղը] անվանում են քսիֆիաս, որովհետև երկարուկ էր և առջևի մասում սուր, իսկ ուրիշներն էլ անվանում են միրուքավոր։ Նա երևաց ավելի քան քառասուն օր։ Աստղագետներից յուրաքանչյուրն այդ կապակցությամբ տարբեր, իրար հակասող կարծիքներ էր արտահայտում, թե ինչ է այն կանխագուշակում։ Իսկ ես գրում եմ կատարվածի մասին, որպեսզի յուրաքանչյուրը տեղի ունեցածի հիման վրա տա իր բացատրությունը։ Հոնական մի մեծ բանակ շուտով, անցնելով Իստրոս գետը[20], ողողեց ամբողջ Եվրոպան։ Դա հաճախ էր տեղի ունենում, բայց այս չափի ու մեծության ավերածություններ այդ [երկրի] բնակիչներն երբևիցե չէին կրել։ Այդ բարբարոսներն ամբողջությամբ թալանեցին Հոնիական ծոցից սկսած մինչև Բյուզանդիոնի ծայրամասերն ընկած երկիրը։ Իլլիրիայում[21] նրանք գրավեցին երեսուն երկու ամրոց, իսկ Կասանդրիա քաղաքը (որը հները անվանում էին, ինչքան մենք գիտենք, Պոտիդեա), ուժով

գրավեցին, թեև [նախկինում] նրանք ամրացված քաղաքի վրա հարձակում գործելու ոչ մի փորձ չունեին։ Նրանք [կողոպտած] հարստությամբ և հարյուր քսան հազար գերիներով շարժվեցին դեպի իրենց երկիրը, առանց որևէ դիմադրության հանդիպելու։ Նրանք հետագայում էլ բազմիցս ներխուժեցին այս կողմերը և մեծ ավերածություններ գործեցին։ Պաշարեցին նաև Խերսոնեսոսը[22] և պաշտպանների դիմադրությունը կոտրելով՝ ծովի ափի ալիքների վրայով շրջանցեցին այն պարիսպները, որոնք գտնվում են, այսպես կոչված, Սև ծոցում, անցան երկար պարիսպներից ներս և անակնկալ կերպով հարձակվեցին Խերսոնեսոսում գտնվող հոռոմայեցիների վրա, շատերին սպանեցին, իսկ մնացածներին գերեցին. մի փոքր մասն էլ, անցնելով Սեստոսի և Աբիդոսի միջև գտնվող նեղուցը և ավարի առնելով Ասիայում գտնվող բնակատեղիները, նորից Խերսոնեսոս եկավ և մնացած զորքով ու ամբողջ ավարով վերադարձավ իր երկիրը։ Մի ուրիշ արշավանքի ժամանակ նրանք թալանեցին իլլիրիացիներին ու թեսալացիներին և փորձեցին պաշարել Թերմոպիլեն, բայց որովհետև պարիսպների պաշտպաններն ուժեղ դիմադրում էին, նրանք փնտրեցին և անակնկալ կերպով շրջակայքում գտան մի կածան, որը տանում էր դեպի [Թերմոպիլեի] վրա բարձրացող լեռը։ Նրանք հեռացան, կոտորելով գրեթե բոլոր հելլեններին, բացառությամբ պելոպոնեսցիների։ Իսկ պարսիկները շուտով խախտեցին հաշտության [պայմանագիրը] և արևելյան հոռոմայեցիներին ավերածություններ պատճառեցին, որոնց մասին ես այստեղ կպատմեմ։ Բելիսարիոսը գոթերի և իտալացիների թագավոր Ուիտտիգիսին պարտության մատնելով ու գերի վերցնելով բերեց Բյուզանդիոն։ Իսկ այժմ ես կպատմեմ, թե ինչպես պարսից զորքը ներխուժեց հոռոմայեցիների երկիրը։

Երբ Հուստինիանոս կայսրը հասկացավ, որ Խոսրովը մտադիր է պատերազմ սկսել, փորձեց համոզել նրան հրաժարվել իր այդ մտադրությունից։ Այն ժամանակ Դարա քաղաքից Բյուզանդիոն էր եկել Անաստասիոս[23] անունով մեկը, որն աչքի էր ընկնում իր խոհեմությամբ։ Նա՛ էր, որ մոտ անցյալում ճնշել էր Դարայում ծագած բռնատիրությունը։ Ահա այս Անաստասիոսին Հուստինիանոսը ուղարկեց Խոսրովի մոտ, մի նամակ տալով, որի բովանդակությունը հետևյալն էր. «Խոհեմ և բարեպաշտ մարդկանց համար վայել է »ամբողջ ուժով արմատախիլ անել պատերազմի պատճառները», »հատկապես այն դեպքում, երբ դրանք ծագում են սիրելի մարդ-

»կանց միջև, իսկ կռվի և տակնուվրայության առիթներ հնարելը
»անխոհեմ և ամբարիշտ [մարդկանց] գործն է։ Խաղաղությունը
»վերացնելը և պատերազմ սկսելը շատ հեշտ է, որովհետև իրերի
»բնությունն այնպիսին է, որ ամենացածր մարդկանց համար շատ
»դյուրին է ամենաչար արարքներին դիմելը։ Ինձ թվում է, որ երբ
»մեկը որոշել է պատերազմել, նրա համար արդեն դժվար է նորից
»խաղաղության վերադառնալը։ Դու մեղադրում ես մեզ նամակնե-
»րի համար, որոնք չար դիտավորությամբ չեն դրված[24], և դրանք
»յուրովի մեկնաբանում, չես ուզում դրանց մեջ տեսնել այն, ինչ
»նկատի ենք ունեցել մենք, կամենալով դրանք օգտագործել քո
»մտադրությունն իրականացնելու համար։ Մենք կարող ենք մատ-
»նացույց անել քո Ալամունդարոսին, որը վերջերս արշավելով մեր
»երկրի վրա, հաշտության ժամանակ, մեծ ավերածություններ գոր-
»ծեց, գրավեց բնակավայրեր, հափշտակեց ունեցվածք, բազում
»մարդկանց կոտորեց ու գերեվարեց, որի համար դու պետք է պա-
»տասխան ասես և ոչ թե մեզ մեղադրես։ Մերձավորների հանդեպ
»մեղավոր լինելու ապացույցը ոչ թե մտածածն է, այլ կատարված
»արարքները. իրերի այդպիսի վիճակում ահա մե՛նք ենք, որ որոշել
»ենք պաշտպանել խաղաղությունը, իսկ դու, լսել ենք, որ հռոմայե-
»ցիների դեմ պատերազմելու առիթներ ես որոնում, առիթներ, որոնց
»մեջ մենք ոչ մի բաժին չունենք։ Ովքեր որ ցանկություն են ունենում
»հարթել վիճելի հարցերը, նրանք անտեսում են մտերիմներին ներ-
»կայացված մեղադրանքները, ինչքան էլ դրանք ծանր լինեն և
»ընդհակառակը, ում դուրեկան չեն բարեկամական կապերը, նրանք
»ջանում են առիթներ հնարել։ Դա վայել չէ նույնիսկ հասարակ
»մարդկանց, էլ չեմ ասում՝ թագավորին։ Դու այդ բոլորը մի կողմ
»թող և տե՛ս, թե պատերազմում երկու կողմից ինչքան մարդ կզոհ-
»վի. ով իրավամբ կմեղադրվի որպես ապագա փորձանքների
»պատճառ։ Հիշի՛ր ստացածդ դրամը և տվածդ երդումները, որոնք
»դրժելուց հետո չես կարող ոչ խորամանկությամբ, ոչ էլ սոփեստու-
»թյամբ արդարանալ։ Աստվածային այնքան հզոր է, որ ոչ մի մարդ
»չի կարող նրան խաբել»։ Երբ այդ հաղորդվեց Խոսրովին, նա ոչ
միայն չպատասխանեց, այլ Անաստասիոսին էլ ետ չուղարկեց և
ստիպեց, որ այնտեղ մնա։

5. Ձմեռն արդեն վերջանում էր, ինչպես և Հուստինիանոս կայսեր ինքնակալության տասներեքերորդ տարին, երբ Կավադի որդի Խոսրովը գարնան սկզբին[25] մեծ զորքով ներխուժեց հռոմայե-

ցիների երկիրը և բացահայտ կերպով խախտեց, այսպես կոչված, հավիտենական խաղաղությունը։ Նա առաջ էր շարժվում ոչ թե Միջագետքով, այլ իր աջ կողմում ունենալով Եփրատ գետը։ Գետի մյուս ափին գտնվում էր հռոմայեցիների ծայրագույն ամրոցը, որը կոչվում էր Կիրկեսիոն[26], շատ ամուր, որովհետև Աբորրաս մեծ գետը[27] այստեղ թափվում է Եփրատի մեջ, իսկ այդ ամրոցը գտնըվում է երկու գետերի միախառնման տեղում ստեղծված անկյունում։ Մի այլ երկար պարիսպ էլ շրջապատում է ամրոցից դուրս գտնվող տարածությունը, որը երկու գետերի միջև և Կիրկեսիոնի շուրջը եռանկյունի է ստեղծում։ Դրա համար էլ Խոսրովը չփորձեց գրավել այդ անառիկ ամրոցը, ոչ էլ միտք ուներ անցնել Եփրատ գետը. նա ուզում էր առանց հապաղելու գնալ Ասորիքի և Կիլիկիայի վրա։ Նա զորքով առաջ շարժվեց և Եփրատի ափով լավ քայլողի համար գրեթե երեք օրվա ճանապարհ կարելով, հասավ Զենոբիա քաղաքը[28]։ Ժամանակին Զենոբիան էր կառուցել այն և իր անունով կոչել։ Զենոբիան այնտեղ ապրող՝ հնից հռոմայեցիների դաշնակից սարակինոսների իշխան Օդոնաթոսի[29] կինն էր։ Օդոնաթոսը հռոմայեցիների արևելյան տիրույթները փրկեց մարերի ձեռքից։ Այդ բոլորը տեղի ունեցավ հնում։ Խոսրովը, երբ հասավ Զենոբիայի մոտակայքը, իմացավ, որ դա աննշան մի քաղաք է, երկիրն էլ անմարդաբնակ ու ամեն ինչից զուրկ. վախենալով, որ այնտեղ ժամավաճառ կլինի և անիմաստ կերպով մեծ գործերի իրականացման խոչընդոտ կստեղծի, փորձեց գրավել քաղաքը բանակցությամբ։ Բայց որովհետև ոչինչ դուրս չեկավ, շտապեց զորքով առաջ շարժվել։

Նույնքան ճանապարհ կտրելուց հետո նա հասավ Եփրատ գետի մոտ գտնվող Սուրոն քաղաքը[30] և ընդհուպ նրան մոտենալով, կանգ առավ։ Այստեղ այն ձին, որի վրա Խոսրովն էր նստել, խրխնջաց և սմբակով խփեց գետնին։ Մոգերը դրանից դուշակեցին, որ քաղաքը գրավվելու է։ Իսկ [Խոսրովը] շրջակայքում ճամբար դնելով, բանակը նախապատրաստեց պաշարման համար։ Արշակ անունով մեկը կար, ծագումով հայ, կայազորի հրամանատար, որը զինվորներին բարձրացնելով պարիսպների ատամնաշարի վրա և այդտեղից քաջաբար կռվելով, թշնամիներից շատերին սպանեց, բայց հետո նետահար եղավ ու սպանվեց։ Այդ ժամանակ պարսիկները, (որովհետև արդեն օրվա վերջն էր), հաջորդ օրը գրոհելու մտադրությամբ վերադարձան ճամբար, իսկ հռոմայեցիները, իրենց հրամանատարի սպանության առիթով հուսալքված, որոշեցին աղերսանքով դիմել Խոսրովին։ Հաջորդ օրը նրանք ուղարկեցին քաղաքի եպիսկոպոսին,

որպեսզի նա խնդրի և աղաչի քաղաքի [փրկության] համար։ Վերջինս մի քանի սպասավորներով, որոնք իրենց հետ էին վերցրել հավեր, գինի և սպիտակ հացեր, գնաց Խոսրովի մոտ, երկրպագեց նրան և արտասվալից աղաչեց, որ նա ողորմած լինի թշվառ մարդկանց ու քաղաքի հանդեպ, քաղաք, որ հռոմայեցիների համար աննշան է, իսկ պարսիկների համար երբևիցե որևէ արժեք չի ներկայացրել, ինչպես և այժմ։ Նա խոստացավ, որ սուրոնցիները իրենց անձերի և քաղաքի համար կվճարեն անհրաժեշտ փրկագին։ Խոսրովը զայրացած էր սուրոնցիների վրա այն բանի համար, որ լինելով իրեն հանդիպած առաջին հռոմայեցիները, կամակորություն ունեցան իրեն չընդունելու և ընդհակառակը զենք բարձրացրին ու պարսից մեծամեծների մի ստվար խումբ կոտորեցին։ Սակայն նա ցույց չտվեց իր զայրույթը. նա շատ լավ քողարկվեց, որպեսզի սուրոնցիներին պատժելով, ցույց տա հռոմայեցիներին իր ահեղությունն ու անպարտելիությունը։ Նա ենթադրում էր, որ այդ կերպ շատ ավելի հեշտությամբ իրեն կենթարկի նրանց, ովքեր իր ճանապարհին կհանդիպեն։ Դրա համար նա մեծ սիրալիրությամբ գետնից բարձրացրեց եպիսկոպոսին, ընդունելով նվերները հույս տվեց, որ սուրոնցիների փրկագնի հարցի շուրջը նա իսկույն կպայմանավորվի պարսից մեծամեծների հետ և խնդրին դրական լուծում կտա։ Ահա այդ ձևով նա եպիսկոպոսին իր ուղեկիցների հետ ետ ուղարկեց։ [Եպիսկոպոսը] դավի մասին ոչինչ չէր կռահում, իսկ [Խոսրովը] պարսիկներից մի քանի մեծամեծների՝ ուղեկիցների անվան տակ նրանց հետ ուղարկեց։ Գաղտնի կերպով հրամայեց նրանց [եպիսկոպոսի] հետ գնալ մինչև պարիսպը, մխիթարել և բարի հույսեր տալ նրան, որպեսզի նա և նրա բոլոր ուղեկիցները ուրախ ու ոչնչից չվախեցողի տեսքով երևան [պարսպից] ներս գտնվողներին. պատվիրեց նաև, որ երբ պահակները բացեն քաղաքի փոքր դարպասը նրանց ներս առնելու համար, ապա նրանք որևէ քար կամ գերան գցեն սյամի և դռան արանքը՝ թույլ չտալով որոշ ժամանակ փակելու, իսկ փակել ցանկացողներին խոչընդոտ հանդիսանան, մինչև որ [պարսից] զորքը վրա կհասնի։ Խոսրովը իր մարդկանց այդ բոլորը պատվիրելուց հետո, նախապատրաստեց զորքը և հրամայեց հենց որ ինքը ազդանշան տա, վազքով շարժվել քաղաքի վրա։ Երբ նրանք պարսպի մոտ հասան, պարսիկները հրաժեշտ տվին եպիսկոպոսին և մնացին դուրսը, իսկ սուրոնցիները, տեսնելով, որ [եպիսկոպոսը] ուրախ է, իսկ թշնամիներն էլ մեծ պատվով են ուղեկցում նրան, մոռանալով բոլոր վտանգները, ամբողջությամբ բաց

արեցին փոքր դարպասը և ծափահարությամբ ու բացականչություններով ընդունեցին Հոգևորականին իր ուղեկիցների հետ։ Երբ բոլորը ներս մտան, պահակները հրում էին դարպասը այն փակելու համար, իսկ պարսիկները նախապես պատրաստ ունեցած քարը գցեցին արանքը։ Պահակներն ավելի ուժեղ էին հրում և ջանք թափում, բայց նրանց չհաջողվեց փակել դարպասը. չէին համարձակվում նաև բացել այն, վախենալով, որ կանցնի թշնամիների ձեռքը։ Ոմանք պատմում են, թե պարսիկները փոքր դարպասի արանքը ոչ թե քար, այլ փայտ էին գցել։ Ահա այսպիսով, երբ սուրոնցիները դեռ լրիվ գլխի չէին ընկել նենգության մասին, Խոսրովը ամբողջ զորքով վրա հասավ։ Բարբարոսները բռնի բացեցին փոքր դարպասը և կարճ ժամանակամիջոցում գրոհով վերցրին [քաղաքը]։ Զայրացած Խոսրովը թալանեց բնակարանները, շատ մարդկանց կոտորեց, մնացած բոլորին ստրկացրեց, ապա ամբողջ քաղաքը կրակի տալով, գետնին հավասարացրեց։ Սրանից հետո նա Անաստասիոսին ետ ուղարկեց [Բյուզանդիոն], հրամայելով հաղորդել Հուստինիանոս կայսեր, թե որտեղ է թողել Կավադի որդի Խոսրովին։

Այնուհետև Խոսրովը, դրդված մարդասիրությունից թե շահասիրությունից, կամ էլ շնորհ գործելու մտադրությունից՝ Եվփեմիա անունով մի կնոջ, որին հենց այնտեղ դերի էր վերցրել, կաթողին սիրել (նա անչափ գեղեցիկ էր) և ապա իր կինը դարձրել, որոշեց որևէ լավություն անել սուրոնցիներին։ Նա հռոմայեցիներին ենթակա Սերգիուպոլիս [քաղաքի][31] (որն իր անվանումն էր ստացել հռչակավոր սուրբ Սերգիոսի անունից, և գտնվում էր իր գրաված քաղաքից հարյուր քսան վեց ասպարեզ հեռավորության վրա) հարավում, Բարբարոսական կոչված դաշտում այդտեղի եպիսկոպոս Կանդիդոսի մոտ մարդ ուղարկեց և առաջարկեց, որ երկու կենտինար [ոսկու] դիմաց գնի տասներկու հազար գերի։ Վերջինս մերժեց, ասելով, որ դրամ չունի։ Խոսրովը պահանջեց նրանից գրավոր խոստում տալ, որ հետագայում կվճարի այդ դրամը, և փոքր գումարով գնած կլինի այդքան մեծ թվով գերիների։ Կանդիդոսն այդպես էլ արեց. նա սարսափելի երդումներով խոստացավ մի տարի հետո վճարել ոսկին և պարտավորվեց, որ եթե նշված ժամանակամիջոցում չվճարի գումարը, այն կվճարի կրկնակի չափով, իսկ ինքն էլ որպես իր երդումը խախտող, կդադարի հոգևորական լինելուց։ Ահա այսպիսի դրություն տալով, Կանդիդոսը բոլոր սուրոնցիներին ընդունեց։ Սակայն նրանցից քչերն ապրեցին. շատերն ի

վիճակի չլինելով դիմանալ տառապանքներին, փոքր անց մահա-
ցան։ Խոսրովն այդ կատարելուց հետո առաջ տարավ զորքը։

6. [Հուստինիանոս] կայսրը դրանից մի փոքր առաջ Արևելքի
զորահրամանատարությունը երկուսի էր բաժանել։ Մինչև Եփրատ
գետը թողել էր Բելիսարիոսին, որին էր պատկանում նախասլես ամ-
բողջ [Արևելքի] իշխանությունը, իսկ [Եփրատից] այն կողմ, մինչև
պարսկական սահմանները թողել էր Բուզեսին։ Ահա այս վերջինիս
նա հրամայեց իր ձեռքը վերցնել ամբողջ Արևելքի իշխանությունը
մինչև Բելիսարիոսի վերադարձը Իտալիայից։ Բուզեսը, ամբողջ
զորքի գլուխն անցած, սկզբում մնում էր Հիերապոլսում։ Երբ իմա-
ցավ սուրոնցիներին պատահած փորձանքի մասին, հավաքեց Հիե-
րապոլսի մեծամեծներին և ասաց հետևյալը. «Թշնամիների դեմ
»ճակատ առ ճակատ կարող են մարտնչել միայն նրանք, ովքեր
»կռվի կբռնվեն թշնամու հավասար ուժերի հետ, դա ոչ մի անսլա-
»տեհություն չի առաջացնի, սակայն ովքեր թշնամու ուժին զիջում
»են, ապա ավելի նպատակահարմար է մարտնչել խորամանկու-
»թյամբ, քան թե բացահայտ մարտի բռնվել և ակնհայտ վտանգի
»ենթարկել իրենց։ Դուք լսել եք, իհարկե, Խոսրովի զորքի մեծաքա-
»նակ լինելու մասին։ Արդ, եթե նա կամենա հաղթել մեզ պաշարե-
»լով, մենք ստիպված կլինենք պարսպի ներսից վարել պատերազմը
»և հասկանալի է կզգանք պարենի պակասություն, իսկ պարսիկները
»առանց որևէ դիմադրության հանդիպելու՝ մեր երկրից ամեն ինչ
»կվերցնեն։ Իսկ եթե պաշարումը երկարի, ես կարծում եմ, որ պա-
»րիսպն էլ չի դիմանա թշնամիների հարվածներին, որովհետև նա
»շատ տեղերից խախուտ է, և հռոմայեցիների գլխին մեծ փորձանք
»կգա։ Սակայն եթե մենք զորքի մի մասով միայն պաշտպանենք
»քաղաքի պարիսպը, իսկ մնացածով բռնենք քաղաքի շուրջը եղած
»[լեռների] լանջերը և այնտեղից հարձակվենք՝ մերթ հակառակոր-
»դի ճամբարի վրա, մերթ էլ պարեն ճարելու համար ուղարկվողնե-
»րի, ապա կստիպենք Խոսրովին իսկույն վերացնել պաշարումը և
»շուտով հեռանալ, որովհետև նա ամենևին ի վիճակի չէ և՛ առանց
»երկյուղի գրոհել պարսպի վրա, և՛ այդքան մեծ զորքի համար
»պետք եղած [պարենը] հայթայթել»։ Բուզեսն այսքանն ասաց
ու թեև նրաասածները ճիշտ էին թվում, սակայն նա ոչինչ չձեռ-
նարկեց։ Նա ընտրեց զորքի միջից փորձվածներին ու հեռացավ։
Ո՛չ Հիերապոլսում եղած հռոմայեցիները, ո՛չ թշնամու զորքը այն-

պես էլ չիմացան, թե ուր գնաց նա։ Ահա այսպիսին էր իրերի դրությունն այնտեղ։

Հուստինիանոս կայսրը, իմանալով պարսիկների արշավանքի մասին, մեծ իրարանցման մեջ, իր եղբորորդի Գերմանոսին երեք հարյուր հոգու գլխավորությամբ իսկույն ճամփու դրեց, խոստանալով, որ շուտով նրան կհետևի մեծաթիվ զորք։ Գերմանոսը, հասնելով Անտիոք, շրջագայեց [քաղաքի] ամբողջ պարսպի շուրջը և գտավ, որ այն հիմնականում ամուր է. քաղաքամերձ հարթավայրով հոսում է Օրոնտես գետը, որը հարձակվողների համար անանցանելի է, իսկ մյուս մասում գահավեժ բարձունքներ են, որոնք թշնամիների համար դժվարամատույց են։ Երբ նա հասավ բարձունքին, որին տեղացիներն Օրոկասիադա են անվանում, նկատեց, որ այս մասում պարիսպը շատ է մատչելի։ Այստեղ մի բավական լայն ժայռ կա, որ բարձրությամբ քիչ է զիջում պարսպին։ Նա առաջարկեց կամ ջարդել այդ ժայռը և [այնտեղ] պարսպի շուրջը մի խոր խրամատ փորել, որպեսզի [թշնամին] հնարավորություն չունենա բարձրանալ պարսպի վրա, կամ էլ այնտեղ մի մեծ աշտարակ կառուցել և միացնել այն քաղաքի պարսպին։ Սակայն շինարար ճարտարապետները գտնում էին, որ այդ երկու առաջարկություններից և ոչ մեկը իրագործելի չէ, որովհետև անհնար է կարճ ժամանակամիջոցում կատարել այդ գործը՝ թշնամու հարձակման սպառնալիքի պատճառով։ Այդ գործին ձեռնարկելով և ավարտին չհասցնելով, մի բան արած կլինեն, այն, որ թշնամիներին ցույց կտան, թե պարսպի որ կողմից պետք է հարձակում գործեն։ Գերմանոսը, երբ այդ առաջարկը չընդունվեց, սկսեց հույսեր կապել Բյուզանդիոնից սպասվող զորքի հետ, սակայն երբ բավական ժամանակ անցավ և կայսեր զորքը չհասավ, ոչ էլ հույս կար, թե կգա, նա երկյուղ զգաց, որ հանկարծ Խոսրովը, իմանալով, որ այնտեղ է գտնվում կայսեր եղբորորդին, ամեն ինչ մի կողմ թողած ամբողջ զորքով կշարժվի [Անտիոքի] վրա՝ ամենակարևորը համարելով Անտիոքի գրավումը և իրեն գերի վերցնելը։ Նույնպես էին դատում նաև անտիոքացիք և խորհրդակցելով որոշեցին, որ ավելի ձեռնտու է Խոսրովին դրամ առաջարկել և սպառնացող վտանգից խուսափել։ Նրանք Բերիայի[32] եպիսկոպոս Մեգասին, որ խոհեմ մարդ էր (նա այն ժամանակ նրանց մոտ էր գտնվում), այդ խնդրով ուղարկում են Խոսրովի մոտ։ Նա դնում և մարերի զորքին է հանդիպում Հիրապոլսից ոչ հեռու։ Անձնապես հանդիպելով Խոսրովին, նա շատ է աղաչում խնայել մարդկանց, որոնք իրեն ոչ մի վատություն չեն արել, ոչ էլ ի վի-

ճակի են դիմադրել պարսից զորքին, ասում է, որ արքային վայել չէ նահանջողների և դիմադրելու ոչ մի մտադրություն չունեցողների վրա հարձակվելն ու բռնանալը, որ տվյալ դեպքում նրա արարքների մեջ արքային վայել և արիություն ընդգծող ոչինչ չկա, որովհետև նա ժամանակ չտվեց հռոմայեցիների կայսեր մտածելու փոխադարձ համաձայնությամբ խաղաղությունն ամրապնդելու, կամ էլ համաձայն կնքված պայմանագրի պատերազմի պատրաստվելու։ Նա առանց մտածելու հռոմայեցիների վրա զինված հարձակում գործեց, երբ դեռ նրանց կայսրը գաղափար չուներ ստեղծված իրադրության մասին։ Այդ լսելուց հետո, Խոսրովն իր անխոհեմությամբ ամենևին չկարողացավ խելացիորեն իրեն զսպել, այլ ավելի ևս գոռոզացավ և սպառնաց իրեն ենթարկել ամբողջ Ասորիքն ու Կիլիկիան։ Մեղասին հրամայելով հետևել իրեն, նա զորքը շարժեց դեպի Հիերապոլիս։ Հասնելով այնտեղ, նա ճամբար դրեց, բայց տեսնելով, որ [քաղաքի] պարիսպն ամուր է, ապա նաև իմանալով, որ պաշտպանված է բավարար քանակությամբ զինվորներով, հիերապոլսեցիների մոտ թարգման Պավլոսին ուղարկեց դրամ պահանջելու։ Այս Պավլոսը մեծացել էր հռոմայեցիների երկրում, սովորել քերականի մոտ՝ Անտիոքում և ասում էին, թե նա ծագումով էլ հռոմայեցի է։ Պարսպի վրա մեծ հույսեր չդնելով, [պարիսպ], որ իր մեջ էր առել մեծ տարածություն՝ մինչև [քաղաքի] մոտ բարձրացող լեռը, բացի դրանից ցանկանալով զերծ պահել երկիրը թալանից, [հիերապոլսեցիք] խոստացան վճարել երկու հազար լիտր արծաթ։ Մեգասը շարունակ բարեխոսում էր Խոսրովի առաջ բոլոր արևելյան նահանգների համար, մինչև Խոսրովը նրան ասաց, որ հռոմայեցիների ամբողջ տիրապետությունը հանգիստ կթողնի տասը կենտինար ոսկի ստանալուց հետո միայն։

7. Անա նույն օրը Մեգասն այդտեղից շարժվեց դեպի Անտիոք, իսկ Խոսրովը փրկագինն ստանալով ճամփա ընկավ դեպի Բերիա, որը գտնվում է Անտիոքի և Հիերապոլսի միջև՝ երկու [քաղաքներից] լավ քայլողի համար երկու օրվա ճանապարհի հեռավորության վրա։ Սակայն Մեգասը մի քանի մարդկանցով ավելի արագ էր շարժվում, քան պարսից զորքը, որ միշտ նրանց անցած ճանապարհի կեսն էր կտրում։ Չորրորդ օրը [Մեգասը] հասավ Անտիոք, իսկ [պարսից զորքը]՝ Բերիայի արվարձանները։

Խոսրովը Պավլոսին անմիջապես ուղարկեց բերիացիների մոտ և դրամ պահանջեց, ոչ միայն այնքան, ինչքան հիերապոլսեցինե-

րից էր ստացել, այլ կրկնակին, որովհետև տեսավ, որ [բերիացիների] պարիսպը շատ տեղերից խախուտ էր։ Բերիացիները (քանի որ հույս չէին կարող դնել պարսպի վրա) հոժարությամբ համաձայնվեցին պահանջը բավարարել։ Երկու հազար լիտր արծաթ տալով, ասացին, որ ի վիճակի չեն մնացածը վճարել, բայց որովհետև Խոսրովը պնդում էր իր պահանջը, նրանք, մնացած զինվորների հետ միասին, գիշերով ապաստան գտան միջնաբերդում և այնտեղ պատրաստվեցին պաշտպանության։ Հաջորդ օրը Խոսրովի կողմից մարդիկ ուղարկվեցին քաղաք՝ դրամներն ստանալու համար. երբ մոտեցան պարսպին, բոլոր դարպասները փակ գտան, ոչ մի մարդու հետ չկարողացան հանդիպել և այդ մասին տեղեկացրին արքային։ Վերջինս հրամայեց պարսպին աստիճաններ հենել ու փորձել բարձրանալ. զինվորներն այդպես էլ արեցին։ Առանց որևէ դիմադրության նրանք մտան պարսպից ներս, հանգիստ բացեցին դարպասները և ամբողջ զորքը, ինչպես նաև Խոսրովը մտան քաղաք։ Արքան շատ զայրացած լինելով, գրեթե ամբողջ քաղաքը հրի մատնեց։ Այնուհետև բարձրանալով միջնաբերդ, փորձեց գրոհել։ Այստեղ հռոմայեցիների զինվորները համառորեն պաշտպանվում էին, թշնամիներից ոմանց սպանեցին, բայց պաշարվածների անխոհեմությունը Խոսրովի համար մեծ բախտավորության պատճառ դարձավ։ Միջնաբերդում էին [ապաստանել] ոչ միայն [քաղաքի պաշտպանները]. նրանք իրենց հետ էին տարել նաև ձիերին ու մյուս անասուններին և իրենց այդ գծծության պատճառով վտանգի ենթարկվեցին։ Այնտեղ կար ընդամենը մեկ աղբյուր և ձիերը, ջորիներն ու մյուս անասունները պետք եղածից ավելի խմելով, աղբյուրը ցամաքեցրին։ Ահա բերիացիների գործերն այսպիսի վիճակում էին։

Մեգասը, հասնելով Անտիոք, հաղորդեց թե ինչպիսի համաձայնության է եկել Խոսրովի հետ, բայց իրեն չհաջողվեց համոզել [անտիոքացիներին] ընդունելու այդ։ Այդ միջոցին Հուստինիանոս կայսրը Հռուփինոսի որդի Հովհաննեսին և գաղտնի խորհրդական Հուլիանոսին որպես դեսպան ուղարկել էր Խոսրովի մոտ։ Հռոմայեցիները [գաղտնի խորհրդականին] անվանում են ասեկրետիս[33], որովհետև գաղտնիքները նրանք անվանում են սեկրետա։ Նրանք եկան ու մնացին Անտիոքում։ Դեսպաններից Հուլիանոսը վճռականապես արգելեց դրամ տալ թշնամիներին և դրամով գնել կայսերական քաղաքները։ Նա Գերմանոսի առաջ ամբաստանեց քահանայապետ Եփրեմիոսին՝ քաղաքը Խոսրովին հանձնելու մտադրության մեջ։ Մեգասը ձեռնունայն ճամփա ընկավ։ Իսկ Անտիոքի

եպիսկոպոս Եփրեմիոսը պարսից հարձակումից վախենալով գնաց
Կիլիկիա։ Որոշ ժամանակ անց այնտեղ ժամանեց նաև Գերմանոսը՝
փոքր զորամասի գլուխն անցած։ [Զորքի] մեծ մասը նա թողել էր
այնտեղ՝ [Անտիոքում]։ Մեգասը շտապ կարգով Բերիա հասնելով,
շատ ափսոսաց պատահարի համար։ Նա մեղադրում էր Խոսրովին,
որ բերիացիների հանդեպ ամբարշտաբար է վարվել, որ իրեն ու-
ղարկում է Անտիոք, հաշտության բանակցություններ վարելու, իսկ
ինքը, երբ [Բերիայի] քաղաքացիներն իրեն ոչ մի նոր վատություն
չէին արել, և՛ դրամներն էր հափշտակում, և՛ նրանց ստիպում փակ-
վել միջնաբերդում, ապա նաև հրի մատնում քաղաքը, իզուր տեղը
հիմնահատակ կործանում այն։ Այդ խոսքերին Խոսրովը պատաս-
խանեց այսպես. «Սրա մեղքը, ով սիրելիս, քո վրա է ընկնում, որ
»մեզ ստիպեցիր այստեղ մնալ, որովհետև դու վերադարձար ոչ թե
»սահմանված ժամկետում, այլ շատ ուշացած։ Կարիք կա՞ արդյոք,
»ով դու, լավագույնդ, քո համաքաղաքացիների հիմարության մա-
»սին երկարաբանես։ Նրանք խոստացան իրենց փրկության համար
»մեզ վճարել որոշակի գումար, բայց մինչև հիմա էլ չեն մտածում
»տալ որոշվածը։ Նրանք, հույս դնելով վայրի ամրության վրա, ան-
»պատկառորեն արհամարհում են մեզ և ինչպես տեսնում ես, ստի-
»պում պաշարել միջնաբերդը։ Ես հուսով եմ, սակայն, աստվածնե-
»րի օգնությամբ շուտով հաշվեհարդար տեսնել նրանց հետ և այս
»պարսպի տակ իզուր տեղ սպանված պարսիկների համար վրեժ
»լուծել մեղավորներից»։

Խոսրովն այսքանն ասաց, իսկ Մեգասը պատասխանեց նրան
այսպես. «Եթե հարցին մոտենանք այն տեսանկյունից, թե դու, մի
»արքա, մեղադրում ես ողորմելի և աննշան մարդկանց, ապա ասա-
»ծիդ հակաճառել չի կարելի, այլ միայն համաձայնվել. ուժեղը միշտ
»էլ իրավացի է։ Բայց եթե ամեն ինչ մի կողմ թողած ճիշտն ասենք,
»ապա, ով արքա, դու ոչ մի իրավունք չունես մեղադրելու։ Թե ինչու
»համար, հանգիստ լսիր ամենը։ Ես քո կողմից ուղարկվեցի անտի-
»ոքացիների մոտ հաղորդելու նրանց [քո պայմանները] և յոթ օրից
»հետո (միթե՞ կարելի էր ավելի արագ) վերադառնալով քեզ մոտ,
»ահա քո կողմից այս վիճակին հասցված գտա իմ հայրենիքը։
»[Իմ համաքաղաքացիները] արդեն զրկվել էին ունեցվածքից,
»նրանց մնում էր միայն պայքարել իրենց կյանքի փրկության հա-
»մար, և իմ կարծիքով, իրավունք ունեին չվճարել քեզ մնացած
»դրամը։ Անհնարին է մարդուց պահանջել, որ նա վճարի այն, ինչ
»չունի։ Դեռ հնուց մարդիկ ամեն մի երևույթ տարբերում են անուն-

»ներով: Օրինակ, նրանք, ի միջի այլոց, տարբերություն են դնում
»թուլության ու համառության միջև: Վերջինս ընդունակ է դիմադրե-
»լու, բայց իր ամբարտավանության համար ատելի է մարդկանց, իսկ
»առաջինը, հակառակ որ գործելու մեջ թույլ է, նույնպես ընդունակ
»է գիմագրելու, սակայն նա առաջ է բերում մարդկանց կարեկցանքը:
«Արդ, թույլ տուր մեզ, ով արքա, կյանքի ամենից ծանր բաժինն
»ստացողներիս, ծայրահեղ դեպքում մխիթարվելու այն մտքով, որ
»մեզ հասած դժբախտության մեջ մենք մեղք չունենք: Դու բավա-
»րարվիր ստացածդ դրամով, քո կարողությամբ մի հաշվիր ղրանք,
»այլ նկատի ունեցիր բերիացիների կարողությունը: Մեզ վրա այլևս
»մի բռնացիր, որպեսզի ցույց չտաս, որ ի վիճակի չես հասնելու քո
»առաջադրած նպատակին: Անսահման ցանկությունները պատըժ-
»վում են կատարվելու անհնարինությունից: Ամենից լավը՝ ոչ մի
»անհնարին բան չնախաձեռնելն է: Այդ եմ այժմ քեզ ասում այս
»մարդկանց արդարացնելու համար, բայց եթե ինձ թույլ տրված
»լիներ շփման մեջ մտնելու այդ դժբախտների հետ, ապա ես հնա-
»րավորություն կունենայի ուրիշ բաներ էլ ասել, որ այժմ իմ հիշո-
»ղությունից վրիպել են»:

Մեգասն այսքանն ասաց, իսկ Խոսրովը նրան թույլ տվեց գնալ միջնաբերդ: Նա ներս մտնելով մանրամասն տեղեկացավ աղբյուրի հետ պատահածի մասին և արտասվալից աչքերով նորից գնաց Խոսրովի մոտ ու ծնկաչոք հավատացնում էր, որ բերիացիների մոտ ոչ մի դրամ չի մնացել և խնդրում նրան գոնե մարդկանց կյանքը խնայի: Խոսրովն այդ մարդու հեզությունից ազդված, բավարարեց խրնդիրքը և երգվեց խնայել միջնաբերդում գտնվողներին: Այսպիսի վտանգի ենթարկված բերիացիները թողեցին միջնաբերդը և անվնաս գնացին ուր որ յուրաքանչյուրը ցանկանում էր: Զինվորներից քչերը հետևեցին նրանց: Շատերը կամավոր կերպով գնացին Խոսրովի մոտ՝ կշտամբելով [հռոմեական] պետությանը, որ երկար ժամանակ իրենց ռոճիկ չէր վճարել և հետագայում [Խոսրովի] հետ գնացին պարսից երկիրը:

8. Խոսրովը (որովհետև Մեգասն ասաց, որ իրեն չհաջողվեց համոզել անտիոքացիներին դրամ տալ) ամբողջ զորքով շարժվեց նրանց վրա: Անտիոքացիներից ոմանք, վերցնելով [իրենց] հարըստությունը, փախան ուր որ կարող էին: Նույնն էին մտածում նաև մնացածները, սակայն այդ միջոցին Լիբանանի զորքերի հրամանատարներ Թեոկտիստոսն և Մոլացեսը, գալով վեց հազար ռազ-

միկներով, հուսադրեցին և խանգարեցին նրանց [մտադրության իրականացմանը]։ Շատ չանցած վրա հասավ նաև պարսից զորքը։ Ահա այստեղ վրան խփեցին և ճամբարեցին բոլորը՝ Օրոնտես գետի ափին և նրանից ոչ շատ հեռու։ Խոսրովը Պավլոսին ուղարկեց պարսպի մոտ և անտիոքացիներից դրամ էր պահանջում, ասում, որ կպրծնեն եթե տաս կենտինար ոսկի տան, բայց պարզ էր, որ դրանից պակաս գումարով էլ նա կհեռանար այնտեղից։ Այդ միջոցին Խոսրովի մոտ եկան դեսպանները և երկար խոսեցին հաշտության խախտման շուրջը, շատ բան էլ իրենք լսեցին նրանից և վերադարձան։ Հաջորդ օրը անտիոքացիների դեմոսը (անտիոքացիները լուրջ մարդիկ չեն, այլ անկարգ և անչափ ղավեշտասեր), պարսպի ատամնաշարի վրա բարձրացած, հայհոյում էին Խոսրովին և բարձրաձայն ծաղրում։ Նույնիսկ Պավլոսին, որը գտնվում էր պարսպի մոտ և խորհուրդ էր տալիս դրամական փոքր գումարով փրկել իրենց և քաղաքը, քիչ էր մնացել նետահարեին, սակայն նրան հաջողվեց խուսափել։ Դրա համար էլ Խոսրովը զայրույթից կատաղած, որոշեց գրոհել։

Հաջորդ օրը բոլոր պարսիկներին հավաքելով պարսպի դեմ, մի մասին հրամայեց հարձակվել գետի կողմից, իսկ ինքը շատերի և լավագույնների գլուխն անցած հարձակվեց բարձունքի վրա։ Ինչպես ես նախապես ասացի, այս մասում պարիսպը շատ էր մատչելի։ Այստեղ հռոմայեցիները (այն պարիսպը, որի վրա կանգնած պետք է կռվեին, շատ նեղ էր) մտածեցին հետևյալը. երկար գերանները իրար կապելով կախեցին աշտարակների միջև, որպեսզի տարածությունը լայնանա և պաշտպանողների դեմ ավելի մեծ քանակությամբ մարդիկ կարողանան կռվել։ Պարսիկները սաստիկ նեղում էին՝ ամեն կողմից նետերի տարափ տեղալով հատկապես միջնաբերդի վրա։ Հռոմայեցիներն ամբողջ ուժով պաշտպանվում էին, ոչ միայն զինվորները, այլև դեմոսի բազմաթիվ խիզախ պատանիներ։ Պաշարողները ենթադրում էին, որ այս [բարձունքում] մարտը թշնամիների դեմ հավասար կլինի, որովհետև ժայռը լայն ու բարձր էր, կարծես ուղղված պարսպի դեմ և հարձակվողներին թվում էր, թե կռվում են հարթ տարածության վրա։ Ես կարծում եմ, որ եթե հռոմեացիներից որևէ մեկը խիզախեր երեք հարյուր մարդով դուրս գալ պարսպից, [թշնամուց] առաջ տիրանար այդ ժայռին և այնտեղից դիմադրեր հարձակվողներին՝ ապա քաղաքը երբեք չէր ենթարկվի թշնամու վտանգին, բարբարոսները չէին ունենա որևէ հենակետ՝ գրոհելու համար, որովհետև նրանց կհարվածեին և՛ բար-

ձորից, և՛ ժայռից, և՛ պարսպից։ Իսկ այժմ (անտիոքացիներին վիճակված էր ճարակ դառնալ մարերի զորքին), այդ ոչ ոքի մտքից անգամ չանցավ։ Խոսրովը բարձր աղաղակով կռվի կոչեց պարսիկներին, որոնք մարտնչելով, ուժերի գերագույն լարումով ժամանակ չէին տալիս հակառակորդին մտածելու կամ նետերի հարվածներից խուսափելու։ Հռոմայեցիները մեծ բազմությամբ իրար խառնված պաշտպանվում էին, սակայն պարանները, որոնցով գերաններն էին կապված՝ չդիմացան ծանրությանը և հանկարծակի պոկվելով մեծ շառաչյունով, նրանց վրա կանգնած [զինվորների] հետ գետին տապալվեցին։ Մյուս հռոմայեցիները, որոնք մարտնչում էին մերձակա աշտարակներից, չէին հասկանում թե ինչ է կատարվում. ենթադրելով, որ այս մասում պարիսպը քանդվել է, փախուստի դիմեցին։ Դեմոսից բազմաթիվ պատանիներ, որոնք նախկինում սովոր էին իրար դեմ կռվել ձիարշավարանում, երբ պարսպից ցած իջան, փախուստի չդիմեցին, մնացին տեղում, մինչդեռ զինվորները Թեոկտիստոսի և Մոլացեսի գլխավորությամբ բարձրանալով ձիերի վրա, որոնք կազմ ու պատրաստ գտնվում էին այնտեղ, շարժվեցին դեպի դարպասները, ասելով որ զորքով օգնության է գալիս Բուզեսը և իրենք ուզում են շտապ կարգով ընդունել նրանց՝ քաղաքը թշնամիներից միասին պաշտպանելու համար։ Ահա այստեղ անտիոքացիներից շատ տղամարդիկ և կանայք՝ երեխաներով շտապեցին դեպի դարպասները, բայց սկսեցին ճնշվել ձիերի կողմից։ Զինվորները բոլորովին չէին խնայում ոտնատակ եղողներին և նախկինից էլ ուժեղ թափով սլանում էին ընկածների վրայով։ Այստեղ, հատկապես այս դարպասների մոտ, շատերը կոտորվեցին։

Պարսիկները դիմադրության չհանդիպելով, սլարսպին աստիճաններ հենելով, հեշտությամբ բարձրանում էին։ Նրանք շտապ կարգով հասան մինչև պարսպի ատամնաշարը. որոշ ժամանակ չէին ուզում այնտեղից ցած իջնել և անորոշության մեջ էին. ինձ թվում է, որ նրանք կասկածում էին, թե թշնամին այդ նեղ տեղերում թակարդ է դրել։ Պարսպից ներս տարածությունն անմիջապես բարձունքից սկսած մեծ մասամբ անմարդաբնակ է։ Այնտեղ վեր են խոյանում շատ բարձր ժայռեր։ Ոմանք ասում են, թե պարսիկներն այստեղ կանգ առան Խոսրովի հրամանով։ Նա հասկացավ տեղանքի դժվարանցանելիությունը, տեսավ զինվորների փախուստը և վախեցավ, որ նրանք հանկարծ ետ կվերադառնան և իրենց անակնկալ պատահարի առաջ կկանգնեցնեն, դրանով իսկ խանգարելով հին և հայտնի քաղաքի դրավմանը, քաղաք, որը հռոմայեցիների արևելքի

[քաղաքներից] առաջինն է հարստությամբ, մեծությամբ, մարդա-
շատությամբ, գեղեցկությամբ և բարեկեցությամբ։ Միայն ու միայն
այդ մասին մտածելով, նա ուզում էր հռոմայեցիների զինվորներին
ժամանակ տալ, որպեսզի նրանք հնարավորություն ունենան փա-
խուստի դիմելու։ Դրա համար էլ պարսիկները ձեռքով նշան էին
տալիս փախուստի դիմողներին՝ հնարավորին չափ շուտ փախչել։
Հռոմայեցի զինվորները, մնացած հրամանատարների հետ նահան-
ջելով, բոլորն անցան այն դարպասով, որը տանում է դեպի Անտի-
ոքի Դաֆնե արվարձանը։ Պարսիկները, բացի այս մեկից, մնացած
բոլոր [դարպասները] գրավել էին։ Դեմոսից քչերին հաջողվեց
փախչել զինվորների հետ միասին։ Երբ պարսիկները տեսան, որ
հռոմայեցի զինվորները հեռու են գտնվում, բարձունքից իջնելով,
մտան քաղաք։ Ահա այստեղ անտիոքացի բազմաթիվ պատանիներ
կռվի բռնվեցին և սկզբում թվում էր, թե նրանք հաղթելու են։
Նրանցից միայն մի փոքր մասն էր զինված, իսկ մեծամասնությու-
նը կռվում էր միայն քարեր շպրտելով։ Նրանք ետ մղելով թշնամի-
ներին, ռազմական երգեր էին երգում և կարծես հաղթած, Հուստի-
նիանոս կայսեր «բարեհաղթ» հռչակում։

Այդ միջոցին Խոսրովը, որ նստել էր բարձունքի աշտարակնե-
րից մեկում, կանչեց դեսպաններին, որովհետև ցանկանում էր
նրանց բան ասել։ [Պարսից] իշխանավորներից մեկը՝ Զաբերգանե-
սը, տեսնելով որ դեսպաններին հրավիրում են բանակցությունների
համար, շտապեց արքայի մոտ և ասաց այսպես. «Ինձ թվում է, ով
»տեր, որ դու ավելի ես մտածում հռոմայեցիների փրկության մա-
»սին, քան իրենք։ Նրանք վտանգից առաջ հայհոյում էին քո թա-
»գավորությանը, իսկ պարտված վիճակում նույնիսկ անչափ խիզա-
»խում պարսիկներին մեծ վնաս հասցնել, կարծես վախենում են
»քեզ մոտ թողնել իրենց հանդեպ որևէ մարդասիրական մոտեցման
»հնարավորություն։ Իսկ դու ուզում ես ողորմել նրանց, ովքեր չեն
»էլ ակնկալում փրկություն, շտապում ես խնայել մարդկանց, ով-
»քեր բոլորովին էլ չեն ուզում այդ։ Նրանք գրավված քաղաքում դա-
»րան են դրել և սպանում են հաղթողներին, թեև իրենց բոլոր զին-
»վորները վաղուց փախել են»։ Խոսրովը լսելով այդ, իր լավագույն
[զինվորներին] ուղարկեց նրանց դեմ. շատ չանցած վերադառնա-
լով նրանք ասացին, որ ոչինչ վատ բան չի պատահել։ Պարսիկներն
[իրենց] թվական գերազանցությամբ անտիոքացիներին փախուստի
մատնեցին, և [քաղաքում] մեծ ջարդ տվեցին։ Պարսիկները չխնա-
յելով տարիքը կոտորում էին հանդիպողին։ Պատմում են, որ այն

ժամանակ երկու երևելի անտիոքացիների կանայք, որոնք պարսպից դուրս էին մնացել, զգալով, որ ընկնելու են թշնամու ձեռքը (նրանք արդեն երևում էին ամենուրեք), շտապեցին դեպի Օրոնտես գետը և վախենալով, որ պարսիկները նրանց կպղծեն, քողով ծածկելով իրենց դեմքերը, նետվեցին գետի հոսանքի մեջ ու խեղդվեցին։ Անտիոքացիք ահա ենթարկվեցին ամեն տեսակի դժբախտության[34]։

9. Այստեղ Խոսրովը դեսպաններին ասաց հետևյալը. «Ես հին
»ասացվածքը ճշմարիտ եմ համարում, որ աստված բարիքներն
»ընձեռում է մարդկանց ոչ թե մաքուր վիճակում, այլ չարիքի հետ
»խառնելով։ Այդ պատճառով էլ մենք ծիծաղելուց բացի լաց էլ ենք
»լինում, երջանկության կողքին անպայման բուսնում է դժբախտու-
»թյունը, ուրախության՝ տխրությունը, և այս թույլ չի տալիս լիա-
»կատար վայելել տրված բարօրությունը։ Ես, ինչպես տեսնում եք,
»շատ հեշտությամբ՝ աստծո օգնությամբ կարողացա գրավել այս
»քաղաքը՝ հռոմայեցիների երկրում եղած քաղաքներից ամենահռչակավորը։ Ես, տեսնելով այդքան մարդկանց սպանությունը և
այն, որ [իմ] հաղթանակը արյան մեծ գնով է ձեռք բերված, այս
»կատարվածից ոչ մի բավարարություն չզգացի։ Պատճառը թշվառ
»անտիոքացիներն են, որոնք երբ պաշտպանվում էին, չկարողացան
»պարսիկներին ետ մղել, բացի դրանից, երբ [վերջիններս] հաղթել
»էին և գրոհով քաղաքը գրավել, աննպատակ մեռնել ցանկանալով,
»խիզախեցին կռվել։ Պարսից բոլոր մեծամեծները ինձ շատ ձանձ-
»րացրին պահանջելով, որ ես շուրջկալի մեջ առնեմ քաղաքը և բոլոր
»գերվածներին կոտորեմ, բայց հակառակ դրան, ես նահանջողներին
»կոչ էին անում առավել ևս շտապ փախուստի դիմել, որպեսզի
»հնարավորին չափ շուտ փրկվեն, որովհետև արդարացի չէ ոտնա-
»տակ անել գերվածներին»։ Ահա Խոսրովը սեթևեթելով այսպիսի կեղծավոր խոսքեր ասաց դեսպաններին, բայց վերջիններս շատ լավ գիտեին, թե ինչու նա հնարավորություն տվեց հռոմայեցիներին փախուստի դիմել։ Նա չեղածի մասին խոսելու մեջ ամենակարող մարդ էր, նմանապես ճշմարտությունը թաքցնելու, իր սեփական չարագործությունների մեղքը տուժողների վրա գցելու։ Նա պատրաստ էր ամեն տեսակ խոստում տալ և այն երդումներով հաստատել, բայց ավելի ընդունակ էր մոռանալ իր հենց նոր տված խոստումն ու երդումը։ Նա դրամի համար պատրաստ էր ամեն մի ոճիր գործել, բայց և շատ վարպետությամբ կարող էր բարեպաշտ ձևանալ և խոսքով հրաժարվել գործած արարքից։ Նա սուրոնցիներին,

որոնք [իրեն] ոչ մի վատություն չէին արել, նենգությամբ կոտորեց, ինչպես [վերևում] ասվեց։ Քաղաքը գրավելու պահին նա տեսավ մի վայելուչ և երևելի կին, որին ձախ ձեռքից ուժգնորեն քաշքըշում էին բարբարոսները։ Նա պինդ բռնել էր նոր կրծքից կտրված իր երեխային, որը չկարողանալով այդպես արագ վազել, ընկել էր գետին և քաշում էր նրան մյուս ձեռքով։ Հենց այստեղ [Խոսրովը] ցույց տվեց իր կեղծավորությունը։ Պատմում են, որ նա հոգոց հանեց, ձևացրեց ներկաներին, այդ թվում նաև դեսպան Անաստասիոսին, թե իբր արտասվում է և աստծուն երդվեց վրեժ լուծել նրանից, ով այդ դժբախտությունների պատճառ դարձավ։ Նա ակնարկում էր հռոմայեցիների կայսր Հուստինիանոսին, թեև գիտեր, թե ինքն է ամեն ինչի գլխավոր պատճառը։ Ահա այսպիսի հատկությունների տեր մարդ Խոսրովը դարձավ պարսից արքա (աստված կուրացրել էր հիանալի Զամեսի [մեկ] աչքը, որն ավագությամբ պետք է ստանար թագավորությունը՝ Կաոսեսից հետո, որին առանց որևէ պատճառի ատում է Կավադը) և առանց դժվարության պարտության մատնեց իր դեմ ապստամբածներին, և ինչ վատություն որ մտադրվել էր՝ իրագործեց հռոմայեցիների հանդեպ։ Ճակատագիրը, ցանկանալով միշտ մեկին մեծացրած լինել, որոշ ժամանակ իր ցանկացածն է անում, նրա մտադրությունը ոչ ոք չի կարող խափանել, ճակատագիրը հաշվի չի նստում մարդու արժանիքների հետ, չի մտածում կանխել այնպիսի դեպք, որ չպետք է տեղի ունենար, ոչ էլ մտածում է, թե շատերը այն բանի համար, որ նա բախտի է արժանացրել անարժան մեկին, պախարակելու են իրեն ու ծաղրելու։ Նա մտածում է միայն այն մասին, որ կատարվի իր մտադրությունը։ Բայց թող լինի այնպես, ինչպես աստված է կամենում։

Խոսրովը զորքին հրաման տվեց կենդանի մնացած անտիոքացիներին գերել ու ստրկացնել, ամբողջ հարստությունը թալանել, իսկ ինքը դեսպանների հետ միասին բարձունքից իջավ դեպի տաճարը, որ եկեղեցի են անվանում։ Այստեղ Խոսրովն այնքան շատ ոսկե և արծաթե թանկագին իրեր գտավ, որ ամբողջ ավարը չհաշված, միայն այդ իրերը հսկայական հարստություն էին կազմում։ Հենց այնտեղ նա տեղահան արեց բազմաթիվ հրաշալի մարմարներ և հրամայեց քաղաքից դուրս բերել՝ պարսից երկիրը տեղափոխելու համար։ Այդ անելուց հետո նա հրամայեց պարսիկներին ամբողջ քաղաքը կրակի տալ։ Դեսպանները խնդրում էին խնայել գոնե եկեղեցին, բավարար փրկագին համաձայնելով այնտեղից տարածը։ Նա ընդառաջեց դեսպաններին, բայց հրամայեց մնացած ամեն ին-

չը հրկիզել։ Փոքրաթիվ [մարդկանց] թողնելով այնտեղ, որոնք պետք է քաղաքը կրակի տային, նա մնացած զորքի հետ հեռացավ ճամբարը, ուր նախապես վրաններ էին խփել։

10. Այս պատահարից մի քիչ առաջ աստված այդ [քաղաքի] բնակիչներին հրաշքով ցույց էր տվել կատարվելիքը։ Վաղուց այստեղ ծառայող զինվորների դրոշները, որոնք սկզբում դեպի արևմուտք էին ծածանվում, հանկարծ ինքնաբերաբար շուռ եկան դեպի արևելք, իսկ այնուհետև առանց որևէ մեկի ձեռք տալու նորից դարձան նախկին կողմը։ Զինվորներն այդ բանը ցույց տվին մոտակայքում գտնվողներից շատերին, այդ թվում նաև ճամբարի ծախսերը հոգացող խորեգոսին, որի անունը Տատիանոս էր։ Նա շատ խոհեմ մարդ էր, ծագումով՝ Մոպսուեստիայից։ Սակայն այդ հրաշքը տեսնողները դրանից հետո էլ գլխի չընկան, որ վայրի տիրապետությունը արևմտյան կայսեր [իշխանությունից] անցնելու էր արևելյանի [իշխանության] ներքո։ Ոչ մի կերպ հնարավոր չէ խուսափել այն բանից, ինչ իսկապես պետք է տեղի ունենա։ Այսքան մեծ դժբախտության մասին գրելուց, որ գալիք սերունդներին հիշատակ մնա, իմ գլուխը պտտվում է և չգիտեմ, թե ինչ է ուզում աստված, որ մի կողմից բարձրացնում է մարդուն կամ որևէ երկիր, իսկ այնուհետև ցած է գլորում ու հողմացրիվ անում, առանց ակընհայտ որևէ պատճառի։ Լավ չէ [աստծու] մասին ասել, թե նա ամեն ինչ կատարում է առանց որևէ պատճառի։ Նա այն ժամանակ թույլ տվեց, որ Անտիոքը հիմնահատակ կործանվի ամենաամբարիշտ մարդու ձեռքով, մի քաղաք, որի գեղեցկությունն ու կատարյալ փառահեղությունը նույնիսկ այժմ անհնարին է չնկատել։ Քաղաքի ավերումից հետո փրկվեց միայն եկեղեցին՝ այն պարսիկների ջանքերով ու հոգատարությամբ, որոնց վրա էր գրված այդ գործը։ Բազմաթիվ տներ փրկվեցին նաև [քաղաքի] Կերատայոն կոչված մասում ոչ թե մարդկանց հոգատարության շնորհիվ, այլ այն պատճառով, որ նրանք գտնվում էին քաղաքի ծայրամասերում, նրանց կողքին ուրիշ ոչ մի շինություն չկար և կրակը չկարողացավ հասնել նրանց։ Բարբարոսները կրակի տվեցին նաև պարսպից դուրս գտնվող բոլոր շինությունները, բացի սուրբ Հուլիանոսին նվիրված տաճարից և այն տներից, որոնք գտնվում էին այդ տաճարի շուրջը, որովհետև դեպքերի բերմամբ դեսպաններն այստեղ էին օթևանել։ Պարսիկները պարսպին ամենևին ձեռք չավին։

Փոքր անց դեսպաններն եկան Խոսրովի մոտ և ասացին այս-

պես. «Եթե մենք այստեղ անձնապես քեզ հետ չխոսեինք, ով արքա, »մենք երբեք չէինք հավատա, որ դու, Կավադի որդի Խոսրովդ, դըր»ժելով քո տված երդումները, որոնք մարդկանց համար վստահու»թյան և ճշմարտության ամենագլխավոր և ամենաամուր գրավա»կանն են, զենքով հարձակվել ես հռոմայեցիների երկրի վրա, և »խախտել ես հաշտությունը, որը պատերազմների արհավիրքների »մեջ անապահով ապրողներն իրենց միակ հույսն էին համարում։ »Դրան չի կարելի այլ անուն տալ, քան որ մարդավարությունը վեր »է ածվել գազանավարության։ Եթե հաշտություն գոյություն չու»նենա, ապա բոլորը կներգրավվեն անվերջ պատերազմի մեջ, իսկ »վերջ չունեցող պատերազմն էլ միշտ վերափոխում է պատերազ»մողների բնությունը։ Դու նույն բանը նկատի չունեի՞ր, երբ մի քիչ »առաջ նամակ գրելով քո եղբոր[35] ասացիր, թե նա է հաշտության »վերացման պատճառը և դրանով իսկ չէի՞ր ընդունում, որ հաշ»տության վերացումը մեծագույն չարիք է։ Եթե նա ոչ մի մեղք չու»նի, ապա դո՛ւ ես անարդարացին, որ մեր վրա ես գալիս։ Իսկ եթե »այնուամենայնիվ քո եղբայրը այդպիսի մի բան գործել է, ապա »դու այդ բանի համար մեղադրիր նրան և ոչ ավելի, որպեսզի ցույց »տաս, որ նրանից լավն ես. վատության մեջ մեկին զիջողը արդար »գործում հաղթում է նրան, թեև մենք շատ լավ գիտենք, որ Հուս»տինիանոս կայսրը երբեք խաղաղության դեմ հանդես չի եկել։ »Քեզ խնդրում ենք հռոմայեցիների դեմ այլևս այդպիսի վատու»թյուններ չձեռնարկես, դա պարսիկներին ոչ մի օգուտ չի տա, »իսկ դու կշահես միայն այն, որ քիչ առաջ քեզ հետ հաշտություն »կնքողներին անարդարացի կերպով մեծ վնաս կհասցնես»։

Դեսպաններն այսքանն ասացին։ Իսկ Խոսրովը լսելով այդ, պնդում էր, որ Հուստինիանոս կայսրն է խախտել հաշտությունը, թվարկում էր կայսեր տված առիթները՝ [պատերազմ] սկսելու, որոնցից մի մասը իսկապես ուշադրության արժանի էր, իսկ մյուսը՝ հնարովի և անհիմն։ Նա պատերազմի հիմնական պատճառն էր համարում Ալամունդարոսին և հոներին [կայսեր] գրած նամակները, որոնց մասին վերևում խոսվեց[36]։ [Խոսրովը] չէր կարող հականե հանվանե ցույց տալ մի հռոմայեցու, որ խախտել էր պարսից սահմանը և զենք բարձրացրել։ Դեսպանները մեղքը գցում էին ոչ թե Հուստինիանոսի, այլ կա՛մ [նրա] ենթականերից ոմանց վրա, կա՛մ էլ պնդում էին, որ այնպես տեղի չի ունեցել, ինչպես պատմում են։ Ի վերջո Խոսրովը հռոմայեցիներից պահանջեց շատ դրամ։ Նա նշում էր, որ խաղաղությունը հավիտենական չի լինի, եթե դրամը մեկ

անգամ տան, որովհետև դրամի հիման վրա մարդկանց միջև կայացած բարեկամությունը, դրամի ծախսման հետ միասին կվերանա։ Դրա համար անհրաժեշտ է, որ հռոմայեցիները պարսիկներին նաև ամեն տարի որոշակի [գումար] տան։ «Ահա այս ձևով,—ասաց »նա,—պարսիկները կայուն խաղաղություն կհաստատեն, Կաս- »պից դռներն իրենք կպահեն, ազատված կլինեն Դարա քաղաքի »հոգսից՝ այդ բոլորի համար մշտական վարձ ստանալով»։ Դեսպաններն ասացին, որ «պարսիկները ցանկանում են ոչ ավելի ոչ »պակաս, քան հռոմայեցիներին դարձնել իրենց հարկատուները»։ «Ոչ,—պատասխանեց Խոսրովը,—այդ ձևով պարսիկները դառնում »են հռոմայեցիների զինվորները՝ իրենց ծառայության համար »ստանալով որոշ գումար։ Չէ՞ որ դուք ամեն տարի հոներին ու սա- »րակինոսներին ոսկի եք վճարում, բոլորովին էլ չլինելով նրանց »հարկատու, այլ ձեր երկիրը թալանից հավիտյան զերծ պահելու »համար»։

Ահա այսպիսի բանակցություններ էին գնում Խոսրովի և դեսպանների միջև. ի վերջո նրանք համաձայնության եկան. Խոսրովը հռոմայեցիներից կանխիկ պետք է ստանար հիսուն կենտինար ոսկի և այնուհետև հավիտյան տարեկան հինգ [կենտինար], որպեսզի [պարսիկները] ոչ մի վնաս չպատճառեն իրենց։ Համաձայնության կապակցությամբ դեսպանները պետք է տային պատանդներ, որից հետո [Խոսրովը] իր ամբողջ զորքով պետք է վերադառնար իր երկիրը, ուր Հուստինիանոս կայսեր կողմից դեսպաններ պետք է ուղարկվեին՝ հաշտության պայմանագիրը հաստատելու համար։

11. Այդ միջոցին Խոսրովը մտավ Անտիոքից հարյուր երեսուն ասպարեզ հեռավորության վրա գտնվող Սելևկիա ծովափնյա քաղաքը, ուր ոչ մի հռոմայեցու չհանդիպեց։ Նա չթալանեց [քաղաքը], այլ միայն ինքը լողացավ ծովում, ապա զոհ մատուցեց արևին և իր ցանկացած մյուս [աստվածներին], երկար աղոթեց ու շարժվեց դեպի ետ։ Գալով ճամբար, նա ցանկություն հայտնեց ծանոթանալ հարևան Ապամիա[37] քաղաքի հետ, ոչ որևէ այլ մտքով, այլ միայն այն տեսնելու համար։ Դեսպանները ակամա դրան էլ համաձայնվեցին, որ նա դիտի քաղաքը, այդտեղից վերցնի հազար լիտր ոսկի և ոչ մի ավարառություն չգործելով ետ վերադառնա։ Դեսպանների և բոլորի համար ակնհայտ էր, որ Խոսրովը Ապամիա է գնում այն նպատակով միայն, որպեսզի որևէ փոքր առիթ օգտագործելով՝ թալանի [քաղաքը] և նրա շրջակայքը։ Նախ նա մտավ Դաֆնե՝ Ան-

տիոքի արվարձանը, ու շատ հիացավ պարտեզի[38] և ջրերի աղբյուրների վրա։ Ե՛վ մեկը, և՛ մյուսը հոյակապ են։ Նա ղոհ մատուցեց ջրահարսներին և ճամփա ընկավ, ոչ մի ավարառություն չկատարելով, հրկիզեց միայն հրեշտակապետ Միքայելի տաճարը և մի քանի այլ տներ՝ հետևյալ պատճառով։ Խոսրով արքայի շրջապատից մի նշանավոր պարսիկ զինվորական, ձիով մի քանիսի հետ միասին գնացել էր զառիթափ մի վայր՝ Տրետոս կոչված տեղի մոտ, ուր գտնվում է Միքայել հրեշտակապետի տաճարը՝ [ճարտարապետ] Եվարիգեսի գործը։ [Պարսիկը] այստեղ նկատեց մի թաքնված անտիոքացի պատանու և սկսեց միայնակ հալածել նրան։ Այդ պատանին մսավաճառ էր, անունը՝ Աեյմաքոս։ Երբ նա տեսավ, որ բռնըվելու է, շուռ եկավ և մի քար շպրտեց իրեն հալածողի վրա։ [Քարը] դիպավ նրա ճակատին, թմբկաթաղանթին, պարսիկն իսկույն գետին գլորվեց, իսկ [պատանին] նրա թուրը քաշելով սպանեց նրան։ Ապա հանգիստ հափշտակեց նրա զենքերը, ամբողջ ոսկին, հագուստը և ձին հեծնելով, սլացավ առաջ։ Կամ բախտի բերմամբ, կամ էլ այն պատճառով, որ նա քաջածանոթ էր տեղանքին, նրան հաջողվեց խուսափել թշնամիներից և փախչել։ Լսեց այդ մասին Խոսրովը, շատ տխրեց պատահարի համար և իր թիկնապահներին հրամայեց կրակի տալ հրեշտակապետի տաճարը, որի մասին վերևում հիշատակեցի։ Վերջիններս, ենթադրելով, որ հենց այդ [տաճարի] մասին է խոսքը, նրա շուրջը եղած շինությունների հետ միասին հրդեհեցին՝ համարելով որ կատարել են Խոսրովի հրամանը։ Ահա այդ մասին այսքան։

Ապա Խոսրովը ամբողջ զորքով շարժվեց Ապամիայի վրա, ուր պահվում է մի կանգունաչափ փայտ, բեկորն այն խաչափայտի, որի վրա, ինչպես ասում են, Քրիստոսը Երուսաղեմում կամավոր մահապատժի ենթարկվեց։ Դեռ հնուց մի ասորի այդ բեկորը գաղտնի բերել էր այնտեղ։ Հին մարդիկ, գտնելով, որ այն կլինի իրենց և քաղաքի մեծ հմայեակը, փայտե տուփ էին սարքել և նրա մեջ դրել այն։ Այդ [տուփը] նրանք առատորեն զարդարել էին ոսկով ու թանկագին քարերով և տվել երեք հոգևորականների, որպեսզի ապահով պահեն այն։ Այդ [տուփը] հանում էին տարին մեկ անգամ միայն, որպեսզի ամբողջ ժողովուրդը երկրպագի։ Ապամիացիները, երբ իմացան, որ մարերի զորքը իրենց վրա է գալիս, մեծ սարսափի մեջ ընկան։ Լսելով, որ Խոսրովը դրժել է իր խոստումը, նրանք դիմեցին քաղաքի եպիսկոպոս Թովմային, խնդրելով, որ իրենց ցույց տա խաչափայտը, որպեսզի վերջին անգամ երկրպագելուց հետո վախ-

ճանվեն։ Նա ընդառաջեց։ Ահա այն ժամանակ տեղի ունեցավ անսպասելի և անհավատալի մի երևույթ։ Եպիսկոպոսը բերեց և ցույց տվեց փայտը, որի վրայից բարձրանում էր հրեղեն լույս և արտակարգ պայծառ լուսավորում [եկեղեցու] առաստաղը։ Քահանայի ամբողջ տաճարով մեկ շարժվելու հետ միասին շարժվում էր նաև լույսը, անընդհատ լուսավորելով [եկեղեցու] առաստաղը։ Ապամիացիների ղեկավարը այդ երևույթի վրա հիացած, ապշահար եղավ, հրճվեց ու լաց եղավ և բոլորի մոտ փրկության հույս առաջացավ։ Թովման, ամբողջ տաճարի մեջ շրջելուց հետո, խաչափայտը տեղավորեց տուփի մեջ, ծածկեց այն և լույսն անմիջապես անհետացավ։ Իմանալով, որ թշնամու զորքը հասել է քաղաքի մոտակայքին, նա շտապ Խոսրովի մոտ գնաց։ Վերջինիս հարցին, թե մտադիր են արդյոք ապամիացիները պարիսպներից գիմադրել պարսից զորքին, Թովման պատասխանեց, որ մարդկանց մտքից անգամ այդպիսի բան չի անցել։ Խոսրովի հարցին՝ «Դուք ինձ մի քանի հոգու հետ չե՞ք ընդունի քաղաք, բացելով բոլոր դարպասները», քահանան պատասխանեց. «Հենց քեզ հրավիրելու համար եմ ես այստեղ ժամանել»։ Ահա այսպիսով [պարսից] ամբողջ զորքը վրաններ խփելով պարսպի առաջ ճամբարեց։

Խոսրովը պարսից լավագույններից երկու հարյուր հոգու հետ մտավ քաղաք։ Հենց որ նա դարպասներից ներս անցավ, մոռացավ իր և դեսպանների միջև եղած համաձայնության մասին և հրամայեց եպիսկոպոսին տալ ոչ միայն հազար լիտր արծաթ, ոչ էլ նրա տասնապատիկը, այլ նաև այստեղ գտնվող ոսկե և արծաթե թանկարժեք [եկեղեցական] բոլոր իրերը, որ անչափ շատ էին։ Ինձ թվում է, որ նա առանց վարանելու ամբողջ [բնակչությունը] կըստրկացներ և քաղաքը կթալաներ, եթե մի աստվածային [հրաշք] բացահայտ կերպով չխանգարեր։ Նրան այնքան էր հիմարացրել ու խելագարացրել փառասիրությունը, որ նա կարծում էր, թե քաղաքներ ստրկացնելը մեծ փառքի գործ է, բոլորովին ուշադրություն չդարձնելով, որ դրանով նա խախտում է հռոմայեցիների հետ կընքած հաշտության պայմանագիրը։ Խոսրովի այդպիսի վարվելակերպի մասին վկայում է նաև Դարա քաղաքի օրինակը, երբ ինքը իր այդ նույն նահանջի ժամանակ, ծայրեիծայր խախտեց հաստատված պայմանները։ Մի քիչ հետո նույնը տեղի ունեցավ նաև կալլինիկոնցիների հետ, հենց հաշտության պայմաններում, որի մասին ես հաջորդ գլուխներում կպատմեմ։ Բայց աստված, ինչպես ասվեց, փրկեց Ապամիան։ Երբ Խոսրովը որպես ավար վերցրեց ամբողջ

թանկագին իրերը և Թովման տեսավ, որ նա դրամի առատությունից հարբել է, բերեց խաչափայտը՝ տուփի մեջ։ Բացելով տուփը ցույց տվեց փայտն ու ասաց. «Ո՜վ ամենահզոր արքա, ամբողջ ունեցվածքից ինձ մնացել է ահա այս։ Այս տուփը (այն զարդարված է ոսկով և թանկագին քարերով) մենք ուրախությամբ կտանք մնացած բոլորի հետ, բայց այս փայտը մեզ համար փրկարար է և սուրբ, դրա համար աղաչում եմ քեզ և պաղատում՝ ի՛նձ թող այն»։ Եպիսկոպոսն այսքանն ասաց։ Խոսրովը զիջեց և նրա խնդրանքը կատարեց։

Այնուհետև Խոսրովը փառասիրությամբ տարված, հրամայեց ռեմոսին հավաքվել ձիարշավարան, իսկ կառավարներին՝ սովորականի պես մրցել։ Ինքն էլ գնաց այնտեղ, ցանկանալով դիտել մրցումները։ Որովհետև նա վաղուց լսել էր, որ Հուստինիանոս կայսրը անչափ սիրում է վենետ գույնը, այն է կապույտը, և ցանկանալով այստեղ ևս հակադրվել նրան, ուզեց որ հաղթանակը կանաչ [գույնին] շնորհեն[39]։ Կառավարները սահմանագծից սկսեցին վազքը, բայց պատահմամբ վենետ հագածը առաջ ընկավ։ Նրա հետևից էր գալիս նույն վազքուղով կանաչ գույն հագածը։ Խոսրովը կարծելով, որ դա միտումնավոր է այդպես կատարվել, զայրացավ և սպառնական գոչում էր, որ Կեսարը[40] չպետք է մյուսներից առաջ անցնի, հրամայեց, որ առաջ ընկած ձիերը կանգնեցնեն, որպեսզի նրանք մրցումների մեջ ետ ընկնեն։ Նրա հրամանը կատարվեց և այնպես դուրս եկավ, որ հաղթեցին Խոսրովն ու կանաչ կողմը։ Այստեղ ապամիացիներից մեկը ներկայացավ Խոսրովին և բողոքեց, որ մի պարսիկ, մտնելով իր տունը, բռնաբարել է իր կույս դստեր։ Խոսրովը լսելով այս մասին, կատաղեց զայրույթից և հրամայեց [իր մոտ] բերել այդ մարդուն։ Երբ նա ներկայացավ, հրամայեց ճամբարում նրան ցցահան անել։ Այդ իմանալով դեմոսը, ամբողջ ուժով գոչում էր՝ խնդրելով ազատել մարդուն արքայի ցասումից։ Խոսրովը խոսք տվեց, թե ազատ կարձակի մարդուն, բայց հետո թաքուն ցցահան արեց։ Ահա այդ բոլորը այնտեղ կատարելով, նա ամբողջ զորքով ետ շարժվեց։

12. Երբ հասավ Բերիայից ութսուն և չորս ասպարեզ հեռավորության վրա գտնվող Խալկիս քաղաքը, նա նորից մոռացավ համաձայնության մասին և ճամբարելով պարսպից ոչ հեռու, ուղարկեց Պավլոսին սպառնալու խալկիսցիներին, որ եթե նրանք փրկագին չտան, ինչպես նաև եթե չհանձնեն այնտեղ եղած զինվորներին

իրենց հրամանատարի հետ միասին, նա քաղաքը գրոհով կգրավի։ Խալկիսցիները, շատ վախենալով և մեկ, և մյուս թագավորից, երդվեցին, որ նրանց մոտ ոչ մի զինվոր չկա, և նրանց, ինչպես և զորահրամանատար Ագոնախոսին Թաքցրին խրճիթներում, որպեսզի թշնամիների ձեռքը չընկնեն։ Նրանց հաջողվեց հազիվ երկու կենտինար ոսկի հավաքել, որովհետև իրենց քաղաքը այնքան էլ հարուստ չէր, և այդպիսի փրկագին տալով Խոսրովին փրկեցին և՛ իրենց, և՛ քաղաքը։ Այստեղից Խոսրովն այլևս չէր ուզում վերադառնալ այն ճանապարհով, որով եկել էր, այլ [որոշեց] անցնել Եփրատ գետը և Միջագետքից ավար վերցնել՝ հնարավորին չափ շատ հարստություն։ Նա կամուրջ գցեց Բարբալիսսոս ամրոցից[41] քառասուն ասպարեզ հեռավորության վրա գտնվող Օբբանե վայրի մոտ, նախ ինքն անցավ և ապա հրաման տվեց, որ ամբողջ զորքը շտապ կարգով անցնի՝ միաժամանակ կարգադրելով, որ երեք օր հետո կամուրջը վերցնեն, նշելով օրվա ճիշտ ժամը։ Սահմանված օրը, երբ դեռ զորքի մի փոքր մասը մնացել էր [գետի այն կողմը, Խոսրովը], անտեսելով այդ, ուղարկեց կամուրջը հանելու համար առանձնացված մարդկանց։ Մյուս կողմում մնացածներից յուրաքանչյուրն ինչպես կարող էր, վերադարձավ իր հայրենիքը։ Այդ ժամանակ Խոսրովը, փառասիրությունից դրդված, ցանկացավ գրավել Եդեսիա քաղաքը։ Նրան այդ բանին էր մղում և նրա միտքը զբաղեցնում քրիստոնյաների այն ավանդությունը, որի համաձայն քաղաքը անառիկ է՝ հետևյալ պատճառով։

Հին ժամանակներում Եդեսիայի տոպարքեսն էր (այն ժամանակ օտարազգի թագավորին այդպես էին անվանում) ոմն Աբգար[42]։ Այս Աբգարն իր ժամանակի ամենախոհեմ մարդն էր և Օգոստոս կայսեր սիրելին։ Նա, ցանկանալով դառնալ հռոմայեցիների դաշնակիցը, ժամանեց Հռոմ, հանդիպեց Օգոստոսին և այնպես հիացրեց նրան իր խոհեմությամբ, որ Օգոստոսն այլևս չէր ուզում զրկվել նրա ընկերակցությունից, նրա հետ խոսելու հաճույքից։ [Աբգարը] երկար ժամանակ վատնեց իր այդ ճանապարհորդության ընթացքում։ Երբ նա ցանկացավ վերադառնալ իր հայրենիքը, հասկանալով, որ անհնարին է համոզել Օգոստոսին, որ նա թույլ տա, մտածեց հետևյալը. որս անելու պատրվակով գնաց Հռոմի շրջակայքը. նա շատ լավ [որսորդ] էր։ Երկար շրջելով նա ողջ ողջ որսաց բազմաթիվ գազաններ և նրանց հետ միասին յուրաքանչյուր վայրից հող վերցրեց։ Ահա այդպես նա վերադարձավ Հռոմ, բերելով իր հետ և՛ հողը, և՛ գազաններին։ Օգոստոսն ըստ սովորության.

բազմել էր ձիարշավարանում, իսկ Աբգարը ներկայանալով նրան
ցուցադրեց հողը և գաղաններին, հաղորդելով, թե որ վայրից է յու-
րաքանչյուրը։ Այնուհետև նա հրամայեց հողը առանձին-առանձին
ձիարշավարանի տարբեր տեղերում փռել և ապա ներս բերել ու բաց
թողնել գազաններին։ Աշխատողներն այդպես էլ արեցին։ Գազան-
ներն իրարից բաժանվեցին և յուրաքանչյուրը գնաց դեպի իր բռն-
վելու վայրից վերցրած հողը։ [Օգոստոսը] տեսավ, որ ամեն ինչ
ճշգրտությամբ կատարվեց և զարմանում էր, թե ինչպես գազաննե-
րը բնությունից օժտված են սիրել իրենց հարազատ հողը։ Իսկ Աբ-
գարը, հանկարծ ընկնելով նրա առջև, ասաց. «Քո մտքից չի՞ անցել
»ո՜վ տեր, որ ե՛ս էլ կարող եմ նման զգացմունքներ ունենալ, ես, որ
»կին էլ ունեմ, երեխա էլ, թագավորություն էլ, թեև փոքր, բայց այ-
»նուամենայնիվ հայրենի հողի վրա»։ [Օգոստոսը] ճշմարիտ խոսքի
առաջ տեղի ավեց և ստիպված, ակամա թույլ տվեց նրան գնալ
առաջարկելով խնդրել ինչ-որ ցանկանա։ Վերջինս Օգոստոսից
խնդրեց Եդեսիա քաղաքում իր համար ձիարշավարան կառուցել։
[Օգոստոսը] դրան էլ համաձայնվեց։ Ահա այսպես Աբգարը հեռա-
ցավ Հռոմից և եկավ Եդեսիա։ [Եդեսիայի] քաղաքացիները հարց-
նում էին նրան՝ իրենց համար ի՛նչ լավ բան ; բերել Օգոստոսից։
Նա պատասխանելով եդեսացիներին ասաց, որ բերել է անվնաս
տխրություն և անօգուտ ուրախություն, նկատի ունենալով ձիար-
շավարանի հաջողություններն ու անհաջողությունները։

Որոշ ժամանակ անց, Աբգարը խոր ծերության մեջ բռնվեց
շատ ծանր հիվանդությամբ՝ հոդատապով։ Նա շատ էր տառապում
ցավերից և լինելով անշարժ դրության մեջ դիմեց բժիշկներին։ Ամ-
բողջ երկրից նա հավաքեց բոլոր իմաստուն բժիշկներին, որոնցից,
սակայն, այնուհետև հրաժարվեց (քանի որ նրանք ցավի ոչ մի
դարման չգտան) և անելանելի դրության մեջ ընկնելով, ողբում էր
իր բախտը։ Այն ժամանակները Հիսուսը, աստծու որդին մարմնաց-
յալ, քարոզում էր Պաղեստինի մարդկանց։ Իր անաղարտ ապրելա-
կերպով, նաև անկարելին կատարելու իր կարողությամբ, նա համո-
զում էր, որ ճշմարիտ՝ ինքը աստծու որդին է։ Կոչելով հարություն
էր տալիս մեռյալներին, կարծես նրանք քնած լինեին, ի ծնե կույ-
րերի աչքերն էր բացում, մաքրում էր բորոտ մարմինները, անդա-
մալույծներին քայլել էր տալիս։ Նա բուժում էր այն բոլոր հիվան-
դությունները, որոնք բժիշկներն անդարմանելի էին համարում։
Աբգարն այդ մասին իմանալով Պաղեստինից Եդեսիա ժամանած
մարդկանցից, հուսադրվեց և նամակ գրեց Հիսուսին, խնդրելով, որ

նա հեռանա Հրեաստանից՝ այնտեղի ապերախտ մարդկանցից և այսուհետև իր մոտ ապրի։ Երբ այդ [նամակը] կարդաց Քրիստոս, պատասխանեց Աբգարին, որ ինքն անձնապես չի կարող հանդիպել նրան, բայց նամակով առողջություն է խոստանում։ Պատմում են, որ նա ավելացրել է նաև, որ քաղաքը երբեք բարբարոսների կողմից չի գրավվի։ Նամակի այս վերջին խոսքերն այդ ժամանակի պատմության գրողներին անծանոթ են մնացել, այդ մասին ոչ մի տեղում չի հիշատակված։ Եդեսացիք պատմում են, որ գանելով նամակում այդ վերջին խոսքերը, անմիջապես այդ նամակը արտագրել և որպես հմայեակ դրել են դարպասների վրա։ Որոշ ժամանակ անց քաղաքն [ընկավ] մարերի ձեռքը, բայց ոչ գրավման հետևանքով։ Դա տեղի ունեցավ այսպես։ Երբ Աբգարն ստացավ Քրիստոսի նամակը, շուտով առողջացավ և երկար ժամանակ ապրելով քաջառողջության մեջ վախճանվեց։ Նրա թագավորությունը ժառանգող որդին ամենաամբարիշտ մարդը դուրս եկավ։ Նա չափազանց վատ էր վերաբերվում իր հպատակներին և վախենալով հռոմայեցիների վրեժխնդրությունից, կամավոր անցավ պարսիկների կողմը։ Երկար ժամանակ անց եդեսացիք, սպանելով բարբարոսների կայազորի զինվորներին, քաղաքը հանձնեցին հռոմայեցիներին. . . . . .[43] Նա այդ ջանում էր իրեն վերագրել, հենվելով այն բանի վրա, որ իր ժամանակներում տեղի ունեցավ և որի մասին ես կպատմեմ հաջորդ գլուխներում։ Ինձ երբեմն թվում է, որ Քրիստոսը նույնիսկ եթե այդ մասին, ինչի մասին ասվեց, չի գրել, այնուամենայնիվ քանի որ մարդիկ այդ բանին հավատում են, ապա [Քրիստոս] ուզում է քաղաքն անառիկ պահել, որպեսզի մարդիկ երբևիցե կասկածելու առիթ չունենան։ Սակայն ինչպես որ աստծուն է դուր գալիս, թող այդպես էլ լինի և ասվի։

Ահա այդ պատճառով Խոսրովը առաջնահերթ խնդիր համարեց Եդեսիան գրավելը։ Նա հասավ Բատնե՝[44] մի փոքր և աննշան քաղաք, Եդեսիայից մեկ օրվա հեռավորության վրա, գիշերեց և վաղ առավոտյան ամբողջ զորքով արշավեց Եդեսիայի վրա։ Որովհետև պարսիկները [ճանապարհին] մոլորվեցին, հաջորդ գիշերը ևս նույն տեղում օթևանեցին։ Պատմում են, որ այդ պատահեց նրանց հետ երկու անգամ։ Երբ վերջապես մոտեցան Եդեսիային, պատմում են, որ [Խոսրովը] մրսեցրեց դեմքը և նրա այտն ուռեց, դրա համար էլ նա հետ կանգնեց քաղաքը [գրավելու] փորձից։ Նա Պավլոսին ուղարկեց եդեսացիներից դրամ պահանջելու։ Բնակիչներն ասում էին, որ քաղաքի համար բոլորովին երկյուղ չեն զգում, բայց որպեսզի

նա [շրջակա] գյուղերը ավարառության չենթարկի, համաձայնվում են տալ երկու կենտինար ոսկի։ [Խոսրովը] ստացավ դրամը և հարգեց պայմանը։

13. Այն ժամանակ Հուստինիանոս կայսրը նամակ ուղարկեց Խոսրովին, խոստանալով կատարել նրա և դեսպանների միջև խաղաղության շուրջը կնքված համաձայնությունը։ Երբ Խոսրովը ծանոթացավ այդ [նամակին], ազատ արձակեց պատանդներին և պատրաստվեց նահանջի։ Նա ուզում էր փրկագնով ազատել նաև անտիոքացի բոլոր ռազմագերիներին։ Երբ այդ մասին իմացան եդեսացիք, շատ մեծ եռանդ ցուցաբերեցին։ Չէր կարելի մեկին հանդիպել, որն իր կարողության չափ փրկագին չբերեր տաճարը՝ այդ ռազմագերիների փրկության համար։ Կային և այնպիսիները, որոնք նույնիսկ իրենց կարողությունից էլ ավելի էին տալիս։ Նույնիսկ պոռնիկները հանում և այնտեղ էին գցում իրենց զարդերը, երկրագործը, որ չուներ ոչ շարժական գույք, ոչ էլ դրամ, բայց ուներ էշ կամ ոչխար, այդ իսկ շտապում էր տաճար բերել։ Այսպիսով, մեծ քանակությամբ ոսկի, արծաթ և դրամ կուտակվեց, սակայն որպես փրկագին ոչինչ էլ չտրվեց, որովհետև Բուզեսը, որը պատահմամբ այստեղ էր գտնվում, խոչընդոտ հանդիսացավ այդ գործին, դրանից մեծ շահույթ ակնկալելով։ Այդ պատճառով Խոսրովը, բոլոր ռազմագերիներին իր հետ վերցնելով, շարունակեց երթը։ Կարրենացիք[45] դիմեցին նրան՝ դրամ առաջարկելով։ Սակայն [Խոսրովը] ասաց, որ ոչինչ պետք չէ, որովհետև նրանցից շատերը քրիստոնյա չէին, այլ հավատարիմ էին հին հավատքին։

Բայց երբ կոստանդինեցիք դրամ առաջարկեցին, նա վերցրեց, թեև ասում էր, թե այդ քաղաքն իրեն է պատկանում պապերի ժամանակներից։ Երբ Կավադը Ամիդը գրավեց, ցանկացավ գրավել նաև Եդեսիան և Կոստանդինեն։ Եդեսիայի մոտակայքում նա աջ ձեռքով ցույց տալով քաղաքը, հարց տվեց մոգերին՝ արդյոք իրեն կհաջողվի գրավել այն։ [Մոգերը] պատասխանեցին, որ չի կարողանա, քանի որ նա դեպի քաղաքը աջ ձեռքը երկարեց, իսկ այդ ոչ թե [քաղաքի] գրավման կամ նրա համար որևէ այլ դժբախտության նշան է, այլ փրկության։ Լսելով այդ, նա համոզվեց և զորքը շարժեց Կոստանդինեի վրա. հասնելով այնտեղ, նա ամբողջ զորքով ճամբարեց, ապա [քաղաքացիներին] իմաց տվեց, թե պաշարելու է [քաղաքը]։ Կոստանդինեի հոգևոր [պետը] այն ժամանակ Բարադոտոսն էր, մի արդար և շատ աստվածասեր մարդ, որի պատճառով

Նրա աղոթքները բոլոր դեպքերում միշտ տեղ էին հասնում։ Դեմքին նայողն անմիջապես կհասկանար, որ նա աստծու սիրելին է։ Բարադոտոսն եկավ Կավադի մոտ, իր հետ բերելով գինի, թուզ, մեղր ու սպիտակ հաց և նրանից խնդրեց, որ փորձության չենթարկի քաղաքը, որն աննշան է և նույնիսկ հռոմայեցիների կողմից անուշադրության մատնված՝ չունի ո՛չ կայազոր, ո՛չ էլ որևէ պաշտպանական այլ միջոց և որ [այնտեղ ապրում են] միայն բնակիչները, որոնք խեղճ մարդիկ են։ Ահա նա այսպես ասաց, իսկ Կավադը խոստացավ խնայել քաղաքը, նրան նվիրեց ամբողջ այն մեծաքանակ պարենամթերքը, որը ճամբարում պատրաստված էր պաշարման համար և այդպես հեռացավ հռոմայեցիների երկրից։ Դրա համար էր Խոսրովը պնդում, թե քաղաքը պապերից իրեն է պատկանում։ Դարա հասնելով նա ձեռնամուխ եղավ պաշարման։ [Քաղաքի] ներսում հռոմայեցիները Մարտինոս զորավարի գլխավորությամբ (նա այնտեղ էր գտնվում) պատրաստվում էին պաշտպանության։ Քաղաքը շրջապատված էր զույգ պարիսպներով, որոնցից ներսի պարիսպը շատ բարձր էր և իսկապես ուշադրության արժանի (յուրաքանչյուր աշտարակի բարձրությունը հասնում էր հարյուր ոտքի, իսկ պարիսպներինը՝ վաթսուն), արտաքին [պարիսպը] թեև շատ ավելի ցածր էր, բայց ամուր և հզոր։ Երկու [պարիսպների] միջև ընկած տարածությունն ունի հիսուն ոտքից ոչ պակաս լայնություն։ Դարացիները եզներին և մնացած անասուններին թշնամու հարձակման ժամանակ այստեղ են բերում։ Խոսրովը սկզբում հարձակում գործեց պարսպի արևմտյան կողմից և մեծ թվով նետեր արձակելով ետ մղեց [պաշտպաններին] և կրակի տվեց ցածր պարսպի դարպասները։ Սակայն բարբարոսներից և ոչ մեկը չհամարձակվեց ներս մտնել։ Այնուհետև նա փորձեց ծածուկ քաղաքի սրևելյան մասում ստորերկրյա անցք փորել։ Միայն այս մասում է հնարավոր որոշ չափով փորել գետինը, պարսպի մնացած մասը կառուցված է ժայռի վրա։ Ահա պարսիկները փորում էին սկսած խրամատից։ Նրանք [փորում էին] շատ խոր և թշնամիները նրանց չէին տեսնում, չգիտեին, թե ինչ է կատարվում։ Նրանք գաղտնի անցել էին արտաքին պարսպի հիմքերի տակով, արդեն պետք է շարժվեին երկու պարիսպների միջև ընկած տարածությունով, այնուհետև անցնեին մեծ պարիսպը և գրոհով գրավեին քաղաքը։ Սակայն (նրան վիճակված չէր գրավվելու պարսիկների կողմից) Խոսրովի զինվորներից մեկը, մարդ էր նա թե գերմարդ՝ հայտնի չէ, օրվա կեսին մենակ մոտեցավ պարսպին և դիտողներին ձևացնում էր, թե հա-

վաքում է այն նետերը, որոնք պարսպից հռոմայեցիները մի փոքր առաջ արձակել էին բարբարոսների վրա։ Այդ գործով էր զբաղված, պաշտպանվելով վահանով, պարսպի ատամնաշարի վրա գտնվողներին նա իբր թե բարկացնում էր, նրանց վրա ծիծաղում ու ծաղրում, սակայն այդ միջոցին ամեն ինչ պատմեց նրանց, խորհուրդ տվեց արթուն լինել և հոգալ իրենց փրկության մասին։ Նա հայտնելով այդ ամենը՝ հեռացավ, իսկ հռոմայեցիները մեծ խուճապով ու շփոթությամբ հրամայեցին փորել երկու պարիսպների միջև ընկած տարածությունը։ Պարսիկները չգիտեին, թե ինչ է կատարվում և նույն թափով շարունակում էին իրենց գործը։ Բարբարոսների ստորերկրյա անցքը ուղիղ գծով էր փորվում, դեպի քաղաքի պարիսպը, իսկ հռոմայեցիները մեխանիկե կոչված արվեստում փորձված մի մարդու՝ Թեոդորոսի խորհրդով լայնությամբ հատող և բավական խորություն ունեցող մի խրամատ փորեցին ու այնպես ստացվեց, որ պարսիկները, որոնք հասել էին երկու պարիսպների միջև ընկած տարածության մեջտեղը, հանկարծ ընկան հռոմայեցիների խրամատի մեջ։ Առջևում գտնվողներին հռոմայեցիները կոտորեցին, իսկ հետևից եկողները փախուստի դիմեցին և փրկվեցին ճամբարում։ Հռոմայեցիները մթության մեջ չցանկացան նրանց հալածել։ Այդ փորձը անհաջողության մատնվելուց հետո, Խոսրովը կորցնելով քաղաքը գրավելու ամեն մի հույս, բանակցությունների մեջ մտավ պաշարվածների հետ և ստանալով հազար լիտր արծաթ՝ շարժվեց դեպի պարսից երկիրը։ Երբ այդ մասին իմացավ Հուստինիանոս կայսրը, մտադրվեց պայմաններն ի կատար չածել, մեղադրելով Խոսրովին, որ նա հաշտության ժամանակ փորձեց Դարա քաղաքը գրավել։ Այդ տեղի ունեցավ Խոսրովի՝ հռոմայեցիների վրա կատարած առաջին արշավանքի ժամանակ. ամառը վերջանում էր։

14. Ասորեստանում, Կտեսիֆոն քաղաքից[46] մեկ օրվա հեռավորության վրա գտնվող վայրում, Խոսրովը քաղաք կառուցեց, անվանեց այն Խոսրովի Անտիոք[47] և անտիոքացի բոլոր ռազմագերիներին այնտեղ բնակեցրեց։ Նրանց համար կառուցեց բաղանիք և ձիարշավարան, հոգ տարավ նաև նրանց զվարճության մասին. կառավարներին և երաժիշտներին Անտիոքից և հռոմեական մյուս քաղաքներից էր բերել իր հետ։ Բացի դրանից նա այս անտիոքացիներին պետության հաշվին ապահովում էր պարենամթերքով ավելի լավ, քան սովորաբար ապահովում են ռազմագերիներին և պահանջում էր, որ նրանք կոչվեն արքայական ու ոչ մի իշխանավորի են-

*թակա չլինեն, այլ միայն արքային։ Եթե որևէ հռոմայեցու հաջողվում էր փախչել գալ Խոսրովի Անտիոք և եթե այնտեղի բնակիչներից մեկն ու մեկը նրան իր ազգականն էր համարում, ապա այդ ռազմագերու տերը, եթե նույնիսկ նա պարսից մեծամեծներից լիներ, ոչ մի դեպքում չէր կարող իր ստրկին ետ ստանալ։*

*Անտիոքացիների այդ դժբախտության մասին կանխագուշակություն էր եղել դեռևս Անաստասիոս կայսեր ժամանակ տեղի ունեցած հրաշքի միջոցով։ Հանկարծակի փչած սաստիկ քամին [Անտիոքի] Դափնե արվարձանում գտնվող բարձր նոճիները արմատախիլ էր արել և գետին տապալել։ Օրենքը բացարձակապես արգելում է [նոճիներ] կտրելը։ Մի փոքր անց, երբ հռոմայեցիների կայսրը Հուստինիանոսն էր, շատ ուժեղ երկրաշարժ տեղի ունեցավ[48], որը սասանեց ամբողջ քաղաքը և հիմնահատակ քանդեց շենքերից շատերը և ամենից գեղեցիկները։ Պատմում են, որ այն ժամանակ երեք հարյուր հազար անտիոքացի սպանվեց։ Իսկ ներկա գրավման ժամանակ ամբողջ քաղաքը, ինչպես ես ասացի, ավերվեց։ Ահա այսպիսի փորձանքների են ենթարկվել անտիոքացիները։ Բելիսարիոսը կայսեր կարգադրությամբ Իտալիայից եկավ Բյուզանդիոն, ուր ձմեռելուց հետո գարնան սկզբում կայսեր կողմից[49], որպես զորահրամանատար Խոսրովի և պարսիկների դեմ ուղարկվեց, ինչպես և Իտալիայից նրա հետ եկած հրամանատարները, որոնցից մեկին՝ Վալերիանոսին [Հուստինիանոսը] հրամայեց գլխավորել Հայաստանի զորքը։ Մարտինոսը ավելի առաջ էր ուղարկվել արևելք, այդ պատճառով էլ, ինչպես վերը ասվեց, Խոսրովը նրան Դարայում գտավ։ Գոթերից միայն Ուիտտիգիսը մնաց Բյուզանդիոնում, իսկ մնացածները Բելիսարիոսի հետ միասին արշավեցին Խոսրովի վրա։ Այդ միջոցին պարսից երկրում մեռնում է Ուիտտիգիսի երկու դեսպաններից մեկը, որը եպիսկոպոսի կոչում ուներ, իսկ մյուսը մնում է այնտեղ։ Նրանց թարգմանը գնում է հռոմայեցիների երկիրը։ Կոստանդինեի մոտ նրան ձերբակալում է Միջագետքի զորքերի հրամանատար Հովհաննեսը և բերելով քաղաքը բանտ նետում, ուր նա հարցաքննվում է և ամեն ինչ հայտնում։ Ահա այս մասին այսքան։ Իսկ Բելիսարիոսն իր զորքով շտապ շարժվում էր առաջ, ջանալով կանխել Խոսրովի որևէ նոր արշավանք դեպի հռոմայեցիների երկիրը։*

*15. Այդ ընթացքում Խոսրովը լազերի առաջարկությամբ զորքը շարժեց դեպի Կոլխիս՝ հետևյալ պատճառով։ Լազերն սկզբում*

բնակվում էին Կոլխիս երկրում՝ լինելով հռոմայեցիների հպատակներ, բայց ոչ հարկատուներ, ոչ էլ ենթարկվում էին նրանց հրամաններին, այլ միայն այն չափով էին հպատակ, որ երբ նրանց թագավորը վախճանվում էր, հռոմայեցիների կայսրը թագավորությունը ժառանգողին իշխանության նշանակներ էր ուղարկում[50]։ [Լազերի թագավորը] պարտավոր էր ամուր պահպանել երկրի սահմաններն՝ իր հպատակների հետ միասին, որպեսզի թշնամի հոները Կովկաս լեռից, որը նրանց սահմանակից է, Լազիկայի միջով չներխուժեն հռոմայեցիների երկիրը։ Նրանք պահում էին սահմանները՝ գրա գիմաց հռոմայեցիներից չստանալով ո՛չ գրամ, ո՛չ էլ զորք։ Նրանք [պարտավոր չէին] հռոմայեցիների հետ միասին արշավանքների դուրս գալ, այլ մշտապես առևտրական գործարքների մեջ էին Պոնտոսում բնակվող հռոմայեցիների հետ։ Քանի որ իրենք չունեին ո՛չ աղ, ո՛չ հացահատիկ, ոչ էլ որևէ այլ բարիք, պետք եղածը ձեռք էին բերում՝ փոխարենը տալով մորթիներ, մուշտակներ և ստրուկներ։ Երբ իբերների թագավոր Գուրգենի հետ պատահեց այն, ինչ ես վերը պատմեցի[51], հռոմեական զորամասը տեղավորվեց Լազիկայում, մի բան, որ դուր չէր գալիս այդ բարբարոսներին. հատկապես դուր չէր գալիս զորահրամանատար Պետրոսը, որը վատություն անելու մեջ վարպետ էր։ Այս Պետրոսը ծագումով Արզանենեից էր[52], որը հնուց պարսիկներին էր ենթակա և գտնվում էր Նիմֆիոս գետից այն կողմ։ Դեռ մանուկ հասակում նա գերվեց Հուստինոս կայսեր կողմից, երբ վերջինս Ամիդի գրավումից հետո Կելերի զորքի հետ միասին ներխուժել էր պարսից երկիրը։ Լինելով մարդասեր, [Հուստինոսը] այդ մարդուն քերականի մ:ւտ ուսման էր տվել։ Սկզբում նա դարձավ Հուստինոսի դպիրը, իսկ երբ Անաստասիոսի մահից հետո հռոմայեցիների թագավորությունն անցավ Հուստինոսին, Պետրոսը նշանակվեց զորավար, և դառնալով անչափ դրամասեր՝ անխոհեմ էր վերաբերվում բոլորին։

Հետագայում Հուստինիանոս կայսրը ուրիշ զորահրամանատարներ էլ ուղարկեց Լազիկա, նրանց թվում նաև Հովհաննեսին, որին Ցիվոս էին անվանում։ Նա հասարակ, աննշան ծագում ուներ, սակայն բարձրացավ զորահրամանատարի աստիճանին միայն այն պատճառով, որ ամենախորամանկ մարդն էր և չափազանց ընդունակ ապօրինի ձևով դրամական միջոցներ ձեռք բերելու գործում։ Նա լարեց, իրար խառնեց հռոմայեցիների ու լազերի փոխհարաբերությունները, համոզեց Հուստինիանոս կայսեր Լազիկայում Պետրա անունով[53] ծովափնյա քաղաք կառուցել և այդ [քաղաքում]

կարծես բերդում բազմած, տակն ու վրա արեց լազերի գործերը։ Նա արգելեց առևտրականներին Կոլխիս երկիրը աղ և լազերին անհրաժեշտ մյուս բեռները տանել, որևէ բան տեղում դնել։ Պետրայում նա հաստատեց այսպես կոչված մոնոպոլիոնը[54], և զբաղվեց չարաշահությամբ. ամբողջ այդ գործը վերցրեց իր ափի մեջ և գործում էր ըստ իր քմահաճույքի, և ոչ թե ինչպես ընդունված է։ Բարբարոսները դժգոհ էին նաև այն բանից, որ իրենց երկրում հռոմեական զորք կա, ինչ որ նախկինում չէր եղել։ Ահա, ի վիճակի չլինելով տանել այդ բոլորը, նրանք որոշեցին անցնել պարսիկների և Խոսրովի կողմը և իրենց մտադրությունը իրականացնելու նպատակով հռոմայեցիներից գաղտնի դեսպաններ ուղարկեցին, որոնց հանձնարարվեց Խոսրովից ստանալ հավաստիացում այն մասին, որ լազերին չի թողնի հռոմայեցիների քմահաճույքին, որից հետո պարսից զորքի հետ վերադառնալ իրենց երկիրը։

Դեսպանները ժամանեցին պարսից երկիրը և գաղտնի հանդիպելով Խոսրովին, ասացին հետևյալը. «Ով ամենամեծ արքա, լա-
»զերին դու համարիր մարդիկ, որոնք մի ժամանակ որևէ պատճա-
»ռով անջատվելով իրենց բարեկամներից, անցել են անծանոթ
»մարդկանց կողմը, բայց բախտի բերմամբ առավել մեծ հաճույքով
»վերադառնում են նրանց մոտ։ Կոլխերը ի սկզբանե անտի գաշնա-
»կից են եղել պարսիկներին, օգուտ են տվել նրանց և բազում փոր-
»ձությունների [հանդիպել]։ Այդ մասին մենք ունենք գրավոր շատ
»հուշարձաններ, որոնք ներկայումս պահվում են նաև քո արքունի-
»քում։ Սակայն հետագայում գուցե մեր նախահայրերի մեղքով,
»գուցե և ձեր կողմից անուշադրության մատնվելու հետևանքով
»(որովհետև այդ մասին ոչինչ վստահելի բան ասել չենք կարող),
»մենք դարձանք հռոմայեցիների դաշնակիցները։ Այժմ մենք և Լա-
»զիկայի թագավորը հանձնվում ենք պարսիկներին և տալիս ենք
»մեր երկիրը, իսկ դուք արեք, ինչ որ կամենաք։ Խնդրում ենք ձեզ,
»մեր հարցին մոտեցեք հետևյալ տեսանկյունից. եթե մենք հռոմա-
»յեցիներից որևէ վատություն չտեսած ապերախտաբար լքեցինք
»նրանց և ձեզ մոտ եկանք, իսկույն մերժեք մեր խնդիրքը, ենթա-
»դրելով, որ կոլխերը ձեզ էլ հավատարիմ չեն լինի (Նախկին բարե-
կամության այդպիսի խախտումը ապացույց է այն բանի, թե ինչ-
»պես կպահպանեն այն ուրիշների հետ)։ Բայց եթե մենք անունով
»էինք միայն հռոմայեցիների բարեկամները, բայց իրականում
»նրանց հավատարիմ ստրուկներն էինք և ճնշվում էինք մեզ բռ-
»նատիրողների կողմից, ապա այդ դեպքում դուք ընդունեցեք մեզ

»ձեր նախկին դաշնակիցներին, տիրեք նրանց վրա որպես ձեր ծա-
»ռաների, որոնք ձեր նախկին բարեկամներն էին, ատեցեք մեր
»հարևան դաժան բռնատիրությունը, արդարությունը վերականգ-
»նելով, արդարություն, որի պաշտպանությունը պարսիկների բնա-
»ծին գիծն է։ Արդարությունը ոչ ոքի հանդեպ անարդարություն
»չգործելու մեջ չէ միայն, այլև ուրիշների կողմից անարդարության
»մատնվողներին պաշտպանելու մեջ։ Արժե հիշատակել այն բոլորի
»մասին, ինչ որ մենք կրեցինք անիծյալ հռոմայեցիների ձեռքից։
»Նրանք մեր թագավորի իշխանությունը ձևական դարձրին, փաս-
»տական իշխանությունն առնելով իրենց ձեռքը։ Թագավորը ծա-
»ռայի է վերածվել, վախենում է իրեն հրամայող զորահրամանա-
»տարից։ Մեր երկրում նրանք հաստատեցին մեծ թվով զորք, ոչ թե
»թշնամիներից այն պաշտպանելու համար (քանզի մեր հարևան-
»ներից և ոչ ոք, բացի հռոմայեցիներից, մեզ նեղություն չի պատ-
»ճառել), այլ որպեսզի մեզ առնելով կապանքների մեջ, տիրանան
»մեր ունեցվածքին։ Մտադիր լինելով հնարավորին չափ շուտ
»զրկել մեզ մեր ունեցվածքից, լսի՛ր, ո՛վ արքա, թե ինչպիսի խո-
»րամանկության դիմեցին նրանք։ Ինչ որ իրենց պետք չէ՝ ստիպում
»են լազերին գնել, իսկ ինչ որ Լազիկան ունի նրանց համար պիտա-
»նի, ձևականորեն գնում են, իսկ ինչ վերաբերում է գներին, այդ
»որոշում են տիրողները և ոչ մենք։ Ահա այսպիսի ճանապարհով
»խլում են մեզանից, բացի սննդամթերքից, նաև ամբողջ ոսկին,
»առևտրի բարեհնչուն անվան տակ, բայց իրականում մեր հան-
»դեպ դաժան բռնությամբ։ Մեզ վրա տիրում է մի փերեզակ զորա-
»հրամանատար, որը հենվելով իր իշխանության վրա, մեր թշվա-
»ռությունն իր համար ինչ-որ զբաղմունք է դարձրել։ Ահա այս է
»ապստամբության ճշմարիտ պատճառը։ Մենք այժմ կբացատրենք,
»թե ինչքան շահավետ է ձեզ համար լազերի խնդիրքն ընդունելը։
»Պարսից իշխանությանը դուք կմիացնեք մի հնագույն թագավո-
»րություն, որով դուք առավել ևս կհզորացնեք ձեր իշխանությունը,
»բացի դրանից դուք մեր երկրի վրայով կկարողանաք կապվել հռո-
»մայեցիների ծովի հետ, որտեղ նավեր շինելով, ով արքա, առանց
»դժվարության կնավարկեք մինչև Բյուզանդիոնի պալատը, որով-
»հետև մեջտեղում ոչ մի արգելք չկա։ Դրա վրա կարելի է ավելաց-
»նել հետևյալը. արդեն ձեզանից կախված կլինի, որ սահմանակից
»բարբարոսները ամեն տարի թալանեն հռոմայեցիների երկիրը,
»որովհետև դուք շատ լավ գիտեք, որ լազերի երկիրը Կովկասյան
»լեռների առաջ մի պատվար է ներկայացնում։ Արդ, արդարությունն

»այդ է հրամայում, օգուտն էլ առկա է, հետևաբար մեր առաջարկ-
»ները մերժելը սխալ կլիներ»։ Դեսպաններն այսքանն ասացին։
Խոսրովը գոհունակությամբ լսեց այդ խոսքերը և խոստացավ
պաշտպանել լազերին։ Նա դեսպաններին հարցնում էր, հնարավոր
է արդյոք մեծ զորքով գնալ Կոլխիս երկիրը, որովհետև անցյալում
շատերից լսել էր, որ այդ երկիրն անչափ անհարթ և երկար տարա-
ծության վրա խիստ անտառապատ լինելու պատճառով նույնիսկ թե-
թև զինվածի համար դժվարանցանելի է։ Դեսպանները պնդում էին,
որ պարսից ամբողջ զորքի համար այդ ճանապարհը մատչելի կդառ-
նա, եթե ծառերը կտրատելով, նետեն դժվարանցանելի տեղերը։
Նրանք խոստանում էին ցույց տալ ճանապարհը, այդ գործում օգնել
պարսիկներին։ Խոսրովն այդ գրավականից դրդված, հավաքեց մեծ
բանակ և արշավանքի նախապատրաստություն տեսավ՝ իր մտա-
դրությունը չհայտնելով պարսիկներին. Նա տեղյակ պահեց միայն
նրանց, ում սովորաբար վստահում էր իր գաղտնիքները։ Նա
պատվիրեց դեսպաններին կատարվելիքի մասին ոչինչ չասել, լու-
րեր տարածեց, որ ցանկանում է գնալ Իբերիա, երկրի գործերը
կարգի բերելու համար, որովհետև իբրև թե հոնական մի ցեղ այն-
տեղից ներխուժել էր պարսից տիրապետության սահմանները։

16. Այդ միջոցին Բելիսարիոսը ժամանելով Միջագետք, ամե-
նուրեք զորահավաք կատարեց և մի քանիսին Պարսկաստան ուղար-
կեց հետախուզության։ Իսկ ինքը, մտադիր լինելով թշնամիներին
հանդիպել այստեղ, եթե վերջիններս նորից ներխուժեն հռոմայեցի-
ների երկիրը, կարգի էր բերում և մարզում զորքը, որովհետև այն
մեծ մասամբ անզեն էր և սարսափում էր պարսիկների անունից
անգամ։ Հետախույզները վերադառնալով զեկուցեցին, որ թշնա-
միներն առայժմ ոչ մի ներխուժում չեն նախապատրաստում, որով-
հետև Խոսրովն այլ վայրում զբաղված է հոների դեմ պատերազմե-
լով։ Բելիսարիոսը լսելով այդ, որոշեց ամբողջ զորքով ներխուժել
թշնամու երկիրը։ Նրան միացավ և Արեթասը՝ սարակինոսների մեծ
զորքով, իսկ կայսրը նամակով կարգադրում էր անհապաղ ներխու-
ժել թշնամու երկիրը։ [Բելիսարիոսը] բոլոր զորահրամանատարնե-
րին Դարա հրավիրելով, ասաց այսպես. «Ես գիտեմ, ո՛վ զինակից-
»ներ, որ դուք բազմաթիվ պատերազմների փորձ ունեք։ Ես ձեզ
»հրավիրել եմ այժմ ոչ այն պատճառով, որպեսզի որևէ խոսքով
»կամ հորդորով մղեմ թշնամիների դեմ (ես գիտեմ, որ դուք ոգե-
»վորող խոսքերի կարիքը չեք զգում), այլ որպեսզի խորհրդակցենք

»ու որոշենք, թե ինչն է կայսրության համար ավելի լավ և ձեռն-
»տու։ Պատերազմը շահելու համար բոլորի իմաստության կարիքն
»է զգացվում։ Խորհրդակցության մասնակիցների կարծիքը պետք է
»բոլորովին չկաշկանդվի ամոթխածությամբ կամ մեկի հանդեպ
»տածած վախով. վախը միշտ ճնշում է նրան ենթարկվողներին և
»թույլ չի տալիս, որ միտքը ճիշտ որոշում ընդունի, իսկ ամոթխա-
»ծությունն էլ կաշկանդում է մտքի ուժը և [ստիպում] հակառակ
»կարծիքի հանդել։ Ներկա իրավիճակում ո՛չ մեծ կայսեր, և ո՛չ էլ
»իմ կարծիքը, որևէ կերպ չպետք է ճնշի ձեր վրա։ [Կայսրը] ճա-
»կատից հեռու լինելով, ի վիճակի չէ համաքայլ ընթանալ դեպքերի
»հետ. ուստի և ոչ մի վախ չկա, երբ հակառակ որոշումներով կգոր-
»ծենք նրա օգտին։ Իսկ ես մի մարդ եմ, որ երկար բացակայությու-
»նից հետո եմ ժամանել այստեղ, և անհնարին չէ, որ ես որևէ բանում
»սխալվեմ։ Այնպես որ դուք իմ կարծիքից էլ մի կաշկանդվեք և բա-
»ցահայտ ասեք, թե ի՛նչ է օգտակար մեզ և կայսեր համար։ Նախ և
»առաջ մենք, ով զինակիցներ, այստեղ ենք ժամանել թշնամու՝
»դեպի մեր երկիրը որևէ ներխուժման առաջն առնելու համար։ Այժմ
»իրադրությունն ավելի բարենպաստ լինելով, քան թե մենք կարող
»էինք ակնկալել, անհրաժեշտ է մտածել այն մասին, որ [հարձակ-
»վենք] թշնամու երկրի վրա։ Ահա դուք, որ հավաքվել եք այստեղ,
»պետք է առանց քաշվելու ասեք այն, ինչ յուրաքանչյուրդ ավելի
»հարմար է գտնում և ձեռնտու»։

Բելիսարիոսն այսքանն ասաց։ Պետրոսն ու Բուզեսը կողմնակից էին, որ նա զորքն անհապաղ շարժի թշնամու երկրի վրա։ Նրանց կարծիքին անմիջապես միացան բոլորը։ Լիբանանի զորքերի հրամանատարներ Հռեկիթանգոսը և Թեոկտիստոսը ներխուժման հարցում նույնպես համաձայն էին մյուսների հետ, բայց վախ հայտնեցին, որ եթե հեռանան Փյունիկեից և Ասորիքից, Ալամունդարոսին հնարավորություն կտան լրիվ ավարի առնել այդ շրջանները, որի համար [Հուստինիանոս] կայսրը կզայրանա, որ չկարողացան ավարառություններից զերծ պահել իրենց իշխանության ներքո գտնվող երկիրը։ Այդ էր պատճառը, որ նրանք ոչ մի դեպքում չէին ուզում միանալ մնացած զորքի [գործողություններին]։ Բելիսարիոսը այդ երկու մարդկանց ասաց, որ նրանք այնքան էլ ճիշտ չեն մտածում։ Նա հայտնեց, որ այժմ ամառային արևադարձ է։ Ամառային արևադարձի երկու ամիսների ընթացքում սարակինոսները սովորություն ունեն իրենց աստծուն ուխտի գնալ։ Այդ միջոցին նրանք դեպի օտար երկիր ոչ մի արշավանք չեն ձեռնարկում։ Դրա

համար նա համաձայնվեց վաթսուն օր հետո նրանց ազատ արձակել և հրամայեց, որ հետևեն մնացած զորքին։ Բելիսարիոսը արագ թափով նախապատրաստվում էր արշավանքի։

17. Խոսրովը և մարերի զորքը դեսպանների առաջնորդությամբ Իբերիայի վրայով մուտք գործեց Լազիկա. առանց որևէ դիմադրության հանդիպելու, նրանք կտրատում էին ծառերը (որոնք այստեղ լեռնոտ վայրերում հույժ խտությամբ և բարձր են աճում, լրիվ անանցանելի դարձնելով երկիրը զորքի համար), այդ ձևով հարթելով դժվարանցանելի ճանապարհը։ Երբ նրանք հասան միջին Կոլխիս (ուր պոետների առասպելաբանության համաձայն տեղի ունեցավ Մեդեյայի և Յասոնի արկածը), նրանց մոտ եկավ լազերի թագավոր Գուբազեսը, որպես տիրոջ երկրպագեց Կավադի որդի Խոսրովին, հանձնելով նրան իր անձը, [իր] մայրաքաղաքը և ամբողջ Լազիկան։

Կոլխիսի Պետրա քաղաքը Եվքսինյան կոչվող Պոնտոսի ափին է գտնվում, որը նախկինում մի աղքատիկ գյուղ էր, բայց Հուստինիանոս կայսրը պարսպով և այլ շինություններով այն անառիկ և երևելի դարձրեց։ Խոսրովն իմանալով, որ հռոմայեցիների զորքը Հովհաննեսի գլխավորությամբ այստեղ է գտնվում, զորավար Անիաբեդին[55] ուղարկեց նրանց դեմ՝ [Պետրան] գրոհով վերցնելու համար։ Հովհաննեսը տեղեկանալով [թշնամու] հարձակման մասին, հրամայեց, որ ոչ ոք պարսպից դուրս չգա, ոչ էլ պարսպի ատամնաշարի վրայից երևա թշնամիներին։ Նա ամբողջ զորքը զինեց, կանգնեցրեց դարպասների մոտ, հրամայելով լռություն պահպանել, ձայն-ծպտուն չհանել։ Երբ պարսիկները մոտեցան պարսպին, կարծեցին, որ քաղաքը դատարկ է, որ հռոմայեցիներն այն լքել, հեռացել են, որովհետև ոչ թշնամին էր երևում, ոչ էլ որևէ ձայն լսվում։ Նրանք աստիճաններ դնելու մտադրությամբ ընդհուպ մոտեցան պարսպին, որովհետև ենթադրում էին, որ դիմադրող չկա, ապա մարդ ուղարկեցին Խոսրովի մոտ և հայտնեցին, որ թշնամին ոչ երևում է, ոչ լսվում։ Վերջինս զորքի մեծ մասն ուղարկեց, հրամայելով փորձել բոլոր կողմերից բարձրանալ պարսպի վրա։ Նա հրամանատարներից մեկին կարգադրեց դարպասների դեմ զործի դնել բաբանը, իսկ ինքը դիտելու համար բարձրացավ քաղաքին մոտ գտնվող մի բլրի վրա։ Հռոմայեցիները հանկարծակիորեն բացեցին դարպասները և անսպասելիորեն գրոհելով՝ թշնամիներից շատերին կոտորեցին, հատկապես նրանց, ովքեր գտնվում էին բա-

բանի մոտ։ Մնացածները հրամանատարների հետ միասին մազապուրծ եղան և փրկվեցին։ Խոսրովը ղայրացած ցցահան արեց Անիաբեդին, որ խաբվել էր փերեղակ և Թուլամորթ Հովհաննեսի կողմից։ Ոմանք ասում են, որ ոչ թե Անիաբեդը ցցահան արվեց, այլ այն հրամանատարը, որ գլխավորում էր բաբանի շուրջ եղած զինվորներին։ Իսկ ինքը՝ [Խոսրովը], վերցնելով ամբողջ զորքը, ընդհուպ մոտեցավ պարսպին և ճամբարելով նախապատրաստվեց պաշարման։ Հաջորդ օրը պտույտ գործելով պարսպի շուրջը, գտավ, որ այն այնքան էլ անառիկ չէ և որոշեց պաշարել։ Նա ամբողջ զորքը կուտակեց այստեղ և գործի անցավ՝ հրամայելով բոլորին պարսպի ատամնաշարի վրա նետեր արձակել։ Հռոմայեցիները պաշտպանվում էին՝ գործի գնելով մեքենաները և բոլոր աղեղները։ Սկզբում պարսիկները, թեև անդադար հարվածում էին, քիչ վնաս էին հասցնում հռոմայեցիներին, իսկ իրենք շատ ավելի մեծ կորուստներ էին կրում, որովհետև հարվածները ստանում էին բարձրից։ Բայց հետո (որովհետև վիճակված էր, որ Խոսրովը գրավեր Պետրան), Հովհաննեսը պատահաբար պարանոցին վերք ստանալով մահանում է, մնացած հռոմայեցիների հուսալքման պատճառ դառնալով։ Արդեն մթնել էր և բարբարոսները հեռացան իրենց ճամբարը։ Հաջորդ օրը նրանք միտք հղացան պարսպի տակ գետնափոր անցք փորել։ Ահա թե ինչ ձևով։

Պետրա քաղաքը անառիկ է, որովհետև մի կողմից ծովն է նրան հարում, իսկ մյուս կողմից գահավեժ ժայռերը, որոնցից էլ այդ քաղաքը ստացել է [Պետրա] անունը[56]։ Նա հարթ տեղում ունի մի մուտք, այն էլ ոչ շատ լայն, որովհետև նրա երկու կողմից կախված են ժայռերը։ Անցյալում քաղաքի հիմնադիրների կանխատեսությամբ պարսպի այս մասն անմատչելի դարձնելու նպատակով երկու ժայռերի միջև երկար պարիսպներ կառուցվեցին, որոնց երկու ծայրերին դրվեցին մեկական աշտարակ, սակայն ոչ ընդունված ձևով, այլ ահա թե ինչպես։ Աշտարակների մեջ նրանք դատարկ տարածություն չթողեցին, անչափ բարձրություն ունեցող կառույցը գետնից սկսած հսկայական, իրար կապված քարերով շարեցին, որպեսզի աշտարակները բաբանի կամ ուրիշ մեքենայի կողմից չասասանվեն։ Ահա այդպիսին էր Պետրա [քաղաքի] պարիսպը։ Պարսիկները գաղտնի գետնափոր անցք փորեցին և սողոսկեցին աշտարակներից մեկի տակ։ Այստեղից նրանք սկսեցին հանել քարերը, իսկ նրանց տեղը փայտեր դրեցին, որոնք այնուհետև կրակի տվեցին։ Կրակի բոցը շուտով բորբոքվեց, խախտեց քարերի ամրու-

Թյունը և աշտարակն ամբողջությամբ սասանվելով, հանկարծակիորեն գետին տապալվեց։ Աշտարակի վրա գտնվող հռոմայեցիները այնքանով էին գուշակում նման մի բանի մասին, որ աշտարակի հետ միասին գետին չտապալվեցին, այլ փախան և անցան քաղաքի պարսպից ներս։ Թշնամիներին արդեն մնում էր մարտնչել հարթ վայրում և առանց որևէ դժվարության գրոհով գրավել քաղաքը։ Դրանից վախենալով, հռոմայեցիները բանակցությունների մեջ մտան բարբարոսների հետ և Խոսրովի կողմից իրենց կյանքի և ունեցվածքի ապահովության մասին հավաստիացում ստանալով, պայմանագրով անձնատուր եղան ու հանձնեցին քաղաքը։ Ահա այսպես Խոսրովը գրավեց Պետրան և յուրացրեց Հովհաննեսի դրամները, որոնք չափից ավելի շատ էին. մյուսների գույքին ո՛չ ինքը, ո՛չ էլ որևէ պարսիկ ձեռք չտվեց։ Հռոմայեցիները պահպանելով իրենց ունեցվածքը խառնվեցին մարաց զորքին։

18. Այդ միջոցին Բելիսարիոսը և հռոմեական զորքը, այստեղի դեպքերին անտեղյակ, Դարա քաղաքից մեծ կարգ ու կանոնով շարժվեց Նիսիբիսի վրա։ Երբ հասան ճանապարհի կեսին, Բելիսարիոսը զորքը տարավ առաջ, ուր ջրի հորդառատ աղբյուրներ կային և դաշտն այնպիսին էր, որ հնարավորություն էր տալիս բոլորին ճամբարելու։ Ահա այստեղ, Նիսիբիս քաղաքից քառասուն երկու ասպարեզ հեռավորության վրա, նա հրամայեց ճամբարել։ Բոլորը զարմացան, որ նա չի ուզում կանգ առնել քաղաքի մոտ, ոմանք էլ չէին կամենում նրան հետևել։ Այդ պատճառով Բելիսարիոսը դիմեց իր մոտ եղած հրամանատարներին հետևյալ խոսքերով. «Ես ցանկություն չունեմ իմ մտքում եղածը տարփողել բոլորի առաջ, որովհետև ամբողջ ճամբարով մեկ տարածվող խոսքը գաղտնի չի մնա և շատ չանցած կհասնի թշնամիներին։ Ես տեսնում եմ, որ ձեզանից շատերն իրենց շատ անկարգ են պահում և յուրաքանչյուրը ցանկանում է դառնալ պատերազմի միահեծան հրամանատարը։ Ես այժմ ստիպված եմ ձեզ ասել այն, ինչի մասին պետք էր լռել. երբ զորքում ամեն մեկը ինքնագլուխ գործի, ոչինչ դուրս չի գա։ Ես գիտեմ, որ Խոսրովն արշավելով այլ բարբարոսների վրա, անհրաժեշտ պահապան զորքով ապահովել է իր երկիրը, այդ թվում և այն կարևոր քաղաքը, որ նրա երկրի ամենահեռավոր պատվարն է։ Ես լավ գիտեմ, որ նա [այս քաղաքում] թողել է մեծաքանակ ընտիր զորք, որը կկարողանա մեր հարձակումներին դիմագրել։ Ահա ձեզ օրինակ. նա նրանց հրամանատար նշանակեց Նաբեդե-

»սին[57], որը Խոսրովից հետո և՛ փառքով, և՛ պաշտոնով առաջինն է
»համարվում պարսիկների մեջ։ Ես գիտեմ, որ նա կփորձի մեր ու-
»ժերը և կզիջի ոչ այլ կերպ, քան միայն ճակատամարտում պարտ-
»վելուց հետո։ Արգ, եթե ընդհարումը տեղի ունենա քաղաքին մոտ
»վայրում, մեր սլայքարը պարսիկների դեմ անհավասար կլինի։
»Որովհետև նրանք դուրս գալով ամրություններից, հաջողության
»դեպքում առավել ոգևորությամբ պիտի հարձակվեն, իսկ եթե
»պարտվեն, դյուրությամբ պիտի խուսափեն մեր հարձակումից,
»որովհետև մենք շատ կարճ տարածության վրա պիտի հալածենք
»և ոչ մի վնաս չենք կարողանա հասցնել նրանց, հետևաբար և քա-
»ղաքին։ Դուք տեսնում եք, որ քաղաքը պաշտպան զորքով ապա-
»հովված լինելու պատճառով պաշարմամբ վերցնել հնարավոր չէ։
»Սակայն եթե մենք թշնամիների հետ կռվի բռնվենք հենց այստեղ
»և պարտության մատնենք նրանց, ապա ես, ո՛վ զինակիցներ, մեծ
»հույս ունեմ, որ կկարողանանք գրավել քաղաքը, որովհետև խառ-
»նըվելով փախչող թշնամու զորքին, հավանաբար նրա հետ միասին
»կխուժենք դարպասներից ներս և կամ էլ նրանից առաջ անցնելով
»կստիպենք փախուստի դիմել և ապաստան գտնել այլ վայրում,
»և Նիսիբիսը առանց պաշտպանների մնալով հեշտությամբ կգրավ-
»վի մեր կողմից»։

Բելիսարիոսն այսքանն ասաց և բոլորը համաձայնվեցին նրա
հետ ու մնացին ճամբարում։ Սակայն Պետրոսը, ընկերակցությամբ
Միջագետքի զորահրամանատար Հովհաննեսի, որն ուներ բավա-
կան մեծ զորամաս, հանգիստ սպասում էր [քաղաքի] պարսպից
ոչ շատ հեռու՝ տաս ասպարեզ տարածության վրա։ Բելիսարիոսն
իր զինվորներին մարտական վիճակի բերեց և հանձնարարեց Պետ-
րոսին կազմ ու պատրաստ սպասել իր ազդանշանին, լավ իմանա-
լով, որ բարբարոսները կհարձակվեն կեսօրին, որովհետև, ըստ սո-
վորության, նրանք ճաշում են ուշ երեկոյան, իսկ հռոմայեցիները
կեսօրվա մոտ։ Ահա այսպիսիք էին Բելիսարիոսի կարգադրություն-
ները։ Սակայն Պետրոսի մարդիկ, ուշադրություն չդարձնելով այդ
խորհուրդների վրա, տանջվելով կեսօրվա կիզիչ արևից (այս վայրը
շատ տոթակեզ է), զենքերը մի կողմ թողած և թշնամու հանդեպ
անզգոնություն ցուցաբերելով, անկազմակերպ թափառում էին և
ուտում այստեղ աճող վարունգները։ Նաբեդեսը, տեսնելով այդ,
շտապ կարգով նրանց վրա շարժեց պարսից զորքը։ Հռոմայեցինե-
րը (նրանք պարսպից դուրս եկած և հարթ դաշտով շարժվող բար-
բարոսներին շատ լավ էին տեսնում) մարդ ուղարկեցին Բելիսա-

րիոսի մոտ, օգնություն խնդրելով, իսկ իրենք, վերցնելով գենքերը, փոթված ու խուճապահար անցան դիմադրության։ Բելիսարիոսի մարդիկ դեռևս սուրհանդակի գալուց առաջ իմացան պարսիկների հարձակման մասին՝ վերջիններիս բարձրացրած փոշուց և շտապեցին օգնության։ Պարսիկները վրա հասնելով, առանց դժվարության փախուստի մատնեցին Հռոմայեցիներին, կոտորեցին հիսուն հոգու և տիրացան Պետրոսի դրոշին։ Նրանք այդ հարձակման ժամանակ բոլորին էլ կկոտորեին, որովհետև ոչ ոք կռվելու մտադրություն չուներ, եթե դրան չխանգարեր օգնության հասած Բելիսարիոսըն իր զորքով։ Պարսիկները չկարողացան դիմանալ առջևից ընթացող երկայնանիզակ գոթերի հարվածների տարափին և փախուստի դիմեցին։ Հռոմայեցիները գոթերի հետ միասին հալածելով նրանց, հարյուր հիսուն [պարսիկ] սպանեցին։ Մնացած [պարսիկներին] հաջողվեց հապճեպ անցնել պարսպից ներս, որովհետև հալածումը կարճ տարածության վրա էր կատարվում։ Բոլոր Հռոմայեցիները վերադարձան Բելիսարիոսի ճամբարը, իսկ պարսիկները հաջորդ օրը որպես հաղթանակի նշան մի աշտարակի վրա կանգնեցրին Պետրոսի դրոշը, նրա վրա կախելով երշիկներ. նրանք ծիծաղում ու ծաղրում էին [իրենց] թշնամիներին, բայց չէին համարձակվում դուրս գալ, միայն ապահով կերպով պահպանում էին քաղաքը։

19. Բելիսարիոսը տեսնելով, որ Նիսիբիսը անչափ ամուր է և այն գրավելու ոչ մի հույս չկա, որոշեց առաջ շարժվել, որպեսզի իր արշավանքի ընթացքում ավարի առնի թշնամու [երկիրը]։ Ամբողջ զորքի գլուխն անցած նա առաջ շարժվեց։ Մեկ օրվա ճանապարհ կտրելուց հետո, հանդիպեցին մի ամրոցի, որ պարսիկներն անվանում են Սիսավրանոն[58]։ Նա մարդաշատ էր և ուներ ութ հարյուր հեծյալներից բաղկացած պարսից ուժեղ կայազոր, փորձված ռազմիկ Բլեսխամեսի գլխավորությամբ։ Հռոմայեցիները ճամբարելով ամրոցի մոտ, անցան պաշարման։ Գրոհելով պարսպի վրա, նրանք բազմաթիվ զոհեր տալով ետ մղվեցին, որովհետև պարիսպը շատ ամուր էր, իսկ բարբարոսները հարձակվողներին քաջաբար էին դիմադրում։ Այդ պատճառով Բելիսարիոսը հրավիրեց բոլոր հրամանատարներին և ասաց այսպես. «Բազմաթիվ պատերազմների »փորձը, ո՛վ հրամանատարներ, մեզ սովորեցրել է դժվարին իրա»դրության ժամանակ կանխագուշակել ապագան, ինչպես և կարո»ղություն ընձեռել ահեղ իրավիճակում ընտրելու լավագույն ելքը։

»Դուք դիտեք, թե ինչքան վտանգավոր է զորքը թշնամու երկրով
»առաջ տանելը, ետևում թողնելով բազմաթիվ ամրոցներ, ինչպես
»և [թշնամու] մեծաքանակ կռվող ուժ։ Տվյալ դեպքում մեզ հետ
»նույնը պատահեց, որովհետև մենք առաջ ենք ընկել. թշնամիները
»և՛ այստեղից, և՛ Նիսիբիս քաղաքից գաղտնի պիտի հետևեն մեզ և
»բնական է, որոշ վայրերում դարանակալելով որևէ ձևով [մեզ]
»վնաս են հասցնելու։ Իսկ եթե հանդիպեն ուրիշ [պարսկական]
»զորքի, ապա բացահայտ մարտի են դուրս գալու և մենք ստիպված
»ենք լինելու կռվել երկուսի դեմ, և անչափ մեծ վնաս ենք կրելու։
»Ես ինձ թույլ եմ տալիս ասելու նաև, որ եթե այդ ընդհարման ժա-
»մանակ անհաջողության մատնվենք, այլևս ոչ մի հնարավորու-
»թյուն չենք ունենա վերադառնալ հռոմայեցիների երկիրը։ Արդ,
»մենք չպետք է անիմաստ խիզախություն ցուցաբերելով նրանց
»դրդենք մեր դեմ, ոչ էլ մեր համառությամբ վնաս հասցնենք հռո-
»մայեցիների պետության։ Անմիտ համարձակությունը դեպի կոր-
»ծանում է տանում, իսկ խոհեմ զգուշությունը՝ միշտ փրկում է
»նրան դիմողներին։ Արդ, մենք այստեղ մնալով կփորձենք գրավել
»այս ամրոցը, իսկ Արեթասն իր զորքով թող գնա Ասորեստանի
»վրա[59], որովհետև սարակինոսները, թեպետ ի բնե անկարող են
»ամրություններ գրավելու, բայց ավարառության գործում ամենա-
»կարող են։ Նրանց կմիանան նաև որոշ քանակությամբ ռազմունակ
»զինվորներ, որոնք ևս, եթե որևէ արգելքի չհանդիպեն, թշնամուն
»մեծ վնաս կհասցնեն, իսկ եթե նույնիսկ հանդիպեն որևէ թշնամու,
»հեշտությամբ կնահանջեն և կփրկվեն մեզ մոտ։ Իսկ մենք աստու-
»ծո կամքով կգրավենք ամրոցը, և այլևս վախ չենք ունենա, որ թի-
»կունքում կարող են [թշնամիները] վնաս հասցնել ու ապա ամբողջ
»զորքով կանցնենք Տիգրիս գետը, նախօրոք լավատեղյակ դառնա-
»լով Ասորեստանի իրադրությանը»։

Բելիսարիոսի ասածը երբ ընդհանուր հավանություն գտավ, նա իսկույն որոշումը ի կատար ածեց։ Նա հրամայեց Արեթասին իր զինվորների հետ շարժվել Ասորեստանի վրա։ Նրանց հետ ուղարկեց նաև հազար երկու հարյուր զինվոր, որոնց մեծ մասը իր վահանակիրներից էին՝ գլխավորությամբ Տրայանոսի և Հովհաննեսի՝ մականունը Ֆագաս[60]. երկուսն էլ քաջ կռվողներ էին, և պետք է ենթարկվեին Արեթասի հրամաններին։ [Բելիսարիոսն] Արեթասին հրամայեց ավարի տալ ինչ որ ճանապարհին հանդիպի և վերադառնալով ճամբար, զեկուցել Ասորեստանում թշնամու ուժի քանակի մասին։ Ահա, Արեթասի զորքն անցնելով Տիգրիս գետը, մտավ Ասո-

րեսսան, ուր հանդիպեց հարուստ, բայց անպաշտպան և երկար ժամանակ չթալանված երկրի. հանկարծակի հարձակումով նա բաղում շրջաններ թալանեց և ձեռք բերեց մեծ հարստություն[61]։ Այդ միջոցին Բելիսարիոսը գերի վերցրեց մի քանի պարսիկների, որոնցից իմացավ, որ ամրոցում պարենի մեծ պակասություն է զգացվում։ Դրա պատճառն այն էր, որ այստեղ սովորություն չկար ամբողջ տարվա պարենամթերքը պետական պահեստներում ամբարել, ինչպես այդ կատարվում է Դարայում և Նիսիբիս քաղաքում, և երբ թշնամի զորքը անակնկալ կերպով հարձակվեց, նրանց չհաջողվեց որևէ բան մթերել։ Բացի այդ, բազմաթիվ մարդիկ էին ապաստանել ամրոցում, և հասկանալի է, որ շուտով զգացվեց մթերքների սուր պակաս։ Իմանալով այդ, Բելիսարիոսը, իր գաղտնիքներին մասնակից խոհեմ Գեորգիոսին այնտեղ ուղարկեց, որպեսզի համոզի ներսի մարդկանց՝ հանձնել ամրոցը որոշ պայմաններով։ Գեորգիոսը [ամրոցի պաշտպաններին] հորդորեց, շատ հրապուրիչ բաներ ասաց և համոզեց ամրոցը հանձնել հռոմայեցիներին՝ կյանքի ապահովության մասին հավաստիացում տալով։ Բելիսարիոսն ահա այս ճանապարհով գրավեց Սիսավրանոնը, բոլոր բնակիչներին, որոնք ի սկզբանե անտի քրիստոնյաներ էին և հռոմայեցիներ՝ ազատ թողեց, պարսիկներին Բլեսխամեսի հետ ուղարկեց Բյուզանդիոն, իսկ ամրոցի պարիսպը հիմնահատակ ավերեց։ [Հուստինիանոս] կայսրը շատ չանցած այս պարսիկներին և Բլեսխամեսին ուղարկեց Իտալիա՝ գոթերի դեմ կռվելու։ Ահա այսպես վերջացավ Սիսավրանոն ամրոցի պաշարումը։

Արեթասը, վախենալով, որ հռոմայեցիները կխլեն իր ավարը, չէր ուզում վերադառնալ ճամբար։ Նա իր մարդկանցից ոմանց իբր հետախուզության ուղարկեց, սակայն իրականում նրանց թաքուն պատվիրեց անմիջապես վերադառնալ և [հաղորդել], թե իբր թշնամու մեծաքանակ զորքը շարժվում է դեպի գետը՝ այն անցնելու մտադրությամբ։ Իսկ Տրայանոսին և Հովհաննեսին հորդորում էր ուրիշ ճանապարհով վերադառնալ հռոմայեցիների երկիրը։ [Վերջիններս] սակայն չվերադարձան Բելիսարիոսի մոտ, այլ իրենց աջ կողմն ունենալով Եփրատ գետը, հասան Աբորրա գետի ափին գտնվող Թեոդոսուպոլիս [քաղաքը]։ Բելիսարիոսը և հռոմայեցիների զորքն այս զորամասի բախտին անտեղյակ, մտահոգության մեջ էին. Նրանց տանջում էր երկյուղն ու կասկածը։ Նրանք սպասողական վիճակում բավական ժամանակ վատնեցին և այդ միջոցին բազմաթիվ զինվորներ ծանր ջերմով հիվանդացան։ Դրա պատճառն

այն է, որ պարսիկներին ենթակա Միջագետքը շատ տոթակեզ է, և
հռոմայեցիները, հատկապես Թրակիայից եկողները, անսովոր լի-
նելով անչափ շոգ վայրում խեղդիչ հյուղակների մեջ բնակվելու
հիվանդացան. բանակի երրորդ մասը կիսամեռ վիճակում էր։ Ամ-
բողջ զորքը մտադիր էր անհապաղ հեռանալ այստեղից և վերա-
դառնալ հայրենի երկիրը, հատկապես լիբանանյան զորքերի հրա-
մանատարներ Հռեկիթանգոսն ու Թեոկտիստոսը, որովհետև գիտեին
նաև, որ սարակինոսների ուխտի ժամանակն արդեն սպառվել է։
Նրանք հաճախ դիմում էին Բելիսարիոսին, խնդրելով, որ իրենց
թույլ տրվի գնալ, փաստարկելով, որ իզուր են մնում այստեղ, այն
ժամանակ, երբ Լիբանանն ու Ասորիքը թողել են Ալամունդարոսի
տրամադրության տակ։

Այդ պատճառով Բելիսարիոսը բոլոր հրամանատարներին
հրավիրեց խորհրդակցության։ Առաջինը խոսք վերցրեց Նիկիտայի
որդի Հովհաննեսն ու ասաց այսպես. «Ամենաքաջ Բելիսարիոս։ Ես
»բոլոր ժամանակների համար այնպիսի բախտավոր ու առաքինի
»զորավար, ինչպիսին ես դու, չգիտեմ։ Քո փառքը տարածվել է ոչ
»միայն հռոմայեցիների, այլև բոլոր բարբարոսների մեջ։ Դու քո
»այդ բարի փառքը կամրապնդես, եթե կարողանաս մեզ ողջ առողջ
»փրկել, հասցնել հռոմայեցիների երկիրը, քանի որ մենք այժմ
»բարի հույսեր չունենք։ Մեր զորքի դրությունն այժմ հետևյալն է.
»սարակինոսները և մեր ամենառազմունակ զինվորներն անցյալ
»օրը, չգիտեմ ինչպես անցնելով Տիգրիս գետը, այնքան շտապեցին,
»որ հնարավորություն անգամ չունեցան սուրհանդակ ուղարկելու
»մեզ մոտ։ Հռեկիթանգոսն ու Թեոկտիստոսը, տեսնում ես, ուզում
»են գնալ, ենթադրելով, որ Ալամունդարոսի զորքը Փյունիկեի մեջ
»է և տակն ու վրա է անում նրա բնակավայրերը։ Իսկ մնացած
»[ռազմիկներից] հիվանդների թիվը այնքան մեծ է, որ նրանց մա-
»սին հոգացողներն ու հռոմայեցիների երկիրը փոխադրողները
»թվով շատ ավելի քիչ են։ Ահա այսպիսի պայմաններում, եթե մեզ
»հանդիպի որևէ թշնամի կամ այստեղ, կամ էլ մեր նահանջի ժա-
»մանակ, պատահարի մասին ոչ ոք չի կարողանա նույնիսկ հայտ-
»նել Դարայի հռոմայեցիներին։ Ես միանգամայն անտեղի եմ հա-
»մարում առաջ շարժվելու մասին մտածելն անգամ։ Եթե մեզ մնում
»է որևէ հույս, ապա դա վերադառնալու մասին մտածելն ու այդ
»իրականացնելն է։ Ինձ թվում է, որ այսպիսի վտանգավոր պայ-
»մաններում մտածել թշնամուն վնասելու, և ոչ թե փրկության մա-
»սին, ծայրահեղ անխոհեմություն կլիներ»։ Հովհաննեսն այսքանն

ասաց, իսկ մնացածները հավանություն տվեցին նրան ու խուճապահար պահանջում էին անհապաղ պատրաստվել նահանջի։ Բելիսարիոսը հիվանդներին բարձեց անասունների վրա, ու զորքը ետ տարավ։ Երբ նրանք շուտով հասան հռոմայեցիների երկիրը, նա ամեն ինչ իմացավ Արեթասի արածի մասին, բայց չկարողացավ նրան որևէ կերպ պատժել, որովհետև այլևս չհանդիպեց։ Ահա այսպիսի վախճան ունեցավ հռոմայեցիների արշավանքը։

Խոսրովը Պետրան գրավելուց հետո իմացավ, որ Բելիսարիոսը ներխուժել էր պարսից երկիրը, որ Նիսիբիսի մոտ ընդհարում է տեղի ունեցել, որ Սիսավրանոն ամրոցը գրավվել է և այն մասին, ինչ գործեց Արեթասի զորքը՝ անցնելով Տիգրիս գետը։ [Խոսրովը] Պետրայում կայազոր թողնելով, մնացած զորքի, ինչպես նաև գերի վերցրած հռոմայեցիների հետ, անմիջապես շարժվեց դեպի պարսից երկիրը։ Այս բոլորը տեղի ունեցավ Խոսրովի երկրորդ արշավանքի ժամանակ։ Իսկ Բելիսարիոսը կայսեր կոչով գնաց Բյուզանդիոն, ուր և ձմեռեց։

20. Գարնան սկզբում Կավադի որդի Խոսրովը մեծ զորքով երրորդ անգամ[62] ներխուժեց հռոմայեցիների երկիրը՝ իր աջ կողմն ունենալով Եփրատ գետը։ Սերգիուպոլսի եպիսկոպոս Կանդիդոսը, երբ իմացավ, որ մարերի զորքը շատ մոտ է, երկյուղ դգալով իր և քաղաքի համար, որովհետև նշված ժամանակամիջոցում ամենևին չէր կատարել Խոսրովի հետ կնքված համաձայնության պայմանները, գնաց թշնամիների ճամբարը և խնդրում էր Խոսրովին, որ դրա համար իր հետ վատ չվարվի։ [Նա ասաց], որ ինքն ամենևին դրամ չի ունեցել և այդ էր պատճառը, որ նա հենց սկզբից չմտածեց Սուրոնի բնակիչների փրկագնման մասին, որ վերջիններիս հարցով նա շատ է դիմել Հուստինիանոս կայսեր, սակայն ապարդյուն։ Խոսրովը բանտարկեց նրան, ծեծեց և պահանջեց սահմանված գումարի կրկնապատիկը։ [Կանդիդոսը] խնդրեց մարդ ուղարկել Սերգիուպոլիս, [սուրբ Սերգիոսի] տաճարի բոլոր թանկարժեք իրերը վերցնելու համար։ Խոսրովն այնպես էլ արեց և Կանդիդոսն իր ուղեկիցներից մի քանիսին [Խոսրովի] մարդկանց հետ ուղարկեց։ Սերգիուպոլսի բնակիչները, ընդունելով Խոսրովի ուղարկած մարդկանց, տվեցին բազմաթիվ թանկարժեք իրեր, հավատացնելով որ իրենց այլևս ոչինչ չի մնացել։ Խոսրովն ասաց, որ այդ իրեն բոլորովին չի բավարարում և պահանջեց նրանցից ավելին։ Նա մարդիկ ուղարկեց քաղաք, եղած գանձերի մասին ճշգրիտ գաղափար կազմելու պա-

տըրվակով, բայց իրականում քաղաքը գրավելու համար։ Սերգիուպոլսին, սակայն, վիճակված չէր գրավվել պարսիկների կողմից։ Ամբրոս անունով սարակինոսներից մեկը, հավատքով քրիստոնյա, Ալամունդարոսի զինվորներից, գիշերով եկավ քաղաքի պարսպի մոտ, հայտնեց ամեն ինչ և խորհուրդ տվեց ոչ մի դեպքում ներս չթողնել պարսիկներին։ Ահա այսպես Խոսրովի կողմից ուղարկված մարդիկ ձեռնունայն վերադարձան նրա մոտ, իսկ վերջինս զայրացած որոշեց գրավել քաղաքը։ Նա վեց հազարանոց մի զորամաս ուղարկեց, հրամայելով պաշարել [քաղաքն] ու գրոհել պարսպի վրա։ Այդ [զինվորները] տեղ հասնելով, անցան գործի, իսկ սերգիուպոլսեցիները սկզբում քաջաբար պաշտպանվում էին, բայց այնուհետև հուսալքվելով և վտանգից վախեցած, մտածում էին քաղաքը հանձնել թշնամիներին։ Նրանց զորքը բաղկացած էր ընդամենը երկու հարյուր հոգուց։ Բայց Ամբրոսը, գիշերով գալով պարսպի մոտ ասաց, որ պարսիկները երկու օր հետո վերացնելու են պաշարումը, որովհետև նրանց ջրի պաշարը սպառվել է։ Դրա համար էլ [սերգիուպոլսեցիները] ոչ մի բանակցության մեջ չմտան թշնամիների հետ։ Բարբարոսները ծարավից ճնշված վերացրին պաշարումը և եկան Խոսրովի մոտ։ Սակայն Խոսրովը Կանդիդոսին ազատ չարձակեց, երևի այն պատճառով, որ վերջինս ասել էր, որ եթե երդումը դրժի, այլևս հոգևորական մնալ չի կարող[63]։ Ահա այսպիսին էր վիճակն այնտեղ։

Խոսրովը, երբ հասավ Կոմմագենե երկիրը, որին [այժմ] Եփրատեսիա են անվանում, չէր ուզում ավարի առնել կամ գրավել որևէ վայր, որովհետև այդ բոլոր տարածությունների մի մասը մինչև Ասորիք ինքը նախապես գրավել էր, մի մասն էլ թալանել. այդ մասին ես վերը պատմել եմ։ Նա մտադիր էր զորքն ուղիղ Պաղեստինի վրա տանել, ավարի առնելու համար հատկապես Երուսաղեմում գտնվող բոլոր թանկարժեք իրերը։ Նա լսել էր, որ այդ երկիրը և նրա բնակիչները շատ հարուստ են։ Հռոմայեցիների զորահրամանատարներն ու զինվորները բոլորովին չէին մտածում [թշնամու վրա] հարձակվելու կամ նրա ճանապարհը կտրելու մասին։ Ամեն մեկը ինչպես կարող էր գրավեց ամրությունները, դատելով, որ բավական է պաշտպանել իրենց և [դիրքերը]։

Հուստինիանոս կայսրը, իմանալով պարսից արշավանքի մասին, անմիջապես նրանց դեմ ուղարկեց Բելիսարիոսին։ Վերջինս պետական ձիերով, որոնք վերեդոս են կոչվում, առանց զորքի, շտապ կարգով հասավ Եփրատեսիա։ Կայսեր եղբորորդի Հուստոսը

Բուզեսի և մի քանիսի հետ ապաստան էր գտել Հիերապոլսում։
Նրանք, երբ իմացան, որ Բելիսարիոսը մոտ է, հետևյալ բովանդա-
կությամբ նամակ գրեցին. «Այժմ Խոսրովը, դու ինչպես գիտես,
»արշավել է հռոմայեցիների վրա, ունենալով ավելի մեծ զորք, քան
»անցյալում։ Թե նա երբ և ուր է մտադիր գնալու, դեռ հայտնի չէ,
»միայն մենք լսել ենք, որ նա շատ մոտ է գտնվում։ Նա ոչ մի վայր
»ավարի չառավ, այլ անընդհատ առաջ է շարժվում։ Դու հնարավո-
»րին չափ շուտ եկ մեզ մոտ, եթե կարողանաս՝ առանց թշնամու
»զորքին հանդիպելու, որպեսզի քեզ փրկես կայսեր համար, ինչպես
»և մեզ ու Հիերապոլիսը»։

Նամակում այդ էր գրված։ Բելիսարիոսը հավանություն չտվեց
նամակին և երբ հասավ Եփրատ գետի ափին գտնվող Եվրոպոս վայ-
րը[64], սկսեց ամեն տեղից զորք հավաքել. նույն տեղում էլ ճամբա-
րեց, իսկ Հիերապոլսի հրամանատարներին պատասխանեց այսպես.
«Եթե Խոսրովն արշավեր ոչ թե հռոմայեցիների հպատակների, այլ
»ուրիշ մարդկանց վրա, այդ դեպքում ձեր մտածածը ճիշտ կլիներ
»և շատ հիմնավոր, որովհետև, եթե հանդիստ մնալով հնարավոր
»լիներ խուսափել փորձանքից, ապա մեծ անմտություն կլիներ
»աննպատակ դիմել վտանգի։ Բայց եթե այս բարբարոսը այստեղից
»հեռանալով հարձակվի Հուստինիանոս կայսեր ենթակա մի ուրիշ
»շրջանի վրա, որը հարուստ է, բայց զորքով պաշտպանված չէ,
»ապա այդ դեպքում ավելի լավ է քաջաբար ընկնելը, քան թե առանց
»կռվի փրկվելը, քանի որ, հիրավի, այդ ոչ թե փրկություն, այլ դա-
»վաճանություն պետք է անվանել։ Արդ, դուք անհապաղ եկեք Եվ-
»րոպոս, որտեղ ես հավաքել եմ ամբողջ զորքը և հուսով եմ թշնամու
»դեմ գործել այնպես, ինչպես Թույլ կտա աստված»։ Երբ հրամա-
նատարներն ստացան այս պատասխանը, սրտապնդվեցին և Հիե-
րապոլսի պաշտպանության համար Հուստոսին թողնելով՝ քիչ
մարդկանցով, մնացած զորքով եկան Եվրոպոս։

21. Խոսրովն իմանալով, որ Բելիսարիոսը ամբողջ զորքով
ճամբարել է Եվրոպոսում, որոշեց դադարեցնել առաջխաղացումը։
Նա արքայական քարտուղարներից մեկին՝ Վարդանես անունով, որը
շատ խոհեմ մարդու համբավ ուներ, Բելիսարիոսի մոտ ուղարկեց
հանդիմանելու պատրվակով, որ Հուստինիանոսը դեսպաններին չի
ուղարկել Պարսկաստան՝ խաղաղության պայմանավորվածության
համաձայն հաստատելու համար, բայց [իրականում] իմանալու,
թե ինչպիսին է այդ զորավարը։ Երբ այդ իմացավ Բելիսարիոսը,

արեց հետևյալը. ընտրելով վեց հազար հաղթանդամ, թիկնեղ զինվորներ, հեռացավ ճամբարից, իբրև թե որսորդության համար, իսկ թիկնապահ Դիոգենեսին և Ակակիոսի որդի՝ ծագումով հայ Ադոլիոսին, որ մշտապես ծառայում էր կայսեր արքունիքում որպես նրա անդորրին հսկող (այս պաշտոնն ունեցող մարդկանց հռոմայեցիներն անվանում են սիլենտիարիոս)[65], իսկ այժմ հայկական փոքր զորամասի հրամանատար էր, հրամայեց հազար հեծյալներով անցնել դետր և մյուս ափում շրջել՝ հասկացնելով թշնամիներին, որ եթե նրանք փորձեն անցնել Եփրատ գետր և շարժվել դեպի իրենց՝ [պարսից] երկիրը, ապա երբեք տեղի չեն տա։ Նրանք գիմեցին հրամանների կատարմանը։

Բելիսարիոսը, երբ իմացավ, որ դեսպանն արդեն մոտ է, պապյուլեոն կոչվող հաստ կտորից մի վրան խփեց և այնտեղ նստեց, կարծես ամայի վայրում, ուզենալով ցույց տալ, որ եկել է առանց որևէ պատրաստության։ Զինվորներին նա տեղաբաշխեց հետևյալ կերպ։ Վրանի երկու կողմից թրակացիներն էին և իլլիրացիք, նրանցից հետո գոթերը, ապա էրուլները, այնուհետև վանդալներն ու մավրուսիոսները. նրանք գրավել էին դաշտի մեծ մասը և տեղում չէին մնում, այլ անընդհատ շարժվում էին, շրջում և ի միջի այլոց ու հարևանցի նայում դեսպանին։ Նրանցից և ոչ մեկը չուներ քղամիդ կամ որևէ թիկնոց, այլ ման էին գալիս հագած լինելով միմիայն կտավե խիտոններ ու վարտիքներ, գոտիները կապած։ Յուրաքանչյուրն ուներ ձիու մտրակ, իսկ զենքերից՝ մեկը դաշույն, մյուսը՝ տապար, ոմանք էլ պատյանից հանած աղեղներ։ Նրանք այնպիսի տպավորություն էին թողնում, որ անհոգ շտապում են որսի։ Վարդանեսը անձնապես ներկայանալով Բելիսարիոսին ասաց, որ Խոսրովն արքան վշտացած է, որովհետև հակառակ պայմանավորվածության, Կեսարը (պարսիկները այսպես են կոչում հռոմայեցիների թագավորին)[66] չուղարկեց իր դեսպաններին և այդ է պատճառը, որ Խոսրովը ստիպված եղավ զինյալ մուտք գործել հռոմայեցիների երկիրը։ Բելիսարիոսն երկյուղ չզգալով շատ մոտ ճամբարած բարբարոսների այսպիսի մեծ բազմությունից, առանց շփոթվելու [դեսպանի] խոսքերից, անհոգ ու ժպտադեմ պատասխանեց. «Մարդիկ այնպես չեն վարվում, ինչպես այժմ Խոսրովը։ Նրանք, եթե որևէ վեճ են ունենում հարևանների հետ, նախապես դեսպաններ են ուղարկում նրանց մոտ և երբ ոչ մի համաձայնության չեն գալիս, ապա այն ժամանակ միայն պատերազմի են դիմում։ Իսկ [Խոսրովը] հռոմայեցիների երկիրը մուտք գործելուց հետո է ուզում

»խաղաղության մասին բանակցությունների դիմել»։ [Բելիսարիոսն] այսքանն ասելով, ուղարկեց դեսպանին։

[Դեսպանը] ներկայանալով Խոսրովին, խորհուրդ տվեց հնարավորին չափ շուտ հեռանալ, որովհետև, ինչպես ինքն էր ասում, հանդիպել էր շատ քաջ զորավարի և խելացի մարդու, այնպիսի զինվորների, որ երբևիցե չէր տեսել։ Նրանց ճարգապահության վրա կարելի է հիանալ։ Տվյալ դեպքում [Խոսրովի] պայքարը Բելիսարիոսի դեմ կլինի անհավասար, քանի որ, եթե նա նույնիսկ հաղթի, հաղթած կլինի Կեսարի ծառային, բայց եթե պարտություն կրի, իր թագավորության և պարսից ժողովրդի համար դա կլինի մեծագույն խայտառակություն։ Հռոմայեցիները պարտության դեպքում կկարողանան փրկվել ամրությունների ետև՝ իրենց սեփական երկրում, բայց եթե [պարսիկները] փորձանքի հանդիպեն, ապա անհնարին կլինի դրա լուրն անգամ հասցնել պարսից երկիրը։ Այս խորհուրդը Խոսրովին համոզեց և նա որոշեց վերադառնալ պարսից երկիրը, բայց դժվարին դրության մեջ էր։ Նա գիտեր, որ գետանցը պահում են թշնամիները, բայց և չէր կարող նույն անմարդաբնակ ճանապարհով ետ վերադառնալ, որովհետև այն պարենը, որ հռոմայեցիների երկիրը արշավելիս վերցրել էին իրենց հետ, լրիվ սպառվել էր։ Երկար խորհելուց հետո նա հարմար գտավ մարտով անցնել գիմացի ափը և ճանապարհը շարունակել բարիքներով հարուստ երկրի միջով։ Բելիսարիոսը շատ լավ գիտեր, որ նույնիսկ տասը բյուր զինվորներ ի վիճակի չեն արգելել Խոսրովի գետանցումը։ Գետն այս վայրերում բազմաթիվ տեղերից նավերի համար հիմնականում մատչելի է և փոքրաքանակ զորքերով սլարսից շատ մեծ զորքի անցումը խափանել հնարավոր չէ։ [Բելիսարիոսը] Դիոգենեսին և Ադոլիոսին իրենց մարդկանցով՝ այն հազար հոգու հետ նախապես ուղարկել էր գիմացի ափը, որպեսզի բարբարոսին շփոթեցնեն ու խանգարեն։ Ինչպես ես ասացի, [Խոսրովը] վախեցավ, բայց անհանգստացավ և [Բելիսարիոսը], որ հանկարծ խոչընդոտ կստեղծի [Խոսրովին] հռոմայեցիների երկրից հեռանալու։ [Բելիսարիոսը] ավելի նպատակահարմար էր համարում հնարավորություն տալ Խոսրովի բանակին այդտեղից դուրս գալ և ոչ մի փորձության չենթարկել բազմաբյուր բարբարոսների դեմ [իր] փոքրաթիվ, առանց այն էլ մարերի բանակից կատարելապես սարսափած զորքին։ Դրա համար նա հրամայեց, որ Դիոգենեսն ու Ադոլիոսը հանգիստ մնան։

Խոսրովը կամուրջ գցեց և հանկարծակի ամբողջ զորքով անցավ Եփրատ գետը։ Պարսիկների համար բոլոր գետերը, առանց որևէ

դժվարության անցանելի են, որովհետև նրանք երբ ճամփա են դուրս գալիս, պատրաստ ունեն երկաթե կարթեր, որոնցով երկար գերանները իրար հարմարեցնելով, ցանկացած տեղում պատրաստի կամուրջ են սարքում։ Երբ նա շտապ կարգով անցավ մյուս ափը, մարդ ուղարկեց Բելիսարիոսի մոտ՝ ասելով, որ մարերի զորքով իր հեռանալը հռոմայեցիների հանդեպ զիջում էր և որ ինքը անհապաղ սպասում է նրանց դեսպաններին։ Բելիսարիոսը ևս հռոմայեցիների ամբողջ զորքով անցնելով Եփրատ գետը, անմիջապես [մարդիկ] ուղարկեց Խոսրովի մոտ։ Վերջիններս երբ ժամանեցին նրա մոտ, գովեցին [Խոսրովին] հեռանալու համար, խոստացան, որ շատ շուտով նրանց մոտ կգան կայսեր դեսպանները և խաղաղության շուրջը անցյալում կայացած համաձայնությունը գործով կհաստատեն։ Նրանք առաջարկում էին, որ [Խոսրովը] ճանապարհը շարունակի հռոմայեցիների՝ որպես իրեն բարեկամների երկրի միջով։ [Խոսրովը] այդ էլ խոստացավ կատարել, եթե համաձայնության իրականացումը հավաստիացնելու համար իրենց որպես պատանդ տան երևելի [հռոմայեցիներից] որևէ մեկին։ Դեսպանները, վերադառնալով Բելիսարիոսի մոտ, հայտնեցին Խոսրովի պայմանները։ [Բելիսարիոսը] ժամանելով Եդեսիա, Բասիլեյոսի որդի Հովհաննեսին[67], որը և՛ ծագումով, և՛ հարստությամբ ամենաերևելին էր եդեսացիների մեջ, հակառակ նրա կամքին, անմիջապես որպես պատանդ ուղարկեց Խոսրովի մոտ։ Հռոմայեցիները գովաբանում էին Բելիսարիոսին և գտնում, որ այս հաջողությունը շատ ավելի մեծ է, քան երբ նա Գելիմերին կամ Ուիտտիգիսին Բյուզանդիոն գերի բերեց։ Իսկապես հիանալի էր և մեծ գովասանքի արժանի, որ երբ բոլոր հռոմայեցիները վախեցած թաքնվել էին ամրությունների ետևում, իսկ Խոսրովը մեծ զորքով ոտք էր դրել հռոմեական երկիրը, Բյուզանդիոնից մի զորավար փոքրաթիվ զորքով մեծ արագությամբ ելավ պարսից արքայի դեմ, իսկ Խոսրովը անսպասելի կերպով, վախենալով այս մարդու կամ բախտից, կամ էլ քաջությունից, գուցե և որևէ խորամանկությունից խաբված, այլևս առաջ չշարժվեց, այլ խաղաղությունը պահպանելու պատրվակով իրականում փախուստի դիմեց։

Այդ միջոցին, սակայն, Խոսրովը դրժեց համաձայնությունը, գրավելով Կալլինիկոն քաղաքը, որը ոչ ոք չէր պաշտպանում։ Հռոմայեցիները, տեսնելով, որ այս քաղաքի պարիսպը խախուտ է և միանգամայն մատչելի, մաս-մաս քանդելով նորոգում էին այն. նրանք մի մասն արդեն քանդել էին, բայց չէին հասցրել վերակա-

ռուցել։ Երբ իմացան, որ թշնամիները մոտենում են [քաղաքին], ամենահարուստ բնակիչներն իրենց ամենից արժեքավոր շարժական գույքը վերցնելով՝ հեռացան ու ապաստանեցին ուրիշ ամրությունների մեջ, իսկ մնացած բնակչությունը մնաց տեղում, առանց զինվորական պաշտպանության։ Այդտեղ երկրագործների մի մեծ բազմություն էր հավաքվել, որին Խոսրովը գերի վերցրեց, իսկ [քաղաքը] հիմնահատակ քանդեց։ Մի փոքր անց, ընդունելով պատանդ Հովհաննեսին, նա վերադարձավ հայրենի երկիրը։

Խոսրովի կողմն անցած հայերն էլ, հռոմայեցիներից երաշխավորություն ստանալով, Վասակի[68] հետ միասին եկան Բյուզանդիոն։ Այդ տեղի ունեցավ Խոսրովի՝ հռոմայեցիների վրա կատարած երրորդ արշավանքի ժամանակ։ Բելիսարիոսն էլ կանչվեց Բյուզանդիոն՝ անհապաղ Իտալիա ուղարկվելու համար, որովհետև հռոմայեցիների գործերն այնտեղ արդեն շատ ծանր վիճակում էին։

22. Նույն այդ ժամանակները համաճարակ բռնկվեց և քիչ էր մնացել, որ ողջ մարդկությունը բնաջնջվեր[69]։ Գուցե համարձակ մարդիկ փորձեն բացատրել այն, ինչ երկինքն է ուղարկում երկիր, ինչպես շատ են սիրում անել նման դեպքերում հանդուգն ոմանք, ովքեր ուզում են բացատրել մարդու համար անհասկանալին, հորինել բնության երևույթների տարօրինակ մեկնաբանություններ, թեև շատ լավ գիտեն, որ բանական ոչինչ չեն ասում։ Նրանք իրենց բավարարված են համարում, եթե կարողանան զրուցակցին խաբել ու համոզել։ Անհնարին էր այդ փորձանքի պատճառը գտնել կամ բացատրել. մնում է այն վերագրել աստծո կամքին։ [Համաճարակը] տարածվեց ոչ թե երկրի մի որոշ մասում և տարվա որոշ ժամանակ ու վարակեց որոշ մարդկանց, որպեսզի դրանից ելնելով հնարավոր լիներ որևէ պատճառներ հնարել։ Այն ընդգրկեց ամբողջ աշխարհը, վնաս հասցրեց անխտիր բոլորին, չխնայեց ոչ սեռ, ոչ տարիք։ Մարդիկ իրենց բնակության վայրով, ապրելակերպով, սեռով, մասնագիտությամբ կամ որևէ այլ բանով տարբերվում են իրարից, բայց այս համաճարակի ժամանակ տարբերությունը ոչ մի նշանակություն չունեցավ։ [Համաճարակը] տարածվեց ոմանց վրա ամառ ժամանակ, ոմանց՝ ձմռանը, ուրիշների վրա էլ այլ պահերին։ Յուրաքանչյուրը, լինի նա փիլիսոփա կամ աստղագուշակ, թող ասի ինչ գիտե այդ [համաճարակի] մասին։ Ես այստեղ կպատմեմ, թե որտեղ ծագեց համաճարակը և ինչ ձևով էր կոտորում մարդկանց։

Այն ծագեց Պելուսիոնում[70] բնակվող եգիպտացիների մեջ։ Այ-

## [Պարսկական պատերազմի մասին գիրք երկրորդ, գլուխ 22]

նուհետև տարածվեց երկու ուղղությամբ, մեկը՝ դեպի Ալեքսանդրիա և մնացած Եգիպտոսը, իսկ մյուսը՝ դեպի Եգիպտոսի սահմանակից Պաղեստինը։ Ահա այդտեղից էլ ծավալվեց ամբողջ աշխարհով մեկ, ընթանալով [կարծես] սահմանված ճանապարհով և ժամկետով։ Յուրաքանչյուր վայրում նա մնում էր որոշ ժամանակ և հիմնավոր կոտորում մարդկանց։ Նա տարածվեց մինչև աշխարհի հեռավոր ծայրերը, կարծես վախենալով, որ հանկարծ որևէ մի անկյուն անմասն կմնա իրենից։ Նա չխնայեց ոչ մի կղզի, քարայր, լեռնագագաթ, ուր մարդիկ էին բնակվում։ Եթե նույնիսկ մի որևէ վայր թողած անցներ, ձեռք չտար նրա բնակիչներին, կամ էլ չնչին չափով դիպչեր նրանց, որոշ ժամանակ անց նա նորից էր այդտեղ վերադառնում։ Այն բնակիչներին, որոնք մի անգամ ճաշակել էին նրան, ամենևին ձեռք չէր տալիս[1], բայց այն վայրից, որից նախապես թողել անցել էր, մինչև որ ճիշտ նույն չափով կյանքեր չտաներ, ինչքան որ նախապես՝ հարևան վայրից, չէր հեռանում։ Համաճարակը միշտ սկիզբ էր առնում ծովափնյա վայրերում[2] և ապա շարժվում էր դեպի երկրի խորքերը։ Երկու տարի հետո[3], գարնան կեսերին նա հասավ Բյուզանդիոն, ես այն ժամանակ այնտեղ էի գտնվում։ Դա տեղի ունեցավ այսպես։ Շատերին դևերի ուրվականներ էին երևում՝ մարդկային ամենատարբեր կերպարանքով և ով հանդիպում էր նրանց, իրեն թվում էր, թե մարմինը հարվածներ է ստանում նրանցից. ուրվականին տեսնելով նրանք իսկույն համաճարակի զոհն էին դառնում։ Սկզբում [ուրվականներին] հանդիպողները փորձում էին նրանց փախուստի մատնել ամենասուրբ անունների հիշատակությամբ և այլ սրբագործող ծեսերի կատարմամբ, ըստ յուրաքանչյուրի հասկացողության, բայց դա ոչ մի արդյունք չէր տալիս, որովհետև շատերը, ապաստան գտնելով նույնիսկ եկեղեցիներում, [այնտեղ] էին կոտորվում։ Այնուհետև նրանք չէին ուզում լսել անգամ իրենց կանչող սիրելիներին, փակվում էին բնակարաններում և թեև [մարդիկ] ծեծում էին նրանց դռները, նրանք ձևացնում էին, որ չեն լսում, պարզապես վախենալով, որ կանչողը հանկարծ որևէ մի դև լինի։ Ոմանք համաճարակի բռնվեցին այլ կերպ։ Նրանց տեսիլք երևաց և դրանից իրենց թվաց, թե արդեն հիվանդացել են, կամ լսում էին կանխագուշակություն, թե իրենք արդեն գտնվում են մահապարտների ցուցակում։ Մեծ մասը, սակայն, հիվանդանում էր նախօրոք, ո՛չ երազում, ո՛չ էլ արթուն վիճակում իմանալով այդ մասին։ [Համաճարակի] զոհ էին դառնում [մարդիկ] հետևյալ կերպ. նրանք հանկարծակի ջերմու-

թյուն էին զգում, ոմանք քնից վեր կենալիս, ուրիշները՝ զբոսնելու պահին, ոմանք էլ որևէ բանով զբաղված ժամանակ։ Մարմնի գույնը չէր փոխվում, մնում էր նախկինը, ոչ էլ տաք էր այն, ինչպես ջերմի դեպքում, բորբոքվածություն էլ չէր նկատվում, այլ ջերմությունն այնպես թեթև էր սկզբից մինչև երեկո, որ ո՛չ հիվանդացողները, ո՛չ էլ բժիշկները վտանգի կասկած չէին ունենում։ Այս վիճակում ոչ ոքի մտքով էլ չէր անցնում, թե դրանից կարելի է մահանալ։ Ոմանց նույն օրն իսկ, ոմանց հաջորդ օրը, ոմանց էլ մի քանի օր անց, աճուկն ուռչում էր, ոչ միայն փորից ցած, այլև անթատակը, ոմանց էլ ականջների մոտ և [մարմնի] պատահած մասում։

Ահա համաճարակի բոլոր զոհերի ախտանշանները դրեթե նույնն էին։ Իսկ այնուհետև, մարմնի կառուցվածքի տարբերությունից, թե հիվանդությունն ուղարկողի ցանկությամբ, չեմ կարող ասել, այն տարբեր ընթացք էր ունենում։ Ոմանք խոր քնի մեջ էին սուզվում, ոմանք ծայրահեղ խելահեղության էին մատնվում, բայց բոլորն էլ տառապում էին նույն ցավերից, որոնք ուղեկցում էին այս հիվանդությունը։ Քնի մեջ սուզվողներն ամեն ինչի մասին մոռացած, թվում է, թե անվերջ ննջում են և եթե մեկը նրանց մասին հոգար, ժամանակ առ ժամանակ սնվում էին, իսկ ում մասին հոգացող չկար, նա ուղղակի սովամահ էր լինում։ Նրանք, ովքեր հափշտակված էին խելահեղության մոլուցքով, տառապում էին անքնությունից և ցնորվում։ Նրանց թվում էր, թե մեկը գալիս է իրենց սպանելու, դրա համար ընկնում էին խուճապի մեջ և սարսափելի աղաղակներով փախուստի դիմում։ Նրանց մասին հոգացողները՝ անվերջ տանջանքի մեջ անչափ չարչարվում էին։ Այդ էր պատճառը, որ բոլորը խղճում էին նրանց ոչ պակաս, քան հիվանդներին, ոչ թե նրա համար, որ իրենց ենթարկում էին այդ հիվանդության վտանգին (ո՛չ բժիշկը, ո՛չ կողմնակի մարդը, որ շփման մեջ էր լինում հիվանդների կամ վախճանվածների հետ, չվարակվեց այդ փորձանքից. շատերը, ովքեր բուժում էին կամ թաղում նույնիսկ իրենց հետ ոչ մի ազգակցական կապ չունեցողներին, այդ ընթացքում դիմանում էին՝ զարմանալի կերպով, երբ ուրիշները հանկարծակի հիվանդանալով մահանում էին, առանց որևէ ակնհայտ պատճառի), այլ որովհետև նրանք շատ էին տառապում։ Նրանք անկողնից ցած ընկնողներին և փռվողներին նորից վեր էին կացնում, հրում էին և քաշում [հիվանդներին], երբ սրանք փորձում էին տնից ցած նետվել։ [Հիվանդները] ցանկություն ունեին նաև ջուրը նետվելու, բայց ոչ ծարավը հագեցնելու համար (որովհետև շատերն իրենց

ծովն էին ուզում նետել). դրա պատճառը պարզապես ուղեղի խանգարվածությունն էր։ Մեծ չարչարանք էր նաև նրանց կերակրելը, որովհետև հեշտությամբ չէին ընդունում [սնունդը]։ Շատերը կոտորվեցին հոգացող չունենալու պատճառով կամ սովամահ լինելով կամ էլ բարձր տեղից իրենց ցած գցելով։ Ովքեր չէին տառապում քնախտով, կամ խելահեղության չենթարկվեցին, նրանց էլ անուկացավն էր կոտորում և չդիմանալով ցավերին մահանում էին։ Կարելի է ենթադրել, որ մյուս բոլորի հետ էլ նույն բանն էր կատարվում, բայց որովհետև նրանք կորցրել էին իրենց խելքը, ցավ չէին զգում. խելահեղությունը նրանց զրկել էր զգալու ընդունակությունից։

Բժիշկներից ոմանք հիվանդության պատճառը չգտնելով և ենթադրելով, որ անուկի մեջ է այն, որոշեցին դիահերձել մահացածների մարմինները։ Մի քանիսի անուկը կտրելով, այնտեղ գտան ինչ-որ ածխանման սարսափելի բան։ [Հիվանդներից] ոմանք անմիջապես էին մահանում, իսկ ուրիշներն էլ շատ օրեր անց։ Ոմանց մարմնի վրա դուրս էին գալիս ոսպի մեծության սև պալարներ։ Այդ [հիվանդները] մի օր էլ չապրելով իսկույն մահանում էին, ուրիշներն էլ արյուն փսխելով րոպեական կոտորվում էին։ Ես կարող եմ ասել միայն այն, որ շատերը, որոնց հայտնի բժիշկները մահ էին կանխատեսում, անակնկալ կերպով ողջ մնացին, իսկ շատերն էլ, որոնց մասին պնդում էին, թե կփրկվեն, հենց նույն րոպեին մահանում էին։ Այս հիվանդության ժամանակ որոշակի ոչ մի ախտանշան չկար, որից կարելի լիներ հանգել ճիշտ եզրակացության։ Ամեն մեկի մոտ տարբեր հետևանքներ էր ունենում [հիվանդությունը]։ Լոգանքները ոմանց օգուտ տվեցին, ոմանց էլ շատ վնաս հասցրին։ Շատերը զուրկ լինելով որևէ հոգատարությունից, մահանում էին, շատերն էլ անսպասելիորեն փրկվում։ Միևնույն եղանակով բուժվողների համար արդյունքը բոլորովին տարբեր էր լինում։ Մարդիկ փրկության համար ոչ մի միջոց չէին գտնում, ոչ համաճարակից խուսափելու, ոչ էլ հիվանդանալուց հետո ողջ մնալու։ Հիվանդանալը որևէ պատճառ չուներ, իսկ ողջ մնալն էլ պատահական էր։ Հղի կանանց համար հիվանդանալը մահ էր։ Մի մասը մահանում էին վիժելով, իսկ ծննդաբերողները մահանում ւին աշխարհ բերած իրենց երեխայի հետ միասին։ Պատմում են, որ երեք ծննդկան միայն ողջ մնացին, իսկ նրանց երեխաները մահացան, մեկն էլ ծննդաբերության ժամանակ մահացավ, բայց երեխան ծնվեց և ապրեց։ Նրանք, որոնց անուկը շատ ուռչեց ու թարախակալեց, առող-

ջացան, և պարզվեց, որ նրանց մոտ ածխի ուժը սպառվել է և այս համարվեց առողջության գլխավոր նշանը։ Իսկ որոնց մոտ աճուկը անփոփոխ էր մնում, նրանց սպասում էին այն տանջանքները, որոնց մասին ես վերևում հիշատակեցի։ Ոմանց ազդրն էր չորանում, որի վրա նշմարելի էր քիչ թարախակալած աճուկը։ Առողջացածներից ոմանց մոտ վնասվեց լեզուն, նրանք կամ թոթովում էին, կամ էլ հազիվհազ և անորոշ արտաբերում։

23. Համաճարակը Բյուզանդիոնում տևեց չորս ամիս, բայց մոլեգնում էր գլխավորապես երեք ամսվա ընթացքում։ Սկզբում մահացության դեպքերը սովորականից քիչ ավելի էին, այնուհետև աղետն սկսեց սաստկանալ, այնպես, որ մեռնողների թիվը օրական հասնում էր հինգ հազար հոգու, ապա հասավ տաս հազարի և դրանից էլ ավելի։ Սկզբում ամեն մեկը հոգում էր իր տան մեռելների թաղման մասին, որոնց հաճախ թաքուն կամ բռնությամբ գցում էին ուրիշների գերեզմանների մեջ։ Այնուհետև ամեն ինչ խառնվեց իրար։ Ստրուկները մնացին առանց տերերի, անցյալում շատ հարուստ մարդիկ, իրենց ստրուկների հիվանդության կամ մահվան պատճառով մնացին առանց ծառաների և բազմաթիվ տներ լրիվ անմարդաբնակ դարձան, և բարեկամների բացակայության պատճառով բազում օրեր մարդիկ անթաղ մնացին։ Բնականաբար այդ մտահոգեց կայսեր։ Նա պալատական զինվորներ ու դրամ տրամադրեց և հրամայեց, որ դրանով զբաղվի կայսերական ապոկրիսիարիոս[75] Թեոդորոսը, որի պաշտոնն էր կայսեր հաղորդել կարիքավորների դիմումների մասին և վերջիններիս հայտնել [կայսեր] որոշումները։ Հռոմայեցիներն այդ պաշտոնը վարողին լատիներեն լեզվով անվանում են ռեֆերենդարիոս։ Այն ընտանիքներն ահա, ուր դեռևս մնացել էին ողջ մարդիկ, իրենք էին իրենց մեռելները թաղում։ Իսկ Թեոդորոսը կայսեր, ինչպես նաև իր սեփական դրամական միջոցներով թաղել էր տալիս անտեր մեռելներին։ Երբ գոյություն ունեցող բոլոր գերեզմանատները լցվեցին մեռելներով, արդեն սկսեցին քաղաքի շրջակայքում փոսեր փորել և թաղել հանգուցյալներին, ինչպես որ յուրաքանչյուրը կարողանում էր։ Բայց գնալով մեռնողների թիվն այնքան մեծացավ, որ փոս փորողները չէին հասցնում, դրա պատճառով սկսեցին Սիկայում[76] եղած պարսպի աշտարակները բարձրանալ, հանել նրանց ծածկերը և այնտեղ անկանոն կերպով նետել մարմինները, ուր որ պատահեր։ Այդպես [աշտարակները] լցնում էին դիակներով և այնուհետև

կտուրով ծածկում։ Առաջացած գարշահոտությունը գալիս էր քաղաք և առավել ևս տանջում նրա բնակիչներին, հատկապես երբ քամին այնտեղից էր փչում։

Այն ժամանակ բոլորովին անուշադրության էին մատնված մեռելներին թաղելու ծիսակատարությունները։ Հանգուցյալներին թաղում չէին առանց ընդունված թափորի ու սաղմոսերգության։ Բավական էր համարվում, եթե մեկը մեռածի գիակը իր ուսերի վրա բարձած գնար քաղաքի ծովափնյա մի վայր և այնտեղ նետեր այն, որից հետո նավակների մեջ իրար վրա էին դիզում տանելու համար ուր որ պատահեր։ Այն ժամանակ դեմոսի իրար թշնամի անդամները[77], մի կողմ թողած միմյանց միջև գոյություն ունեցող հակառակությունը, միասին էին հոգում մեռելներին [թաղելու] սրբազան գործը և յուրաքանչյուրը տանում էր ու թաղում իր հետ ազգակցական ոչ մի կապ չունեցող մարդկանց դիակները։ Ովքեր անցյալում բավարարություն էին զգում գործելով խայտառակ և ստոր արարքներ, այժմ հրաժարվելով նման անօրեն ապրելակերպից, իսկական բարեպաշտներ դարձան, ոչ թե այն պատճառով, որ հանկարծ բարիքի և առաքինության սիրահարների վերածվեցին, այլ որովհետև բոլորը, կատարվածից շվարած, ենթադրելով, որ մահը մոտ է, ժամանակավորապես հեզաբարո դարձան։ Մարդու բնածին կամ երկար ժամանակվա ընթացքում ձեռք բերած գծերն այդպես հեշտությամբ փոփոխել հնարավոր չէ, եթե իհարկե աստուծո մատը չլինի։ Երբ նրանք շուտով առողջացան ու փրկվեցին, և ենթադրում էին, որ ապահով վիճակում են գտնվում, իսկ աղետը հասել է ուրիշ մարդկանց, իրենք նորից նախկինը դարձան, ավելի վատ քան առաջ էին, հանդես բերին ավելի անամոթություն, քան երբևիցե, անչափ գերազանցելով հենց իրենց փչացածությամբ և անօրինությամբ։ Եթե մեկը պնդի, որ այս համաճարակը դիպվածով, կամ էլ նախախնամությամբ ճշգրտորեն ընտրեց և ձեռք չտվեց ամենավատթարներին, նա սխալված չի լինի։ Դա պարզվեց հետագայում։

Այդ ժամանակները դժվար էր տեսնել որևէ մեկին Բյուզանդիոնի հրապարակներում։ Առողջ մնացածները տանը նստած խնամում էին հիվանդներին, կամ էլ ողբում վախճանվածներին։ Եթե նույնիսկ մեկն էր հանդիպում [փողոցում], նա էլ մեռել տանելիս էր լինում։ Բոլոր աշխատանքները կանգ էին առել, արհեստավորները մի կողմ էին թողել իրենց զբաղմունքները, ինչպես նաև յուրաքանչյուրի ձեռքին եղած բոլոր գործերը։ Եվ ամեն տեսակ բարիքներով անչափ լի քաղաքն էր ներխուժել դաժան սովը։ Բավարար

քանակությամբ հաց կամ որևէ այլ մթերք ունենալը դժվարին և ծանր խնդիր էր։ Այդ պատճառով հիվանդներից ոմանք սննդի պակասությունից անժամանակ վախճանվում էին։ Մի խոսքով, չէր կարելի Բյուզանդիոնում տեսնել մի մարդ, որ քղամիդ էր հագած, հատկապես այն ժամանակ, երբ կայսրը հիվանդացավ (նա ևս անուկսցավով տառապեց)։ Հռոմեական պետության թագավորանիստ քաղաքում բոլորը հասարակ մարդու հիմատիոններ հագած, անգործ տանն էին մնում։ Ահա մոտավորապես այսպիսին էր դրությունը համաճարակի ժամանակ հռոմայեցիների երկրում և հենց Բյուզանդիոնում։ [Համաճարակը] տարածվեց նաև պարսից երկրում և մնացած բոլոր բարբարոսների մեջ։

24. Այդ ժամանակ Խոսրովը Ասորեստանից շարժվում էր դեպի հյուսիս՝ Ադարբիգան[78] կոչված երկիրը, մտադիր լինելով այնտեղից, Պերսարմենիայի վրայով ներխուժել հռոմայեցիների երկիրը։ Այստեղ [Ադարբիգանում] գտնվում է մեծ ատրուշան, որը պարսիկները պաշտում են բոլոր աստվածներից ավելի։ Այստեղ մոգերը կրակն անմար են պահում և խստիվ կատարում մնացած բոլոր ծեսերը, իսկ ամենակարևոր դեպքերի ժամանակ այն օգտագործում են որպես պատգամարան։ Դա հուրն է, որ անցյալում հռոմայեցիները ևս պաշտում էին և կոչում Հեստիա[79]։ Բյուզանդիոնից այստեղ Խոսրովի մոտ մարդ էր ուղարկվել, որն ասաց, թե շուտով նրա մոտ են գալու Կոստանդիանոս ու Սերգիոս դեսպանները՝ հաշտության գործով։ Այդ երկուսն էլ հռետորներ էին, անչափ խոհեմ, Կոստանդիանոսը ծագումով իլլիրացի էր, իսկ Սերգիոսը՝ Միջագետքում գտնվող Եդեսիա քաղաքից։ Խոսրովը, սպասելով նրանց, ոչինչ չէր ձեռնարկում։ Այդ ճանապարհորդության ժամանակ Կոստանդիանոսը հիվանդացավ և այդպես բավական երկար ժամանակ անցավ. այդ միջոցին համաճարակը տարածվեց նաև Պարսկաստանում։ Եվ ահա Նաբեդեսը, որն այն ժամանակ Պերսարմենիայի զորահրամանատարն էր, արքայի կարգադրությամբ Հայաստանի զորահրամանատար Վալերիանոսի մոտ ուղարկեց Դուբիոսի քրիստոնյաների եպիսկոպոսին[80] բողոքելու դեսպանների հապաղման համար, ինչպես և ջանք թափելու, որ հռոմայեցիները համոզվեն հաշտություն կնքել։ [Եպիսկոպոսը] իր եղբոր հետ հասավ Հայաստան, հանդիպեց Վալերիանոսին և պնդում էր, որ ինքը, որպես քրիստոնյա, բարեկամաբար է տրամադրված դեպի հռոմայեցիները, որ Խոսրով արքան մշտապես հաշվի է նստում իր կարծիքի հետ,

հետևաբար, եթե հռոմայեցիների դեսպաններն իր հետ դնան Պարսկաստան, նրանց առաջ ոչ մի խոչընդոտ չի լինի՝ հաշտությունն իրենց ուզած ձևով կնքելու համար։ Եպիսկոպոսն այսքանն ասաց, բայց եպիսկոպոսի եղբայրը, գաղտնի տեսակցելով Վալերիանոսի հետ, հայտնեց, որ Խոսրովը մեծ դժվարությունների առաջ է կանգնած, նրա որդին իշխանությունը գրավելու համար ապստամբություն է բարձրացրել[81], որ [Խոսրովը] ամբողջ զորքով համաճարակի է բռնված և այդ է պատճառը, որ պարսիկներն հիմա ուզում են հաշտություն կնքել։ Երբ այդ լսեց Վալերիանոսը, եպիսկոպոսին անմիջապես ետ ուղարկեց, խոստանալով, որ դեսպանները շուտով կժամանեն Խոսրովի մոտ, իսկ ինքը իր իմացածը հաղորդեց Հուստինիանոս կայսեր։ Կայսրը դրանից դրդված, հրաման տվեց, [Վալերիանոսին], Մարտինոսին և մնացած հրամանատարներին՝ անհապաղ ներխուժել թշնամու երկիրը և չէր կարծում, որ թշնամիներից որևէ մեկը նրանց դիմադրություն ցույց կտա։ Նա հրամայեց, որ բոլորը մի տեղ հավաքվեն և այդպես ներխուժեն Պերսարմենիա։ Երբ հրամանատարները ստացան և կարդացին նամակները, բոլորը միասին իրենց զորքով սկսեցին կուտակվել Հայաստանի շրջաններում։

Խոսրովն արդեն մի փոքր առաջ, վախենալով համաճարակից, թողել էր Ադարբիգանը ու ամբողջ զորքով շարժվել դեպի Ասորեստան, ուր համաճարակը ամենևին չէր տարածվել։ Վալերիանոսն իր զորքերով ճամբար դրեց Թեոդոսուպոլսին շատ մոտիկ։ Նրան էր միացել նաև Նարսեսը[82], իր հետ ունենալով հայերից և փոքրաթիվ էրուլներից բաղկացած մի [զորք]։ Իսկ արևելքի զորավար Մարտինոսը Իլդիգերի և Թեոկտիստոսի հետ հասավ Կիթարիզոն ամրոցը[83], ուր և ճամբար դրեց ու մնաց։ Այս ամրոցը գտնվում է Թեոդոսուպոլսից չորս օրվա հեռավորության վրա։ Շուտով այնտեղ եկավ նաև Պետրոսը, Ադոլիոսի և մի քանի հրամանատարների հետ։ Այդտեղի զորքերի հրամանատարն էր Նարսեսի եղբայր Իսահակը[84]։ Ֆիլեմութն ու Բերոսը իրենց էրուլների հետ եկան Խորզիանենէի[85] շրջանները, Մարտինոսի ճամբարից ոչ շատ հեռու։ Կայսեր եղբորորդի Հուստոսը, Պերանիոսը, Նիկիտայի որդի Հովհաննեսը Դոմենտիոլոսի և Հովհաննես՝ Ֆագաս կոչվածի հետ ճամբարեցին Ֆիսոն[86] ամրոցի մոտ՝ Մարտիրոպոլսի սահմաններից ոչ շատ հեռու։ Ահա այսպես ճամբարեցին հռոմայեցիների զորահրամանատարներն իրենց զորքերի հետ։ Ամբողջ զորքի թիվը հասնում էր երեսուն հազարի։ Նրանք բոլորը ոչ միայն չհավաքվեցին մի վայրում, այլ

նույնիսկ իրար մոտ խորհրդակցության չեկան։ Զորավարներն իրենց մարդկանց ուղարկում էին միմյանց մոտ ու հարցնում հարձակման մասին։ Պետրոսը ոչ ոքի հետ չխորհրդակցելով, առանց մտածելու, իր զորքով հանկարծակի ներխուժեց թշնամու երկիրը։ Էրուլների առաջնորդներ Ֆիլեմութն ու Բերոսն այդ մասին հաջորդ օրն իմացան և անհապաղ հետևեցին նրան։ Երբ այդ բոլորը հայտնի դարձավ Մարտինոսին և Վալերիանոսին, նրանք ևս շտապեցին ներխուժել։ Քիչ հետո բոլորն էլ իրար միացան թշնամու երկրում, բացի Հուստոսից և նրա զորքից, որոնք, ինչպես ասվեց, ճամբար էին դրել մնացած զորքից բավական հեռու. որոշ ժամանակ անց, իմանալով նրանց ներխուժման մասին, իրենք էլ առանց հապաղելու ներխուժեցին դիմացում գտնվող թշնամու շրջանները, բայց իրենց զորակիցներին միանալ չկարողացան։ Մնացածները շարժվեցին ուղիղ Դուբիոսի վրա[87], առանց թալանելու կամ որևէ այլ վնաս հասցնելու պարսից երկրին։

25. Դուբիոսը շատ հարուստ բնակատեղի է, ունի բավական լավ օդ ու ջուր և գտնվում է Թեոդոսուպոլսից ութ օր հեռավորության վրա։ Դաշտերն այստեղ լայնատարած են՝ ձիավարության համար մատչելի, կան իրար հարևան բազմաթիվ մարդաշատ գյուղեր, ուր բնակվում են առևտրական նպատակներով [ժամանած] մեծ թվով մարդիկ։ Հնդկաստանից, հարևան Իբերիայից, մի խոսքով Պարսից ենթակա բոլոր երկրներից, որոշ չափով նաև հռոմեական [երկրից] ապրանքներ բերողները հենց այստեղ են իրար հետ առևտուր անում։ Քրիստոնյաների քահանայա[պետին] այստեղ հունարեն լեզվով կաթողիկոս են անվանում[88], որովհետև նա այս վայրերում ապրողների միահեծան վերակացուն է։ Դուբիոսից հարյուր քսան ասպարեզ հեռավորության վրա, հռոմեական երկրից դեպի աջ կա դժվարանցանելի և զառիթափ մի լեռ, ուր շատ նեղ ու անհարթ վայրում գտնվում է Անգլոն կոչվող գյուղը[89]։ Նաբեդեսը հենց որ իմացավ թշնամիների արշավանքի մասին, ամբողջ զորքով պատսպարվեց այս գյուղում՝ իր հույսը դնելով նրա ամրության վրա։ Գյուղը գտնվում է լեռան ստորոտում, իսկ նրա անունը կրող անառիկ ամրոցը՝ մի ժայռոտ վայրում։ Նաբեդեսը քարերով և սայլերով փակեց դեպի գյուղը տանող ճանապարհը, և այն ավելի անմատչելի դարձրեց, իսկ դրանից առաջ նա փորել տվեց մի խրամատ, ուր տեղավորեց զորքը։ Բացի այդ, նա նախօրոք հետևակ

զորքը դարան դրեց մի քանի հնամենի խրճիթների մեջ։ Պարսից ամբողջ զորքը հասնում էր չորս հազար մարդու։

Այդպիսին էր վիճակն այստեղ, երբ հռոմայեցիները, հասնելով Անգլոնից մեկ օրվա հեռավորության վրա գտնվող մի վայր, ձերբակալեցին հետախուզության եկած մի թշնամու, որին հարցրին թե ուր կլինի այժմ Նաբեդեսը։ [Հետախույզը] պատասխանեց, որ [Նաբեդեսը] մարերի ամբողջ զորքով հեռացել է Անգլոնից։ Նարսեսը լսելով այդ, շատ բարկացավ, նախատեց ու հանդիմանեց իր զորակիցներին՝ նրանց հապաղման համար։ Նույնն էին անում նաև ուրիշները, միմյանց հայհոյում և, այնուհետև, անտեսելով պատերազմի վտանգը, փութացին թալանել այդ վայրերը։ Առանց զորավարի, անկանոն կերպով, խառնիխուռն առաջ շարժվեցին, չունենալով ոչ նշանաբան, ինչպես ընդունված է պատերազմի ժամանակ, ոչ էլ պահպանելով շարքերը. նրանք շարժվում էին առաջ, հարստություն հափշտակելու մտադրությամբ՝ գումակին խառնրված։ Երբ մոտեցան Անգլոնին, հետախույզներ ուղարկեցին, որոնք վերադառնալով հայտնեցին թշնամու կազմ ու պատրաստ լինելու մասին։ Զորավարներն այս անակնկալից շփոթվեցին, այնուամենայնիվ այսպիսի մեծ զորքով նահանջելը խայտառակություն և վախկոտություն համարեցին։ Նրանք կովի անպատրաստ զորքը երեք մասի բաժանելով՝ շարժվեցին ուղիղ թշնամու վրա։ Պետրոսն աջ թևն էր գլխավորում, Վալերիանոսը՝ ձախը, իսկ կենտրոնում շարվեցին Մարտինոսի զինվորները։ Նրանք մոտենալով հակառակորդին՝ կանգնեցին անկանոն վիճակում և ոչինչ չէին ձեռնարկում։ Դրա պատճառը դժվարանցանելի ժայռոտ տեղանքն էր և մարտի պատրաստ լինելու հրամանի անակնկալությունը։ Բարբարոսները շուտով նեղ ճակատով ի մի հավաքվեցին, բայց նույնպես ոչնչի չէին դիմում. նրանք ուզում էին մանրամասն տեղեկանալ հակառակորդի ուժին։ Նաբեդեսը նախապես պատվիրել էր խուսափել ընդհարումից և թշնամիների հարձակման դեպքում միայն հնարավորին չափ դիմագրել։

Առաջինը մարտի բռնվեց Նարսեսը էրուլների և իրեն հետևող հռոմայեցիների հետ և ընդհարվելով փախուստի մատնեց իր դեմ ելած պարսիկներին։ Փախուստի դիմած պարսիկները վազքով բարձրանում էին դեպի ամրոցը։ Այստեղ նեղանցուկ տեղում երկու կողմից էլ մեծ կոտորած տեղի ունեցավ։ Նարսեսն իր մարդկանց կոչ անելով, ավելի սաստիկ էր նեղում թշնամիներին, ապա գործի անցան մնացած հռոմայեցիները։ Խրճիթների մեջ դարանակալած

[թշնամիները], որոնց մասին ասվեց, հանկարծ դուրս եկան և անակնկալ հարձակում գործելով էրուլների վրա, ոմանց կոտորեցին և հենց իրեն՝ Նարսեսի գլխին հարված հասցրին։ Նրա եղբայրը՝ Իսաակեսը մահացու վերք ստացած [Նարսեսին] դուրս հանեց մարտնչողների շարքից, բայց շատ չանցած նա վախճանվեց՝ իր քաջությամբ աչքի ընկնելով այս մարտում։ Ինչպես պետք էր սպասել, դրանից մեծ իրարանցում տեղի ունեցավ հռոմայեցիների զորքի մեջ և այդ միջոցին Նաբեդեսը հակառակորդի դեմ հանեց պարսից ամբողջ զորքը։ Նեղանցքների մեջ մեծ թվով խռնված [հռոմայեցիներին] և մյուսներին [պարսիկները] կոտորում էին անխնա, հատկապես էրուլներին, որոնք Նարսեսի հետ միասին առաջինները հարձակվեցին հակառակորդի վրա և մեծ մասամբ կռվում էին առանց պաշտպանական միջոցների. էրուլները չունեն ոչ սաղավարտ, ոչ զրահ, ոչ էլ որևէ այլ պաշտպանական միջոց, այլ միայն վահան և հաստ տրիբոնիոն, որը հագած մարտի են գնում։ Ստրուկ էրուլները մարտի են գնում առանց վահանի և եթե պատերազմում իրենց արդարացնեն, միայն այն ժամանակ նրանց տերերը թույլ են տալիս մարտի ժամանակ պաշտպանվել վահաններով։ Ահա էրուլների մասին այսքան։

Հռոմայեցիները, չկարողանալով դիմադրել թշնամիներին, գլխովին փախուստի դիմեցին, մոռանալով արիության կամ խայտառակության մասին։ Պարսիկները նրանց խայտառակ փախուստի վրա կասկածով էին նայում, նրանք ենթադրում էին, որ հռոմայեցիները ինչ-որ դարան են լարում իրենց դեմ, դրա համար հալածեցին մինչև դժվարանցանելի վայրերի վերջը և ապա ետ վերադարձան՝ չհամարձակվելով հարթ վայրում իրենց փոքրաթիվ ուժերով մարտնչել մեծաքանակ [թշնամու] դեմ։ Հռոմայեցիները, հատկապես բոլոր զորավարները, կարծելով, որ թշնամիները շարունակում են իրենց հալածել, առանց ժամանակ կորցնելու ավելի ու ավելի [արագ] էին փախչում։ Նրանք շտապողականության և խուճապի մեջ դեն շպրտելով զրահներն ու մնացած պենքերը, մտրակով ու աղաղակով ստիպում էին ձիերին արագ վազել։ Նրանք չէին խիզախում դիմադրել մոտեցող պարսիկներին և իրենց փրկության միակ հույսը ձիերի սմբակներն էին համարում։ Մի խոսքով, այնպիսի փախուստ տեղի ունեցավ, որ ձիերից գրեթե ոչ մեկը կենդանի չմնաց, որովհետև երբ վազքը դադարեցրին, նրանք անմիջապես ընկան ու սատկեցին։ Այսպիսի փորձանք հռոմայեցիների գլխին երբևիցե չէր եկել։ Նրանցից շատերը սպանվեցին, մեծ

մասն էլ դերի ընկավ։ Հակառակորդի ձեռքը այնքան մեծ քանակությամբ զենք և դրամ անցավ, որ պարսիկների պետությունը դրանով կարծես ավելի հարստացավ։ Ադոլիոսը այդ նահանջի ժամանակ Պերսարմենիայում գտնվող մի ամրոցի մոտով անցնելիս, նրա բնակիչներից մեկից գլխին քարի հարված ստանալով մահացավ, իսկ Հուստոսն ու Պերանիոսը ներխուժեցին Տարավնոնի[93] բնակավայրերը և նրանցից մի քանիսը ավարի առնելով, անմիջապես վերադարձան։

26. Հաջորդ տարին Կավադի որդի Խոսրովը չորրորդ անգամ ներխուժեց հռոմայեցիների երկիրը՝ Միջագետք[91]։ Խոսրովի այս արշավանքը [այլևս] հռոմայեցիների կայսր Հուստինիանոսի դեմ չէր, ոչ էլ որևէ այլ մահկանացուի, այլ աստուծո, որին քրիստոնյաներն են միայն պաշտում։ Առաջին արշավանքի ժամանակ, երբ նրան չհաջողվեց գրավել Եդեսիան և քրիստոնյաների աստուծո կողմից պարտության մատնված թողեց հեռացավ, շատ էին տրտմել և՛ ինքը, և՛ մոգերը։ Խոսրովը պալատում իրեն մխիթարում էր բոլոր եդեսացիներին ստրկացնելու, պարսից երկիրը գերեվարելու, իսկ քաղաքը ավերակ դարձնելու սպառնալիքով։ Երբ ամբողջ զորքով մոտեցավ Եդեսիային, իրեն հետևող հոներից ոմանց ուղարկեց քաղաքի ձիարշավարանից վերև գտնվող պարսպի մոտ, ոչ թե որևէ վնաս հասցնելու նպատակով, այլ սոսկ հափշտակելու այն ոչխարները, որոնցից շատերին հովիվները՝ վայրի ամրության վրա հույս դնելով (որ շատ ժայռոտ էր), պարսպի տակ էին թողել։ Նրանք կարծում էին, որ թշնամիները չեն համարձակվի պարսպին մոտենալ։ Բարբարոսներն արդեն ձեռք էին գցել ոչխարներին, իսկ հովիվները ուժեղ դիմադրում էին՝ թույլ չտալով հափշտակել։ Հոներին օգնության հասան բազմաթիվ պարսիկներ և բարբարոսներին հաջողվեց այստեղից մի հոտ տանել։ Երբ հռոմայեցի զինվորները և քաղաքի բնակիչներից ոմանք ձեռնամարտի բռնվեցին թշնամու հետ, հոտն ինքնաբերաբար վերադարձավ հովիվների մոտ։ Հոներից մեկը, ով կռվում ՙլր բոլորից առաջ անցած, շատ էր նեղում հռոմայեցիներին։ Գյուղացիներից մեկը պարսատիկի դիպուկ հարվածով վիրավորեց նրա աջ ծունկը։ Նա անմիջապես ձիուց ցած գլորվեց, և դա հռոմայեցիներին ավելի սրտապնդեց։ Առավոտյան սկսած մարտը ավարտվեց կեսօրին մոտ։ Յուրաքանչյուր կողմն էլ իրեն հաղթող համարելով՝ ցրվեց։ Հռոմայեցիները մտան պարսպից ներս, իսկ բարբա-

րոսները ճամբարեցին քաղաքից յոթ ասպարեզ հեռավորության վրա խփված վրանների տակ։

Այն ժամանակ Խոսրովը կամ երազ տեսավ, կամ էլ գլխի ընկավ, որ եթե երկրորդ անգամ ձեռնարկի գրավել Եդեսիան և իրեն այդ չհաջողվի, կխայտառակվի, որոշեց մեծ փրկագին ստանալով քաղաքը թողնել եդեսացիներին ու հեռանալ այնտեղից։ Հաջորդ օրը թարգման Պավլոսը մոտենալով պարսպին, հռոմայեցիներին ասաց, որ պետք է Խոսրովի մոտ մարդ ուղարկեն իրենց մեծամեծներից։ [Հռոմայեցիները] շտապ կարգով իրենց երևելիներից չորս հոգի ընտրեցին և ուղարկեցին։ Երբ վերջիններս ժամանեցին մարերի ճամբարը, արքայի կարգադրությամբ նրանց ընդունեց Զաբերգանեսը։ Սա սպառնալիքների տակ հարցնում էր, ինչն է նրանց համար նախընտրելի, խաղաղությունը, թե պատերազմը։ Երբ նրանք պատասխանեցին, թե գերադասում են խաղաղությունը փորձություններից, Զաբերգանեսն ասաց. «Հետևաբար դուք պետք է խա»ղաղությունը գնեք մեծ դրամով»։ Դեսպանները պատասխանեցին, որ կտան այնքան, ինչքան տվեցին անցյալում, երբ [Խոսրովը] գրավելով Անտիոքը արշավեց իրենց վրա։ Զաբերդանեսը ծիծաղելով նրանց ճանապարհեց, ասելով, որ [իրենց] փրկության մասին լավ մտածելուց հետո նորից իր մոտ գան։ Փոքր անց, երբ նրանք Խոսրովի մոտ էին եկել վերջինիս հրավերով, նա նրանց հիշեցրեց, թե անցյալում ինչպես է ստրկացրել հռոմայեցիների բնակավայրերը, ասաց, որ [պարսից] զորքը կհեռանա միայն այն դեպքում, եթե հանձնեն քաղաքում եղած ամբողջ դրամը, հակառակ դեպքում պարսիկները շատ ավելի մեծ փորձանք կբերեն եդեսացիներին։ Դեսպանները լսելով այդ, Խոսրովին հայտնեցին, թե կգնեին խաղաղությունը, եթե իրենցից նա անհնարինը չպահանջեր։ Ասացին նաև, որ մարտից առաջ դեռ ոչ ոքի պարզ չէ նրա ելքը, որ պատերազմը միշտ չէ որ ունենում է այն վախճանը, ինչ ցանկանում են մարդիկ։ Այն ժամանակ Խոսրովը զայրացած հրամայեց դեսպաններին շտապ հեռանալ։

Պաշարման ութերորդ օրը [Խոսրովը], ցանկանալով քաղաքի պարսպի դեմ մի ձեռակերտ բլուր սարքել, կտրատեց մոտակա վայրերում եղած ծառերը և պարսպից՝ նետի հարվածից հեռու մի վայրում քառակուսի ձևով իրար վրա դիզեց։ Ծառերի վրա նա բավական շատ հող լցրեց, իսկ դրա վրա՝ շինարարության համար ոչ պիտանի, տձև ջարդոտված բազմաթիվ քարեր։ Նրա միակ մտահոգությունն այն էր, որ այդ բլուրը հնարավորին չափ արագ մեծ բարձրության

հասնի։ Նա հողի և քարերի միջև երկար գերաններ դրեց, կապ ստեղ-
ծելու համար, որ [հողաբլուրը] բարձրանալով խախուտ չլինի։ Հռո-
մայեցիների զորավար Պետրոսը (նա Մարտինոսի և Պերանիոսի
հետ այստեղ էր գտնվում), ցանկանալով խանգարել այդ գործը
կատարողներին, իր հոներից ոմանց նրանց դեմ ուղարկեց. սրանք
անակնկալ հարձակվելով, շատերին կոտորեցին. հատկապես աչքի
ընկավ նիզակակիրներից մեկը՝ Արգեկ անունով, որը քսանյոթ հոգի
սպանեց։ Բարբարոսներն այնուհետև ուժեղ պարեկություն սահմա-
նեցին և այլևս անհնարին դարձրին նոր հարձակումը։ Սակայն
շինարարությունը ծավալվելու պատճառով նետերն սկսեցին հաս-
նել նրա կառուցմամբ զբաղված մարդկանց, իսկ հռոմայեցիները
քաջաբար մարտնչելով՝ պարսպից բլրի վրա նետեր էին արձակում
և պարսատիկներից քարերի տարափ տեղում։ Այդ պատճառով բար-
բարոսները մտածեցին հետևյալը։ Նրանք երկար ձողերի վրա ամ-
րացրին նոխազի բրդից պատրաստված բավական հաստ և երկար
վարագույրներ, որոնց կիլիկյան են անվանում, և դրանք կախեցին
ադեստան կառուցողների առջև (այդ կառուցվածքը հռոմայեցիները
լատիներեն անվանում են ագեստա)[92]։ Դրանից հետո ահա [ագես-
տային] չէին հասնում ոչ հրակիր սլաքները, ոչ էլ այլ նետեր՝ բո-
լորը հարվելով այդ վարագույրին, ցած էին թափվում։ Հռոմայեցի-
ները շատ վախեցան և մեծ խուճապով Խոսրովի մոտ դեսպաններ
ուղարկեցին, որոնց մեջ էր նաև երևելի բժիշկ Ստեփանոսը, որը ժա-
մանակին բուժել էր Պերոզի որդի Կավադին, երբ նա հիվանդ էր,
և նրանից դրամական մեծ գումար ստացել։ Նա մյուս [դեսպան-
ների] հետ ներկայանալով Խոսրովին ասաց այսպես. «Դեռևս հին
»ժամանակներից բոլոր մարդիկ մարդասիրությունը համարում են
»բարի թագավորի բնորոշ գիծը։ Հետևաբար, ո՛վ ամենահզոր ար-
»քա, երբ դու սպանություններ ես գործում, մարտեր տալիս, քա-
»ղաքներ ստրկացնում, ճիշտ է, գուցե այլ ածականներ ստանաս,
»բայց ոչ երբեք «բարի» [ածականը]։ Հիրավի, դու բոլոր քաղաք-
»ներից հենց Եդեսիային չպետք է որ ձեռք տայիր։ Որովհետև ես
»ինքս ծագումով եդեսացի եմ, ես, ով ոչինչ չիմանալով ապագայի
»մասին, քեզ սնեցի, քո հորը խորհուրդ տվեցի, որ քեզ դարձնի իշ-
»խանության ժառանգ։ Ես եղա գլխավոր պատճառը, որ դու դառ-
»նաս պարսից արքան, իսկ [իմ] հայրենիքի համար՝ ներկա փորձու-
»թյունների [պատճառ]։ Քանզի մարդիկ իրենց գլխին եկած դժ-
»բախտություններից շատերի ստեղծողը հիմնականում հենց իրենք
»են։ Արդ, եթե [իմ] այդ բարեգործությունից որևէ հիշողություն

»մնացել է քո մեջ, այլևս մեզ վատություն մի արա, թող այդ լինի »ինձ պարգև, որպեսզի, ով արքա, չասվի, որ դու ամենադաժան »[թագավորն] ես»: Ստեփանոսն այսքանն ասաց, իսկ Խոսրովը պնդում էր, որ ինքը չի հեռանա այնտեղից, մինչև որ հռոմայեցիները չհանձնեն իրեն Պետրոսին և Պերանիոսին, որովհետև նրանք իր հայրենական ստրուկները լինելով, համարձակություն ունեցան իր դեմ կռվելու: Եթե հռոմայեցիները համաձայն չեն դրան, թող ընտրեն երկուսից մեկը, կա՛մ հինգ հարյուր կենտինար ոսկի տան, կա՛մ էլ քաղաք ընդունեն [Խոսրովի] մոտիկ մարդկանց, որոնք խուզարկելով [քաղաքում] եղած ամբողջ հարստությունը, ոսկին ու արծաթը կհավաքեն և իրեն կբերեն, իսկ մնացածը կթողնեն իրենց տերերին: Խոսրովն այդպիսի քայլի դիմեց, որովհետև ոչ մի հույս չուներ ուժով գրավել Եդեսիան: Դեսպանները, (որովհետև նրա բոլոր պայմաններն անիրականանալի համարեցին), վերադարձան քաղաք՝ շփոթված և շատ տխուր: Երբ նրանք մտան պարսպից ներս և հայտնեցին Խոսրովի պայմանները, քաղաքը համակվեց խուճապով և ողբով:

Հողաբլուրն հասավ մեծ բարձրության և աշխատանքն արագ թափով առաջ էր շարժվում: Հռոմայեցիները որևէ բան ձեռնարկելու անկարող, դեսպաններին նորից ուղարկեցին Խոսրովի մոտ, որոնք լինելով թշնամիների ճամբարում, ասացին, որ եկել են նույն խնդիրքով. պարսիկներից և ոչ ոք չուզեց նրանց հետ խոսել, այլ հայհոյանքներով և մեծ աղմուկով վռնդեցին և նրանք վերադարձան քաղաք: Սկզբում հռոմայեցիները որոշեցին հողաբլրի դիմաց գտնվող իրենց պարիսպը բարձրացնել, գերազանցելու համար [թշնամիների բլրի] բարձրությանը, բայց երբ պարսկական կառույցը բարձրությամբ անցավ իրենց պարսպից, [հռոմայեցիները] հրաժարվեցին շինարարությունից և համոզեցին Մարտինոսին, որ հաշտության հարցը լուծի իր հայեցողությամբ: Վերջինս գնաց թշնամիների ճամբարը և բանակցությունների մեջ մտավ մի քանի պարսիկ զորահրամանատարների հետ, որոնք սակայն խաբեցին Մարտինոսին, ասելով, որ իրենց արքան խաղաղություն է ցանկանում: Նրանք մեղադրեցին [Մարտինոսին] այն բանում, որ նա չի կարողանում համոզել հռոմայեցիների ինքնակալին՝ թողնել Խոսրովի դեմ ունեցած թշնամությունը և խաղաղություն կնքել. հենց ինքը Բելիսարիոսը, որ և՛ կարողությամբ, և՛ պաշտոնով շատ ավելի բարձր է Մարտինոսից՝ դրա դեմ չի առարկի ինքը [Մարտինոսը]՝ մի քիչ առաջ կարողացավ համոզել պարսից արքային (երբ

վերջինս հասել էր հռոմայեցիների երկրի մեջտեղը), հեռանալ Պարսկաստան, խոստանալով շուտով Բյուզանդիոնից դեսպաններ ուղարկել նրա, Խոսրովի մոտ՝ խաղաղություն հաստատելու համար, սակայն խոստացածի և ոչ մեկը չկատարեց, որովհետև իրեն չհաջողվեց աղդել Հուստինիանոս կայսեր կամքի վրա։

27. Այդ միջոցին հռոմայեցիները ձեռնարկեցին հետևյալը. քաղաքի մեջից գետնափոր արեցին, որը տանում էր դեպի թշնամիների հողաբլուրը և փորողներին հրամայեցին հասնել մինչև հողաբլրի տակ՝ մտադիր լինելով այն հրդեհել։ Գետնափորը հաջող ընթանում էր և երբ հասան բլրի տակ, նրա վրա կանգնած պարսիկները ինչ-որ թրխկոց լսեցին։ Նրանք գլխի ընկան, թե ինչ է կատարվում և իրենց հերթին սկսեցին երկու կողմից փորել դեպի կենտրոնը, նպատակ ունենալով բռնել գործին մասնակից հռոմայեցիներին։ Վերջիններս իմանալով այդ, դադարեցրին աշխատանքը և սկսեցին հող լցնել դատարկված տարածության մեջ, իսկ [թշնամու] հողաբլրի այն ծայրից, որ նայում էր դեպի քաղաքի պարիսպը, հանեցին փայտերը, քարերը, հողը և տնակի նման մի բան սարքեցին։ Այստեղ ահա լցրին դյուրավառ ծառերի չոր ճներ, որոնք թրջված էին եղևնափայտի յուղով, ծծմբով և կուպրով։ Նրանք այսպիսի պատրաստության մեջ էին. պարսից հրամանատարները բազմիցս հանդիպելով Մարտինոսին՝ վերը հիշատակված խնդրի շուրջն էին խոսում, այն տպավորությունը ստեղծելով, որ համաձայն են խաղաղության մասին բանակցություններ վարելու։ Սակայն երբ իրենց հողաբլրի կառուցումն արդեն ավարտվել էր և մոտեցել քաղաքի պարսպին, իսկ բարձրությամբ էլ շատ էր գերազանցել այն, նրանք Մարտինոսին ետ ուղարկեցին՝ բացահայտ խզելով բանակցությունները և որոշելով գործի անցնել։

Այդ պատճառով հռոմայեցիներն անմիջապես կրակի տվեցին իրենց նախապատրաստած ծառերի ճները։ Այրվեց կառույցի մի մասը, բայց ամբողջությամբ կրակի ճարակ չդարձավ այն, որովհետև փայտերը վերջացան։ Դրա համար նրանք առանց ժամանակ կորցնելու անընդհատ փայտեր էին ավելացնում գետնափորի մեջ։ Երբ կրակը հափշտակեց ամբողջ հողաբլուրը, գիշերը բլրի գագաթին ամենուրեք սկսեց ծուխ երևալ։ Հռոմայեցիները, որպեսզի հնարավորություն չտան պարսիկներին հասկանալու, թե ինչ է կատարվում, մտածեցին, հետևյալը. նրանք բոլոր կողմերից անընդհատ հողաբլրի վրա էին նետում ածխով ու կրակով լի կավե փոք-

անոթներ, ինչպես նաև հրակիր նետեր։ Պարսիկները, որոնք հողաբլրի վրա պահակություն էին անում, ամենայն ջանքերով հանգցընում էին այդ՝ հավատացած լինելով, թե ծուխը դրանից է առաջանում։ Երբ կրակը բորբոքվեց, բարբարոսները մեծ բազմությամբ դիմեցին օգնության, իսկ հռոմայեցիները պարսպից հարվածելով նրանց, կոտորեցին շատերին։ Արևածագին Խոսրովն այցելեց այդ տեղը։ Նրան հետևում էր զորքի մեծ մասը։ Բարձրանալով բլրի վրա, նա առաջինը հասկացավ, թե որն է փորձանքի պատճառը։ Նա ասաց, որ ծուխը ներսից է դուրս գալիս և ոչ թե թշնամիների արձակած կրակից առաջանում, ու ամբողջ զորքին հրաման տվեց շտապ օգնության հասնել։ Հռոմայեցիները սրտապնդված սկսեցին հայհոյել նրանց։ Բարբարոսները հող էին գցում և ջուր թափում այնտեղ, որտեղ ծուխ էր երևում, հուսալով փորձանքի առաջն առնել, բայց ամենևին չկարողացան կրակը մարել, որովհետև թեև այնտեղ, որտեղ հող էին թափում, ծուխը դադարում էր, բայց շատ չանցած ուրիշ տեղից էր դուրս գալիս, քանի որ կրակը նրան դուրս էր մղում, իսկ ջուրն էլ ավելի դյուրավառ էր դարձնում կուպրն ու ծծումբը և դրանք իրենց հերթին ավելի համակելով մոտը եղած ցախը, բոցն անընդհատ առաջ էին մղում։ Հողաբլրի վրա ուժեղ կրակը հանգցընելու համար բավարար չափով ջուր բերելու հնարավորություն չկար։ Ուշ երեկոյան ծուխն այնչափ սաստկացավ, որ նույնիսկ կարրեցիներն[93] այն տեսան և նրանցից շատ ավելի հեռու բնակվողները։ Բազմաթիվ պարսիկներ և հռոմայեցիներ բարձրանալով հողաբլրի վրա կռվի բռնվեցին, և հաղթող դուրս եկան հռոմայեցիները։ Այդ ժամանակ բոցը դուրս ժայթքեց հողաբլրից և պարսիկներն այդ գործից հրաժարվեցին։

Դրանից վեց օր հետո, վաղ առավոտյան [պարսիկները], աստիճաններով զինված, մոտեցան պարսպի այն կողմին, որ բերդ էր կոչվում։ Այս մասում պահակ կանգնած հռոմայեցիները, գիշերն արդեն վերջացած համարելով, հանգիստ քնած էին։ [Պարսիկները] առանց աղմուկի աստիճաններր հենեցին պարսպին և արդեն բարձրանում էին։ Հռոմայեցիների մեջ միայն մի գյուղացի էր արթուն, և նա մեծ աղմուկով ու աղաղակով ոտքի հանեց բոլորին։ Տեղի ունեցավ ուժեղ ընդհարում, որի ժամանակ պարսիկներր պարտություն կրեցին և նահանջեցին դեպի ճամբարը՝ տեղում թողնելով աստիճանները, որոնք հռոմայեցիներր վերև քաշեցին։ Խոսրովը կեսօրվա մոտ մի մեծ զորամաս ուղարկեց գրոհելու մեծ դարպաս կոչվածի վրա։ Նրանց դիմադրեցին ոչ միայն հռոմայեցի զինվոր-

ները, այլև գյուղացիներ և քաղաքի բնակիչներից ոմանք և մարտում գլխովին ջախջախելով բարբարոսներին, փախուստի մատնեցին։ Պարսիկներին հալածելու միջոցին Խոսրովի կողմից հռոմայեցիների մոտ եկավ թարգման Պավլոսը և հայտնեց, որ Բյուզանդիոնից խաղաղություն կնքելու համար ժամանել է Հռեկինարիոսը. երկու կողմն էլ ցրվեցին։ Սակայն Հռեկինարիոսն դեռ մի քանի օր առաջ էր ժամանել բարբարոսների ճամբարը, իսկ պարսիկները այդ մասին չէին հայտնել հռոմայեցիներին, սպասելով, թե ինչպիսի ելք կունենա պարսպի գրոհը։ Եթե նրանց հաջողվեր այն գրավել, դա բոլորովին չէր նշանակի, թե իրենք խախտում են հաշտությունը, իսկ պարտվելու դեպքում, որը և տեղի ունեցավ, հռոմայեցիների առաջարկությամբ հաշտություն կկնքեին։ Երբ Հռեկինարիոսը մտավ քաղաք, պարսիկները պահանջեցին, որ խաղաղությունը կնքելու համար լիազորված մարդիկ անհապաղ Խոսրովի մոտ գնան, իսկ հռոմայեցիներն ասացին, թե դեսպաններին կուղարկեն երեք օր հետո, որովհետև զորավար Մարտինոսն այն ժամանակ հիվանդ էր։

Խոսրովը կասկածելով [հռոմայեցիների] տված խոստումին՝ պատրաստվում էր մարտի։ Նա հողաբլրի վրա թափել տվեց մեծաքանակ աղյուսներ, իսկ երկու օր անց գրոհելու նպատակով ամբողջ զորքով շարժվեց դեպի քաղաքի պարիսպը։ Յուրաքանչյուր դարպասի դիմաց նա կանգնեցրեց զորահրամանատարներ՝ իրենց զորամասերով և այդ ձևով ամբողջ պարիսպը շրջապատեց։ Նա միաժամանակ աստիճաններ ու մեքենաներ բերեց։ Իր թիկունքում նա տեղագրեց բոլոր սարակինոսներին, որոշ քանակությամբ պարսիկների հետ միասին, բայց ոչ պարսպի վրա հարձակվելու համար. սրանց պարտականությունը քաղաքի գրավման ժամանակ փախչողներին բռնելն էր։ Ահա այդպիսի ծրագրի համաձայն Խոսրովը դասավորեց զորքը։ Ճակատամարտն սկսվեց վաղ առավոտյան. սկզբում դերակշռությունը պարսիկների կողմն էր, քանի որ նրանք քանակությամբ գերազանցում էին, իսկ հռոմայեցիներից շատերն էլ անգիտակ բոլորովին պատրաստ չէին։ Մարտի ընթացքում քաղաքում սկսվեց խուճապն ու իրարանցումը, և բոլորը, նույնիսկ կանայք և երեխաներ պարսպի վրա էին բարձրանում։ Երիտասարդները զինվորների հետ միասին քաջաբար կռվում էին թշնամիների դեմ, գյուղացիներից շատերը բարբարոսների դեմ կռվելիս մեծ քաջագործություններ էին ցուցաբերում։ Երեխաներն ու կանայք ծերերի հետ միասին քարեր էին մատակարարում կռվողներին և այլ օգնություն ցույց տալիս։ Ուրիշները կաթսաների մեջ ձեթ լցնելով և

երկար ժամանակ պարսպի ամբողջ երկարությամբ կրակի վրա եռացնելուց հետո անոթների միջից թափում էին թշնամիների գլխին և մեծ վնաս հասցնում հատկապես պարսպին մոտեցողներին։ Պարսիկներն արդեն հուսալքված, դեն էին շպրտում զենքերը. դիմելով արքային նրանք ասացին, որ ի վիճակի չեն այլևս դիմանալ դժվարություններին։ Խոսրովն անչափ զայրացած, սպառնալիքների տակ բոլորին տարավ թշնամու դեմ։ Նրանք մեծ աղմուկով ու դոչյունով մոտեցրին աշտարակները և այլ մեքենաներ, հենեցին աստիճաններ՝ քաղաքը մեկ հարվածով գրավելու համար։ Հռոմայեցիներն անընդհատ նետահար էին սնում նրանց և ամբողջ ուժով պաշտպանվում։ Բարբարոսները գլխովին փախուստի էին մատնըվում։ Երբ Խոսրովը նահանջում էր, հռոմայեցիները ծաղրեցին նրան, հրավիրելով գրոհի։ Միայն Ազարեթեսը իր մարդկանց հետ դեռ կռվում էր Սոյինե կոչված դարպասի տակ[94]. այդ վայրը կոչվում էր Տրիպյուրգիա[95]։ Այդտեղ հռոմայեցիները նրանց հավասարազոր չէին և չկարողանալով դիմանալ հարձակումներին նահանջել էին։ Բարբարոսները բազմաթիվ տեղերից արդեն մուտք էին գործել նախապարիսպ կոչված արտաքին պարսպից ներս և ուժեղ ճնշում էին գործ դնում մեծ պարիսպը պաշտպանողների վրա, մինչև որ Պերանիոսը բազմաթիվ զինվորներով և եդեսացիներից ոմանց հետ դուրս եկավ մարտի և հաղթելով նրանց՝ ետ մղեց։ Առավոտյան սկսած գրոհը վերջացավ ուշ երեկոյան, և երկու կողմն էլ այդ գիշեր հանգիստ մնացին, պարսիկները մտահոգված լինելով խրամատների և իրենց կյանքի համար, իսկ հռոմայեցիները զբաղված լինելով պարսպի ատամնաշարի վրա քարեր կուտակելու գործով. Նրանք ամեն ինչի պատրաստություն էին տեսնում, որովհետև ենթադրում էին, որ հաջորդ օրը կռվելու են պարսպի վրա գրոհող թշնամիների դեմ։ Բայց հաջորդ օրը բարբարոսներից և ոչ ոք չմոտեցավ պարսպին։ Դրանից էլ մեկ օր անց Խոսրովի հրամանով մի զորամաս հարձակվեց Բարլաոսի[96] կոչված դարպասների վրա, բայց հանդիպելով հռոմայեցիների դիմադրությանը և մարտում մեծ պարտություն կրելով, շուտով վերադարձավ ճամբարը։ Այն ժամանակ պարսից թարգման Պավլոսը եկավ պարսպի մոտ և դիմեց Մարտինոսին՝ բանակցությունների հարցով։ Մարտինոսը բանակցեց պարսից ղեկավարների հետ, ընդ որում Խոսրովը եդեսացիներից ստացավ հինգ կենտինար [ոսկի], տվեց գրավոր վստահեցում, որ նա այլևս չի թալանի հռոմայեցիների երկիրը, և [իր] ճամբարի բոլոր

ամրությունները կրակի տալով, ամբողջ զորքով շարժվեց իր երկիրը։

28. Այս միջոցին վախճանվեցին երկու հռոմայեցի զորավարներ, կայսեր եղբորորդի Հուստոսը և իբերացի Պերանիոսը. Հուստոսը՝ հիվանդությունից, իսկ Պերանիոսը որսի ժամանակ վայր ընկավ ձիուց և ջարդվեց։ Նրանց փոխարեն կայսրը նշանակեց իր քրոջորդի Մարկելլոսին, որի աղվամազը դեռ նոր էր բուսնում և Կոստանդիանոսին, որը մի փոքր առաջ Սերգիոսի հետ միասին դեսպանության էր ուղարկվել Խոսրովի մոտ։ Հուստինիանոս կայսրն այնուհետև Խոսրովի մոտ հաշտություն կնքելու համար որպես դեսպան ուղարկեց Կոստանդիանոսին և Սերգիոսին։ Վերջիններս հանդիպեցին [Խոսրովին] Ասորեստանում, որտեղ գտնվում են երկու քաղաք՝ Սելևկիան և Կտեսիֆոնը, կառուցված մակեդոնացիների կողմից, երբ վերջիններս, Փիլիպպոսի որդի Ալեքսանդրից հետո տիրել էին պարսից և Պարսկաստանում ապրող մյուս ժողովուրդների վրա։ Այդ երկու [քաղաքների] միջով հոսում է Տիգրիս գետը։ Նրանց մեջտեղում ուրիշ տարածություն չկա։ Դեսպաններնահա Խոսրովին այստեղ հանդիպելով, պահանջում էին հռոմայեցիներին վերադարձնել Լազիկայի շրջանները և նրանց հետ կայուն խաղաղություն կնքել։ Խոսրովը պատասխանեց, որ հաշտություն կնքելը հեշտ դործ չէ, նախապես անհրաժեշտ է զինադադար կնքել, որից հետո առանց վախի իրար հետ բանակցությունների մեջ մտնելով՝ լուծեն վիճելի հարցերը և կայուն խաղաղություն հաստատեն։ Նա պահանջեց, որ հռոմայեցիների ինքնակալը զինադադարի համար իրեն դրամ վճարի, ուղարկի Տրիբունոս անունով ինչ-որ մի բժշկի[97], որպեսզի նա որոշ ժամանակ իր մոտ մնա։ Այս բժիշկը նրան անցյալում բուժել էր ծանր հիվանդությունից, դրա համար էլ շատ սիրելի և ցանկալի էր։ Երբ այդ մասին իմացավ Հուստինիանոս կայսրը, ուղարկեց և՛ Տրիբունոսին, և՛ դրամը, որ կազմում էր քսան կենտինար [ոսկի]։ Այսպիսով հռոմայեցիների և պարսիկների միջև հինգ տարով հաշտություն կնքվեց Հուստինիանոս կայսեր ինքնակալության տասնևիններորդ տարում[98]։

Որոշ ժամանակ անց սարակինոսների առաջնորդներ Արեթասի և Ալամունդարոսի միջև պատերազմ ծագեց, որին չմիջամտեցին ո՛չ հռոմայեցիները և ո՛չ էլ պարսիկները։ Ալամունդարոսը արշավանքի ժամանակ դերի վերցրեց Արեթասի որդիներից մեկին, որ ձիեր էր արածացնում և իսկույն զոհաբերեց Աֆրոդիտեին[99]։ Դրանից պարզ

դարձավ, որ Արեթասը չի դավաճանել հռոմայեցիներին՝ հօգուտ պարսիկների[100]: Այնուհետև երկուսն էլ ամբողջ զորքով հանդիպում են իրար. Արեթասի մարդիկ կատարյալ հաղթանակ են տանում, փախուստի մատնում թշնամիներին և շատերին կոտորում: Քիչ էր մնացել, որ Արեթասը գերի վերցներ Ալամունդարոսի երկու որդիներին, բայց այդ չհաջողվեց: Սարակինոսների գործերն ահա այս վիճակումն էին:

Այնուհետև պարզ դարձավ, որ պարսից արքա Խոսրովը հռոմայեցիների հետ զինադադար կնքեց չար մտադրությամբ, որպեսզի երբ [հռոմայեցիները] խաղաղության շնորհիվ անհոգ վիճակում լինեն, ինքը նորից ինչ-որ սարսափելի մի գործ կատարի: Նա զինադադարի երրորդ տարին նյութում է հետևյալը: Պարսիկների մեջ շատ բարձր իշխանությամբ օժտված երկու եղբայրներ կային, ամենանենգ Ֆաբրիզոսն ու Իսդիգուսնասը[101], հռչակված իրենց անչափ դաժանությամբ և անբարոյականությամբ: [Խոսրովը] մտադիր էր հարձակվել և գրավել Դարա քաղաքը, Լազիկայից տեղահանել բոլոր կոլխերին, նրանց տեղը պարսիկներին բնակեցնելու համար: Ահա այդ մարդկանց նա ուղարկեց գործը հաջողացնելու: Կոլխիս երկրի գրավումը կարևոր էր համարվում, և նրան հաստատ տիրելը՝ պարսից պետության համար շատ ձեռնտու, որովհետև դրանով Իբերիան ևս ապահով վիճակում կլիներ, քանի որ իբերներն այլևս ապստամբություն չէին բարձրացնի՝ տեսնելով, որ ոչ ոք չկա, որոնց կարող են դիմել: Այն ժամանակից, երբ բարբարոսների մեծամեծները թագավոր Գուրգենի հետ միասին որոշեցին ապստամբություն բարձրացնել, ինչպես ես վերևում պատմեցի[102], պարսիկները թույլ չէին տալիս, որ իրենց թագավոր կարգեն: Իբերները ակամա էին հպատակվում պարսիկներին և նրանց միջև միշտ կասկած և անվստահություն կար: Պարզ էր, որ իբերները շատ դժգոհ էին և առիթը ներկայացած դեպքում պատրաստ էին ապստամբություն բարձրացնելու: [Կոլխիսին տիրելը] ձեռնտու էր նաև այն պատճառով, որ Լազիկայի հարևան հոների կողմից այլևս պարսից երկիրը ավարի առնելու վտանգ չէր լինի, ավելի հեշտ ու դյուրին կլիներ նրանց ուղղել հռոմայեցիների երկրի վրա, երբ ցանկանար այդ [Խոսրովը]: Կովկասում ապրող բարբարոսների դեմ Լազիկան ոչ այլ ինչ է, քան պատվար: Նա հուսով էր, որ պարսիկների համար Լազիկային տիրապետելու ամենամեծ օգուտը կլինի այն, որ այդ երկիրը դարձնելով հենակետ, առանց որևէ դժվարության, և՛ ցամաքով, և՛ ծովով կկարողանա հարձակումներ գործել Եվքսինյան

կոչված Պոնտոսի ափերին գտնվող շրջանների վրա։ Նա կարող է իրեն ենթարկել կասլագովկացիներին, նրանց անմիջական հարևան գալատներին ու բյութանացիներին և արշավանք գործելով, առանց դիմադրության գրավել Բյուզանդիոնը։ Ահա այս բոլորի համար էր, որ Խոսրովը ուղում էր տիրանալ Լազիկային. հույս դնել լազերի վրա նա ոչ մի դեպքում չէր կարող, քանի որ հռոմայեցիները Լազիկայից հեռանալուց հետո, լազերի մեծամասնությունը դժվարությամբ էր տանում պարսից տիրապետությունը։ Պարսիկները յուրահատուկ ժողովուրդ են, ունեն շատ դաժան ապրելակերպ և իրենց սովորությունները դժվարամատչելի են բոլորի համար էլ, նրանց հրամանները միանգամայն անտանելի են։ Հատկապես լազերի մոտ և՛ մտածելակերպի, և՛ ապրելակերպի տարբերությունը շատ է զգացվում, որովհետև լազերն ամենահավատացյալ քրիստոնյաներն են, իսկ պարսիկները հավատքի հարցում լրիվ հակառակ են նրանց։ Այդ բոլորից բացի Լազիկայում չի լինում ոչ աղ, ոչ հացահատիկ, ոչ գինի, այնտեղ չեն աճում ուրիշ պիտանի բույսեր։ Այդ բոլորը նրանք ստանում են ծովային ճանապարհով՝ հռոմայեցիներից, փոխարենը չեն վճարում ոսկի, այլ տալիս են մորթիներ, ըստրուկներ և այլն, ինչ որ այստեղ առատ է։ Ահա այժմ զրկված լինելով այդ բոլորից, նրանք պարզ է դժգոհ էին։ Խոսրովը զգալով այդ, փութաց նրանց ապստամբության առաջն առնել։ Նրա կարծիքով ամենից ձեռնտուն լազերի թագավոր Գուբազեսին հնարավորին չափ շուտ մեջտեղից վերացնելն էր, ապա լազերին ամբողջությամբ տեղահանելը, և այդ երկրում պարսիկներ և տարբեր ցեղեր բնակեցնելը։

Ահա այդ մտադրությամբ Խոսրովը դեսպանության պատրվակով Բյուզանդիոն է ուղարկում Իսդիգուսնասին ու նրա հետ միասին նաև հինգ հարյուր ընտրյալ պարսիկ՝ կարգադրելով մտնել Դարա քաղաքը, օթևանել բազմաթիվ տներում և գիշերը բոլորը կրակի տալ։ Երբ հռոմայեցիները զբաղված կլինեն կրակը հանգցնելով, նրանք անմիջապես պետք է բացեն դարպասները և քաղաք թողնեն պարսկական մնացած զորաբանակը. Նախապես նա կարգադրել էր Նիսիբիսի հրամանատարին զինվորների մի մեծ խումբ գաղտնի պահել պատրաստ վիճակում՝ [Դարային] մոտ տեղում։ Խոսրովը մտածում էր, որ այս ճանապարհով իրեն կհաջողվի առանց որևէ դժվարության բոլոր հռոմայեցիներին կոտորել և գրավել քաղաքը։ Բայց մի հռոմայեցի, որ քիչ առաջ փախել էր պարսիկների կողմը, այդ բոլորին քաջատեղյակ, ամեն ինչ պատմում է Գեորգիոսին, որն այն

ժամանակ այստեղ էր գտնվում. ես նախապես պատմել եմ[103], թե ինչպես սրա խորհրդով Սիսավրանոն ամրոցում պաշարված պարսիկները հանձնվեցին հռոմայեցիներին։ Ահա Գեորգիոսը հռոմեա-պարսկական սահմանի վրա հանդիպելով այդ դեսպանին ասաց, որ նրա առաքելությունը դեսպանության նման չէ, և որ ոչ մի դեպքում հնարավոր չէ, որ հռոմեական քաղաքում օթևանեն այսպիսի մեծ քանակությամբ պարսիկներ։ Անհրաժեշտ է որ նա Դարա մտնի մարդկանց փոքրաթիվ խմբով, իսկ մնացած բոլորը թող մնան Ամմոդիոս վայրում։ Իսդիգուսնասը ձևացրեց, որ զայրացել ու վրդովվել է, որ իրեն անարդարացի վիրավորել են. չէ՞ որ ինքը դեսպանության է գնում հռոմայեցիների կայսեր մոտ։ Գեորգիոսը ուշադրություն չդարձնելով նրա կատաղության վրա, հռոմայեցիների համար փրկեց քաղաքը, որովհետև նա Իսդիգուսնասին թողեց քաղաք մտնի միայն քսան մարդով։

Ահա այս բարբարոսն իր նպատակների ձախողումից հետո, որպես դեսպան եկավ Բյուզանդիոն, հետը բերելով իր կնոջը և երկու դուստրերին (սա իր հետ գնացող բազմության քողարկումն էր) և անձնապես հանդիպելով կայսեր, հրատապ հարցերի շուրջ ոչ մի լուրջ բան չկարողացավ ասել, թեև հռոմայեցիների երկրում տաս ամսից ավելի մնաց։ Նա, սովորության համաձայն, կայսեր տվեց Խոսրովի նվերներն ու նամակը, որով Խոսրովը խնդրում էր Հուստինիանոս կայսրից իմանալ նրա քաջառողջության մասին։ Հուստինիանոս կայսրը Իսդիգուսնասին բոլոր դեսպաններից շատ ավելի բարեկամաբար ընդունեց և ամենից շատ պատվեց։ Նա ճաշի ժամանակ բազմոցի վրա էր նստեցնում նույնիսկ նրա թարգման Բրադուկիոսին[104], մի բան, որ երբևիցե տեղի չէր ունեցել. ոչ ոք չէր տեսել, որ թարգմանը սեղանակից լինի նույնիսկ ավելի ցածրաստիճան իշխանավորի, էլ չեմ ասում կայսեր։ Նա նրան փառահեղ կերպով ընդունեց և ճամփու դրեց, ավելի լավ, քան ընդունված է մի դեսպանի համար, թեև նրա դեսպանությունից, ինչպես ասացի, ոչ մի արդյունք չստացվեց։ Եթե մեկը հաշվեր այն ծախսը, որ կատարվեց Իսդիգուսնասի վրա, և այն նվերները, որ ստացավ ու իր հետ տարավ, ապա նա տաս կենտինար ոսկուց ավելի կգնահատեր այդ։ Խոսրովի՝ Դարայի դեմ ձեռնարկած ոտնձգությունները ահա այսպիսի վախճան ունեցան։

29. [Խոսրովը] նախ և առաջ մեծ քանակությամբ նավաշինարարության համար պիտանի փայտ ուղարկեց Լազիկա, ոչ ոքի

չհայտնելով, թե ինչ նպատակի է ծառայելու այն։ Նա ձևացրեց, որ Պետրայի պարսպի համար մեքենաներ կառուցելու նպատակով է ուղարկում։ Ապա ընտրեց երեք հարյուր ռազմունակ պարսիկներ, քիչ առաջ իմ կողմից հիշատակված Ֆաբրիզոսի գլխավորությամբ և նույն տեղն ուղարկեց։ Նա [Ֆաբրիզոսին] հանձնարարեց, որ գաղտնի սպանի Գուբազեսին, իսկ թե այնուհետև ինչ պետք է կատարել, դա արդեն իրեն [Խոսրովին] է վերաբերում։ Փայտը հենց որ տեղափոխվեց Լազիկա, անմիջապես կայծակնահար լինելով մոխրի վերածվեց։ Իսկ Ֆաբրիզոսը երեք հարյուր մարդկանց հետ գալով Լազիկա, աշխատում էր ի կատար ածել Խոսրովի հրամանը՝ Գուբազեսի վերաբերյալ։ Այն ժամանակ կոլխիդացիների մեծամեծներից մեկը՝ Ֆարսանսես[105] անունով, ընդհարվել էր Գուբազեսի հետ և վերջինս նրա հանդեպ մեծ թշնամություն էր տածում, որի համար [Ֆարսանսեսը] չէր համարձակվում թագավորի աչքին երևալ։ Երբ Ֆաբրիզոսն այդ իմացավ, իր մոտ հրավիրեց Ֆարսանսեսին, խորհրդակցեց նրա հետ, հայտնեց իր մտադրությունները և հարցրեց, թե ինչպես կարող են իրագործել իրենց ծրագիրը։ Խորհրդակցելուց հետո որոշեցին, որ Ֆաբրիզոսը գնա Պետրա քաղաքը և այնտեղ հրավիրի Գուբազեսին, իբր թե հայտնելու լազերի օգտին արքայի ընդունած որոշումը։ Սակայն Ֆարսանսեսը գաղտնի կերպով Գուբազեսին հայտնեց կատարվելիքի մասին։ Դրա համար Գուբազեսը Ֆաբրիզոսի մոտ չգնաց և որոշեց բացահայտ ապստամբություն բարձրացնել։ Ֆաբրիզոսը հրամայեց, որ մնացած պարսիկներն ամբողջ ուժով հոգ տանեն Պետրա ամրոցի պաշտպանության մասին և կատարելապես պատրաստվեն պաշարման, իսկ ինքն այն երեք հարյուր մարդկանց հետ ձեռնունայն վերադարձավ հայրենիք։ Գուբազեսը իրադրության մասին հայտնեց Հուստինիանոս կայսեր և խնդրեց նրանից ներողամիտ լինել անցյալում լազերի կատարածի համար և օգնել իրենց հնարավոր ուժով՝ մարերի գերիշխանությունից ազատվելու, քանզի կոլխերն ի վիճակի չեն միայնակ դիմադրել պարսից զինված ուժերին։

Հուստինիանոս կայսրը լսելով այդ, շատ ուրախացավ և լազերին օգնության ուղարկեց յոթ հազար մարդ՝ Դագիսթայոսի գլխավորությամբ, ինչպես և հազար հոգի ճաներ։ Նրանք մտնելով Կոլխիս երկիրը[106] լազերի և Գուբազեսի հետ միասին ճամբարեցին Պետրայի պարսպի շուրջը և անցան պաշարման։ Այստեղ եղած պարսիկները պարսպից համառ դիմադրություն էին ցույց տալիս, դրա համար էլ երկար ժամանակ վատնվեց պաշարման ընթացքում,

որովհետև պարսիկները մեծ քանակությամբ պարեն էին ամբարել։ Խոսրովն այդ մասին իմանալով, մեծ տագնապի մեջ ընկավ և նրանց դեմ ուղարկեց հեծյալներից և հետևակից բաղկացած մի մեծ զորաբանակ՝ Մերմերոեսի գլխավորությամբ։ Գուբազեսը տեղեկանալով այդ մասին, տեղյակ պահեց նաև Դագիսթայոսին։

Բոաս գետը[107] Ճանիքի սահմանների մոտից հոսում է Հայաստան՝ հայերով բնակեցված Ֆարանգիոնը։ Սկզբում նա հոսում է մեծ մասամբ դեպի աջ և լինելով ծանծաղ, առանց դժվարության անցանելի է, մինչև այն վայրը, ուր աջ կողմում գտնվում են Իբերիայի սահմանները, իսկ դիմացը վերջանում է Կովկաս լեռը։ Այստեղ ապրում են բազմաթիվ ժողովուրդներ, ալաններ, աբազգներ, որոնք դեռ հնուց բարեկամական հարաբերությունների մեջ են քրիստոնյաների և հռոմայեցիների հետ, զեխերը[108], նրանցից հետո հոները, որոնք սաբեյրներ են կոչվում։ Երբ գետը հասնում է այնտեղ, ուր գտնվում են Կովկասի և Իբերիայի սահմանները, այստեղ [Բոասին] են խառնվում բազմաթիվ գետակներ, որի պատճառով գետն անչափ հորդառատ է դառնում և Բոասի փոխարեն նա այստեղից արդեն կոչվում է Ֆասիս, որը նավարկելի է մինչև Եվքսինյան կոչվող Պոնտոսը, ուր և նա թափվում է։ Գետի երկու կողմն էլ Լազիկան է։ Աջ կողմում ամբողջ երկիրը մինչև Իբերիայի սահմանները հիմնականում խիտ է բնակեցված՝ տեղական ժողովրդի կողմից։ Լազերի բոլոր գյուղերը գետի հենց այս կողմում են գտնվում։ Այստեղ կան նաև հինավուրց քաղաքներ, այդ թվում շատ ամուր Արխայոպոլիսը[109]։ Այստեղ է գտնվում նաև Սեբաստոպոլիսը[110], Պիտիուս[111] ամրոցը, իսկ Իբերիայի սահմանների վրա՝ Սկանդան[112] և Սարապանիսը[113]։ Այստեղ են նաև նշանավոր քաղաքներ Հոդոպոլիսը[114] և Մոխորեսիսը[115]։ Գետի ձախ կողմում տարածվող Լազիկան լավ քայլողի համար մեկ օրվա ճանապարհ է, սակայն այս մասն անմարդաբնակ է։ Նշված երկրի հարևանությամբ ապրում են Պոնտական կոչված հռոմայեցիները։ Լազիկայի այս մասում, որը բոլորովին անմարդաբնակ է, Հուստինիանոս կայսրը իմ ժամանակներում կառուցեց Պետրա քաղաքը։ Հենց այստեղ էր, որ Հովհաննեսը, Ցիվոս մականվանյալը, հաստատեց մոնոպոլիոնը, որի մասին ես վերևում խոսեցի[116] և պատճառ դարձավ լազերի ապստամբության։ Պետրայից հարավ գտնվում են հռոմեական սահմանները։ Այստեղ կան մարդաշատ շրջաններ՝ Հռիզայոն կոչվածը[117], Աթենքը[118] և բազմաթիվ ուրիշներ՝ մինչև Տրապիզոն։ Երբ լազերը Խոսրովին առաջնորդեցին Պետրա, ապա չկամենալով պարսիկներին ցույց տալ

իրենց բնակատեղիները, նրանց անցկացրին Բոաս գետով, Ֆասիսն ունենալով իրենց աջ կողմում։ Նրանք իբր թե մտահոգված էին այն բանով, որ ժամանակ չկորցնեն [և ավելորդ] ջանք չգործադրեն անցնելով Ֆասիս գետը, թեև Լազիկան ամենուրեք և Ֆասիս գետի այս ու այն կողմից էլ՝ դժվարանցանելի է։ Երկրի երկու կողմում էլ բարձրաբերձ ժայռեր են, որոնք այստեղ կազմում են երկար կիրճեր։ Այսպիսի անցումները հռոմայեցիները հունարեն լեզվով անվանում են կլեյսուրներ։ Բայց այն պատճառով, որ նշված ժամանակ Լազիկան անպաշտպան էր, պարսիկները լազերի ուղեկցությամբ հեշտությամբ հասան Պետրա։

Արդ, Գուբազեսը, իմանալով պարսից հարձակման մասին, դիմեց Դադիսթայոսին, որ նա իր մարդկանց ուղարկի պաշտպանելու Ֆասիս գետից այն կողմ գտնվող լեռնանցքը և ոչ մի դեպքում չվերացնի Պետրայի պաշարումը, մինչև որ չգրավեն այն և պարսիկներին չգերեն։ Իսկ [Գուբազեսը] կոլխերի ամբողջ զորքով գնաց Լազիկայի սահմանները, այնտեղի լեռնանցքը մինչև վերջ պաշտպանելու համար։ Նա մի փոքր առաջ ալանների և սաբեյրների հետ դաշինք էր կնքել, որի համաձայն երեք կենտինար [ոսկու] դիմաց նրանք նախ պետք է Լազիկա երկրին ձեռք չտային, իսկ երկրորդ՝ պետք է Իբերիան այնպես մարդաթափ անեին, որ պարսիկներն այլևս չկարողանային այստեղ անցնել։ Գուբազեսը նրանց խոստացավ, որ դրամական այդ գումարը կտա կայսրը։ Նա Հուստինիանոս կայսեր հայտնեց իր կնքած համաձայնության մասին և խնդրեց բարբարոսներին ուղարկել դրամական այդ գումարը և անմխիթար վիճակում գտնվող լազերին մի փոքր շնչելու հնարավորություն տա։ Նա միաժամանակ հիշեցնում էր, որ [հռոմեական] պետությունը իրեն պարտք է տաս տարվա ռոճիկ, որովհետև ինքը պալատում սիլենտիարիոսի պաշտոնն ուներ, և երբ Խոսրովը ոտք դրեց Կոլխիս, հեռացավ ոչինչ չստացած։ Հուստինիանոս կայսրը մտադիր էր բավարարել այս խնդիրքը, բայց ինչ-որ մի գործով զբաղված լինելով, որոշված ժամանակին չուղարկեց դրամը։ Ահա Գուբազեսի դրությունն այսպիսին էր։

Իսկ Դագիսթայոսը (նա դեռ երիտասարդ էր և միանգամայն անընդունակ մարերի դեմ պատերազմելու) իրադրության համեմատ ձեռներեցություն չցուցաբերեց։ Նա, անկասկած, պարտավոր էր զորքի մեծ մասն ուղարկել լեռնանցքը ու ինքը ևս շտապ կարգով գործին ձեռնամուխ լիներ։ Սակայն նա կարծես ինչ-որ երկրորդական գործ համարելով այդ, ընդամենը հարյուր մարդ ուղարկեց։

Իսկ ինքն ամբողջ զորքով Պետրան էր պաշարում, բայց ոչ մի հաջողության չէր հասնում, թեև թշնամիները փոքրաթիվ էին։ Նրանք սկզբում հազար հինգ հարյուր հոգուց պակաս չէին, սակայն երկար ժամանակ հռոմայեցիներից և լազերից պաշարված լինելով և հարվածներ ստանալով, թեպետ կռվում էին չտեսնված քաջությամբ, այնուամենայնիվ նրանցից շատերը սպանվեցին և շատ քչերը կենդանի մնացին։ Պարսիկները, ընկնելով հուսահատության և դժվարին դրության մեջ, տեղից չէին շարժվում, իսկ հռոմայեցիները պարսպի մոտից փոքր տարածության վրա ստորգետնյա անցք փորեցին, որի վրա կանգնած պարիսպն անմիջապես փուլ եկավ։ Սակայն այս վայրի ներսում հենց պարսպին կպած մի շենք կար, որը ծածկում էր փուլ եկած պարսպի ամբողջ տարածությունը և պաշարվածների համար ոչ պակաս ապահով պատվար դարձավ։ Սակայն դա հռոմայեցիներին բոլորովին չվհատեցրեց։ Համոզված լինելով, որ պարսպի մի այլ վայրում նույնը գործելով իրենց հնարավոր կդառնա գրավել քաղաքը, նրանք առավել ևս հուսադրվեցին։ Այդ մասին Դագիսթայոսը հայտնեց կայսեր և խնդրեց նրան հաղթանակի համար իրեն պարգևատրում պատրաստի, միաժամանակ նշելով իրեն և իր եղբոր պարգևելիք գումարի չափը, որովհետև շուտով ինքը գրավելու էր Պետրան։ Պարսիկները, թեև շատ քչերն էին [ողջ] մնացել, անհավատալի կերպով դիմադրում էին հռոմայեցիների և ճաների ուժեղ գրոհներին։ Երբ հռոմայեցիների գրոհները ոչ մի արդյունք չտվեցին, նրանք նորից փորձեցին ստորգետնյա անցք փորել և այնքան փորեցին, որ արդեն երևում էին պարսպի հիմքերը, որոնք այլևս գետնի վրա չէին, այլ մեծամասամբ օդում էին կախված և պարիսպը պատրաստ էր անմիջապես փլվելու։ Եվ եթե Դագիսթայոսը անմիջապես հիմքերը կրակի տար, ինձ թվում է, որ նա իսկույն կգրավեր նրանց քաղաքը։ Բայց նա սպասելով կայսրից ակնկալածը, ժամանակ էր վատնում և անգործ մնում։ Հռոմայեցիների ճամբարում ահա գործերն այդ վիճակում էին։

30. Այդ միջոցին Մերմերոեսը մարերի ամբողջ զորքով անցնելով Իբերիայի սահմանները, առաջ էր շարժվում՝ իր աջ կողմում ունենալով Ֆասիս գետը։ Նա բոլորովին չէր ուզում Լազիկայի բնակավայրերի միջով գնալ, որպեսզի այնտեղ որևէ արգելքի չհանդիպի։ Նա շտապում էր փրկել Պետրա քաղաքը և այնտեղ գտնվող պարսիկներին։ Պարսպի մի մասը հանկարծակի արդեն փուլ էր եկել, որովհետև ինչպես ես ասացի, այն օդում էր կախված։ Հռո-

մեակյան զորքից հիսուն հոգի կամավոր կերպով մտան քաղաք և բարեհաղթ էին հայտարարում Հուստինիանոս կայսեր։ Նրանց գըլխավորում էր հայկական ծագում ունեցող մի երիտասարդ, անունը Հովհաննես՝ Թովմայի որդին, Գուզես մականունով[119]։ Հիշյալ Թովման կայսեր կարգադրությամբ Լազիկայում բազմաթիվ ամրություններ էր կառուցել և գլխավորել այնտեղի զորքը։ Կայսրը նրան խոհեմ մարդ էր համարում։ Ահա Հովհաննեսը պարսիկների հետ կռվի բռնվելով, վիրավորվեց և անմիջապես իր մարդկանց հետ շարժվեց դեպի ճամբարը, որովհետև իրեն օգնության չեկավ հռոմեական զինվորներից և ոչ մեկը, իսկ մի պարսիկ Միրրանես անունով, որը Պետրայի կայազորի պետն էր, քաղաքի բախտի մասին երկյուղելով, կարգադրեց բոլոր պարսիկներին համառ կերպով պաշտպանվել, իսկ ինքը գնալով Դադիսթայոսի մոտ դիմեց նրան սիրալիր և խաբուսիկ խոսքերով՝ խոստանալով առանց դիմադրության շուտով հանձնել քաղաքը։ Նրան այդ ձևով հաջողվեց ձգձգել հռոմեական զորքերի անմիջական մուտքը քաղաք։

Երբ Մերմերոեսը իր զորքերով հասավ լեռնանցքը, նրանց քաջաբար դիմադրեց այնտեղ գտնվող հարյուր հոգուց բաղկացած հռոմեական պահակազորը, որը ետ էր մղում նրանց, ովքեր փորձում էին անցնել։ Սակայն պարսիկները չէին նահանջում, նրանց սպանվածներին անընդհատ փոխարինում էին նոր ուժեր, և առաջ շարժվում, ամբողջ ուժով ճնշում գործելով լեռնանցքը [պահպանողների] վրա։ Պարսիկներից սպանվեցին ավելի քան հազար հոգի. հռոմայեցիներն ուժասպառ եղան՝ կոտորելով թշնամուն, բայց հակառակորդի [գերազանց] ուժերի ճնշման տակ նահանջեցին և փրկվեցին շրջակա բարձունքներում։ Այդ մասին իմանալով Դագիսթայոսը, անմիջապես վերացրեց պաշարումը և առանց զորքին որևէ կարգադրություն անելու, արշավեց դեպի Ֆասիս գետը։ Նրան էին հետևում բոլոր հռոմայեցիները, ճամբարում թողնելով իրենց ամբողջ ունեցվածքը։ Պարսիկները տեսնելով կատարվածը, բացեցին դարպասները և դուրս գալով շարժվեցին դեպի թշնամու վրանները՝ նպատակ ունենալով կողոպտել ճամբարը։ Սակայն ճաները (սրանք չհետևեցին Դագիսթայոսին) շտապեցին փրկելու [ճամբարը] և առանց դժվարության փախուստի մատնեցին թշնամիներին ու շատերին կոտորեցին։ Պարսիկները փախչելով մտան պարսպից ներս, իսկ ճաներն ավարի տալով հռոմայեցիների ճամբարը, անմիջապես շարժվեցին դեպի Հռիզայոն։ Այնտեղից նրանք հասան Աթենք[120] և Տրապիզոնի վրայով վերադարձան իրենց երկիրը։

Մերմերոեսը և մարերի զորքը տեղ հասան Դագիսթայոսի հեռանալուց ինն օր հետո։ Նրանք այնտեղ գտան պարսից կայազորից ողջ մնացած երեք հարյուր հիսուն վիրավորների և շարքից դուրս եկածների, ինչպես և ընդամենը հարյուր հիսուն հոգի ռազմունակ զինվորների։ Մնացածները սպանվել էին, բայց կենդանի մնացածները սրանց դիակները պարսպից դուրս չէին նետել, այլ [թողել էին տեղում] և զարմանալի կերպով դիմանում էին խեղդող գարշահոտությանը։ Նրանք դիմել էին այդ քայլին, որովհետև չէին ուզում թշնամիներին ցույց տալ իրենց մեծ կորուստները, որպեսզի նրանց պաշարումը շարունակելու ցանկություն չներշնչեին։ Մերմերոեսը այպանեց և լացի ու ողբի արժանի համարեց հռոմայեցիների սլետությունը, որ այնքան թույլ էր, որ ոչ մի կերպ չկարողացավ հարյուր հիսուն անպաշտպան պարսիկներին պարտության մատնել։ Նա շտապեց վերականգնել պարսպի քանդված մասերը։ Եվ որովհետև պատրաստի չկար ո՛չ կիր և ո՛չ էլ որևէ այլ շինարարության պիտանի նյութ, մտածեց հետևյալը։ Կտավից պատրաստված այն պարկերի մեջ, որոնցով պարսիկներն իրենց պարենն էին բերել Կոլխիս, ավազ լցրեց, քանդված պատերի տեղում քարերի փոխարեն դարսեց և այդ ձևով պատնեշ կառուցեց։ Նա ընտրեց և այնտեղ թողեց երեք հազարանոց մարտունակ զորք, որին տվեց պարենամթերք՝ ոչ երկար ժամանակի համար, կարգադրելով հոգ տանել պարսպի վերանորոգման գործին, իսկ ինքը, մնացած ամբողջ զորքով ետ շարժվեց։ Որովհետև իր եկած ճանապարհին նա չկարողացավ ձեռք բերել որևէ պարենամթերք, իսկ ամբողջ ունեցածը, որ զորքը ձեռք էր բերել, անցնելով Իբերիայի միջով, թողել էր Պետրայում, ապա որոշեց այլ ճանապարհով գնալ՝ լեռների վրայով, որտեղ, ինչպես տեղեկացել էր, մարդիկ են բնակվում և հնարավոր կլիներ ավարով գոյությունը պահպանել։ Այս ուղևորության ժամանակ, երբ պարսիկները ճամբար էին դրել, լաղերի մեծամեծներից մեկը՝ Ֆուբելիս անունով, առաջնորդեց Դագիսթայոսին երկու հազար հռոմայեցիների հետ, որոնք դարան մտան, ապա հարձակվեցին ու սպանեցին ձիեր արածացնող մի քանի պարսիկների, և հափշտակելով ձիերը՝ հեռացան։ Սրանից հետո Մերմերոեսը պարսից զորքով շարժվեց այդտեղից։

Գուբազեսը, իմանալով, թե ինչ կատարվեց հռոմայեցիների հետ Պետրայում և լեռնանցքում, երկյուղ չզգաց, ոչ էլ հրաժարվեց կիրճի պաշտպանությունից, փրկության հույսը կապելով այդ [վայրի] հետ։ Նա հավատացած էր, որ պարսիկները, հռոմայեցիներին

մղելով Ֆասիս գետից այն կողմը, եթե նույնիսկ անցնեն լեռնանցքով և նրանց հաջողվի հասնել Պետրա, ապա դրանից լազերի երկիրը ոչ մի վնաս չի կրի, որովհետև, պարսիկները չունենալով նավեր, ոչ մի կերպ չեն կարողանա անցնել Ֆասիս գետը։ Այս գետը շատ խորն է և լայն. նրա հոսանքն այնքան ուժեղ է, որ թափվելով ծովը դեռ երկար գնում է, առանց [ծովին] խառնվելու, այնպես որ նավարկողները նույնիսկ բաց ծովում խմելու ջուր են ունենում։ Բացի դրանից լազերը գետի այս կողմում ամենուրեք պահպանական կետեր էին ստեղծել և թշնամին նույնիսկ նավերից օգտվելու դեպքում, չէր կարող ափ դուրս գալ։ Հուստինիանոս կայսրը սաբեյրների ցեղին ուղարկեց որոշված դրամական գումարը և միաժամանակ դրամական պարգևներ շնորհեց Գուբազեսին և լազերին։ Նա դեռ շատ առաջ մեծ զորք էր ուղարկել Լազիկա, որը սակայն դեռ տեղ չէր հասել։ Նրան գլխավորում էր Թրակացի Հռեկիթանգոսը, մի շատ խոհեմ և քաջ պատերազմող մարդ։ Ահա այդպիսին էր դրությունը։

Մերմերոեսը, բարձրանալով լեռները, ինչպես ասացի, շտապում էր այդտեղից առատորեն անհրաժեշտ պարենը մատակարարել Պետրային, քանի որ իրենց հետ բերած պարենամթերքը այդտեղի երեք հազարանոց կայազորին բավարար չէր։ Իր ձեռքն անցածը սակայն հազիվ հազ բավարարեց իր զորքին, որը երեսուն հազարից պակաս չէր, այդ պատճառով հնարավոր չեղավ բավարար քանակությամբ պարեն ուղարկել Պետրա։ Նա եկավ այն եզրակացության, որ ավելի ձեռնտու է, իր զորքի մեծ մասը հեռացնել Կոլխիսից, տեղում թողնելով փոքրաթիվ [զորք], որի առաջադրանքը կլինի ձեռք բերել անհրաժեշտ [պարենամթերքը]. դրա մեծ մասը կըմատակարարվի Պետրայի ամրոցին, իսկ մնացածով կբավարարվի ինքը։ Նա ընտրեց հինգ հազար մարդ և տեղում թողեց, նրանց վրա նշանակեց երեք հրամանատարներ, ինչպես և Ֆաբրիզոսին, գտնելով, որ այստեղ ավելի թողնել հնարավոր չէ, որովհետև թշնամիներ ամենևին չկային, իսկ ինքը մնացած զորքի հետ եկավ Պերսարմենիա և հանգստանում էր Դուբիոսի շրջակա գյուղերում։

Հինգ հազարանոց զորքը մոտեցավ Լազիկայի հեռաստաններին, ճամբարեց Ֆասիս գետի ափին և փոքր խմբերով ավարառում էր շրջակա գյուղերը։ Այդ մասին իմացավ Գուբազեսը և մարդ ուղարկեց Դագիսթայոսին հայտնելու, որ նա շտապի օգնության գալ, որովհետև երկուսով միայն հնարավոր կլինի մեծ վնաս հասցնել թշնամուն։ [Դագիսթայոսը] այդպես էլ արեց։ Նա հռոմայեցիների ամբողջ զորքով առաջ շարժվեց՝ իր ձախ կողմում ունենալով Ֆասիս

գետը և հասավ այն վայրը, ուր գետի մյուս ափին ճամբար էին դրել լազերը: Այս մասում Ֆասիսն անցանելի է, մի բան, որ հռոմայեցիները և պարսիկները՝ տեղանքին անծանոթ, չգիտեին, իսկ լազերը քաջածանոթ՝ անսպասելի անցան [գետը] և միացան հռոմայեցիների զորքին: Պարսիկներն իրենցից հազար հոգի առաջնակարգ զինվորներ ընտրելով առաջ ուղարկեցին, որպեսզի թույլ չտան [թշնամուն] իրենց ճամբարին վնաս հասցնելու: Նրանցից երկու հոգի, որոնք հետախուզության նպատակով առաջ էին անցել, անակնկալ կերպով ընկան թշնամու ձեռքը և ամեն ինչ հայտնեցին. հռոմայեցիներն ու լազերն անսպասելի հարձակվեցին այդ հազար հոգու վրա, և ոչ մեկին հնարավորություն չտվեցին փախչել. շատերը կոտորվեցին, ոմանք էլ գերի ընկան, որոնցից Գուբազեսը և Դագիսթայոսն իմացան մարերի զորքի քանակի, հեռավորության, ինչպես և վիճակի մասին: Այնուհետև ամբողջ զորքով շարժվեցին նրանց վրա, պատրաստվելով հարձակվել մութ գիշերով: Նրանք տասնեչորս հազար հոգի էին: Պարսիկները թշնամուց երկյուղ չէին զգում, որովհետև համարում էին, որ գետն անանցանելի է, իսկ հազար հոգին էլ առանց [թշնամուն] հանդիպելու պետք էր որ երկար ճանապարհ գնացած լիներ, դրա համար խոր քուն էին մտել: Հռոմայեցիները և լազերը վաղ առավոտյան անակնկալ հարձակվեցին նրանց վրա, մի մասին գտնելով դեռևս քնած վիճակում, մի մասին էլ նոր արթնացած ու մերկ՝ պառկած փռվածքների վրա. [պարսիկներից] և ոչ մեկին չհաջողվեց զենքի դիմել: Շատերը թշնամու ձեռքն անցնելով կոտորվում էին, ոմանք էլ գերի բռնվում, որոնց թվում նաև մի հրամանատար: Միայն քչերին հաջողվեց մթության շնորհիվ փախուստի դիմելով փրկվել: Հռոմայեցիներն ու լազերը գրավում են ճամբարը և բոլոր դրոշները, ավար են վերցնում մեծ քանակությամբ զենք, շատ դրամ, ինչպես և բազմաթիվ ձիեր ու ջորիներ: Նրանք [թշնամուն] հալածեցին երկար տարածության վրա և հասան Իբերիա, ուր հանդիպեցին և ուրիշ պարսիկների, որոնցից շատերին նույնպես կոտորեցին: Ահա այս ձևով պարսիկները հեռացան Լազիկայից, իսկ հռոմայեցիներն ու լազերը բարբարոսների՝ Պետրա տանելու նպատակով Իբերիայից բերած մեծաքանակ ալյուրն ու պարենամթերքը կրակի տվեցին: Նրանք լազերից շատերին թողեցին լեռնանցքում, որպեսզի թույլ չտան պարսիկներին Պետրային պարեն հայթայթել, իսկ մնացածներն ավարով ու գերիներով բռնեցին վերադարձի ճանապարհը: Լրանում էր հռոմայեցիների՝ պար-

սիկների հետ կնքած զինադադարի չորրորդ տարին, իսկ Հուստինիանոս կայսեր ինքնակալության քսաներեքերորդ տարին[121]։

Հովհաննես Կապադովկացին սրանից մեկ տարի առաջ կայսեր հրամանով եկավ Բյուզանդիոն, որովհետև այն ժամանակ արդեն վախճանվել էր Թեոդորա թագուհին[122], բայց նրան չհաջողվեց վերստանալ իր նախկին պաշտոններից և ոչ մեկը, և նա, հակառակ իր կամքին մնաց հոգևորական, թեև շատ հաճախ էր կայսր դառնալու մասին գուշակող երազներ տեսնում։ Իսկապես որ դեմոնը սիրում է սնապարծ և մտավոր տեսակետից խախուտ մարդկանց ներշնչել ամենամեծ և ամենաբարձր հույսերը։ Հովհաննեսին անվերջ զանազան բաներ էին ներշնչում, նաև այն, որ նա պետք է հագնի Օգոստոսի հանդերձանքը։ Բյուզանդիոնում կար Օգոստոս անունով մի հոգևորական՝ սուրբ Սոֆիա տաճարի թանկագին իրերի պահպանողը։ Ահա երբ Հովհաննեսը բռնի հոգևորական ձեռնադրվեց, նա չուներ հոգևորականի հանդերձանք, և նրան ստիպեցին հագնել մոտակայքում պատահած հիշյալ Օգոստոսի փիլոնն ու պատմուճանը և իմ կարծիքով կանխագուշակությունն այս կերպ իրականացավ։

## «ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ»

### ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

ԳԼՈՒԽ 7

*«Այստեղ [սուրբ Իրենեի տաճարում, Կոստանդնուպոլսում] դեռ հնուց ամփոփված էին քառասունից ոչ պակաս սուրբ այրերի նշխարները։ Դրանք հռոմայեցի զինվորներ են եղել և ծառայել են Հայաստանի Մելիտենե քաղաքում հնում հաստատված տասներկուերորդ լեգեոնում»։*

### ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

*Վերևում ասվեց, թե ինչ նոր սուրբ տաճարներ կառուցեց Հուստինիանոս կայսրը Կոստանդնուպոլսում և նրա արվարձաններում, թե երկար ժամանակի ընթացքում խախտված հին կառույցներից որոնք վերանորոգեց և թե ընդհանրապես ինչ շինարարություն կատարեց նա այստեղ։ Այժմ մենք անդրադառնալու ենք այն ամրություններին, որոնցով նա պարսպապատեց հռոմայեցիների երկրի սահմանները։ Այդ մասին գրելը, անհնարին գլուխ բերելը, շատ դժվար է, քանզի մենք պատմելու ենք ոչ թե եգիպտական թագավորների բուրգերի՝ այդ հռչակավոր գործի մասին, որն աչքի է ընկնում իր անիմաստությամբ, այլ բոլոր այն ամրությունների մասին, որոնցով կայսրը պարսպապատելով երկիրը, անհնարին դարձրեց բարբարոսների ոտնձգությունները հռոմայեցիների հանդեպ և փրկեց կայսրությունը։ Ինձ թվում է, որ նպատակահարմար է սկսել մարական սահմաններից։*

*Երբ մարերը հեռացան հռոմայեցիների երկրից, հանձնելով նրանց Ամիդ քաղաքը, որի մասին ասված է պատերազմների մասին գրքում[1], Անաստասիոս կայսրը փութաց պարսպապատել պարսկական սահմանին շատ մոտիկ գտնվող, նախկինում աննշան Դարա*

անունով մի գյուղ[2], թշնամիների դեմ այն քաղաք-պատվար դարձնելու նպատակով։ Բայց որովհետև Թեոդոս կայսեր և պարսից ժողովրդի միջև կնքված պայմանագրի համաձայն երկու կողմերին էլ արգելվում էր մյուս երկրին սահմանամերձ վայրում նոր ամրություն կառուցել[3], պարսիկները, վկայակոչելով հաշտության պայմանագիրը, ամեն կերպ ջանում էին խանգարել այդ գործին, թեև իրենք հոնական պատերազմի կապակցությամբ դժվարին կացության մեջ էին։ Հռոմայեցիները տեսնելով, որ նրանք պատրաստ չեն, օգտագործեցին այդ հանգամանքը և առավել վճռականությամբ ձեռնամուխ եղան կառուցմանը, ջանալով շինարարությունն ավարտել մինչև թշնամիների՝ հոների դեմ մղած պատերազմի վախճանը և իրենց վրա շարժվելը։ Բայց [հռոմայեցիները] թշնամուց վախենալով և մշտապես սպասելով նրա հարձակմանը, շինարարությունը սահմանված կարգով չէին կատարում. անչափ շտապողականությունը վնասում էր գործի հաստատուն լինելուն. շտապողականությունն ու կայուն գործը միշտ անհամատեղելի են իրար և ճիշտ գործը շտապողականություն չի սիրում։ Ահա նրանք շինարարությունը շտապ ավարտեցին և պարիսպն, այնուամենայնիվ, թշնամու համար մնաց խոցելի։ Ճիշտ է, նրանք անհրաժեշտ բարձրության հասցրին այն, սակայն քարերը պետք եղածին պես չշարեցին, չկապեցին ինչպես որ հարկն էր, ինչպես պահանջվում էր կրով չշաղախեցին։ Շուտով աշտարակները շատ տեղերից ճեղքեր տվեցին (սխալ շինարարության պատճառով նրանք չկարողացան դիմանալ սառնամանիքին և արևի ջերմության)։ Ահա այսպես էին անցյալում բարձրացվել Դարա քաղաքի պարիսպները։

Հուստինիանոս կայսեր մտահոգում էր, որ պարսիկները թույլ չեն տա հռոմայեցիներին իրենց դեմ կանգնեցնել պատվարը, որ նրանք ամեն տեսակի մեքենաներով զինված կհարձակվեն ու կգրոհեն ամբողջ ուժով, փղերի երամակների[4] օգնությամբ, որոնք, ծառայելով որպես պատվանդան, իրենց վրա կկրեն փայտյա աշտարակներ, և, որ ամենից սարսափելին է, նրանք իրենց վրա փաստորեն պարիսպ կրելով, տանելու են այն ուր որ թշնամիները ցանկանան։ Նրանց վրա հեծած հակառակորդները հարվածներ կհասցնեն պաշտպանվող հռոմայեցիներին, կհարձակվեն նրանց վրա բարձրից, [նրանց դեմ] կկանգնեցնեն ձեռակերտ բլուրներ, և վերջապես կբերեն քաղաքի գրավման համար նախատեսված բոլոր մեքենաները։ Եվ եթե որևէ փորձանք պատահի Դարա քաղաքին, որը հռոմեական պետության պատվարն է և բացեիբաց կանգնած է թշնա-

մու երկրին դեմ հանդիման, ապա աղետը այդքանով չի վերջանալու, դրա հետ միասին սասանվելու է ամբողջ պետությունը։ Այդ էր պատճառը, որ [Հուստինիանոսն] ուզում էր այդ վայրը շրջապատել ամուր պարիսպներով։

Թշնամու համար նա ամենից առաջ պարիսպը անմատչելի դարձրեց և միանգամայն անառիկ (որովհետև այն, ինչպես ասացի, շատ ցածր էր և հարձակվողների համար միանգամայն խոցելի)։ Քարեր շարելով, նա պարսպի նախկին ատամնաշարը խտացրեց, փոքր լուսամուտների չափ անցքեր թողեց միայն, սոսկ մի ձեռքի անցնելու տեղ՝ հարձակվողներին նետահարելու համար։ [Ատամնաշարի] վրա պարիսպը բարձրացրեց և հասցրեց մոտ երեսուն ոտնաչափի և որպեսզի հիմքերի վրա չափից ավելի ծանրություն ընկնելով՝ կառույցը չվնասվի, նա ամբողջ ստվարությամբ չկառուցեց այն, այլ մեջտեղում դատարկ տարածություն թողեց, իսկ դրսի մասերը շարեց քարով։ Այդպիսով պարսպի մեջտեղում նրա ամբողջ երկարությամբ սրահ ստացվեց, որի վրա տեղադրեց [նոր] ատամնաշար, այնպես որ պարիսպը բոլոր կողմերից երկհարկանի դարձավ, իսկ աշտարակներից այն կարելի էր պաշտպանել և նրա վրա կատարված հարձակումները ետ մղել՝ երեք տեղից, որովհետև աշտարակների մեջտեղից նա մի այլ կլոր շինություն ստեղծեց, նրա վրա ևս մի ատամնաշար կառուցեց և այսպիսով պարիսպը դարձրեց երեք հարկանի։

[Հուստինիանոսն] այնուհետև տեսավ, ինչպես վերևում ասացի, որ աշտարակներից շատերն ավերվել են, բայց կարճ ժամանակամիջոցում նրանք քանդելու հնարավորություն չուներ, որովհետև թշնամիները մոտիկ լինելով մշտապես հետևում էին և անընդհատ հարմար առիթ փնտրում հայտնաբերելու պարսպի որևէ չամրացված մաս։ Այդ պատճառով [Հուստինիանոսը] մտածեց հետևյալը. նա աշտարակներին ձեռք չտվեց, բայց յուրաքանչյուրը դրսի մասից մեծ վարպետությամբ և պետք եղած ջանասիրությամբ քառակուսի, ամուր շինությամբ շրջապատեց և այդպիսով վնասված պատերը ապահով կերպով մի ուրիշ ամրության մեջ առավ։ Այդ [աշտարակներից] մեկը միայն, որ կոչվում է Ֆրուրայի[5] [աշտարակ], նա մի հարմար առիթից օգտվելով քանդեց, այն ամուր կերպով վերակառուցեց և [այդպիսով] իսպառ վերացրեց պարսպի խախուտ լինելու պատճառով եղած վախը։ Նախապարիսպն էլ նա նույն ձևով հասցրեց անհրաժեշտ բարձրության, նրանից դուրս խրամատ փո-

րեց, բայց ոչ սովորական, այլ փոքր տարածության վրա և յուրատեսակ ձևով։ Այդ մասին ես կպատմեմ։

Պարիսպը մեծամասամբ գտնվելով ղառիթափ, ժայռոտ և դադաթնահայաց վայրում և ոչ հարթ տարածության վրա, գրոհողների համար անմատչելի էր, տեղանքն այստեղ հնարավորություն չէր տա հարձակվողներին իրականացնել իրենց չար մտադրությունները՝ ղետնափոր սարքել, կամ էլ որևէ հարձակում գործել։ Սակայն հարավային մասում հողը փափուկ է և կավային ու մեծ հնարավորություն է ընձեռում գետնափոր անելու, որով քաղաքը դառնում է միանգամայն մատչելի։ Այստեղ [Հուստինիանոսը] լայն, խոր և բավական երկարություն ունեցող մահկաձև մի խրամատ փորեց, որի երկու ծայրերը միանում էին նախապարսպին, և նրա մեջ ջուր լցնելով, թշնամիների համար միանգամայն անանցանելի դարձրեց։ [Խրամատի] ներսի կողմից նա կառուցեց մի երկրորդ նախապարիսպ։ Հռոմայեցիները ահա այս վերջին [նախապարսպի] վրա կանգնած, պաշտպանում են [քաղաքը] պաշարման ժամանակ, առանց մտահոգվելու պարսպի և պարսպից առաջ գտնվող մյուս նախապարսպի վիճակով։ Պարսպի և նախապարսպի միջև, Ամմոդիոս վայրի դիմաց գտնվող դարպասների մոտ, մի մեծ հողաբլուր կար, որտեղից թշնամիները կարողանում էին գաղտնի կերպով դեպի քաղաք տանող և պարսպի ներսի կողմը դուրս եկող գետնափորներ անցկացնել։ Դրա համար էլ [Հուստինիանոսը] այդ ամբողջությամբ փորեց վերացրեց, որով և կանխեց թշնամիների՝ պարսպի դեմ կատարվող ոտնձգությունների վտանգը։

2. Ահա այսպիսին է նրա կառուցած ամրությունն այստեղ։ Բացի այդ նա պարսպի և նախապարսպի մեջտեղում, ապա նաև արևմտյան մասում՝ Բարթուղիմեոս առաքյալին նվիրված տաճարին մոտիկ, ջրամբարներ կառուցեց։ Քաղաքից երկու մղոն հեռավորության վրա գտնվող Կորդես անունով արվարձանի մոտից գետ է հոսում։ Նրա երկու ափերից վեր են խոյանում ապառաժ ժայռեր։ Գետը մինչև քաղաք հոսում է սրանց ստորոտով, այդ երկու ժայռոտ ափերի միջով, մի բան, որ անհնարին է դարձնում թշնամիների համար նրա հունը փոխելը և նրան մոտենալը, քանի որ այն ընթանում է անհարթ տարածության վրայով։ Իսկ [բնակիչները] հոսեցնում էին [գետը] քաղաքի միջով հետևյալ կերպ։ Պարսպի մոտից մի մեծ առու էին փորել, նրա բերանը ամրացրել խիտ և հաստ երկաթյա ձողերով, որոնց մի մասն ուղղահայաց, իսկ մյուսը՝ հորի-

ղոնական են դրված։ Այս ձևով ջուրը հոսում էր դեպի քաղաք՝ առանց վնասելու ամրություններին։ Մուտք գործելով քաղաք, [գետը] լցնում էր նրա ջրամբարները և ընթանում բնակիչների ցանկացած տեղով։ Այնուհետև այն դուրս էր գալիս քաղաքի մյուս կողմից և այդ ելքը սարքված էր այնպես, ինչպես մուտքը։ Սակայն հոսելով [քաղաքի] շուրջը փոված դաշտերով, այն հնարավորություն էր ընձեռում [թշնամուն] քաղաքը պաշարելու, որովհետև ջրի առկայությունը թշնամիների այնտեղ ճամբարելու գործը հեշտանցում էր։ Այդ կանխելու համար Հուստինիանոս կայսրը ելք էր որոնում և դարման փնտրում։ Նրա անելանելի վիճակին ընդառաջ գնաց աստված և գործն ինքնաբերաբար, առանց հապաղման, գլուխ եկավ ու փրկեց քաղաքը։ Այդ տեղի ունեցավ հետևյալ կերպ։

Այնտեղի զինվորականներից մեկը, կա՛մ երազ տեսնելով, կա՛մ էլ սեփական մտահղացմամբ, հավաքելով շինարարական բանվորների մի մեծ խումբ, հրամայեց պարսպի ներսում փորել մի լայն փոս՝ ցույց տալով ճիշտ տեղը։ Այդտեղ նրանք պետք է խմելու ջուր գտնեին, որը բխում էր երկրի խորքերից։ Փոսը նա փորել տվեց շրջանակաձև՝ տասնհինգ ոտնաչափ լայնությամբ և բավական խոր։ Ահա քաղաքի համար այդ դարձավ փրկարար, սակայն ոչ բանվորների կանխատեսությամբ։ Փորձանքը, որ կարող էր հռոմայեցիներին պատահել, այդ փոսի շնորհիվ կանխվեց։ Ահա՛ ինչպես։ Այդ միջոցին սաստիկ անձրևներ տեղացին, գետը, որի մասին քիչ առաջ հիշատակեցի, պարսպի առջևով խշշալով շատ վարարեց և այնպիսի բարձրության հասավ, որ չէր կարող հոսել ո՛չ փորված մուտքի միջով, ո՛չ էլ առվի, ինչպես նախկինում։ Հոսելով դեպի պարիսպը և կուտակվելով այնտեղ, հսկայական բարձրության և խորության հասավ. այն տեղ-տեղ լճանում էր, տեղ-տեղ էլ փրփրում ու ալեկոծվում, և ճնշելով նախապարսպին, փլեցրեց այն, խարխլեց պարսպի մեծ մասր և պոկելով դարպասները՝ փշշալով հոսեց ու ողողեց գրեթե ամբողջ քաղաքը, հրապարակը, փողոցները, նաև տները, այնտեղից իր հետ քշելով, տանելով կահկարասի, փայտյա իրերի և այլ նման առարկաների մի մեծ կույտ, բայց այն թափվելով [վերոհիշյալ] փոսի մեջ անհետացավ, սկսեց հոսել գետնի տակով։ Մի քանի օր անց այն հայտնվեց Թեոդոսուպոլսի[6] մոտ՝ Դարա քաղաքից մոտավորապես քառասուն մղոն հեռավորության վրա, և [Թեոդոսուպոլսի] բնակիչներն այդ առարկաներից իմացան դեպքի մասին, քանզի ամբողջ խառնիճաղանջ կույտն այնտեղ հայտնվեց։ Այսուհետև խաղաղ, ոչ պատերազմական պայմաններում գետն

անցնում է քաղաքի միջով, լցնում ջրամբարները և քաղաքից դուրս է հոսում այն ելքից, որը հատուկ սարքված էր քաղաքի կառուցողների կողմից, ինչպես այդ մասին քիչ առաջ պատմեցի։ Նա ոռոգում է դաշտերը և դրա համար շրջակայքի բնակիչներին միշտ սիրելի է։ Իսկ երբ թշնամու զորքը մոտենում է [քաղաքը] պաշարելու նպատակով, ապա երկաթե ձողերով պատած ելքը փակում են կատարակտներ կոչված հարմարանքներով, անմիջապես փոխում են գետի հունը և հոսեցնում այն փոսի միջով, այսինքն՝ ստորերկրյա հունով։ Թշնամիները, ջրի պակասությունից ճնշված, անմիջապես ստիպված են լինում վերացնել պաշարումը։ Պարսից զորավար Միրրանը, Կավադի թագավորության ժամանակ, երբ այստեղ էր եկել [քաղաքը] պաշարելու, վերոհիշյալ բոլոր դժվարությունների պատճառով ստիպված շուտով հեռացավ։ Հետագայում ինքը՝ Խոսրովը մեծ բանակով արշավեց նույն [քաղաքի] վրա և փորձեց գրավել այն։ Բայց ջրի պակասության պատճառով ընկավ անելանելի դրության մեջ, բացի դրանից տեսնելով պարսպի բարձրությունը համոզվեց, որ այն անառիկ է, և փոխելով իր ծրագիրը, անմիջապես նահանջեց դեպի պարսից երկիրը, հռոմայեցիների ինքնակալի հեռատեսությունից պարտված։

3. Ահա այսպիսի գործունեություն ծավալեց Հուստինիանոս կայսրը Դարա քաղաքում։ Իսկ թե ինչպես արեց նա, որ գետը [քաղաքին] այլևս վնաս չհասցնի, ըստ որում իր այդ ձեռնարկությանը որոշակի նեցուկ էր կանգնել աստված, ես կպատմեմ։ Կար ոմն Խրյուսես ալեքսանդրացի, հմուտ ճարտարապետ, որը ծառայելով որպես կայսեր շինարար, մեծ աշխատանք կատարեց Դարա քաղաքում և այլուր։ Խրյուսեսը այն ժամանակ, երբ գետը ողողեց Դարան, քաղաքից բացակայում էր։ Լսելով պատահարի մասին և շատ տխրելով, գնաց իր ննջասենյակը։ Երազում նրան երևաց մի դերմարդ, որը ներկայացնում, ցուցադրում էր ինչ-որ հարմարանք, որը կարող էր ապագայում գետի կողմից քաղաքը ողողելու առաջն առնել։ Ենթադրելով, որ տեսիլքը աստվածուստ է, նա անմիջապես այդ հարմարանքի և տեսիլքի մասին նամակ գրեց և ուղարկեց կայսեր, միաժամանակ ներկայացնելով երազում տեսած [հարմարանքի] գծագիրը։ Քիչ առաջ Դարա քաղաքից կայսեր մոտ սուրհանդակ էր եկել և պատմել գետի հասցրած վնասի մասին։ Կայսրը պատահարից ցնցված, շատ տխրեց և իսկույն հրավիրեց հայտնի ճարտարապետներ Անթեմիոսին և Իսիդորոսին', որոնց ես վերևում

հիշատակեցի։ Ծանոթացնելով դեպքի հետ, հարցրեց նրանց, թե ինչ կարելի է անել, որ ապագայում այդ չկրկնվի։ Նրանցից յուրաքանչյուրն իր կարծիքով օգտակար մի խորհուրդ էր տալիս։ Իսկ կայսրը, հասկանալի է, աստվածային ներշնչմամբ, դեռևս Խրյուսեսի նամակը չտեսած, ինքնաբերաբար միտք է հղանում և զարմանալի կերպով գծագրի վրա արտահայտում այն, ինչ երազում տեսել էր [Խրյուսեսը]։ Նրանք ավարտեցին խորհրդակցությունն առանց որևէ որոշակի վճիռ ընդունելու, և պարզ չէր, թե ինչ պետք է անեն։ Երեք օր հետո կայսեր մոտ ժամանեց մեկը, իր հետ բերելով Խրյուսեսի նամակը և նրա՝ երազում տեսած հարմարանքի գծագիրը։ [Կայսրը] նորից հրավիրեց ճարտարապետներին և հրամայեց վերհիշել այդ հարցի շուրջը իրենց հայտնած կարծիքը։ Նրանք հաղորդեցին այն ամենը, ինչ իրենք էին ասել, ինչպես նաև կայսեր համարձակ առաջարկությունը։ Այն ժամանակ կայսրը հրավիրեց Խրյուսեսի կողմից ուղարկված մարդուն, ցույց տվեց նրա նամակը, ծանոթացրեց նրանց նրա երազած տեսիլքի և նրա հիման վրա կազմած գծագրի հետ, մի բան, որ նրանց մեծապես զարմացրեց և համոզեց, որ կայսեր՝ պետության օգտին կատարած բոլոր ձեռնարկություններին աստված նեցուկ է կանգնում։ Ճարտարապետների իմաստությունն ու վարպետությունն ահա տեղի տվեց կայսեր հնարամտության առջև։ Խրյուսեսը նորից է լինում Դարա քաղաքում, հրաման ունենալով կայսրից անհապաղ իրագործելու գծագրերը՝ համաձայն տեսիլքի։ Նա կարգադրությունները ի կատար ածեց հետևյալ կերպ։

Նախապարսպից մոտ քառասուն ոտնաչափ հեռավորության վրա գտնվող մի վայրում, գետի երկու ժայռոտ ափերի միջև, նա բավական բարձր և լայն մի ամբարտակ կառուցեց, որի երկու ծայրերը հարում էին ափերի բարձունքներին, այնպես որ, եթե նույնիսկ գետի ջրերը շատ ուժեղ հոսեն, հնարավորություն չունենան դուրս թափվելու։ Այս շինությունը մասնագետներն անվանում են ֆրակտես [ցանկապատ], կամ արիդա [շաղափ], կամ էլ այլ կերպ, ինչպես ցանկանան։ Այս ամբարտակը կառուցվեց ոչ ուղիղ գծով, այլ մահկաձև, այն հաշվով, որ կորությունը լինելով գետի հոսանքի դեմ, դիմանա նրա ճնշմանը։ Ամբարտակի վրա և՛ վերևից, և՛ ներքևից նա բացեց դռնակներ, որպեսզի երբ գետը հանկարծակի վարարի, ապա այնտեղ ստիպված կանգ առնի, չկարողանա ամբողջ հորձանքով հոսել, այլ քիչ-քիչ, անցքերի միջով միայն։ Այդ ձևով [ջրի] մեծ ծավալը դանդաղ է հոսում և պարիսպը ամենևին չի վնասվում։ Դուրս հոսելու տեղը, ինչպես ասացի, գտնվում է [Նա-

*խապարսպից] քառասուն ոտնաչափ հեռավորության վրա, արիգա-յի և նախապարիսպի միջև, և այնուհետև [գետը] դանդաղ ու չափավոր հոսելով, սովորական մուտքով թափվում է ռովի մեջ։ Իսկ այն դարպասները, որոնք նախկինում գետր հանկարծակի ճնշելով բացեց և այնտեղից անցավ, ահա [Խոսրովը] նրանց տեղերը մեծ մեծ քարերով փակեց, որովհետև գտնվելով հարթ տեղում, գետի վարարման ժամանակ ջուրը հեշտությամբ նրանց միջով ներս էր թափվում։ [Դրանց փոխարեն] նա նոր [դարպասներ] բացեց ղառիթավ և դարիվեր վայրում գտնվող պարիսպների վրա, ուր գետը բոլորովին չէր կարող բարձրանալ։ Ահա [այդտեղ] այսպիսի գործեր կատարվեցին կայսեր կողմից։*

*Քաղաքի բնակիչները ջրի ծայրահեղ պակասության պատճառով անելանելի վիճակում էին, քանզի նրանք ոչ բխող աղբյուր ունեին, ոչ այդտեղի փողոցներով հոսող առուներ, ոչ էլ ջուր էին կուտակում [քաղաքի] ջրամբարներում. ում փողոցի մոտով որ հոսում էր գետը, նա առանց որևէ դժվարության, ապահով օգտվում էր նրանից, իսկ ում տունը գետի ափից հեռու էր գտնվում, նրա համար երկու ելքն էլ տանջալից էին՝ թե՛ այդքան հեռու գնալը՝ խմելու համար, թե՛ ծարավից կոտորվելը։ Հուստինիանոս կայսրը կառուցեց մի մեծ առու, որի միջով ջուրը հոսեցրեց ամբողջ քաղաքով մեկ և քաղաքի բնակիչներին այդ դժվարությունից փրկեց։ Նա [այնտեղ] երկու տաճար կառուցեց, այսպես կոչված, մեծ եկեղեցին և Բարթուղիմեոս առաքյալի տաճարը։ Բացի դրանից նա զինվորների համար կառուցեց բազմաթիվ զորանոցներ, որպեսզի նրանք տեղական բնակչությանը բոլորովին չանհանգստացնեն։*

*Ամիդ քաղաքի պարիսպն ու նախապարիսպը, որոնք դեռ հնում էին կառուցվել և փլվելու վտանգի տակ էին, շատ չանցած նա ամրացրեց նոր շինարարությամբ և ապահովեց քաղաքի անվտանգությունը։ Այժմ ես կպատմեմ, թե ինչպես վարվեց նա այն ամրոցների հետ, որոնք գտնվում էին այդ [երկու] քաղաքների սահմաններում։*

*4. Դարա քաղաքից Պարսկաստան գնացողի ձախ կողմից տարածվում է մի տեղանք, լավ քայլող մարդու քայլվածքով ավելի քան երկու օրվա ճանապարհ երկարությամբ, որը բոլորովին անմատչելի է կառքերի և ձիավորների համար։ Նա վերջանում է ժայռոտ մի վայրում, որը կոչվում է Հռաբդիոն[8]։ Հռաբդիոն տանող ճանապարհի երկու կողմում բավական տարածության վրա պարսից երկիրն է։ Այս բանի վրա ես սկզբում զարմացել էի և հարցրել տեղացինե-*

րին, թե ինչպես հռոմայեցիներին պատկանող վայրը և դեպի այն տանող ճանապարհը թշնամու հողերով են շրջապատված։ Ոմանք պատասխանեցին, որ ժամանակին այդ վայրը պատկանելիս է եղել պարսիկներին, բայց հռոմայեցի ինքնակալներից մեկը պարսից արքայից խնդրեց այն և Մարտիրոպոլսում գտնվող այդեշատ մի գյուղ տալով՝ ստացավ։ Հռաբդիոնը կառուցված է երկինք խոյացող և սարսուռ ներշնչող զարմանալի ժայռերի վրա։ Նրանից ցած կա մի գյուղ, որը [տեղացիք] անվանում են Հռոմայոն ագրոս[9], որովհետև իմ կարծիքով, հենց սկզբից նրանց համար զարմանալի բան էր, որ այն, գտնվելով հանդերձ պարսկական բնակավայրերի շրջապատում, պատկանում է հռոմայեցիներին, հենց անունն էլ վկայում է, որ նա պարփակված է պարսից հողերով։ Այս Հռոմայոն ագրոսը փռված է հարթավայրում և հարուստ է երկրագործական մթերքներով։

Պարսկաստանում մի նշանավոր քաղաք կա, որ կոչվում է Սիսավրանոն։ Հուստինիանոս կայսրը ժամանակին գրավելով այն, հողին հավասարեցրեց, իսկ պարսից հեծյալների մի մեծ խումբ՝ նրանց հրամանատար Բլեսխամեսի հետ միասին գերի վերցրեց[10]։ Այս [քաղաքը] գտնվում է Դարայից լավ քայլողի քայլվածքով երկու օր հեռավորության վրա, իսկ վերոհիշյալ Հռաբդիոնից՝ մոտ երեք մղոն։ Նախկինում այս վայրը անպաշտպան էր և հռոմայեցիների համար բոլորովին աննշան։ Նա երբևիցե չէր արժանացել ոչ կայազորի, ոչ ամրությունների և ոչ էլ որևէ այլ հոգատարության։ Այդ նոր հիշատակած ագրոսի մշակները տարեկան հիսուն ոսկի կարծես հավելյալ պետական հարկ էին վճարում պարսիկներին, որպեսզի հնարավորություն ունենան աներկյուղ տիրելու իրենց սեփականության, ինչպես նաև օգտվելու այնտեղի բարիքներից։ Հուստինիանոս կայսրը նրանց վիճակը արմատապես վերափոխեց։ Վեր խոյացող ժայռերի ստորոտից սկսած, նա Հռաբդիոնը շրջապատեց պարիսպներով և այդպիսով վայրը թշնամիների համար անմատչելի դարձրեց։ Այդ բանին օժանդակում էր նաև հարմար տեղանքը։ Տեղացի բնակիչները ջրի պակասություն էին զգում, որովհետև ժայռագագաթին ոչ մի աղբյուր չկար։ [Հուստինիանոսը] երկու ջրավազան կառուցեց, բացի դրանից ժայռերի մեջ մեծ քանակությամբ փոսեր փորեց և այդպիսով բազմաթիվ ջրամբարներ ստեղծեց, որպեսզի տեղացի բնակիչներն այնտեղ հավաքված անձրևաջուրը կարողանան օգտագործել առանց դիմելու ծայրահեղ խնայողության,

և այլևս չտառապելով ջրի պակասությունից, հեշտությամբ չընկնեն [թշնամու] ձեռքը։

Բացի այդ, մնացած բոլոր ամրոցները, որոնք այստեղից և Դարայից լեռների վրայով ձգվում են մինչև Ամիդ, այն է՝ Կիֆասը, Սավրասը, Մարդդիսը, Լուրնեսը, Իդրիֆթոնը, Ատախասը, Սիֆրիոսը, Հռիպալթասը, Բանասիմեոնը, ինչպես նաև Սինասը, Հռասիոսը և Դաբանասը և բոլոր նրանք, որոնք վաղուց են այստեղ կառուցված և դեռ անցյալում էին ավերվել ու շատ ծիծաղելի տեսք ստացել, նա հիմնովին վերակառուցեց և հաղորդելով նրանց ներկայիս շքեղությունն ու ամրությունը, դարձրեց անառիկ և հռոմայեցիների երկրի հաստատադույն պատվար։ Այստեղ վեր է խոյանում երկնաբերձ, անմատչելի մի լեռ։ Նրա ստորոտում փռված է շատ փափուկ հող ունեցող մի դաշտավայր, միանգամայն հարմար մշակելու և անասուններ արածացնելու. այստեղ խոտը շատ լավ է անում։ Լեռան ստորոտին կան բազմաթիվ գյուղեր, որոնց բնակիչները ապրում են բարեկեցիկ կյանքով, բայց [թշնամիներից] որևէ մեկը կարող է նրանց հեշտությամբ իրեն ենթարկել։ Դրա համար Հուստինիանոս կայսրը նրանց ապահովեց. լեռան գագաթին ամրոց կառուցելով, որպեսզի այնտեղ պահեն իրենց գանձերը, և երբ թշնամիները մոտենան, իրենք էլ այնտեղ ապաստանեն։ Այդ ամրոցը կոչվեց Բասիլեոն։ Բացի դրանից, նա հիմնովին վերակառուցեց և կատարելապես ապահով դարձրեց Ամիդի շուրջը եղած բոլոր ամրոցները, որոնք կավաշեն պարսպով էին շրջապատված և թշնամու համար լիովին մատչելի էին։ Նրանց թվում են նաև Ապադնասը[11] և Բիրթոն[12] փոքր քաղաքը։ Հեշտ չէ հանվանե մանրամասն խոսել բոլորի մասին։ Կարճ ասած, անցյալում թշնամու վտանգին ենթակա ամեն ինչ, նա դարձրեց անհաղթահարելի, դրանով իսկ Միջագետքը պարսիկների համար դարձավ միանգամայն անմատչելի։

Չի կարելի լռությամբ անցնել և այն, ինչ նա հորինեց Բարաս ամրոցում, որի մասին ես մի քիչ առաջ հիշատակեցի։ Ամրոցում ջրի մեծ պակասություն կար. Բարասը կառուցված էր բարձր լեռան զառիթափ լանջի վրա։ Նրանից դուրս, շատ հեռուն, ցածում, լեռան ստորոտում, մի աղբյուր կա, որը ամրոցի պարսպի մեջ առնել անհնարին էր համարվում, քանի որ այդպիսով [պարսպի] մի մասը ձգվելու էր տափարակ վայրով և մատչելի կդառնար։ [Հուստինիանոսը] մտածեց հետևյալը։ Հրամայեց պարսպի ներսում փորել և խորանալ մինչև տափարակ տեղի մակարդակը։ Երբ ըստ կայսեր հրամանի այդ կատարվեց, աղբյուրի ջուրն անսպասելի կերպով

սկսեց հոսել [ամրոցի] ներսը։ Ահա, այսպիսով, նախ ամրոցը ապահով դարձրեց և ապա առատ ջրով [բավարարեց]։

5. Կայսրը նմանապես վերակառուցեց Աբորրաս գետի ափին գտնվող և հռոմայեցիների կողմից անուշադրության մատնված Թեոդոսուպոլիս [քաղաքի] պարիսպը, որը ժամանակի ընթացքում բավական ավերվել էր, և այդ պատճառով նրա բնակիչներն ապահով չէին զգում իրենց, այլ անընդհատ երկյուղի և սարսափի մեջ էին, թե ուր որ է փուլ է գալու, և այդպիսով նա կարողացավ կանգնեցնել պարսիկների ներխուժումները դեպի Միջագետք։

Արժե խոսել նաև Կոստանդինեում կատարվածի մասին։ Նախկինում Կոստանդինեի պարիսպն իր բարձրությամբ այնպիսին էր, որ կարելի էր աստիճաններ դնելով քաղաքը գրավել։ Նա իր մնացած կառուցվածքներով էլ շատ մատչելի էր, որովհետև հին մարդկանց կողմից այն ի միջի այլոց էր կանգնեցվել։ Աշտարակներն իրարից այնպիսի հեռավորության վրա էին գտնվում, որ եթե հարձակվողը հասներ նրանց մեջտեղը, ապա աշտարակների վրա կանգնողները հնարավորություն չէին ունենա պաշտպանվել ու նրան ետ մղել։ Բացի այդ, ժամանակը խարխլել էր [պարիսպը], և նա արդեն փուլ գալու վրա էր։ Հակառակ դրան, քաղաքի նախապարիսպն այնպիսին էր, որ կարծես ամրություն էր, ուղղված հենց [քաղաքի] դեմ։ Նրա հաստությունն երբեք ոտնաչափից ավել չէր, այն էլ ցեխով շաղախված, միայն ստորին շարքերը մեծ քարերից էին շարված, իսկ վերևի՝ լիկոլիթոս կոչված քարից[13], որը շատ փխրուն է և փափուկ։ Մի խոսքով ամեն տեսակետից հարձակվողի համար այն գրավելը շատ դյուրին էր։ Հուստինիանոս կայսրը պարսպի տուժած մասերը նոր շինությամբ վերականգնեց, առանձնապես արևմտյան և հյուսիսային կողմերինը։ Ամբողջ պարսպի երկարությամբ՝ յուրաքանչյուր երկու աշտարակների միջև նա մի նորը տեղադրեց և այսպիսով պարսպի աշտարակների շարքը խտացրեց։ Նա ամբողջ պարիսպը և աշտարակները հասցնելով մեծ բարձրության, քաղաքի պաշտպանությունը թշնամուց միանգամայն հուսալի դարձրեց։ Աշտարակների վրա նա կառուցեց ծածկված աստիճաններ, իսկ աշտարակները քարաշեն կամարակապ վերնակառույցներով եռահարկ դարձրեց, որով նրանցից յուրաքանչյուրն իրենից ներկայացնում էր պյուրգոկաստելլոն [աշտարակ-ամրոց]։ Լատիներեն ամրոցին կաստելլոն են ասում։ Կոստանդինեն հնում շատ էր տառապում նաև ջրի պակասից։ Քաղաքից դուրս, մեկ մղոն հեռա-

վորության վրա կան խմելու ջրի աղբյուրներ, այնտեղ աճում է նաև երկնաբերձ ծառերի բավական մեծ պուրակ։ Սակայն քաղաքի ներսում, ուր փողոցները ոչ թե հարթ, այլ զառիվայր են, հնից ջրի պակաս էր զգացվում, բնակիչները մշտապես տառապում էին ջրի պակասից և դժվարին դրության մեջ էին։ Հուստինիանոս կայսրը ջրի հոսանքն առվի միջով պարսպից ներս բերեց և քաղաքն ապահովեց մշտահոս աղբյուրներով. հիրավի նա կարող է կոչվել նրա հիմնադիրը։ Ահա նշված քաղաքներում Հուստինիանոս կայսեր կատարածն այս է։

6. Միջագետքի հեռաստաններում, Եփրատ գետի ափին, այնտեղ ուր Աբորրաս գետը թափվում է Եփրատի մեջ, կա մի հռոմեական ամրոց։ Այն կոչվում է Կիրկեսիոն և կառուցվել է հնում Դիոկլետիանոս կայսեր կողմից։ Կայսր Հուստինիանոսն այժմ, գտնելով այն [երկար] ժամանակից ավերված, աչքաթողի արված և անպաշտպան, վերածեց այն ամենահուսալի ամրության և իր մեծությամբ ու գեղեցկությամբ դարձրեց նշանավոր քաղաք։ Դիոկլետիանոսն իր ժամանակ ամրոցն ամբողջությամբ չէր շրջապատել պարսպով։ Նա պարիսպը հասցրել էր մինչև Եփրատ գետը և երկու ծայրերին կառուցել [մեկական] աշտարակ՝ գետի կողմը թողնելով լրիվ անպարիսպ, իմ կարծիքով, գետի ջուրը այդ կողմից բավարար պաշտպանություն համարելով ամրոցի համար։ Ժամանակի ընթացքում հարավային կողմի վերջին աշտարակը, գետի հոսանքով անընդհատ ողողվելով, ամբողջությամբ խարխլվեց, և ակնհայտ էր, որ եթե շտապ միջոցներ ձեռք չառնվեն, ուր որ է փուլ կգա։ Տվյալ դեպքում ես պարզ երևաց, որ Հուստինիանոս կայսրն աստվածուստ է ստացել հռոմայեցիների պետության մասին լիակատար հոգ տանելու և մեծ բարենորոգումներ կատարելու պատիվը։ Նա փրկեց ոչ միայն տուժած աշտարակը՝ մեծ որձաքարերով վերակառուցելով այն, այլև ամրոցի անպաշտպան կողմն ամբողջությամբ ամրագույն պարսպով պատեց, որով կրկնապատկվեց [քաղաքի] ապահովությունը։ Քաղաքի համար նա կառուցեց նաև շատ ամուր նախապարիսպ, հատկապես հզոր այնտեղ, ուր գետերի խառնման տեղում եռանկյունի է ստեղծվում, և դրանով նա թշնամիների ոտնձգությունների առաջն առավ։ [Քաղաքում] առմիշտ հաստատեց զորահրամանատար, որին դուքս են անվանում, և ահա այսպիսով այն դարձրեց պետության համար հուսալի պատվար։ Բացի դրանից, նա նախկին բարեկարգ վիճակին հասցրեց հասա-

րակական բաղանիքը, որը գետից հեղեղվելու պատճառով միանգամայն ավերվել, անօգտագործելի էր դարձել։ Նախկինում կանգուն շենքից լոգանքի համար պիտանի այն բոլորը (խոսքը խյուտրոպոդիոն [եռոտանի օջախի] կոչվածի մասին է, որի տակ կրակ են վառում), ինչ այժմ ջրի ողողման պատճառով խախուտ վիճակում էր գտնվում, որով և բաղանիքը անօգտագործելի էր մնացած, ահա այդ նշածս խախուտ մասերը քարե շարվածքով ամրացրեց, ապա նրա վերևում, գետից բարձր տեղում մի այլ շինություն կառուցեց, դրանով իսկ այստեղի [կայազորի] զինվորների համար ապահովելով [բաղանիքի] հաճույքը։

Կիրկեսիոնից այն կողմ կա մի հին ամրոց, որը կոչվում է Աննուկաս[14]։ Հուստինիանոս կայսրը սրա պարիսպը ավերակ գտնելով, փառավորապես վերակառուցեց, այնպես, որ նա չէր զիջում առաջնակարգ քաղաքների ամրություններին անգամ։ Նույն եղանակով նա հարձակվողների համար սարսափելի և միանգամայն անմատչելի դարձրեց Թեոդոսուպոլսի շուրջը գտնվող ամրոցները, որոնց մի մասը նախկինում պարսպապատված չէր, մյուս մասն էլ պատված էր կավաշեն ծիծաղելի պարիսպներով, կարծես ցանկապատ լինեին։ Դրանք էին Մագդալաթոնն ուրիշ երկուսի հետ միասին, որոնք գտնվում են նրա երկու կողմերում։ Թաննուրիոսի երկու [ամրոցները] մեծ և փոքրը, Բիմիսդեոնը և Թեմերեսը, նաև Բիդամասը, Դավսարոնը, Թիոլլան, Ցիխասը, Ջամարթասը, մի խոսքով բոլորը։ Մեծ Թաննուրիոսի մոտ կա մի վայր, որը Աբորրաս գետն անցնող թշնամի սարակինոսների համար դառնում էր հենակետ, որտեղից նրանք հարձակում գործելով անհայտանում էին խիտ և ընդարձակ անտառում՝ նրանից վերև գտնվող լեռան վրա և աներկյուղ թալանում այդ շրջանում բնակվող հռոմայեցիներին։ Հուստինիանոս կայսրն այդ վայրում որձաքարից կառուցեց մի մեծ ամրություն և այնտեղ հաստատելով ուժեղ կայազոր, նման պատվարով կարողացավ բոլորովին վերջ տալ թշնամիների հարձակումներին։

7. Հուստինիանոս կայսրն այդ կատարեց Միջագետքում։ Այստեղ անհրաժեշտ եմ համարում հիշատակել նաև Եդեսիայի, Կարրեի, Կալլինիկոնի, ինչպես և մյուս բոլոր փոքր քաղաքների մասին, որոնք նույնպես այստեղ՝ Միջագետքում են գտնվում։ Եդեսի[illegible] մոտից հոսում է Սկիրտոս[15] անունով փոքր գետը, որը բազում տեղերից ջուր ստանալով անցնում է քաղաքի միջով, բավարարելով նրա կարիքները, և դուրս գալով շարունակում է իր ընթացքը։ Նրա մուտ-

քը [քաղաք] և ելքն այնտեղից հին մարդիկ փորել են պարսպի մեջ։ Մի անգամ այս գետը սաստիկ անձրևներից անչափ վարարելով, բարձրացավ և հոսելով դեպի քաղաք, այն ավերման վտանգի տակ դրեց։ Նա քանդեց, գետին տապալեց նախապարսպի և պարսպի մեծ մասը, ողողեց գրեթե ամբողջ քաղաքը և անդարմանելի վնաս հասցրեց։ Նա մի ակնթարթում քանդեց, ավերեց ամենագեղեցիկ շենքերը, ղոհ տարավ բնակչության երրորդ մասը։ Հուստինիանոս կայսրը ոչ միայն անհապաղ վերականգնեց բոլոր ավերակները, որոնց թվում նաև քրիստոնյաների եկեղեցին և Անտիփորոս կոչվածը, այլև բոլոր միջոցները ձեռք առավ նման պատահարն ապագայում կանխելու համար։ Նա պարսպի առջև գետի մի նոր հուն փորեց՝ հետևյալ ձևով։ Գետի աջ կողմը անցյալում տափարակ էր և ցածրադիր, իսկ ձախ կողմում կար մի բարձունք, որը թույլ չէր տալիս [գետին] շուռ գալ կամ էլ հեռանալ սովորական հունից, այլ միշտ ստիպում էր նրան հոսել քաղաքի վրա, որովհետև աջ կողմում, եթե նա շարժվեր ուղիղ քաղաքի վրա, նրա առաջ ոչ մի արգելք չկար։ [Հուստինիանոսը] այդ բարձունքն ամբողջությամբ կտրեց, գետի ձախ կողմը փոսացրեց, հնարավոր դարձրեց նրա հոսքն այդ կողմով, իսկ աջ կողմում հսկայական քարերով մի շատ բարձր պատնեշ կանգնեցրեց. այդպիսով, երբ գետն իր սովորական հոսանքով է հոսում, քաղաքը չի զրկվում նրա բարիքներից, իսկ երբ վարարում ու հորդանում է, ապա ջուրը դեպի քաղաք է հոսում սովորականի պես՝ միջին չափով, իսկ ավելացած հորդառատ ջրերը մարդկային մտքից ու խոհեմությունից պարտված, ստիպված ընթանում են Հուստինիանոսի՝ ձիարշավարանի հետևի մասի մոտ փորած [նոր հունով]։ Բացի դրանից, նա ուղղեց գետի հոսանքի այն մասը, որ գտնվում է քաղաքի մեջ, նրա երկու ափերին պատ բարձրացրեց, որպեսզի նա չկարողանա հունից դուրս գալ, որով նա մի կողմից ապահովեց քաղաքի համար [գետի] ընձեռած օգտակարությունը, իսկ մյուս կողմից՝ վերացրեց նրա հետ կապված արհավիրքը։ Եդեսիայի պարիսպը և նախապարիսպը երկար ժամանակի ընթացքում հիմնականում ավերակների էին վերածվել։ Այդ պատճառով կայսրը երկուսն էլ վերակառուցեց, նորի տեսք տվեց և նախկինից ավելի ամուր դարձրեց։ Եդեսիայի պարսպի մի մասի դիմաց կա մի բարձունք, որը, լինելով քաղաքին շատ մոտ, կարծես կախված է նրա վրա։ Ահա այս [բարձունքը] դեռ հնում բնակիչները պարսպապատել էին և առել ընդհանուր պարսպի մեջ, որպեսզի նրա պատճառով քաղաքը [թշնամուն] մատչելի չդառնա։ Սակայն նրանք այս-

պես վարվելով այն առավել մատչելի դարձրին, որովհետև [բարձունքը] շրջապատող պատը շատ ցածր էր կառուցվել, այն էլ հարթավայրում, այնպես որ եթե երեխաները նույնիսկ փորձեին գրոհել, կարող էին գրավել։ Դրա համար [Հուստինիանոսը] քանդել տվեց այն և բարձունքը շրջապատեց նոր պարիսպով, որով լիակատար վերացվեց [թշնամու] բարձրից հարձակվելու վտանգը։ [Նոր պարիսպը բարձունքի] երկու լանջերով իջնում էր մինչև ստորոտը և այնտեղ միանում [քաղաքի ընդհանուր] պարսպին։

Նա քանդեց նաև Կարրեի և Կալլինիկոն քաղաքի պարիսպներն ու նախապարիսպները, որոնք երկար ժամանակի ընթացքում ավերվել էին և այժմ կատարելապես կառուցելով, դարձրեց միանգամայն անառիկ։ Բացի դրանից նա շատ ամուր պարիսպներով շրջապատեց և այժմյան շքեղությունը տվեց Բատնեում գտնվող բնակին, որն անցյալում անպարիսպ էր և անուշադրության մատնված։

8. Վերևում ես պատմեցի, թե ինչ ձևով կատարվեց Հուստինիանոս կայսեր [շինարարությունը] Միջագետքում և Օսրոենե կոչված [երկրում]։ Այժմ ես կպատմեմ այն մասին, թե ինչ կատարվեց Եփրատ գետի աջ ափին։ Հռոմայեցիների և պարսիկների սահմաններն այստեղ մոտավորապես այսպիսին են. երկու կողմից էլ միմյանց հարևանությամբ կան գյուղեր, որոնց բնակիչները և՛ կռվում են իրար հետ, և՛ հաշտվում, մի խոսքով վարվում են այն մարդկանց նման, որոնք տարբերվելով թե՛ սովորություններով, թե՛ պետական կարգով, բնակվում են սահմանամերձ վայրում։ Ինչ վերաբերում է այն երկրին, որն հնում կոչվում էր Կոմմագենե, իսկ այժմ Եփրատեսիա, ապա այստեղ իրար մոտիկ չեն բնակվում, որովհետև [այստեղ] հռոմայեցիների և պարսիկների սահմանը երկար տարածության վրա անապատ է, միանգամայն անբերրի և այնպիսի բան չունի, որ երկպառակության պատճառ դառնա։ Սակայն երկու կողմերն էլ անապատ տեղում, իրենց կողմից բնակեցված վայրերին մոտիկ, հում աղյուսից կառուցել էին ամրոցներ, ի միջի այլոց, որովհետև հարևանների կողմից երբևիցե որևէ ոտնձգություն տեղի չէր ունեցել և երկու կողմերն էլ համերաշխ ապրում էին, չունենալով թշնամանալու և ոչ մի պատճառ։ Դիոկլետիանոս կայսրն այս անապատում կառուցել էր նման երեք ամրոց, որոնցից մեկը՝ Մամբրի[6] կոչվածը, երկար ժամանակից վնասված լինելու պատճառով Հուստինիանոս կայսրը վերակառուցեց։

Այս ամրոցից մոտ հինգ մղոն հեռավորության վրա՝ դեպի հռո-

մայեցիների սահմանները, սարակինոս Օդոնաթոսի կին Զենոբիան անցյալում մի փոքր քաղաք էր հիմնադրել և իր անունով կոչել Զենոբիա[17]։ Բայց երկար ժամանակին ավերակ էր դարձրել նրա պարիսպը, և այն պատճառով, որ հռոմայեցիները բոլորովին անուշադրության էին մատնել այն, բնակիչներն էլ լքեցին, հեռացան։ Այդպիսով ահա, եթե պարսիկները ցանկանային անցնել հռոմայեցիների երկիրը, ապա վերջինները չէին էլ իմանա թշնամիների հարձակման մասին։ Հուստինիանոս կայսրը հիմնովին վերակառուցեց Զենոբիան, այնտեղ հաստատեց մեծաքանակ բնակչություն, կայազոր ու զորահրամանատար և հռոմեական սլետության համար այն դարձրեց հուսալի պահակակետ, իսկ պարսիկների համար՝ նրանց դեմ ուղղված պատվար։ Նա ոչ թե վերականգնեց քաղաքի նախկին կերպարանքը, այլ առաջվանից ավելի ամուր դարձրեց այն։ Նրան ընդհուպ շրջապատում են ժայռեր, որոնք հնարավորություն էին տալիս թշնամիներին բարձրից հարվածել պարսպի պաշտպաններին։ Մտահոգված լինելով վերացնելու այդ վտանգը, նա մի ուրիշ կառույց շինեց պարսպի վրա, հենց այդ ժայռերին, որը դառնալու էր մշտական ծածկույթ այստեղ մարտնչողների համար։ Նման կառուցվածքն անվանում են «թևեր», որովհետև այն կարծես թե ճախրում է պարսպի վրա։ Անհնարին է պատմել այն բոլորի մասին, ինչ կայսրը կատարեց Զենոբիայում։ Վերջինս գտնըվում է բնակավայրերից շատ հեռու և դրա համար անդադար վտանգի է ենթակա, իսկ հռոմայեցիներից էլ չէր կարելի օգնություն սպասել, որովհետև նրանք ևս հեռու էին գտնվում. այդ իսկ պատճառով նա առանձնապես լուրջ ուշադրության արժանացավ։ Սակայն ես շատ քիչ բան կպատմեմ այնտեղ կատարվածի մասին։

Զենոբիայի արևելյան կողմից, [քաղաքի] պարսպին շատ մոտիկ հոսում է Եփրատ գետը։ Այդ [գետի] մոտակայքում վեր են խոյանում բարձր ժայռեր, որոնք հնարավորություն չեն տալիս գետին այս վայրում տարածվելու. լեռներով, ժայռոտ ափերով սեղմըված, հոսանքն ընթանում է շատ նեղ հունով և երբ հորդառատ անձրևներից նա վարարում էր, ապա թափվում էր պարսպի վրա և ողողում ոչ միայն պարսպի հիմքերը, այլև նրա ատամնաշարը։ Ջուրը խախտում էր քարերի շարվածքը, քայքայում նրանց [կապող] շաղախը։ [Հուստինիանոսն] այստեղ մեծ որձաքարերից ամբողջ պարըսպի երկարությամբ մի անջրպետ կառուցեց, որով փակեց վարարած գետի հավելյալ ջրի հոսքը, և պարիսպը նման վտանգից այլևս անվնաս էր մնում, նույնիսկ եթե ջուրը ծփալով մեծ բարձ-

րության համար։ [Հուստինիանոսը] քաղաքի հյուսիսային պարիսպը ժամանակի ընթացքում բոլորովին ավերված գտնելով, նախապարսպի հետ միասին լրիվ քանդել տվեց և նորից կառուցեց, բայց ոչ նախկինի նման։ Այստեղ քաղաքի շենքերն իրար շատ մոտ էին կառուցված, մի բան, որ բնակիչներին դժվարություններ էր պատճառում. այդ պատճառով [Հուստինիանոսը], դուրս գալով նախկին պարսպի հիմքերի տեղից և նախապարսպից, նույնիսկ խրամից դուրս, այնտեղ կառուցեց [նոր պարիսպը], երևելի և անչափ գեղեցիկ, որով նա Զենոբիա քաղաքի սահմանները շատ ավելի ընդարձակեց։ Քաղաքի առաջ՝ արևմտյան կողմում գտնվում էր ինչոր մի բլուր, որի բարձրությունից թշնամիներն աներկյուղ կարողանում էին հարվածել [քաղաքի] պաշտպաններին, և ոչ պակաս չափով նաև քաղաքում գտնվողներին։ Հուստինիանոս կայսրը այս բլուրը երկու կողմից պատեց և Զենոբիա [քաղաքի] մեջ առավ, նրա փեշերն ամբողջությամբ ուղղեց, որպեսզի ոչ ոք չկարողանա այնտեղ բարձրանալ՝ վնասելու մտադրությամբ։ Բացի այդ, նա բլրի վրա մի ուրիշ ամրություն էլ կառուցեց և այդպիսով քաղաքը թշնամու համար դարձրեց միանգամայն անմատչելի։ Բլրից դուրս տեղանքը շատ ցածրադիր է և թշնամիների համար անհնարին է մոտենալ [քաղաքին]։ Իսկ այդտեղից անմիջապես վերև են բարձրանում արևմտյան կողմում գտնվող լեռները։ Կայսրը ոչ միայն քաղաքի ապահովության մասին հոգաց, այլև այնտեղ կառուցեց տաճարներ ու զորանոցներ։ Բացի այդ, նա [քաղաքի] համար կառուցեց հասարակական բաղնիքներ և սյունաշարքեր։ Այս բոլոր գործերի կատարումը իրենց վրա վերցրին ճարտարապետներ Իսիդորոսն ու Հովհաննեսը։ Հովհաննեսը ծագումով Բյուզանդիոնից էր, իսկ Իսիդորոսը՝ վերևում հիշատակված Իսիդորոսի եղբորորդին՝ Միլետից։ Նրանք երկուսն էլ երիտասարդ էին, բայց իրենց տարիքից ավելի բնական կարողություն ցուցաբերեցին և հմտորեն ի կատար ածեցին կայսեր նախագծումները։

9. Զենոբիայից հետո [նա անցավ] Սուրոն քաղաքին, որը գտնվում է Եփրատ գետի ափին։ Սրա պարիսպն այնքան թույլ էր, որ Խոսրովը, երբ մի անգամ գրոհեց նրա վրա, նույնիսկ կես ժամ դիմադրության չհանդիպեց և [քաղաքը] անմիջապես ընկավ պարսից ձեռքը։ Հուստինիանոսը վերականգնեց այս փոքր քաղաքը, ինչպես Կալլինիկոնը, ամբողջությամբ շրջապատեց այն ամուր պա-

*րըսպով, ապահովեց նախապարսպով, որպեսզի այն թշնամիների առաջ այլևս տեղի չտա։*

*Եփրատեսիայում կա երևելի սուրբ Սերգիոսին նվիրված մի տաճար։ Այս սրբի հանդեպ հին մարդիկ հարգանք ու պատիվ տածելով, վայրը անվանեցին Սերգիուպոլիս։ Նրանք այն շրջապատեցին շատ ցածր պարսպով, այնքանով որ կարողանան դիմադրել սերձակա սարակինոսների արշավանքներին. սարակինոսներն ի բնե անընդունակ են պաշարելու գործի մեջ, և ամենավատ պարիսպն անգամ, նույնիսկ կավաշենը, նրանց հարձակման թափը կարող է կոտրել։ Ժամանակի ընթացքում այս տաճարը շատ հարստացավ նվիրատվություններից և իր վրա ուշադրություն հրավիրեց։ Այդ բոլորը հաշվի առնելով, Հուստինիանոսն անմիջապես դիմեց աշխատանքի և ամուր պարսպով շրջապատեց [քաղաքը]։ Նա մեծ քանակությամբ ջուր ամբարեց և ավելի քան բավարարեց եղած պահանջը։ Այնտեղ նա կառուցեց նաև շենքեր և սյունաշարքեր, որոնք ամեն մի քաղաքի զարդն են կազմում, հաստատեց կայազոր՝ անհրաժեշտության դեպքում քաղաքը պաշտպանելու համար։ Եվ ճշմարիտ, երբ պարսից արքա Խոսրովը Սերգիուպոլիսը գրավելու մտադրությամբ մեծ զորք էր ուղարկել, անկարող լինելով կոտրել ամուր պաշտպանությունը, վերացրեց պաշարումը։*

*Նա նույնպիսի ուշադրության արժանացրեց և այն քաղաքներն ու ամրոցները, որոնք գտնվում են Եփրատեսիայի հեռավոր ծագերում, այն է՝ Բարբալիսսոսը, Նեոկեսարիան, Գաբուլոն կոչվածը, Եփրատ գետի ափին գտնվող Պենտակոմիան և Եվրոպոսը։ Նմանապես, նա տեսնելով, որ Հեմերիոս կոչվածի պարիսպները տեղ-տեղ կառուցվել էին առանց բավարար ուշադրության և թույլ, տեղ-տեղ էլ միմիայն կավից, նաև որ վայրում զգացվում էր ջրի մեծ պակասություն, որի համար նա թշնամիների համար միանգամայն դյուրամատչելի էր, [Հուստինիանոսը] այդ [պարիսպը] հիմնահատակ քանդեց և անմիջապես որձաքարերով, ինչպես որ պետքն էր, նորից կառուցեց ամբողջությամբ, տալով անհրաժեշտ բարձրությունը և լայնությունը։ Բացի այդ, նա ամրություններում ամենուրեք բազմաթիվ ջրամբարներ կառուցեց և բոլորը լցրեց անձրևի ջրով, ապա [Հեմերիոսում] կայազոր հաստատելով նրան հասցրեց այժմյան ապահովագույն վիճակին։ Եվ եթե մեկը գտնում է, որ շատ ժամանակ է պետք խոսել Հուստինիանոս կայսեր բոլոր բարեգործությունների մասին, այնուամենայնիվ չի զլանա ասելու, որ*

նա թագավորությունն ստացավ, որովհետև աստված մշտապես հոգ էր տանում հռոմեական ժողովրդի փրկության մասին։

Այդ բոլորին կարելի է ավելացնել նաև Հիերապոլիսը՝ այնտեղի քաղաքներից ամենաերևելին, որը ենթակա լինելով թշնամու կամայականությանը, փրկվեց միայն [Հուստինիանոսի] հոգատարությամբ։ Այս քաղաքի [պարիսպը] անցյալում իր մեջ էր շրջափակում ամայի ընդարձակ տարածություններ, այդ իսկ պատճառով անհնարին էր այն պաշտպանել։ [Հուստինիանոսն] ազատեց քաղաքն իր անօգուտ տարածություններից, փոքրացրեց պարսպի շրջանակները, որով այն ավելի ամուր դարձավ, և ամեն ինչով ապահովելով այն, վերածեց շատ ամուր քաղաքի։ Այդ բոլորից բացի նա հետևյալ բարեգործությունն էլ արեց։ Քաղաքի մեջտեղում գետնի խորքերից անընդհատ խմելու ջուր էր բխում, որը հենց այդ տեղում առաջացնելով մի լայն լիճ՝ փրկարար միջոց էր դառնում թշնամիներից պաշարվելու ժամանակ։ Խաղաղ պայմաններում նա անհրաժեշտ չէ, որովհետև դրսից շատ ջրեր են ներս հոսում։ Տեղի բնակիչները երկար ժամանակ ապրելով խաղաղության մեջ և այդ [լճի] կարիքը չզգալով, անուշադրության էին մատնել այն։ Մարդկային բնությունն այնպիսին է, որ երջանկության ժամանակ չի ուզում մտածել հնարավոր դժբախտությունների մասին։ Երանք լիճը շարունակ լցնում էին կեղտով, լողանում այնտեղ, լվացք անում, ամբողջ աղբն այնտեղ թափում...

Եփրատեսիայում գտնվում էին նաև այլ բնակավայրեր՝ Զեվգման[17] և Նեոկեսարիան, որոնք միայն անունով էին քաղաքներ և նրանց պարիսպները կարծես ցանկապատ լինեին։ Նրանք, մի կողմից, իրենց թերի շինարարության պատճառով, առանց որևէ դժվարության մատչելի էին թշնամիներին, որոնք աներկյուղ կարող էին ցատկել նրանց վրայով, իսկ մյուս կողմից էլ կարելի չէր նրանցով պաշտպանվել, որովհետև շատ նեղ լինելով, պաշտպանները կանգնելու տեղ չունեին։ Հուստինիանոս կայսրն այդ [քաղաքները] պարսպապատեց բավական մեծ լայնության ու բարձրության ունեցող խոշոր պարիսպներով և ամրացնելով ուրիշ [կառույցներով], հիրավի քաղաքներ դարձրեց, որոնք այլևս չէին վախենում թշնամու հարձակումներից։

10. Հուստինիանոս կայսրը միանգամայն ապահով ու վայելուչ դարձրեց նաև այն քաղաքները, որոնք [անցյալում] Խոսրովը, այդ բարբարոսը, դրժելով հավիտենական հաշտության ուխտով աված

երդումները, մոռանալով իրենց վճարվող դրամական գումարի մասին, գրգռված Հուստինիանոս կայսեր՝ Լիբիային և Իտալիային պատերազմով տիրանալու պատճառով իրենց համակած նախանձից, գրավել էր, իր կառավարության մեջ արհամարհելով տված երդումները։ Հարմար առիթ համարելով այն, որ հռոմեացիների զորքի մեծ մասը գտնվում է արևմուտքում, նախքան հռոմեացիների երկիրը, երբ դեռ հռոմեացիները ոչինչ չգիտեին թշնամիների հարձակման մասին։ Հուստինիանոս կայսրն այնպես ապահով ու գեղեցիկ դարձրեց [այդ քաղաքները], որ բոլորն էլ այժմ նախկինից շատ ավելի բարեկեցիկ են և երկյուղ չեն զգում․ բարբարոսների չարագործ արշավանքներից կամ որևէ ոտնձգությունից ու մեքենայությունից։

Ամենամեծ ուշադրությանն արժանացավ Անտիոքը[20], որն այժմ կոչվում է Թեոպոլիս։ Նա նախկինից շատ ավելի գեղեցիկ ու ապահով դարձրեց այն։ Հնում նրա պարիսպը չափից ավելի երկար էր, և ընդգրկում էր մեծ տարածություններ։ Առանց որևէ անհրաժեշտության այն պարփակում էր և՛ դաշտեր, և՛ ժայռոտ բարձունքներ, որի պատճառով ենթակա էր ամեն տեսակ վտանգների։ Հուստինիանոս կայսրը [պարսպի] շրջանակները փոքրացրեց այնքան, ինչքան պետք էր քաղաքը հուսալի կերպով պաշտպանելու համար միայն, և ո՛չ թե այն, ինչ անցյալում։ Պարսպի ներքևի մասում քաղաքը վտանգավոր չափով լայնանում էր և գտնվում փափուկ հողի վրա, և, բացի դրանից, պարսպի անչափ երկարության պատճառով այն անպաշտպան էր մնացել։ [Հուստինիանոսը] պարիսպը փոքրացրեց, այդ մասում քաղաքը խոհեմ կերպով նեղացրեց և դրանով պաշտպանության հնարավորություն ստեղծեց։ Իսկ Օրոնտես գետը, որն անցյալում ոլոր-մոլոր հոսելով ողողում էր [քաղաքը], մոտեցրեց պարսպին՝ փոխելով նրա հունը և հոսանքն անելով [պարսպին] շատ մոտ [փորված] ջրանցքի մեջ. դրանով նա մի կողմից վերացրեց ողողման սպառնալիքը, իսկ մյուս կողմից Օրոնտես գետի հոսանքը օգտագործեց քաղաքի պաշտպանության համար։ Այստեղ նա գետի վրա կառուցեց ափերն իրար միացնող նոր կամուրջներ. [գետը] հոսեցնելով [ջրանցքի միջով] քաղաքից հեռու, թողեց այն ընթանալ իր սովորական հունով։ Ինչ վերաբերում է [պարսպի] բարձր կողմին, [Հուստինիանոսն] այստեղ հետևյալը կատարեց։ Լեռան Օրոկասիադա կոչված բարձունքում պարսպից դուրս, բայց նրան շատ մոտ, գտնվում է մի ժայռ, որը շատ խոցելի է դարձնում պարիսպը։ Խոսրովն առանց որևէ դժվա-

րության, հենց այստեղից գրավեց քաղաքը, ինչպես ես իր տեղում ասել եմ։ Պարսպից ներս այս վայրն ամայի է և շատ դժվարանցանելի՝ բարձրաբերձ ժայռերի և անանցանելի կիրճերի պատճառով, որոնք փակում են ճանապարհները և այն տպավորությունը ստեղծում, որ այդ պարիսպը պատկանում է ոչ թե անտիոքացիներին, այլ օտարին։ [Հուստինիանոսը] մնաս բարով ասաց այդ ժայռին, որը լինելով պարսպին շատ մոտ, միանգամայն մատչելի էր դարձնում այն և որոշեց քաղաքի պարիսպներն ավելի հեռու տանել, որովհետև փորձը հաստատել էր նախկին կառուցողների կարճատեսությունը։ Նա հարթեց նախկինում ժայռոտ տեղանքը, հատկապես պարսպից ներս, և այն մատչելի դարձավ ոչ միայն հետևակի, այլև հեծյալների համար, դեռ ավելին, նույնիսկ սայլերը կարող էին այդտեղից անցնել։ [Հուստինիանոսը] կառուցեց նաև բաղանիքներ, իսկ այն ժայռերում, որոնք գտնվում էին պարիսպներից ներս՝ ջրամբարներ։ Յուրաքանչյուր աշտարակի մեջ փորեց ջրհոր և անձրևաջրի օգնությամբ վերացրեց նախկինում եղած ջրի պակասը։

Արժե խոսել նաև այն շինարարության մասին, որ կատարվեց նույն լեռներից հոսող հեղեղատի վրա։ Քաղաքի մոտ բարձրանում են երկու լեռներ, որոնք իրար շատ են մոտենում։ Սրանցից մեկը կոչվում է Օրոկասիադա, իսկ մյուսը՝ Ստավրին։ Նրանց արանքում մի անտառախիտ ձոր է, որի միջով հոսում է անձրևների ժամանակ հեղեղատի վերածվող մի գետակ, որը կոչվում է Օնոպնիկտես։ Հոսելով բարձրից, այն ողողում էր պարիսպը և երբ հորդառատ էր դառնում, ջուրը լցվում էր քաղաքի նեղ ճանապարհները և մեծ չարիք պատճառում բնակիչներին։ Հուստինիանոս կայսրն այդ չարիքը վերացրեց հետևյալ կերպ։ Գետակին մոտ գտնվող պարսպի առջև, այնտեղ, որտեղից հեղեղատը սպառնում էր պարսպին, երկու լեռների արանքում նա մի մեծ ամբարտակ կառուցեց, որը փակում էր խոր ձորակը, որպեսզի այլևս փրփրած գետը չկարողանա առաջ հոսել, այլ երկար ժամանակ այստեղ մնա ու լճանա։ Այդ պատնեշի վրա նա բացեց դռնակներ, որպեսզի հեղեղատը նրանց միջով հոսի աստիճանաբար, և ո՛չ թե ուժգին, ամբողջ հորձանքով չթափվի պարսպի վրա, չողողի և վնաս չհասցնի քաղաքին։ Այժմ հանդարտված գետը խաղաղ, ինչպես ասացի, հոսում է ջրանցքի միջով ուր որ ցանկանան մարդիկ։

Ահա այսպես վարվեց Հուստինիանոս կայսրը Անտիոքի պարսպի հետ։ Նա վերականգնեց ամբողջ քաղաքը, որն հրդեհվել էր թշնամիների կողմից։ Ամեն ինչ մոխիր էր դարձել և քանդվել, մի-

այն բազմաթիվ կույտեր էին բարձրանում հրդեհված քաղաքում և անտիոքացու համար անհնարին էր գտնել նախապես իրեն պատկանած հողամասը։ [Հուստինիանոսը] հրամայեց դուրս բերել քանդված [շենքերի] ամբողջ աղբը, մաքրել հրդեհված տների ավերակները, բայց որովհետև բոլորովին չէին մնացել հասարակական սյունաշարքեր կամ սյունազարդ գավիթներ, ո՛չ հրապարակ, ո՛չ էլ քաղաքը թաղամասերի բաժանող փողոցներ, արգելեց որևէ շենք կառուցել։ Կայսրն անհապաղ աղբը հեռացրեց քաղաքից, այն ազատեց թափված կույտերից և ամենից առաջ քաղաքի ամբողջ տարածությունը սալահատակեց հսկայական քարերով. այնուհետև կառուցեց սյունաշարքեր և հրապարակներ, բացեց փողոցներ, անցկացրեց առուներ, կառուցեց աղբյուրներ, շատրվաններ, ինչով կարելի է քաղաքը գեղեցկացնել, ապա նաև թատրոններ ու բաղնիքներ, այն զարդարեց քաղաքի բարեկեցության մասին վկայող հասարակական ամենատարբեր շենքերով և, բերելով մեծ թվով վարպետներ ու բանվորներ, հնարավորություն տվեց բնակիչներին ավելի հեշտ ու դյուրին կառուցել իրենց տները։ Այսպիսով Անտիոքը այժմ նախկինից շատ ավելի երևելի դարձավ։ [Հուստինիանոսը] այստեղ կառուցեց նաև աստվածածնին նվիրված մեծ տաճար, որի գեղեցկությունը և շքեղությունը անհնարին է նկարագրել։ Այդ [տաճարը] նա պատվեց դրամական մեծ հատկացումներով։ Նա կառուցեց նաև Միքայել հրեշտակապետի հսկայական տաճարը, հոգաց այստեղի աղքատ հիվանդների մասին, նրանց հանգստի և բուժման համար կառուցելով հիվանդանոց՝ տղամարդկանց և կանանց համար առանձին։ Նա նույն չափով հոգում էր նաև օտարերկրացիների մասին, որոնք ժամանակ առ ժամանակ ժամանում էին այստեղ։

11. Նա վերանորոգեց նաև Խալկիս քաղաքի պարիսպը, որը հենց սկզբից սխալ էր կառուցվել և ժամանակի ընթացքում փուլ եկել, ինչպես և նախապարիսպը. այդպիսով, նախկինից ավելի ամուր դարձրեց և տվեց այն տեսքը, որ ունի նա այժմ։

Ասորիքում կար անուշադրության մատնված Կյուրոս անունով մի փոքր քաղաք, որը հնում կառուցել էին Պաղեստինից մարաց զորքի կողմից գերեվարված և Ասորեստան տեղափոխված հրեաները, որոնք շատ ժամանակ անց ազատ էին արձակվել Կյուրոս արքայի կողմից։ Նրանք, երախտագետ լինելով, որպես հատուցում այդ վայրն անվանեցին Կյուրոս։ Ժամանակի ընթացքում Կյուրոս քաղաքն անուշադրության մատնվեց և բոլորովին անպարիսպ մնաց։

Հուստինիանոս կայսրը, մի կողմից հոգ տանելով պետության [ապահովության] մասին, իսկ մյուս կողմից մեծ հարգանք տածելով սուրբ Կողմայի և Դամիանոսի հանդեպ, որոնց մարմինները մինչև օրս էլ [թաղված են] այդ քաղաքին մոտ վայրում, Կյուրոս քաղաքը դարձրեց բարեկեցիկ և երևելի, միանգամայն ամուր ու ապահով պարսպով, [հաստատեց] այնտեղ մեծաքանակ կայազոր, կառուցեց հասարակական մեծ շենքեր և կատարեց շատ փայլուն այլ շինարարություն։ Այդ քաղաքը դեռ հնուց տառապում էր ջրի սակասից, իսկ դրսում կար խմելու ջրով հարուստ մի մեծ աղբյուր, որը սակայն, բնակիչներին ոչ մի օգուտ չէր տալիս, որովհետև նրանք ոչ մի հնարավորություն չունեին այնտեղից ջուր բերելու, դա կապված էր մեծ դժվարությունների և վտանգների հետ։ Նրանք ստիպված էին այնտեղ գնալ շրջանցիկ ճանապարհներով, որովհետև մեջտեղում գտնվում էր զառիթափ և բոլորովին անանցանելի մի վայր, այնպես որ նրանք շատ հեշտ ընկնում էին դարան մտած թշնամու ձեռքը։ [Հուստինիանոսն] ահա մի ջրանցք անցկացրեց քաղաքի պատերից սկսած մինչև աղբյուրը, բայց ոչ բաց, այլ ծածկված, որով նա [քաղաքի բնակիչներին] հնարավորություն տվեց առանց մեծ հոգնության ու վտանգի ջուր ստանալ։

Նա միանգամայն ամուր կերպով վերականգնեց նաև Խալկիս քաղաքի հիմնովին ավերված և անպաշտպան դարձած ամբողջ պարիսպը և այն ամրացրեց նախապարիսպով։ Ասորիքի մնացած քաղաքները և ամրոցները նա նույն ձևով կարգի բերեց և նախանձելի դարձրեց։

Ահա այս ձևով Հուստինիանոս կայսրը ապահովեց Ասորիքի անվտանգությունը։ Լիբանանին սահմանակից Փյունիկեի ինչ որ տեղում հին մարդկանց կողմից ամայի վայրում կառուցված Պալմիրա անունով մի քաղաք կա, որը գտնվում էր թշնամի սարակինոսների համար ճանապարհի վրա։ Բայց հենց այդ նպատակով էլ նախկինում կառուցել էին այդ [քաղաքը], որպեսզի հռոմայեցիների երկրի վրա բարբարոսների հանկարծակի հարձակումներն անվրեպ չմնան։ Ահա այս [քաղաքը], որ երկար ժամանակը մեծ մասամբ ամայի էր դարձել, Հուստինիանոսը շատ հզոր ամրություններով պաշտպանեց, ապահովեց ջրով և կայազորով և սանձեց սարակինոսների արշավանքները։

# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

Նախորդ գրքում ես խոսեցի այն մասին, թե ինչպես Հուստինիանոս կայսրը ամրություններով ապահովեց Արևելքը։ Ձեռնարկելով պատմել հռոմեական պետության պարսկական սահմանների վրա նրա կառուցած ամրությունների մասին, ես նպատակահարմար գտա սկսել հայերից, որոնք բնակվում են Ամիդից մինչև մյուս Թեոդոսուպոլիսը[2] պարսիկների դիմաց ընկած շրջաններում։ Նախքան [Հայաստանում] կատարված կառուցումների մասին խոսելը, ես կարևոր եմ համարում հիշատակել, թե ինչպես կայսրը նախկինում չափազանց անապահով վիճակում ապրող հայերին արժանացրեց այժմյան կայուն անվտանգության։ Նա այդտեղի բնակչությանը փրկեց ոչ այնքան շինարարությամբ, որքան այլ խնդիրներում իր ցույց տված հոգատարությամբ, որի մասին ես այստեղ մանրամասն կպատմեմ։ Սկսենք մի քիչ հեռվից։

Հայերը հնում ունեցել են թագավոր իրենց ցեղից։ Այդ մասին հիշատակություններ կան հին պատմությունը շարադրող հեղինակների մոտ։ Երբ Ալեքսանդր Մակեդոնացին գահընկեց արեց պարսից արքային, պարսիկները խոնարհաբար տանում էին ստրկական լուծը, բայց պարթևները մակեդոնացիների դեմ ապստամբություն բարձրացնելով և հաղթանակ տանելով, դուրս շպրտեցին նրանց և գրավեցին մինչև Տիգրիս գետն ընկած տարածությունը։ Դրանից հետո հինգ հարյուր տարվա ընթացքում պարսից պետությունը գտնվում էր նրանց ձեռքում, մինչև այն ժամանակ, երբ հռոմայեցիների կայսր դարձավ Մամայայի որդի Ալեքսանդրը։ Այն ժամանակ էր, որ պարթևական արքաներից մեկը, իր Արշակ անունով եղբորը հաստատեց Հայոց թագավոր, ինչպես այդ մասին հիշատակում է Հայոց պատմությունը[4]։ Ոչ ոք ահա չկարծե, որ Արշակունիները հայկական ծագում ունեն։ Եվ այսպես [հայերի] և [պարթևների] միջև հինգ հարյուր տարվա ընթացքում խաղաղություն էր տիրում, որը պայմանավորված էր [իշխող հարստությունների] ազգակցական կապերի առկայությամբ։ Հայոց թագավորը նստում էր Մեծ Հայք կոչված [երկրում], լինելով գեռ վաղուց հռոմեական կայսեր հպատակ։ Որոշ ժամանակ անց հայոց մի ինչ որ [ուրիշ] Արշակ թագավոր[5] ունենում է երկու որդի, որոնց անուններն էին Տիգրան և Արշակ։ Իր կյանքի վերջում նա կտակ թողեց, որի համաձայն երկու որդիներն էլ դառնում էին իշխանության ժառանգորդներ։ Բայց նա պետությունը հավասար կերպով չբաժանեց նրանց

միջև։ Նա Տիգրանին թողեց քառապատիկ ավելի բաժին։ Ահա հայր Արշակը. այս կերպ կարգագրելով թագավորության գործերը, վախճանվեց, իսկ որդի Արշակը, որին փոքր բաժին էր հասել, շատ զայրացած և գժգոհ, հարց բարձրացրեց հռոմայեցիների կայսեր առջև, հույս ունենալով բոլոր միջոցներով վերացնել եղբոր թագավորությունը և հոր անարդարացի որոշումը՝ չեղյալ հայտարարել։ Այն ժամանակ հռոմայեցիների վրա իշխում էր Արկադիոսի[6] դեռ շատ մանկահասակ որդի Թեոդոսը[7]։ Տիգրանը, վախենալով կայսեր հաշվեհարդարից, իր թագավորության հետ միասին հանձնվեց պարսիկներին, գերադասելով ապրել Պարսկաստանում որպես մասնավոր անձնավորություն, քան թե եղբոր հետ արդարացի լուծել հարցը և միասին, արդար ու օրինավոր թագավորել հայոց վրա։ Արշակն իր հերթին ոչ պակաս երկյուղ զգալով պարսիկների և իր եղբոր ոտնձգություններից, որոշ պայմաններով, որոնց մասին ես խոսել եմ պատերազմների մասին գրքում[8], իր թագավորությունը զիջեց Թեոդոս կայսեր։ Եվ ահա որոշ ժամանակ Հայոց երկիրը դարձավ հռոմայեցիների և պարսիկների կռվախնձոր և վերջ ի վերջո նրանք եկան համաձայնության, որ պարսիկները տիրեն Տիգրանի բաժնին, հռոմայեցիները՝ Արշակի։ Երկու կողմերն էլ այդ հաստատեցին պայմանագրով, որից հետո հռոմայեցիների կայսրը Հայոց իշխան էր նշանակում երբ որ ցանկանար և ում որ ցանկանար։ Այդ իշխանին անվանում էին, ինչպես և այժմ, Հայաստանի կոմես[9]։

Բայց որովհետև այդպիսի ղեկավարությունը, զուրկ լինելով ռազմական ուժից, ի վիճակի չէր գիմադրելու թշնամիների հարձակումներին, և Հուստինիանոս կայսրն էլ համոզվեց, որ դրա պատճառով Հայաստանը մշտապես տակնուվրա է լինում ու, բացի դրանից, բարբարոսների համար այն դյուրամատչելի է, ապա վերացրեց այդ իշխանությունը և հայերի վրա նշանակեց զորավար[10], թշնամուն գիմադրելու համար տալով նրան բավարար քանակությամբ զորք։ Ահա նա այդպես տնօրինեց Մեծ Հայք[11] կոչված [երկրի] գործերը։ Ինչ վերաբերում է մյուս Հայքին, [illegible] գտնվում է Եփրատ գետից այս կողմ և տարածվում է մինչև Ամիդ քաղաքը, այնտեղ իշխում էին հինգ հայ սատրապներ[12], ո[illegible] իշխան[illegible]ը ժառանգական էր և ցմահ։ Նրանք հռոմայեցիների կայսրից ստանում էին միմիայն նշանակներ։ Այդ նշանակների մասին արժե խոսել, քանի որ դրանք ոչ ոք չի տեսնելու այլ[illegible]։ Դա բրդյա քղամիդ էր, սակայն ոչ թե ոչխարի բրդից, այլ ծովից հավաքված։ Այդ

բուրգը բուսնում է պիննոս կոչված ծովային կենդանիների վրա։ Ծիրանիի այն մասը, որի վրա սովորաբար գցվում էր բեհեզը, ոսկուց էր։ Քղամիդի վրա ամրացված էր լինում ոսկե ճարմանդ՝ մեջտեղում թանկագին քար։ Այդ ճարմանդից ոսկե լայն շղթայով կախված էր երեք հակինթ։ [Քղամիդից բացի] կար նաև մետաքսյա պատմուճան, ամենուրեք պաճուճված ոսկե զարդերով, որոնց պլումիա են անվանում, և մինչև ծունկը հասնող կարմիր կոշիկներ, որոնք սովորաբար հագնում են հռոմայեցիների և պարսից թագավորները[13]։

Հռոմեական զորքը երբևիցե օգնություն չի ցուցաբերել ո՛չ Հայոց թագավորին, ո՛չ էլ սատրապներին։ Պատերազմական գործերում նրանք ինքնուրույն էին։ Որոշ ժամանակ անց, Զենոնի թագավորության միջոցին, երբ Իլլոսն ու Լեոնտիոսը ապստամբություն բարձրացրին կայսեր դեմ[14], սատրապներից մի քանիսը որոշեցին բացահայտ կերպով նրանց միանալ։ Այդ էր պատճառը, որ երբ Զենոն կայսրը ճնշեց Լեոնտիոսի և Իլլոսի [ապստամբությունը], մի շատ թույլ և աննշան իշխանություն ունեցող սատրապի՝ Բալաբիտենե[15] կոչված երկրում թողեց նախկինի պես իշխել միայն, իսկ մնացած բոլորին, զրկելով իշխանությունից, չտվեց այն նրանց ցեղակիցներին, այլ, ինչպես հռոմեական բոլոր մյուս իշխանություններում էր, դարձրեց ոչ ժառանգական՝ ըստ կայսեր ցանկության։ Բայց նրանց իշխանության տակ եղած զորքը բաղկացած էր ոչ թե հռոմայեցիներից, այլ փոքրաքանակ հայերից, ինչպես ընդունված էր հնում, որի պատճառով էլ նրանք ի վիճակի չէին դիմադրել թշնամիների հարձակումներին։ Իմանալով այդ, Հուստինիանոս կայսրն անմիջապես վերջ տվեց սատրապների իշխանությանն և այնտեղի ցեղերի վրա[16] նշանակեց երկու, այսպես կոչված, դուքսերի։ Նա նրանց տվեց հռոմեական մեծաքանակ զորք, որպեսզի պահպանեն հռոմեական սահմանները, իսկ նրանց համար կառուցեց հետևյալ ամրությունները։

2. Ես կսկսեմ Միջագետքի շրջաններից, որպեսզի իմ այս պատմությունը վերևում ասվածի շարունակությունը լինի։ [Հուստինիանոսն] այն հայկական ցեղերի վրա իշխող [երկու] իշխաններից՝ դուքս[17] կոչվածներից մեկին հաստատեց Մարտիրոպոլիս[18] կոչված քաղաքում, իսկ մյուսին՝ մի ամրոցում, որն անվանում են Կիթարիզոն[19]։ Ես այժմ կբացատրեմ, թե հռոմեական պետության ո՛ր շրջանում են գտնվում այս վայրերը։ Սոփանենե[20] կոչված Հայ-

քում գտնվում է Մարտիրոպոլիս անունով քաղաքը՝ Նիմֆիոս[21] գետի ափին, թշնամիներին ամենից մոտ վայրում, որովհետև այստեղ հռոմայեցիների և պարսիկների սահմանը Նիմֆիոս գետն է։ Գետի մյուս ափին է գտնվում Արքսանենե երկիրը[22], որ դեռ վաղուց հպատակ էր պարսիկներին։ Այն պատճառով, որ [Մարտիրոպոլիսը] հռոմայեցիների կողմից անուշադրության էր մատնված, նա շարունակ ենթակա էր բարբարոսների վտանգին։ Օրինակ, երբ Անաստասիոսի թագավորության օրոք պարսից արքա Կավադը ներխուժեց հռոմայեցիների երկիրը, նա զորքը տարավ Մարտիրոպոլսի վրայով, որովհետև նա գտնվում էր Ամիդից լավ քայլող մարդու համար մեկ օրվա ճանապարհից մի քիչ ավելի հեռավորության վրա։ Նա քաղաքը գրավեց չափազանց հեշտությամբ, ի միջի այլոց, առանց պաշարելու, հարձակվելու կամ գրոհելու, այլ պարզապես ասելով, որ գալիս է, որովհետև այդտեղի բնակիչները, լավ գիտենալով, որ իրենք մի վայրկյան անգամ ի վիճակի չեն դիմանալ պաշարման (նրանք տեսել էին, որ մարերի զորքը արդեն մոտեցել է), Սոփանենեի սատրապի սատրապական հանդերձանքը կրողի՝ Թեոդորոսի հետ միասին անմիջապես գնացին Կավադի մոտ, հանձնելով նրան և՛ իրենց, և՛ Մարտիրոպոլիսը, ինչպես նաև երկու տարվա պետական հարկերը։ Կավադը այդ բանից գոհ, ձեռք չտվեց ո՛չ քաղաքին, ո՛չ էլ [շրջակա] երկրին՝ որպես պարսից իշխանության պատկանող, բնակիչներին էլ ոչ մի վնաս չհասցրեց, ոչ մի ավարառություն չարեց, քաղաքում ոչ մի փոփոխություն չմտցրեց, այլ նույն Թեոդորոսին նշանակեց սատրապ և որպես երախտագիտության ապացույց նրան տվեց իշխանության նշանակներ, որպեսզի պահպանի պարսից երկիրը։ Այնուհետև նա զորքը առաջ տանելով, պաշարեց ու գրավեց Ամիդը և վերադարձավ պարսից երկիրը։ Այդ մասին ես պատերազմների մասին գրքում ասել եմ[23]։ Անաստասիոս կայսրը, լավ գիտենալով, որ անհնարին էր փրկել ոչ մի ամրություն չունեցող Մարտիրոպոլիսը թշնամիների հարձակումից, բոլորովին չզայրացավ Թեոդորոսի և սոփանենեցիների վրա, այլ շատ շնորհակալություն հայտնեց նրանց այդ նախաձեռնության համար։ Մարտիրոպոլսի պարսպի հաստությունը մոտ չորս ոտնաչափ էր, իսկ բարձրությունը՝ մինչև քսան, այնպես որ թշնամիները կարող էին այն գրավել ոչ միայն գրոհով, կամ մեքենաների օգնությամբ, այլ պարզապես շատ հեշտությամբ նրա վրայից ներս ցատկելով։

Այդ պատճառով Հուստինիանոս կայսրը մտածեց հետևյալը։ Պարսպից դուրս հիմքեր փորեց և կառուցեց մի այլ պարիսպ՝ չորս

ոտնաչափ հաստությամբ, երկու պատերի արանքում թողնելով նույնպես չորս ոտնաչափ լայնությամբ տարածություն։ Այդ [նոր] պարիսպը ևս նա բարձրացրեց քսան ոտնաչափ և այնպես արեց, որ բոլոր չափերով այն համընկնի նախկին պարսպին։ Դրանից հետո նա այդ երկու պատերի միջև եղած տարածությունը լցրեց քարերով և կրաշաղախով և այդպիսով ստացվեց տասներկու ոտնաչափ լայնությամբ մի կառույց։ Դրա վրա մոտավորապես նույն հաստության պարիսպ բարձրացրեց և դարձրեց նախկինի կրկնապատիկը։ Բացի դրանից, նա քաղաքի համար կառուցեց ամուր նախապարիսպ, մի խոսքով, այն բոլորը, ինչ անհրաժեշտ է քաղաքի ամրությունների պաշտպանության համար։

3. Մարտիրոպոլսից արևմուտք գտնվում է Ֆեյսոն անունով վայրը, նույնպես Սոֆանենե կոչվող Հայքում, Մարտիրոպոլսից մեկ օրվա ճանապարհից մի քիչ պակաս հեռավորության վրա։ Այս վայրից այն կողմ, մոտ ութ մղոն հեռավորության վրա բարձրաբերձ և բոլորովին անանցանելի լեռներն իրար միանալով կազմում են երկու՝ իրար շատ մոտ գտնվող լեռնանցքներ, որոնց սովորաբար կոչում են կլեյսուրներ։ Պերսարմենիայից Սոֆանենե գնացողների համար, որտեղից էլ նրանք գնան՝ պարսկական սահմաններից թե Կիթարիզոն ամրոցի վրայով, պետք է անցնեն միայն այդ երկու լեռնանցքներից։ Տեղացիք [լեռնանցքներից] մեկին անվանում են Իլլիրիսոս, իսկ մյուսը՝ Սաֆխաս[24]։ Թշնամիներին այս ճանապարհից զրկելու համար, այս վայրերը կարոտ էին առավել ապահովության և հոգատարության. ընդհակառակը, անցյալում մարդիկ անպաշտպան էին թողել դրանք։ Հուստինիանոս կայսրը և՛ Ֆեյսոնում, և՛ լեռնանցքներում նշանավոր և անառիկ ամրություններ կառուցեց, կայազոր հաստատեց և այդպիսով երկիրը բարբարոսների համար միանգամայն անմատչելի դարձրեց։ Ահա այն, ինչ կատարեց Հուստինիանոս կայսրը Սոֆանենե երկրում։

[Հուստինիանոսն այնուհետև] Կիթարիզոն վայրում, որը գտնվում է Ասթիանենե[25] կոչված [երկրում], բարձրադիր տեղում, հսկայական, միանգամայն անառիկ և բոլորովին նոր ամրոց կառուցեց։ Նա մշտահոս ջուր բերեց, բնակիչներին ամեն ինչով ապահովեց և, ինչպես արդեն ասել եմ, մյուս դուքսին բավական մեծ կայազորով հաստատեց այստեղ։ Այդ ձևով ահա նա ապահովեց հայկական ցեղերի անվտանգությունը։

Կիթարիզոնի, Թեոդոսուպոլսի և Երկրորդ Հայքի մեջտեղում

գտնվում է Խորզանե[26] երկիրը, որի տարածությունը մոտ երեք օրվա ճանապարհ է։ Նա պարսիկների հետ ոչ մի սահմանագիծ չունի՝ լիճ, գետի հոսանք, կամ լեռնանցք։ Նրանց սահմաններն այստեղ խառնիխուռն են, այնպես որ բնակիչները, որոնք կա՛մ հռոմայեցիներին, կա՛մ էլ պարսիկներին են հպատակ, մեկը մյուսից որևէ ոտնձգության մասին կասկածելու ոչ մի վախ չունեն։ Ընդհակառակը, նրանք իրար միջև խնամիական կապեր են հաստատում, առևտուր անում և միասին երկրագործությամբ զբաղվում։ Իսկ այն դեպքում, երբ թագավորի հրամանով որևէ կողմի զորահրամանատարները զորքով հարձակվեն մյուս կողմի վրա, հարևաններին միշտ գտնում են անպաշտպան, որովհետև իրար շատ մոտ գտնվող անչափ մարդաշատ բնակավայրերը գեռ հնուց ոչ մի ամրություն չունեին։ Այդ էր պատճառը, որ պարսից արքայի համար հռոմեական սահմաններն այստեղից անցնելը շատ դյուրին ու հեշտ գործ էր, մինչև որ Հուստինիանոս կայսրը այս հարցը լուծեց հետևյալ կերպ։ Այդ երկրի մեջտեղում գտնվում է Արտալեսոն[27] անունով բնակավայրը, որն ամրագույն պարսպով շրջապատելով, գարձրեց ամենաանառիկ ամրոց, այնտեղ հաստատեց կայազոր, մշտական զորահրամանատարի գլխավորությամբ, որին հռոմայեցիները լատիներեն լեզվով անվանում են դուքս։ Ահա այսպես [Հուստինիանոսը] պարսպապատեց ամբողջ այդ հեռաստանը։

4. Կայսրն այսպիսի գործունեություն ծավալեց այնտեղ։ Այժմ ես կպատմեմ այն մասին, թե ինչ արեց նա մյուս Հայաստանում։ Սատալա քաղաքն[28] անցյալում քիչ հույսեր էր ներշնչում, որովհետև գտնվում էր թշնամու երկրին մոտիկ և հարթավայրում, նրան շրջապատող բազմաթիվ բլուրների ստորոտում։ Այդ պատճառով նա կարիք ուներ հզոր պարիսպների՝ ընդդեմ թշնամու հարձակումների։ Հակառակ այդպիսի տեղանքին, պարիսպներն էլ խախուտ էին, որովհետև կառուցվել էին սխալ սկզբունքով, առանց անհրաժեշտ ջանքերի և բացի դրանից երկար ժամանակից ամենուրեք ճեղքեր էին տվել։ Կայսրը ամբողջությամբ քանդեց [պարիսպը] և նորը կառուցեց, այնքան բարձր, որ կարծես դերազանցում է շրջակա բլուրների բարձրությանը և այնքան լայն, որ կարողանա անվնաս կրել այդպիսի մեծ բարձրությունը։ Նրա շուրջը կառուցելով նաև ամուր նախապարիսպ, ապշեցրեց թշնամիներին։ Նա Սատալայից ոչ շատ հեռու մի չափազանց հզոր ամրոց կառուցեց Օսրոենե[29] կոչված վայրում։

Այդ նույն երկրում ուղղաբերձ բլրի գագաթին գտնվում է հնում կառուցված մի ամրոց, որը հռոմայեցի զորավար Պոմպեոսը գրավելով և պատերազմով տիրանալով երկրին, շատ ամրացրեց և անվանեց Կոլոնիա[30]։ Սա ևս, որ այդքան երկար ժամանակ ավերակ էր, Հուստինիանոս կայսրը վերականգնեց ամբողջ հզորությամբ, տեղացի բնակչությանը տվեց անհամար դրամ՝ ագարակներում ամենուրեք նոր ամրություններ կառուցելու, կամ էլ խախտվածները վերանորոգելու նպատակով։ Այդպիսով գրեթե բոլոր ամրությունները, որոնք այստեղ են գտնվում, Հուստինիանոս կայսեր գործն են։ Նա այնտեղ կառուցեց նաև ամրոցներ՝ Բայբերդոն կոչվածը[31] և Արեոնը։ Նա խախտված Լյուսիրոմոնը[32] վերականգնեց, ինչպես նաև Լյուտարարիզոնը[33], իսկ Գերմանոսի Ֆուսատոն[34] կոչված վայրում կառուցեց նոր ամրոց։ Հայաստանի Սեբաստիա[35] և Նիկոպոլիս[36] քաղաքների պարիսպները, որոնք երկար ժամանակից խախտված լինելով փլվելու վրա էին, նա վերականգնեց և նորոգեց։ Այդ բոլորից բացի, նա այնտեղ կառուցեց եկեղեցիներ և վանքեր. Թեոդոսուպոլսում աստվածածնի տաճար կառուցեց, իսկ Պետրիոս[37] կոչված տեղում, ինչպես նաև Կուկարիզոնում[38] վերանորոգեց վանքերը։ Նիկոպոլսում նա կառուցեց քառասունհինգ սրբոց վանքը, իսկ Բիզանայում[39] Գևորգ վկայի սրբարանը։ Թեոդոսուպոլսի մոտակայքում վերանորոգեց քառասուն մարտիրոսաց վանքը։

Հնում Փոքր Հայք կոչված [երկրում], Եփրատ գետից ոչ շատ հեռու, գտնվում էր մի վայր, ուր հաստատվել էր հռոմեական զորագունդ։ Վայրը կոչվում էր Մելիտենե[40], իսկ զորագունդը՝ լեգեոն։ Հռոմայեցիները հնում այստեղ ցածրադիր վայրում կառուցել էին քառակուսի ամրություն, որը զինվորների համար բավականաչափ զորանոցներ ուներ։ Նրանք այնտեղ էին պահում նաև իրենց դրոշները։ Այնուհետև հռոմայեցիների կայսր Տրայանոսի[41] որոշմամբ վայրը ստացավ քաղաքի իրավունք և դարձավ շրջանի մայրաքաղաքը։ Ժամանակի ընթացքում Մելիտենե քաղաքը մեծացավ և մարդաշատ դարձավ։ Եվ երբ ամրությունից ներս այլևս տեղ չմնաց բնակվելու (ինչպես ես ասացի, տարածությունը շատ փոքր էր), հաստատվեցին [քաղաքի] շրջակայքում, ուր և եկեղեցիներ, վարչական շենքեր, հրապարակ, խանութներ կառուցեցին, սյունաշարքեր, բաղնիքներ, թատրոններ, [անցկացրին] քաղաքային փողոցներ և ինչ որ անհրաժեշտ է մի մեծ քաղաք զարդարելու համար։ Բայց դրա հետևանքով Մելիտենեի մեծ մասը քաղաքի սահմաններից դուրս եկավ։ Անաստասիոս կայսրը ձեռնարկեց ամբողջ քա-

ղաքի պարսպապատումը, սակայն նա իր ծրագիրը չիրականացրած մահացավ։ Հուստինիանոս կայսրն ամեն կողմից պարիսպներով շրջապատելով այն, Մելիտենեն դարձրեց Հայոց հզոր ամրություն և զարդ։

5. Ահա այդ կատարեց [Հուստինիանոսը] Եփրատ գետի աջ ափին գտնվող Հայաստանում։ Այժմ ես կպատմեմ, թե ինչ կատարեց նա Մեծ Հայքում[42]։ Երբ հռոմայեցիների կայսր Թեոդոսը ստացավ Արշակի տերությունը, որի մասին ես քիչ առաջ պատմեցի[43], բլուրներից մեկի վրա ամրոց կառուցեց, որը սակայն մատչելի էր թշնամիներին, և այն Թեոդոսուպոլիս անվանեց։ Պարսից արքա Կավադը, երբ ուղիղ Ամիդի վրա էր շարժվում, հարձակվեց և գրավեց այն։ Հռոմայեցիների կայսր Անաստասիոսը մի քիչ անց այստեղ քաղաք կառուցեց՝ պարսպի մեջ առնելով այն բլուրը, որի վրա էր գտնվում Թեոդոսի ամրոցը։ Նա քաղաքին տվեց իր անունը[44], բայց, այնուամենայնիվ, նրան չհաջողվեց ջնջել քաղաքի հիմնադրի՝ Թեոդոսի անունը, որովհետև թեև մարդիկ կողմնակից են անընդհատ վերափոխել ընդհանուրի կողմից ընդունվածը, սակայն նախկին անուններից դժվար են հրաժարվում։ Թեոդոսուպոլսի պարիսպը բավական ստվար էր, բայց բարձրությունը չէր համապատասխանում այդ ստվարությանը։ Նրա բարձրությունը մոտավորապես երեսուն ոտնաչափի էր հասնում և գրոհող թշնամիների համար, մասնավորապես պարսիկների, այն շատ դյուրամատչելի էր։ Նա մատչելի էր նաև այն պատճառով, որ պաշտպանության համար չուներ ոչ նախապարիսպ, ոչ էլ խրամ։ Բացի այդ քաղաքին մոտիկ կար մի բարձունք, որը պարսպի վրա էր կախված։ Հուստինիանոս կայսրը դրա առաջն առավ հետևյալ կերպ. նախ և առաջ նրա շուրջը շատ խոր խրամ փորեց։ Դրանից հետո նշված բարձունքը հարթեց և վերածեց անանցանելի և անելանելի փապարների։ Որպեսզի պարիսպը շատ բարձր լինի և միանգամայն անառիկ, նա վարվեց այնպես, ինչպես Դարա քաղաքում։ Պարսպի ատամնաշարերը նա սեղմեց իրար, ատամների միջև թողնելով այնքան տարածություն միայն, որ բավական լիներ այնտեղից հարվածել պաշարողներին, ապա նրանց վրա պարսպի ամբողջ երկարությամբ քարից էմբոլոն կառուցեց, որի վրա վարպետորեն տեղադրեց այլ ատամնաշար։ Այնուհետև [պարիսպը] շրջապատեց նախապարիսպով, որի յուրաքանչյուր աշտարակը մի-մի բերդ էր և ամբողջ ամրությունը շատ նման էր Դարա քաղաքի [ամրությանը]։ Նա այնտեղ հաս-

տատեց բոլոր զինված ուժերը և Հայքերի[45] զորավարին, ու այնպես արեց, որ հայերը լինեն ավելի հզոր և այլևս չսարսափեն պարսկական հարձակումներից։

Բիզանդայում կայսրը ոչինչ չկառուցեց, հետևյալ պատճառով. վայրի տեղանքը տափարակ է, նրա շուրջն ընկած դաշտերն երկար տարածության վրա հարմար են ձիավարության համար, բացի դրանից այստեղ կան բազմաթիվ ճահճուտներ, որով նա մի կողմից մատչելի էր թշնամիներին, իսկ մյուս կողմից վտանգավոր՝ բնակիչների համար, հանդիսանալով վարակի աղբյուր։ Այդ պատճառով [Հուստինիանոսը] վայրի վրա ուշադրություն չդարձնելով, մի ուրիշ տեղում, Բիզանդայից երեք մղոն հեռավորության վրա գտնվող Յումինա[46] կոչված վայրում հուշակավոր և անառիկ քաղաք կառուցեց՝ տալով իր անունը։ Այդ [քաղաքը] գտնվում է լեռնոտ վայրում և շատ լավ օդ ունի։

6. Ահա մոտավորապես այսպիսին էր Հուստինիանոս կայսեր [գործունեությունը] Հայքերում։ Ես կարծում եմ, որ նպատակահարմար կլինի այստեղ խոսել նաև [այն շինարարության մասին], որ տեղի ունեցավ ճաների երկրում, չէ՞ որ նրանք հայերին հարևան են։ Դեռևս հնուց ճաներն ապրում էին ազատ, անիշխան և վարում էին վայրենի կյանք։ Նրանք որպես աստված պաշտում էին անտառները, թռչունները և զանազան այլ կենդանիներ. մշտապես բնակվում էին խիտ բուսականություն ունեցող երկնաբերձ լեռներում. բոլորովին չէին զբաղվում երկրագործությամբ, այլ ապրում էին ավազակությունից ձեռք բերած ավարով։ Նրանք անսովոր էին երկրագործության. նույնիսկ այն վայրերում, որտեղ զառիթափ լեռներ չկան, ծածկված են անհամար բլուրներով, որոնք սակայն ոչ թե հողաբլուրներ են, որ հնարավոր լիներ որևէ օգտակար բույս աճեցնելու, եթե մեկը կամենար մշակել, այլ չափից ավելի քարքարոտ, ժայռոտ և բոլորովին անբերրի։ Այստեղ հնարավոր չէ հերկել հողը, բերք հավաքել, ոչ էլ հանդիպել որևէ մարգագետնի։ Նույնիսկ այն ծառերը, որոնք աճում են Ճանիքում, բոլորովին անպտուղ են և անբերրի։ Դրա պատճառն այն է, որ այստեղ տարվա եղանակները մեծ մասամբ բնական ձևով չեն հաջորդում միմյանց, որ ժամանակին անձրև ու ձյուն տեղա, իսկ այնուհետև արևի ջերմությունն ընկնի երկրի վրա։ Այդտեղ տիրում է երկարատև ձմեռ և երկիրը հավիտյանս ձյունապատ է։ Այդ էր պատճառը, որ ճաները հնում հնարավորություն ունեին ապրել ազատ վիճակում։ Սակայն

Հուստինիանոսի թագավորության ժամանակ նրանք մարտում պարտվեցին հռոմայեցիների կողմից, որոնց գլխավորում էր զորավար Ցիտտասը[47]: Նրանք, տեսնելով, որ իզուր է դիմադրելը, բոլորն անմիջապես անցան նրա կողմը, նախընտրելով հանդիստ ծառայությունը՝ վտանգով լի ազատությունից: Բոլոր ճաներն անմիջապես քրիստոնեություն ընդունելով դարձան բարեպաշտ և սկսեցին ավելի հեզ կյանք վարել՝ միանգամայն հրաժարվելով ավազակությունից: Նրանք հռոմայեցիների հետ միասին պատերազմի էին գնում ընդհանուր թշնամու դեմ: Հուստինիանոս կայսրը երկյուղելով, որ ճաները կարող են փոխել իրենց սովորույթները և նորից վերադառնալ վայրենի կենցաղավարության, մտածեց հետևյալը:

Ճանիքը, ինչպես ես ասել եմ, շատ դժվարանցանելի [երկիր] է և ձիավարության համար բոլորովին անհարմար: Այն ամեն կողմից շրջափակված է ուղղաբերձ լեռներով և մեծ մասամբ անտառապատ վայրերով: Այդ պատճառով ճաների համար հարևանների հետ շփում ունենալն անհնարին էր և առանձնացած վիճակում նրանք վայրի գազանների կենցաղ էին վարում: [Հուստինիանոսը] կտրեց այն ծառերը, որոնք խոչընդոտ էին ստեղծում ճանապարհներ բացելուն, դժվարանցանելի վայրերը կարգի բերելով դարձրեց ձիավարության համար պիտանի: Դրանով [ճաները] հնարավորություն ստացան փոխհարաբերության մեջ մտնել հարևանների հետ: Նա նրանց համար Սխամալինիխոն[48] կոչված վայրում եկեղեցի կառուցեց, որպեսզի նրանք պատարագ մատուցանեն, մասնակից լինեն [սուրբ] խորհուրդներին, աղոթքներով աստուծո ողորմածությունը շարժեն, մի խոսքով սրբազան պարտականություններ կատարեն, իմանալով որ իրենք մարդ են: Բացի դրանից [Հուստինիանոսը] երկրի բոլոր կողմերում ամրոցներ կառուցեց, ուր հաստատեց հռոմայեցի զինվորներից բաղկացած ուժեղ կայազորներ և այնպես արեց, որ ճաներն անկաշկանդ հարաբերվեն մյուս մարդկանց հետ: Այժմ ես կպատմեմ, թե նա Ճանիքի որ մասում կառուցեց այդ ամրոցները:

Այստեղ մի վայր կա, որ գտնվում է երեք ճանապարհների խաչաձևման տեղում: Հռոմայեցիների, պարսկահայերի և ճաների սահմանները այստեղից են սկիզբ առնում և ապա տարածվում տարբեր ուղղություններով: Ահա այստեղ մի շատ հզոր ամրոց է կառուցում՝ Հորոնոն անունով[49], որն անցյալում գոյություն չուներ: Այն դարձավ խաղաղության պատվարը: Հռոմայեցիների համար Ճանիքը հենց այստեղից սկսեց մատչելի դառնալ: Այստեղ [Հուստինիանոսը] հաստատեց զորահրամանատար, որին դուքս են ան-

վանում։ Մի այլ վայրում, որը գտնվում է Հորոնոսից երկու օրվա ճանապարհ հեռավորության վրա, այնտեղ, որտեղ Օկենիտ[50] կոչված ճաների սահմաններն են (ճաները բաղկացած են բազմաթիվ ցեղերից), դեռ հին մարդկանց կողմից կառուցված մի ամրություն կար՝ Խարտոն[51] անունով, որն անուշադրության մատնված լինելով, ավերակների էր վերածվել։ Հուստինիանոս կայսրը վերանորոգեց այն, մեծաքանակ բնակչություն հաստատեց այնտեղ՝ երկրի կարգ ու կանոնին հսկելու համար։ Այստեղից դեպի արևելք գտնվում է մի ձոր, որը ձգվում է մինչև հյուսիս։ Նա այնտեղ կառուցեց մի նոր ամրոց՝ Բարխոն[52] անունով։ Իսկ դրանից այն կողմ, լեռան ստորոտում գտնվում են փարախներ, ուր արածում են Օկենիտ կոչված ճաների խոշոր եղջյուրավոր անասունները, որոնց նրանք բուծում են ոչ թե հողը հերկելու համար, քանզի ճաները չափից շատ ծույլ են և, ինչպես ասել եմ, երկրագործությունից գաղափար չունեն, նրանք ոչ հող են մշակում, ոչ էլ որևէ այլ երկրագործական աշխատանքով զբաղվում, այլ պարզապես նրանց կթելու և նրանց մսով սնվելու համար։ Լեռան ստորոտից այն կողմ, հարթավայրում գտնվում է Կենա վայրը, իսկ նրանից արևմուտք՝ Սիսիլիսոն[53] անունով ամրոցը, որը կառուցվել էր դեռևս հնում, բայց երկար ժամանակը ավերակ էր դարձրել։ Հուստինիանոս կայսրը վերանորոգեց այն և ինչպես մնացած [ամրոցներում], այստեղ ևս մշտական կայազոր հաստատեց։ Այդ վայրից ձախ՝ դեպի հյուսիս մի վայր կա, որ տեղացիներն անվանում են Լոնգինոսի ֆոսսատոն, որովհետև, երբ անցյալում հռոմայեցի զորավար, ծագումով իսավրացի Լոնգինոսը արշավել էր ճաների վրա, հենց այստեղ էր ճամբար դրել։ Ահա այստեղ կայսրը Բուրգուսնոես անունով մի ամրոց կառուցեց։ Դա Սիսիլիսոնից մեկ օրվա ճանապարհ հեռավորության վրա է դըտնըվում։ Սիսիլիսոնը ամրոց է. ինչպես ես մի քիչ առաջ ասացի, կառուցվել է նույն կայսեր կողմից, շատ ամուր։ Այստեղից են սկիզբ առնում Կոքսյուլինոս կոչված ճաների սահմանները։ [Հուստինիանոսն] այս տեղում կառուցեց երկու ամրոց, այն, որ կոչվում է Սխամալինիխոն, և այն, որ անվանում են Ցանղակոն[54]։ Այստեղ նա հաստատեց մի ուրիշ զորահրամանատար։

7. Ահա այդ կատարեց Հուստինիանոս կայսրը ճաների երկրում։ Նրանցից վերև՝ Եվքսինյան Պոնտոսի ափին գտնվող երկրում կա Տրապիզոն անունով մի քաղաք, որը ջրի պակասություն էր զգում, դրա համար Հուստինիանոս կայսրը [այնտեղ] ջրմուղ կա-

ռուցեց, որին Եվգենիոս վկայի անունն են տալիս, և այդպիսով բնակիչներին ազատեց ջրի հոգսից։ Նա և՛ այստեղ, և՛ Ամասիայում վերանորոգեց եկեղեցիներից շատերը, որոնք երկար ժամանակի ընթացքում վնասվել էին։ Տրապիզոնի սահմաններից այն կողմ գտնվում է Հոիդայոն անունով մի վայր, որը նա նորոգեց և շատ հզոր ամրություններով շրջապատեց. իր չափերով ու ամրությամբ նա չէր զիջում պարսից սահմանների վրա կառուցված քաղաքներից և ոչ մեկին։

Լազիկայում նա կառուցեց Լոսորիոն[55] անունով ամրոցը, պարսպապատեց երկրում գտնվող լեռնանցքները, որոնց կլեյսուրներ են անվանում, որպեսզի թշնամիների մուտքը դեպի Լազիկա փակ լինի։ Բացի այդ ամենից, նա վերանորոգեց քրիստոնյաների եկեղեցին, որ շատ վաղուց էր կառուցվել, և խախուտ էր դարձել։ Լազիկայում կառուցեց նաև Պետրա նշանավոր քաղաքը, որը լազերն իրենց անխոհեմությամբ պարսիկներին հանձնեցին՝ Խոսրովին մեծ զորքով այստեղ առաջնորդելով։ Սակայն հռոմայեցիները պատերազմում հաղթելով պարսիկներին, մի մասին կոտորեցին, մյուսին էլ գերեվարեցին, և որպեսզի բարբարոսները հնարավորություն չունենան նորից վնաս հասցնելու, քաղաքը հիմնահատակ ավերեցին։ Այդ բոլորի մասին ես ասել եմ պատերազմների մասին գրքում[56], ուր խոսվում է նաև հետևյալի մասին, որ Լազիկայի դիմացի մայր ցամաքում, դեպի Մեոտիս լիճը տանող ճանապարհի վրա երկու ամրոց կա՝ Սեբաստուպոլիսը և Պիտիուսը, որոնք հռոմայեցիներն ավերեցին, երբ իմացան, որ Խոսրովն այդ ամրոցները գրավելու մտադրությամբ շտապ կարգով զորք է ուղարկում։ Այժմ Հուստինիանոս կայսրը նախկինում ամրոց հանդիսացող Սեբաստուպոլիսն ամբողջությամբ վերականգնեց, կառուցելով պարիսպ և այլ ամրություններ, այն անառիկ դարձրեց, անցկացրեց փողոցներ, զարդարեց այն տարբեր շինություններով և այդ քաղաքն իր գեղեցկությամբ ու չափերով ամենահռչակավորներից մեկը դարձրեց։

[Հուստինիանոսը] տեսնելով, որ նույն ծովափում Մեոտիս լճի և Տավրոսի ու Տավրոսկյութիայի միջև՝ հռոմեական պետության ամենահեռավոր ծայրերում գտնվող Բոսպորոս և Խերսոն քաղաքների պարիսպները բոլորովին ավերվել էին, շատ գեղեցիկ և շատ ամուր կերպով [վերականգնեց]։ Նա այնտեղ կառուցեց Ալուստոսի կոչված ամրոցը և այն, որ գտնվում է Գորզուբիտեում։ [Հուստինիանոսը] ամրություններով ապահովեց հատկապես վա-

ղուց օտարացած Բոսպորոսը, որն անցյալում գտնվում էր հոների տիրապետության տակ, բայց այժմ կայսրը հռոմայեցիների պետությանն էր ենթարկել այն։ Այստեղ, ծովափում գտնվում է Դորյու անունով մի վայր, ուր վաղուց բնակվում էին այն գոթերը, որոնք չմասնակցեցին Թեվդերիքոսի[58] իտալական արշավանքին, այլ կամովին այստեղ մնացին և մինչև այժմ էլ հռոմայեցիների դաշնակիցներն են, որոնց հետ միասին արշավանքի են դուրս գալիս նրանց թշնամիների դեմ, համաձայն կայսեր ցանկության։ Նրանց թիվը հասնում է երեք հազարի, գերազանց պատերազմողներ են, հոյակապ երկրագործներ և անչափ հյուրասեր։ Այդ Դորյու վայրը բարձրադիր տեղում է գտնվում, որը ո՛չ քարքարոտ է, ո՛չ էլ կարծր, այլ բարեբեր, այնտեղ լավագույն բերք է ստացվում։ Այս շրջանում կայսրը չկառուցեց ո՛չ քաղաք և ո՛չ էլ ամրոց, որովհետև տեղի մարդիկ չէին ուզում պարփակվել պարիսպների մեջ, այլ մեծ հաճույքով բնակվում էին [բաց] դաշտում։ Որտեղից որ հակառակորդին դյուրին կլիներ ներխուժել երկիրը, այնտեղ [Հուստինիանոսը] երկարաձիգ պարիսպներով փակեց ճանապարհը և գոթերին ազատեց [թշնամու] արշավանքներից առաջացող հոգսերից։ Այդ մասին ահա այսքան։

Եվքսինյան Պոնտոսի ափին Անքիալոս անունով մի քաղաք կա, որտեղ թրակացիներն են բնակվում։ Այդ [քաղաքի] մասին ավելի լավ կլիներ խոսել Թրակիայի շրջանների կապակցությամբ, բայց քանի որ մենք խոսք բացեցինք Եվքսինյան Պոնտոսի ափերին [Հուստինիանոս] կայսեր կատարած շինարարության մասին, նպատակահարմար գտանք այստեղ հիշատակել նաև այն շինարարության մասին, որ կատարեց նա Անքիալոսում։ Այստեղ, քաղաքից ոչ շատ հեռու բխում են ջերմուկներ, որոնք տեղացի բնակչության համար բնական բաղանիքների դեր են խաղում։ Այս վայրի վրա ուշադրություն չէին դարձրել անցյալի կայսրերը և հակառակ որ նրան կից բնակվում էր բարբարոս ժողովուրդների անհամար բազմություն, նա վաղուց ի վեր պարիսպ չուներ և հիվանդություններից տառապող մարդիկ, որ գալիս էին այստեղ բուժվելու, վտանգի էին ենթարկվում։ Այժմ Հուստինիանոս կայսրը պարսպապատեց այն և հիվանդներն առանց վտանգի ենթարկվելու բուժման են [գալիս]։ Ահա Հուստինիանոս կայսեր Արևելքում, Հայաստանում, Ճանիքում և Եվքսինյան Պոնտոսի շուրջ կառուցած ամրությունները։ Այժմ մենք անցնենք այն շինարարության [նկարագրությանը], որ կատարվեց Եվրոպայում։

«Կառուցումների մասին» գիրք հինգերորդ, գլուխ 5

# ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԳԼՈՒԽ 5

*«Նրանից [Մոպսուեստիայից] հետո գալիս է Ադանա քաղաքը, որի արևելյան կողմից հոսում՝ է Հայաստանի լեռներից իջնող Սարոս անունով գետը»։*

# ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

## [ՎԱՆԴԱԼԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ]

### ԳԼՈՒԽ 11

*[Հուստինիանոսը, ավարտելով պարսկական պատերազմը, իր թագավորության 7-րդ տարում պատրաստվում է պատերազմելու վանդալների դեմ Լիբիայում։ Կարքեդոնի (Կարթագենի) արշավանքին մասնակցում էին նաև դաշնակից զորքերը՝ ֆեդերատները— φοιδεράτοι]։*

*«...Ֆեդերատների[1] զորահրամանատարներն էին Հայաստանի զորքերի զորավար Դորոթեոսը[2], նաև Սոլոմոնը, որ զորավար Բելիսարիոսի տեղակալն էր (հռոմայեցիները սրան դոմեստիկոս են անվանում...)։ [Ֆեդերատների] ընդհանուր հրամանատարությունը արևելցի Սոլոմոնի ձեռքում էր, որ հռոմեական [պետության] այս հեռաստանից էր, այնտեղից, ուր այժմ գտնվում է Դարա քաղաքը...»։*

### ԳԼՈՒԽ 14

*«...Երբ նրանք [բյուզանդացիները] հասնում են Կավկանա[3], բոլորին գտնում են մեծ սգո մեջ, որովհետև Հայաստանի զորքերի զորավար Դորոթեոսը այստեղ էր վախճանվել, ամբողջ զորքին պատճառելով անչափ տխրություն...»։*

### ԳԼՈՒԽ 17

*«Բելիսարիոսն այսպես շարքի դնելով զորքը, շարժվեց Կարքեդոնի[4] վրա։ Հյուպասպիստներից[5] երեք հարյուր քաջ ռազմիկներ ընտրելով, հանձնեց Հովհաննեսին, իր տնտեսին. սրան հռոմայեցիները անվանում են օպտիոն։ Նա հայազգի էր, անչափ խոհեմ և քաջ։ Նա հրամայեց Հովհաննեսին առաջնորդել զորքը և առաջ անցնել ոչ պակաս քան քսան ասպարեզ և հենց որ նկատեր որևէ թշնամու, անհապաղ հայտնել, որպեսզի ստիպված չլինեն հանպատրաստից մարտի բռնվելու...»։*

## ԳԼՈՒԽ 18

«...Եթե Բելիսարիոսը այսպես չկարգավորեր զորաշարքը, Հովհաննեսին չհրամայեր առաջ անցնել, իսկ մասսագետներին էլ զորքի ձախից ընթանալ, մենք բոլորովին ի վիճակի չէինք լինի խուսափել վանդալներից։ ...Ամմատասը ...վանդալների բազմությունը Կարքեդոնում թողած և հայտնելով, որ շտապում է դեպի Դեկիմոն°, փոքրաթիվ և ոչ լավագույն զինվորներով մարտի բռնվեց Հովհաննեսի հետ։ Նա սպանում է [Հովհաննեսի]՝ առաջին գծի վրա կռվող լավագույն զինվորներից տասներկուսին, բայց ինքն էլ ընկնում է՝ ցուցաբերելով մեծ խիզախություն։ Ամմատասի սպանությունից հետո [նրա զինվորները] գլխովին փախուստի դիմեցին... Հովհաննեսը և նրա մարդիկ հանդիպածին կոտորելով հասան մինչև Կարքեդոնի դարպասները։ Այս յոթանասուն ասպարեզ տարածության վրա այնքան շատ վանդալների կոտորած եղավ, որ տեսնողներին թվում էր, որ դա երկու բյուր թշնամիների ձեռքի գործ է...»։

## ԳԼՈՒԽ 19

«...Հովհաննեսը և մասսագետները փիշերը վերադարձան մեզ մոտ, իմացան, իրենց հերթին էլ պատմեցին կատարվածի մասին և մեզ հետ գիշերեցին Դեկիմոնում»։

## ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

### [ՎԱՆԴԱԼԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ]

ԳԼՈՒԽ 2

*[Վանդալների թագավոր Գելիմերն իր ամբողջ զորքով շարժվեց բյուզանդացիներից գրավված Կարքեդոնի վրա։ Բելիսարիոսը իր զինվորներին սրտապնդելու համար դիմեց նրանց ճառով]։*

*«Բելիսարիոսը այսպես սրտապնդելով, բոլոր հեծյալներին բացի հինգ հարյուրից, նույն օրն իսկ ուղարկեց, իսկ հյուպասպիստներին և դրոշը, որ հռոմայեցիները բանդոն են անվանում, թողեց Հովհաննես հային, հանձնարարելով պաշտպանվել, եթե գործը դրան հասնի...»։*

ԳԼՈՒԽ 3

*[Բյուզանդական զորքը մարտի է պատրաստվում]։*

*«...Հռոմայեցիները, բռնելով գետի մյուս ափը, ինչքան որ հնարավոր էր տվյալ պայմաններում, պատրաստվեցին և շարվեցին հետևյալ կերպ. ձախ թևում գտնվում էին Մարտինոսը, Վալերիանոսը, Հովհաննեսը Կիպրիանոսը, Ալթիասն ու Մարկելլոսը և ֆեդերատների մնացած բոլոր զորահրամանատարները. աջ թևում էին գտնվում Պապպոսը, Բարբատոսը, Այգանը և հեծելազորի հրամանատարները։ Կենտրոնում շարքի կանգնեց Հովհաննեսը՝ իր հետ ունենալով Բելիսարիոսի հյուպասպիստներին, դորիֆորներին՝ և զորավարական դրոշը։ Այստեղ ժամանակին հասավ նաև Բելիսարիոսը՝ հինգ հարյուր հեծյալներով, առաջ անցնելով ոտքով եկող հետևակից...*

*...Երկար ժամավաճառ եղան, ոչ ոք չէր սկսում մարտը, ահա այն ժամանակ Հովհաննեսը, ընտրելով իր մարդկանցից ոմանց, Բելիսարիոսի համաձայնությամբ անցավ գետը և հարձակվեց [թշնամու] կենտրոնական մասի վրա, ուր Ցազոնի կողմից դիմադրության հանդիպելով, փախուստի դիմեց։ Նահանջողները հասան իրենց ճամբարը, իսկ վանդալները հալածելով՝ մինչև գետը, բայց չանցան այն։ Հովհաննեսը նորից Բելիսարիոսի հյուպասպիստների*

...շատերի գլուխն անցած հարձակվեց Ցազոնի վրա և նորից դիմադրության հանդիպելով նահանջեց դեպի հռոմայեցիների համբարը։ Այնուհետև Բելիսարիոսի գրեթե բոլոր դորիֆորներով և հյուպասպիստներով, զորավարական դրոշը ձեռքին մեծ աղմուկ աղաղակով, երրորդ անգամ, հարձակվեց [թշնամու վրա]։ Բարբարոսները քաջաբար դիմադրեցին նրան, կռվելով միմիայն թրերով։ Սաստիկ մարտ տեղի ունեցավ, ուր սպանվեցին վանդալներից շատերը և լավագույնները, որոնց թվում նաև Ցազոնն ինքը, Գելիմերի եղբայրը։ Այն ժամանակ հռոմայեցիների ամբողջ զորքը շարժվեց և գետն անցնելով հարձակվեց թշնամու վրա. վերջինիս զորաշարքի կենտրոնից սկսված փախուստը տարածվեց ամբողջ զորքի վրա, որովհետև [հռոմայեցիներից] յուրաքանչյուրն առանց դժվարության իր դեմ կանգնած [հակառակորդին] փախուստի մատնեց...»։

ԳԼՈՒԽ Զ

«...[Բելիսարիոսը] հրամայեց Հովհաննես հային երկու հարյուր հոգով հետապնդել Գելիմերին, հալածել նրան օր ու գիշեր, մինչև որ բռնեն՝ ողջ կամ սպանված։ ...Հովհաննեսը հինգ օր ու գիշեր հալածելուց հետո ընդհուպ մոտեցել էր Գելիմերին, հաջորդ օրը պետք է ձեռք գցեր նրան։ Բայց Հովհաննեսին վիճակված չէր Գելիմերին գերեվարել, որովհետև բախտի բերմամբ այսպիսի մի հակառակ բան պատահեց։ Հովհաննեսի հետ [Գելիմերին] հալածողների թվում էր նաև Բելիսարիոսի դորիֆորներից Ուլիարիսը։ Սա քաջ մարդ էր, հոգով ու մարմնով ուժեղ, սակայն բավարար զարգացում չուներ, գինու և ուրախության սիրահար էր։ Այս Ուլիարիսը արշավանքի վեցերորդ օրը, առավոտյան մի քիչ հարբած, ծառի վրա թառած մի թռչուն է տեսնում։ Շտապ լարելով աղեղը թռչունի վրա նետ է արձակում, բայց նետը չդիպչելով թռչունին, [Ուլիարիսի] կամքից անկախ ծոծրակից նետահարում է Հովհաննեսին։ Նրա ստացած վերքը մահացու էր և մի քիչ անց նա վախճանվեց, մեծ տխրություն պատճառելով կայսր Հուստինիանոսին, զորավար Բելիսարիոսին, բոլոր հռոմայեցիներին և կարքեդոնացիներին, որովհետև նա քաջ մարդ էր, առաքինի, հեզ, բոլորին ընդառաջող և անչափ բարի։ Ահա այսպիսին էր Հովհաննեսի ճակատագիրը։ ...Զինվորները այլևս չհետապնդեցին Գելիմերին և քանի դեռ Հովհաննեսը ողջ էր, նրա մասին էին հոգում, իսկ երբ նա վախճանվեց, կատարեցին նրա հանդեպ բոլոր սրբա-

ղան արարողությունները և այլ ամեն ինչ հայտնեցին Բելիսարիոսին, իսկ իրենք մնացին տեղում: Վերջինս, հենց որ իմացավ այդ մասին, եկավ Հովհաննեսի գերեզմանը, անչափ ախրեց ու ողբաց նրա դժբախտությունը, և դրամական միջոցներ տրամադրեց ամեն ձևով Հովհաննեսի գերեզմանը պայծառացնելու համար...»:

ԳԼՈՒԽ 24

«Այդ միջոցին կայսրը մի ուրիշ զորավարի՝ Արեոբինդոսին փոքրաթիվ զորքով ուղարկեց Լիբիա: Նա սենատոր էր, ծագումով ազնվական, բայց պատերազմական գործերում բոլորովին անփորձ: Նրա հետ միասին ուղարկեց նաև Իտալիայից նոր ժամանած հյուպարքոս Աթանասիոսին և փոքրաթիվ հայերի, որոնց գլխավորում էին ծագումով Արշակունի Արտավանն ու Հովհաննեսը՝ Հովհաննեսի որդիները: Նրանք նոր էին թողել պարսից զորքը և ուրիշ հայերի հետ միասին կամավոր կերպով անցել հռոմայեցիների կողմը[8]:...

...[Կայսրը կարգադրել էր] Արեոբինդոսին պայքարել Բյուզակիոնում[9] գտնվող մավրուսիոսների[10] դեմ: ...Արեոբինդոսը, իմանալով, որ Անտալասն ու Ստոցասը ճամբարել են Կարքեդոնից երեք օրվա հեռավորության վրա գտնվող Սիկկաբեններիս քաղաքի մոտ, Սիսինիոլոսի որդի Հովհաննեսին հրամայեց շարժվել նրանց վրա, ընտրելով զինվորներից լավագույններին, իսկ Սերգիոսին նամակով հրահանգեց միանալ Հովհաննեսին, և բոլորը միասին շարժվել թշնամիների վրա: Սերգիոսը ուշադրություն չդարձրեց ո՛չ նամակի վրա, ո՛չ էլ այդ գործի, և Հովհաննեսը փոքրաթիվ զինվորներով ստիպված եղավ կռվել թշնամու անհամար բազմության դեմ: Նրա և Ստոցասի միջև կար հին և մեծ թշնամություն, և յուրաքանչյուրն աղոթում էր մյուսին սպանելուց հետո միայն մեռնել: Այն ժամանակ, երբ արդեն մարտը պետք է շուտով սկսվեր, երկուսն էլ [իրենց] շարքից դուրս գալով շարժվեցին միմյանց վրա: Հովհաննեսը լարելով աղեղն այն ժամանակ, երբ դեռ [իր վրա] էր գալիս Ստոցասը, դիպուկ հարվածում է նրա աջ աճուկին և մահացու վերք հասցնում, որից հետո նա ընկնում է. բայց անմիջապես չի մեռնում, այլ քիչ անց: Բոլոր նրան ուղեկցողները իսկույն վրա հասան, ինչպես և մավրուսիոսների զորքը, մահամերձ Ստոցասին հենեցին մի ծառի, իսկ իրենք մեծ զայրույթով շարժվեցին թշնամիների դեմ. և՛ Հովհաննեսին, և՛ բոլոր հռոմայեցիներին առանց դժվարության փախուստի մատնեցին, քա-

նի որ թվական մեծ գերակշռություն ունեին։ Պատմում են, որ Հովհաննեսն ասել է այն ժամանակ, թե հանգիստ կմահանա, եթե իր աղոթքը Ստոցասի վերաբերյալ իրականանա։ Այստեղ կար մի ժայռոտ տեղ, որտեղ ձին գայթեց և ցած գլորեց [Հովհաննեսին]։ Երբ նա փորձեց ոտքի կանգնել, վրա հասան թշնամիները և սպանեցին նրան, այդ փառավոր և անչափ քաջ մարդուն։ [Վիրավոր] Ստոցասն իմանալով այդ, վախճանվեց, միայն այնքանն ասելով, որ արդեն հանգիստ է մեռնում։ Այս մարտում սպանվում է նաև հայազգի Հովհաննեսը՝ Արտավանի եղբայրը, թշնամու հանդեպ ցուցաբերելով անչափ քաջագործություն։ Կայսրն այդ բոլորն իմանալով, շատ տխրեց քաջ Հովհաննեսի համար. նկատելով, որ զորավարությունը երկու հոգու ձեռքում լինելը ձեռնտու չէ, նա անմիջապես Սերգիոսին զորքով Իտալիա ուղարկեց, իսկ Լիբիայի ամբողջ զորահրամանատարությունը հանձնեց Արեոբինդոսին»։

ԳԼՈՒԽ 25

«...Արեոբինդոսը, իմանալով [մավրուսիոսների Կարքեդոնի վրա] կատարած արշավանքի մասին, զորահրամանատարների մի մասն իրենց զորքով Կարքեդոն ուղարկեց, Գոնթարիսի դեմ։ [Արեոբինդոսի] մոտ էր նաև Արտավանը՝ հայերի հետ...»։

ԳԼՈՒԽ 26

[Գոնթարիսը Կարքեդոնում ապստամբություն է բարձրացնում]։

«...Արեոբինդոսն իմանալով այդ մասին, Աթանասիոսին և ընտիր զինվորների մի խումբ ուղարկեց [նրա դեմ]։ Ճամբարից Արեոբինդոսի մոտ եկավ նաև Արտավանը ուրիշ երկու հոգու հետ միասին. նա Արեոբինդոսին խորհուրդ տվեց չնահանջել և տեղի չտալ Գոնթարիսի հանդգնության առաջ, այլ անմիջապես բոլորի հետ միասին շարժվել նրա վրա և մարտի բռնվել, քանի չարիքը չի տարածվել։...

...Այդ միջոցին Արեոբինդոսը և Արտավանը իրենց ուժերով հասան այստեղ [Կարքեդոն]։ Մարտը տեղի ունեցավ և՛ պարսպի ատամնաշարերի վրա, և՛ ցածր՝ դարպասների մոտ, որի ժամանակ ոչ ոք չհաղթեց։ ...Արեոբինդոսն այստեղ իր կյանքում առաջին անգամ տեսավ մեռնող մարդկանց (նա սովոր չէր նման երևույթի), ցնցվեց, սարսափեց և չգիտենալով այլևս այդ տեսարանին, փախուստի դիմեց։ ...Այն ժամանակ Արտավանն էլ փախավ և

մնացած բոլորը հեռացան այնտեղից, ով ինչպես կարողացավ։ Գոնթարիսը լիակատար հաղթանակ տանելով, ապստամբների հետ միասին գրավեց Պալատը...»։

ԳԼՈՒԽ 27

[Գոնթարիսը ուխտադրժորեն ձերբակալում և սպանում է Արեոբինդոսին]։

«...Արտավանը Գոնթարիսից երաշխիքներ ստանալով, հայերի հետ միասին Պալատ բարձրացավ, համաձայնվեց ծառայել բռնապետին, մտադրվելով թաքուն սպանել նրան։ Իր ծրագիրը նա հայտնեց իր եղբորորդի Գրիգորին և գործիբոր Արտաշիրին։ Գրիգորը, դրդելով նրան այդ գործին, ասաց այսպես. «Արտավան,
»այժմ միայն քեզ է մնում արժանանալ Բելիսարիոսի փառքին,
»դեռ ավելին, գերազանցել այն։ [Բելիսարիոսը] ահագին գրամ
»սատանալով կայսրից մեծ զորքով եկավ այստեղ, ձեռքի տակ ու-
»նենալով բազմաթիվ զորահրամանատարներ և խորհրդականներ,
»իր նախընթացը չունեցող մեծ նավատորմիղ, մեծաքանակ հեծե-
»լազոր. մի խոսքով, հռոմեական պետությունը զենքի և ամեն ինչի
»մասին բավականաչափ հոգացել էր։ Ահա դրանից հետո միայն
»նա կարողացավ, այն էլ մեծ դժվարությամբ, վերանվաճել Լի-
»բիան հռոմայեցիների համար։ Այժմ նա ամեն ինչ կորցրել է և
»եթե մի րոպե անտեսենք կատարվածը, ապա իրադրության մեջ
»ոչինչ չի փոխվել, միայն այն, որ Բելիսարիոսի հաղթանակի հե-
»տևանքով այժմ հռոմայեցիները զինվորների և դրամի կորուստ
»են կրել. նա ի վիճակի չեղավ պահպանելու նույնիսկ ձեռք բերված
»հաջողությունը։ Այդ բոլորը կայսեր համար վերանվաճելը այժմ
»ընկնում է քո հոգու, մտքի, և աջ բազկի վրա։ Արդ, դու հիշիր,
»որ ծագումով իսկզբանե անտի Արշակունի ես, հիշիր, որ քաջ
»մարդկանց վայել է իրենց արիությունը ցուցաբերել ամեն ժամ
»և ամեն տեղ։ Դու ազատության համար հրաշալի շատ գործեր ես
»կատարել։ Երիտասարդ հասակում դու սպանեցիր Հայոց իշխան
»Ակակիոսին, ապա սպանեցիր հռոմեական զորավար Սիտտասին
»և բարձրացար հաչս Խոսրով արքայի, որի հետ միասին արշավե-
»ցիր հռոմայեցիների վրա։ Եվ քանի որ դու այդպիսին ես, քեզ
»վայել չէ անտեսել այն, որ Հռոմեական պետությունը հարբած
»շան ոտքերին է ընկած, ցուցաբերիր, ո՛վ լավագույնդ, այժմ քո
»ազնվազարմությունն ու հոգու առաքինությունը և գործի անցիր։
»Ես և Արտաշիրը քո բոլոր հրամանները ուժերի ներածի չափ կը-

»կատարենք»։ Գրիգորն այսքանն ասաց և Արտավանին առավել ևս դրդեց բռնակալի դեմ...

[Գոնթարիսը] հրամայեց Արտավանին զորքի գլուխն անցած շարժվել Բյուզակիոնում գտնվող Անտալասի և մավրուսիոսների վրա։ Կուցինասը, ընդհարվելով Անտալասի հետ, բացահայտ հեռացել էր նրանից և միացել Գոնթարիսին, նրան որպես պատանդ տալով իր որդուն և մորը։ Զորքը Արտավանի գլխավորությամբ անմիջապես շարժվեց Անտալասի վրա։ Նրա հետ էր նաև Ստոցասի ապստամբների հրամանատար Հովհաննեսը և դորիֆոր Ուլիթեոսը։ Հետևում էին նաև մավրուսիոսներ՝ Կուցինասի ղեկավարությամբ։ Անցնելով Ադրամետոս քաղաքը, հասնում են հակառակորդներին, որոնք մոտակայքում էին գտնվում, և ճամբարում թշնամիներից ոչ հեռու։ Հաջորդ օրը Հովհաննեսն ու Ուլիթեոսը մի զորամասով մնացին տեղում, իսկ Արտավանն ու Կուցինասը զորքը տարան հակառակորդի վրա։ Անտալասի՝ մավրուսիոսները, չդիմանալով հարձակման, փախուստի դիմեցին։ Սակայն Արտավանը վախկոտություն ցուցաբերելով, հանկարծ շրջեց գրոշը և նահանջի ազդանշան բռնեց, որի համար, երբ վերադարձավ ճամբար, Ուլիթեոսը որոշեց սպանել նրան։ Արտավանը խնդրեց ներել և ասաց, թե վախենում է, որ Մարկենտիոսը Ադրամետոս քաղաքից հակառակորդներին օգնության կգա և մեծ վնաս կհասցնի իրենց, և որ Գոնթարիսը պետք է ամբողջ զորքով շարժվի թշնամիների վրա։ Նրա գլխավոր մտադրությունն էր Ադրամետոս հասնելով իր մարդկանց հետ միանալ կայսեր զորքին։ Նա երկար մտածելուց հետո լավագույնը համարեց Գոնթարիսին սպանել և կայսեր ու Լիբիան ազատել դժվարություններից։ Վերադառնալով Կարքեդոն, նա բռնակալին հայտնեց, որ թշնամիների դեմ մարտնչելու համար նրան ավելի մեծ զորք է պետք։ [Բռնակալը] խորհրդակցելով Պասիֆիլոսի հետ, ուզում էր ամբողջ զորքը վերցնել և Կարքեդոնում կայազոր թողնելով, անձամբ գլխավորել բանակը թշնամիների դեմ։ Նա ամեն օր առանց որևէ պատճառի, սոսկ որևէ կասկածից դրդված, շատերին մահապատժի էր ենթարկում։ Նա Պասիֆիլոսին հանձնարարեց թողնել Կարքեդոնի պահպանության համար ում որ պետք է, իսկ բոլոր հույներին անխտիր կոտորել։

ԴԼՈՒԽ 28

«Ամեն ինչ կարգավորելով ինչպես որ ինքն էր ճիշտ գտնում, [Գոնթարիսը] իր մերձավորներին որոշեց խնջույքի հրավիրել,

որովհետև հաջորդ օրը պետք է արշավանքի դուրս գային։ Այն բնակարանում, ուր վաղուց պատրաստ էին երեք բազմոց, նա ճաշկերույթ տվեց։ Ինքը, բնականաբար, բազմեց առաջին բազմոցի վրա, որտեղ էին Աթանասիոսն ու Արտավանը, ինչպես և Գոնթարիսի ծանոթներից ոմանք, նաև թրակացի Պետրոսը, որը նախապես Սոլոմոնի դորիֆորն էր։ Մյուս երկու բազմոցների վրա բազմել էին վանդալների երևելիներն ու մեծամեծները։ Ստոցասի ապստամբների հրամանատար Հովհաննեսին Պասիֆիլոսն ինքն էր անձամբ հյուրասիրում, ինչպես և բոլոր նրանց, ովքեր Գոնթարիսի բարեկամներ էին համարվում։ Երբ Արտավանը հրավիրվեց այս ճաշկերույթին, մտածեց, որ դա բռնակալի սպանության համար ամենահարմար առիթն է և որոշեց իրագործել իր մտադրությունը։ Այդ մասին նա տեղյակ պահեց Գրիգորին, Արտաշիրին և երեք ուրիշ դորիֆորների, ու հրամայեց այդ դորիֆորներին դաշույններով ներս մտնել (ըստ սովորության դորիֆորները պետք է կանգնեին ճաշող հրամանատարների թիկունքում)։ Ներս մտնելուց հետո, երբ հարմար առիթ ներկայանար, պետք է առաջինը գործի անցներ Արտաշիրը, իսկ Գրիգորին կարգադրեց ամենաքաջ հայերին ընտրելով իր հետ Պալատ բերել, ձեռքերում ունենալով միմիայն դաշույններ (օրենքը թույլ չի տալիս քաղաքում հրամանատարների ուղեկիցներին զինված լինել որևէ այլ զենքով), ապա նրանց թողնելով նախասրահում, ներս մտներ դորիֆորների հետ։ Այնուհետև նա հանձնարարեց նրանց, որ ծրագիրը ոչ ոքի չհայտնեն, [հայ զինվորներին] ասեն միայն, որ կասկածում են Գոնթարիսի վրա, թե նա նենգ մտադրությամբ է Արտավանին ճաշկերույթի հրավիրել։ Նրանց ասվեց, որ պետք է մնան Գոնթարիսի թիկնապահների մոտ, որոնք այնտեղ պահակության էին կանգնած, և ձևացնելով, թե խաղ են անում, իրենց վահանները շարժեն, վեր-վար անեն և անընդհատ պտտացնեն, իսկ երբ ներսում աղմուկ-աղաղակ բարձրանա, վերցնելով վահանները ներս շտապեն օգնության։ Արտավանը այսպիսի կարգադրություն արեց, իսկ Գրիգորն այն ի կատար էր ածում։ Արտաշիրը [այդ միջոցին] մտածեց հետևյալը. մի նետ կես արեց, համարեցրեց ձախ ձեռքի դաստակի վրա մինչև արմունկը։ Այնուհետև թելերով այն ամուր կապեց և ծածկեց շապիկի թևով։ Նա այդ արեց այն մտքով, որ եթե մեկը թուրը բարձրացնելով փորձի հարվածել՝ դեմ անելով ձախ ձեռքը՝ վնաս չկրի, և թրի շեղբը հարվելով փայտին, թույլ չտա ձեռքին վերք հասցնել։

Արտաշիրն ասվածի պես էլ արեց, իսկ Արտավանին ասաց հետևյալը. «Ես չեմ կլանա անել այդ գործը և հուսով եմ, որ այս »դաշույնով կհարվածեմ Գոնթարիսին, բայց ավել բան չեմ կարող »խոստանալ. աստված գուցե վատ տրամադրված լինելով բռնա»կալի հանդեպ նեցուկ կանգնի իմ այս նախաձեռնության, բայց »գուցե և հատուցելով իմ որևէ մեղքը՝ խանգարի։ Արդ, եթե դու »տեսնես, որ բռնակալը մահացու հարված չի ստացել, դու ան»հապաղ սպանիր ինձ իմ թրով, որպեսզի նրա կողմից տանջանք»ների ենթարկվելով չասեմ, որ դու ես ինձ դրդել այս գործին, որով »և՛ ես խայտառակամահ կլինեմ, և՛ ակամա պատճառ կդառնամ »քո կորստյան»։ Արտաշիրն այսքանն ասելով, Գրիգորի և դորիֆորներից մեկի հետ եկավ ու կանգնեց բազմոցների մոտ՝ Արտավանի թիկունքում. մյուսները մնացին [Գոնթարիսի] թիկնապահների մոտ և կատարում էին այն, ինչ իրենց կարգադրված էր։

Արտաշիրը, երբ ճաշկերույթն սկսվել էր, մտածում էր գործի անցնել և արդեն բռնել էր դաշույնի երախակալը։ Գրիգորը կանգնեցրեց նրան, հայերեն ասելով, որ դեռ Գոնթարիսը իրեն չի կորցրել, դեռ շատ քիչ գինի է խմել։ Արտաշիրը ցածրաձայն ասաց. «Ա՜յ մարդ, իմ հոգեկան վիճակը գերազանց էր, իզուր խանգարեցիր»։ Գինարբուքը երկարեց. Գոնթարիսը, արդեն հարբած, պատվում էր դորիֆորներին՝ ուտելիք մատուցելով նրանց։ Վերջիններս ուտելիքն առնելով պետք է սրահից դուրս գային՝ ուտելու համար։ Գոնթարիսի մոտ թողնելով միայն երեք դորիֆորներ, որոնցից մեկը Ուլիթեոսն էր, Արտաշիրը ևս դուրս եկավ մյուսների հետ՝ պարգևածը ճաշակելու համար։ Այստեղ նա մտածեց, թե հանկարծ դաշույնը քաշելիս որևէ արգելք լինի, ուստի և դրսում եղած ժամանակ թարուն պատյանը դեն նետեց և մերկ դաշույնը թևի տակ թաքցրած մտավ Գոնթարիսի մոտ, իբրև թե նրան մյուսներից գաղտնի մի բան ասելու։ Արտավանը տեսնելով այդ հուզվեց և ծայրահեղ լարվածության հետևանքով ընկնելով տագնապի մեջ, սկսեց գլուխը շարժել։ Նրա դեմքի գույնը բազմիցս փոխվեց, և միանգամայն պարզ դարձավ, որ ինչ-որ մեծ գործի առթիվ նա տագնապալից վիճակում է։ Պետրոսն այդ նկատեց, հասկացավ, թե ինչ է կատարվում, բայց լռեց, որովհետև ինքը բարյացակամ տրամադրված լինելով դեպի կայսրը, կատարվելիքից շատ գոհ էր։ Երբ Արտաշիրն ընդհուպ մոտեցավ բռնակալին, այնտեղ գտնվող ծառաներից մեկը, մի փոքր ետ քաշվելով, տեսավ մերկ դաշույնը և բացականչեց. «Ո՜վ լավագույնդ, այս ի՞նչ է»։ Գոնթարիսը ձեռքը տա-

նելով աջ ականջը, դեմքը շրջեց դեպի նա։ Արտաշիրն այդ միջոցին դաշույնով կտրեց ճակատի վերևի մի մասը՝ նրա մատների հետ միասին։ Պետրոսը կոչով դիմեց Արտաշիրին՝ սպանել ամենաամբարիշտ մարդուն։ Տեսնելով, որ Գոնթարիսը ուզում է կանգնել, Արտավանը (նա մոտ էր բազմած), քաշեց ազդրից կախված երկսայրի դաշույնը, որը բավական մեծ էր և մինչև երախակալը խրեց բռնակալի կողը։ [Գոնթարիսը] մահացու հարված ստանալով այլևս չփորձեց կանգնել, այլ տեղն ու տեղը ընկավ։ Ուլիթեոսը Արտաշիրի գլխին հարվածելու մտադրությամբ բարձրացրեց թուրը, բայց վերջինս երկարեց ձախ թևը, և ամենադժվարին պահին իր հեռատեսությունն օգտակար եղավ. [Ուլիթեոսի] թրի շեղբը դեմ առավ [Արտաշիրի] ձեռքի վրա կապված նետին և նա ոչ մի վերք չստացավ, իսկ ինքն առանց որևէ դժվարության սպանեց Ուլիթեոսին։ Պետրոսն ու Արտավանը, մեկը Գոնթարիսի, մյուսն ընկած Ուլիթեոսի թրերը քաշելով սպանեցին մնացած դորիֆորներին։ Ինչպես պետք է սպասել, բարձրացավ մեծ աղմուկ և իրարանցում. հայերը, որոնք բռնակալի թիկնապահների հետ էին, լսելով աղմուկը, կարգադրության համաձայն վերցրին իրենց վահանները և շտապեցին դեպի բազմոցները և առանց դիմադրության հանդիպելու, կոտորեցին բոլոր վանդալներին և Գոնթարիսի մերձավորներին։

Այնուհետև Արտավանը վստահեց Աթանասիոսին պահելու Պալատում գտնվող դրամը. Արեոբինդոսի թողած [բոլոր դրամը] այստեղ էր գտնվում։ Երբ թիկնապահներն իմացան Գոնթարիսի վախճանի մասին, շատերն իսկույն միացան հայերին, որովհետև մեծ մասամբ Արեոբինդոսի մտերիմներն էին։ Նրանք միահամուռ կերպով Հուստինիանոսին բարեհաղթ հռչակեցին և նրանց բարձր աղաղակը բերնե-բերան տարածվեց քաղաքի մեծ մասում։ Այստեղ դեպի կայսրը լավ տրամադրված մարդիկ հարձակում գործեցին ապստամբների բնակարանների վրա, ոմանց դեռ քնից նոր զարթնած, ոմանց ճաշի ժամանակ, ոմանց էլ սարսափահար և շշմած վիճակում անմիջապես սկսեցին կոտորել։ Նրանց թվում էր նաև Պասիփիլոսը։ Հովհաննեսը մի քանի վանդալներով ապաստան է գտնում տաճարում։ Արտավանը նրանց երաշխիքներ տալով հանեց այնտեղից, ուղարկեց Բյուզանդիոն և քաղաքը վերանվաճեց ու պահպանեց կայսեր համար։ Բռնակալի սպանությունը տեղի ունեցավ խռովության երեսունվեցերորդ օրը, Հուստինիանոս կայսեր ինքնակալության տասնիններորդ տարին։

«Պատերազմների մասին» գիրք չորրորդ, գլուխ 28

Այս դեպքի առթիվ Արտավանը բոլոր մարդկանց մոտ մեծ փառքի արժանացավ։ Արեոբինդոսի կինը՝ Պրեյեկտան անմիջապես մեծ գումար նվիրեց նրան, իսկ կայսրը՝ ամբողջ Լիբիայի զորավար նշանակեց։ Բայց շուտով Արտավանը խնդրեց կայսեր իրեն Բյուզանդիոն տեղափոխել և կայսրը կատարեց այդ խնդիրքը։ Արտավանին կանչելով, նրա փոխարեն՝ Լիբիայի ընդՀանուր զորավար նշանակեց Պապպոսի եղբայր ՀովՀաննեսին...»։

# ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

## [ԳՈԹԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ]

### ԳԼՈՒԽ 13

*[Գոթական պատերազմի չորրորդ տարին, ամռանը— 538/539 թթ.]:*

*«...Այն ժամանակ Բելիսարիոսին հայտնի դարձավ, որ Բյուզանդիոնից մեծ զորքով Նարսեսն է[1] գալիս, որ նա Պիկենոն[2] է հասել: Այս Նարսեսը ներքինի էր, կայսերական գանձապահ, բայց հակառակ իր ներքինի լինելուն, շատ գործունյա էր և խոհեմ: Նրան հետևում էին հինգ հազար զինվոր՝ դնդերի բաժանված, որոնց գլխավորում էին իլլիրացի զորավար Հուստինոսը, մյուս Նարսեսը՝ ալարսից հպատակ հայերից, որն անցյալում դասալիք էր եգել և իր եղբոր Արատիոսի հետ անցել հռոմայեցիների երկիրը[3]: Վերջինս քիչ առաջ ուրիշ զորքի հետ եկել էր Բելիսարիոսի մոտ: Նրանց հետևում էին նաև էրուլների ցեղից մոտավորապես երկու հազար մարդ՝ Վիսանդոսի, Ալուիթի և Ֆանիթեոսի գլխավորությամբ...»:*

### ԳԼՈՒԽ 16

*«Բելիսարիոսն ու Նարսեսն իրենց զորքերով միացան իրար Ֆիրմոն քաղաքի մոտ, որը գտնվում է Հոնիական ծոցի ափին, Ավքսիմոս[4] քաղաքից մեկ օր հեռավորության վրա: Հենց այստեղ բոլոր զորահրամանատարները խորհրդակցում էին այն հարցի շուրջը. թե նախ և առաջ թշնամիներից որի վրա արշավելն է ձեռնըտու:, Նրանք երկյուղ էին զգում շարժվել Արիմինոնի[5] պաշարողների վրա, որովհետև ենթադրում էին, որ Ավքսիմոսում գտնվող [թշնամիները] կհարձակվեն և մեծ վնաս կհասցնեն և՛ իրենց, և՛ տեղական հռոմայեցի բնակչության, իսկ մյուս կողմից վախենում էին պաշարվածների համար, թե հանկարծ անհրաժեշտ պարենի սպառման հետևանքով փորձանքի կհանդիպեն: Շատերը զայրացած լինելով Հովհաննեսի դեմ, ելույթներ էին ունենում: Նրան մեղադրում էին այն բանի համար, որ իր անմիտ խիզախության և անչափ դրամասիրության պատճառով ենթարկվեց նման վտանգի,*

անկարգապահություն ցուցաբերեց, որ նա պատերազմական գոր-
ծերը վարում էր ոչ սահմանված ձևով, ոչ էլ այնպես, ինչպես կար-
գադրել էր Բելիսարիոսը։ Նա չթողեց, որ Բելիսարիոսը գլուխ բերի
պատերազմի գործը։ Սակայն Նարսեսը (որովհետև նա [Հովհան-
նեսին] բոլորից շատ էր սիրում), վախենալով, որ [Բելիսարիոսը]
հրամանատարների խոսքի առաջ Հանկարծ տեղի կտա և Արիմի-
նոնի հարցը երկրորդական կհամարի, ասաց այսպես. «Ո՛վ հրա-
»մանատարներ. ...Եթե դուք գտնում եք, որ երկու դեպքում էլ
»վտանգը հավասարապես նույնն է և անհաջողության դեպքում
»վնասը նույնն է, անհրաժեշտ է ամենաճիշտ կերպով մտածել և
»լուրջ մտածելուց հետո միայն ստեղծված վիճակի մասին որոշում
»կայացնել։ Արդ, եթե մենք Ավքսիմոսի վրա հարձակումը հետա-
»ձգենք, ապա ոչ մի էական վնաս չենք կրելու։ Ի՞նչ կարող է տեղի
»ունենալ այդ ընթացքում։ Բայց եթե մենք Արիմինոնի հարցում
»սխալվենք, մենք առնվազն կխորտակենք հռոմայեցիների հզո-
»րությունը։ Եթե Հովհաննեսը արհամարհել է քո կարգադրություն-
»ները, ո՛վ Բելիսարիոս, ապա դու կարող ես նրան պատժել, քանի
»որ քո ձեռքում է մեղավորին և՛ փրկելու, և՛ նրան թշնամու ձեռ-
»քում թողնելու հնարավորությունը։ Բայց տե՛ս, որ հանկարծ դու
»և՛ մեզանից, և՛ կայսրից Հովհաննեսի՝ իր անգիտությունից բխող
»զանցանքի համար պատիժ չստանաս։ Եթե այժմ գոթերը գրավեն
»Արիմինոնը, ապա նրանք դրանով իսկ դերի կվերցնեն մի գոր-
»ծունյա հռոմայեցի զորավարի, նաև ամբողջ զորքը, նրանք կգր-
»րավեն կայսեր հպատակ քաղաքը։ Դժբախտությունը դրանով չի
»վերջանա, դա կարող է վճռել ամբողջ պատերազմի ճակատագի-
»րը։ Դու մտածիր թշնամիների մասին հետևյալ կերպ. ճիշտ է,
»նրանք դեռ այժմ էլ քանակապես մեզ շատ են գերազանցում,
»բայց նրանք վհատվել են, որովհետև բազմիցս անհաջողության
»են մատնվել։ Արդարև, անհաջողությունը զրկել է նրանց ամեն մի
»հանդգնությունից։ Արդ, եթե նրանք այժմ հաջողություն ձեռք
»բերեն, շուտով կվերականգնեն իրենց ոգին, որից հետո ներկա
»պատերազմում մենք քաջությամբ հավասար չենք լինի նրանց,
»նրանք մեզ կգերազանցեն։ Դժվարություններից դուրս եկողների
»բարոյական ոգին միշտ ավելի բարձր է լինում, քան նրանց, ով-
»քեր երբեք փորձանքի չեն հանդիպել»։ Նարսեսն այսքանն ասաց։

Մի զինվոր բարբարոսների պահակությունից գաղտնի Արի-
մինոնից եկավ ճամբար և Բելիսարիոսին հանձնեց նրան հասցեա-
գրված Հովհաննեսի նամակը։ Նամակում հետևյալն էր գրված.

«Մեր ամեն տեսակի պարենը վաղուց սպառվել է, և մենք այլևս
»ի վիճակի չենք ըսպել ժողովրդին, ոչ էլ պաշտպանվել թշնամինե-
»րից, այնպես որ յոթ օր հետո մենք մեր կամքից անկախ անձնա-
»տուր կլինենք, քաղաքն էլ կհանձնենք թշնամիներին, քանզի ամե-
»ննևին ի վիճակի չենք հաղթահարել առկա դժվարությունները, և
»եթե մենք գործենք որևէ վատ բան, ապա կարծում եմ, որ այս
»դժվարությունները մեզ համար բավական լուրջ արդարացում են»:
Հովհաննեսն այդ էր գրել: Բելիսարիոսը տատանվում էր, և դժվար
դրության մեջ էր: Նա մի կողմից երկյուղ էր զգում պաշարվածնե-
րի համար, իսկ մյուս կողմից էլ վախենում էր, որ Ավքսիմոսում
գտնվող թշնամիները արշավելով, աներկյուղ կթալանեն ամբողջ
շրջակա բնակավայրերը, բացի դրանից, հետապնդելով, կդարա-
նակալեն ճամբար դրած զորքը, իսկ եթե նրանց հաջողվի միանալ
թշնամիների [մյուս զորաբանակին], ապա նրանք, բնական է,
մեծ ավերածություններ կգործեն: Նա ի վերջո վճռեց հետևյալը:
Արատիոսին հազար հոգով թողեց տեղում՝ Ավքսիմոս քաղաքից
երկու հարյուր ասպարեզ հեռավորության վրա, ծովափին ճամբար
դնելու: Նրանց հրամայեց, որ տեղից չշարժվեն, ոչ էլ կռվեն թշնա-
միների դեմ, այլ միայն պաշտպանվեն ճամբարում, եթե [թշնա-
միները] իրենց վրա շարժվեն: Նա մեծ հույս ուներ, որ հռոմայե-
ցիների, մոտիկ ճամբարած լինելը տեսնելով, [թշնամիները] Ավք-
սիմոսում հանգիստ կմնան և չեն հետապնդի իրենց վատ նպա-
տակներով: Այնուհետև նա կազմեց մի մեծ զորաբանակ և նավերով
[Արիմինոն] ուղարկեց: Նրան գլխավորում էին Հերոդիանոսը,
Ուլիարիսը և Արատիոսի եղբայր Նարսեսը: Նավատորմիղի ընդհա-
նուր հրամանատարն էր Իլդիգերը, որին Բելիսարիոսը հրամայեց
անմիջապես նավարկել դեպի Արիմինոն, զգուշանալով ափ դուրս
գալուց, քանի դեռ հետևակը հեռու էր գտնվում: Վերջինս պետք է
առաջ շարժվեր ծովափից շատ չհեռանալով: Իսկ մի այլ զորամա-
սի էլ, որին գլխավորում էր Մարտինոսը, հրամայեց ծովափով
առաջ շարժվել, հետևելով նավերի ընթացքին: Նրանց կարգադրեց,
որ երբ ընդհուպ մոտենան թշնամիներին, ապա շատ ավելի խա-
րույկներ վառեն, քան համապատասխանում է զորքի քանակին,
որպեսզի հակառակորդների վրա քանակապես շատ լինելու տպա-
վորություն թողնեն: Իսկ ինքն էլ ծովափից հեռու գտնվող մի այլ
ճանապարհով Նարսեսի և մնացած զորքի հետ միասին շարժվեց
Ուրբիսալիա քաղաքի վրայով, քաղաք, որն անցյալում Ալարի-

քոսն՝ այնպես էր ավերել, որ նրա նախկին փայլից ոչինչ չէր մնացել, բացի մի դարպասից և մի քանի շենքերի հիմքերից...։

[Գոթերը, տեսնելով բյուզանդական զորքը և նավատորմիղը, փախուստի են դիմում և ապաստանում Ռավեննայի պարիսպների ետև]։

ԳԼՈՒԽ 18

«Հռոմայեցիներից Իլդիգերը և նրա մարդիկ առաջիններր ներխուժելով [Արիմինոն քաղաքը պաշարող] թշնամիների ճամբարը գերի վերցրին գոթերից նրանց, ովքեր հիվանդության պատճառով մնացել էին տեղում և ձեռք բերեցին փախուստի դիմած գոթերի թողած հարստությունը։ Բելիսարիոսը ևս կեսօրին ամբողջ զորքով ժամանեց այստեղ և երբ տեսավ Հովհաննեսին և նրա մարդկանց գունատ ու կեղտոտ, ապա ի միջի այլոց հիշեցրեց նրան իր անմիտ խիզախության մասին և ասաց, որ նա շնորհակալ պիտի լինի Իլդիգերին։ Իսկ [Հովհաննեսը] ասաց, որ շնորհակալ է Նարսեսին՝ կայսերական դանձապահին, ակնարկելով, որ ոչ այնքան Բելիսարիոսի ցանկությամբ, որքան Նարսեսի խորհրդով է, որ նրանք իրեն նեցուկ կանգնեցին։ Այնուհետև [Բելիսարիոսն ու Նարսեսը] մեծ կասկածանքով էին վերաբերվում միմյանց։ Նարսեսի մերձավորները չէին ուզում նրան թողնել Բելիսարիոսի հետ արշավանքի դուրս գալու, համոզում էին նրան, որ կայսեր գաղտնիքներին հաղորդակից մի մարդու միանգամայն անվայել է զորքի ընդհանուր հրամանատարը չլինել և ենթարկվել մի զորավարի։ Նրանք ասում էին, որ Բելիսարիոսը երբեք կամավոր կերպով, [Նարսեսի հետ] հավասար հիմունքներով չի ղեկավարի զորքը և եթե [Նարսեսը] ցանկանա ինքը գլխավորել հռոմայեցիների զորքը, շատ ավելի զինվորներ և լավագույն հրամանատարները իրեն կհետևեն։ Նրանք ասում էին, որ էրուլները, իր դորիֆորներն ու հյուպասպիստները, որոնց գլխավորում էին Հուստինոսը և նույն ինքը Հովհաննեսը, նաև Արատիոսի և Նարսեսի զորքը, բոլորը թվով ոչ պակաս, քան տասը հազար հոգի են, այն էլ շատ քաջ և լավ պատերազմող։ Նրանք պնդում էին, որ Իտալիայի նվաճումը պետք է համարվի ոչ միայն Բելիսարիոսի գործը, այլ մասամբ նաև Նարսեսի, որ նա թողել է կայսեր շրջապատը ոչ թե իրեն վտանգի ենթարկելով Բելիսարիոսի փառքը ամրապնդելու համար, այլ որպեսզի իր խոհեմությամբ ու արիությամբ դառնա ամենահռչակավոր մարդը։ Նրանք ասում էին, որ Բելիսարիոսն առանց իրենց ոչինչ անել չէր կարող, որովհետև նրա գլխավորած զորքի մեծ մասը թողնվել է գրավված ամրոցնե-

րում և քաղաքներում, և թվարկում էին բոլորը՝ Սիկիլիայից սկսած
մինչև Պիկենոն։ Նարսեսը, լսելով այդ խորհուրդը, շատ գոհ մնաց
և այլևս չէր կարողանում թաքցնել իր մտադրությունները, ոչ էլ
տանել ներկա իրավիճակը։ Երբ Բելիսարիոսը բազմիցս հրամա-
յում էր մի նոր գործի ձեռնարկել, ապա նա մեջ բերելով զանա-
զան առիթներ հրաժարվում էր հրամանը կատարել։ Բելիսարիոսը
տեսնելով այդ, հրավիրեց բոլոր հրամանատարներին և ասաց այս-
պես. «Ո՜վ հրամանատարներ, ինձ թվում է, որ ներկա պատերազ-
»մը վարելու հարցում մենք միակարծիք չենք։ Ես տեսնում եմ, որ
»դուք արհամարհում եք թշնամուն, որպես վերջնականապես պար-
»տության մատնված։ Բայց և համոզված եմ, որ ձեր այդ համար-
»ձակությունը մեզ գցելու է բացահայտ վտանգի մեջ, որովհետև
»թշնամիները պարտվել են ձեր կողմից ոչ թե իրենց անարիության
»կամ փոքրաքանակ լինելու պատճառով. կարծում եմ, որ նրանք
»այստեղից փախուստի են դիմել միայն ու միայն մեր հեռատեսու-
»թյունից, խոհեմությունից ու խորամանկությունից պարտված։
»Արդ, ես վախենում եմ, որ ձեր սխալը փորձանքի կմատնի ձե՛զ
»էլ, հռոմեական պետությունն էլ։ Քանզի նրանք, որոնց թվում է, թե
»հաղթել են և ամբարտավանանում են, հենց նրանք են փորձանքի
»մատնվում, քան թե ովքեր անակնկալ կերպով պարտության են
»մատնվել, որովհետև վերջիններս թշնամիներին ավելի զգոնու-
»թյամբ և զգուշությամբ են վերաբերվում։ Անհոգությունը կործա-
»նում է նույնիսկ բարենպաստ վիճակում գտնվողներին, իսկ ջա-
»նասիրությունն ու խոհեմությունը փրկում է փորձանքների մատ-
»նըված շատերին։ Հուսահատության մեջ գտնվողների հզորությու-
»նը շատ է թուլանում, բայց խելամտությունը միշտ ուժ է տալիս։
»Ձեզանից յուրաքանչյուրը թող հիշի, որ Ռավեննայում՝ են գըտ-
»նըվում Ուիտտիգիսն ու բյուրավոր գոթեր, որ Ուրաիասը պաշա-
»րել է Մեդիոլանոնն[8] ու օղակի մեջ առել ամբողջ Լիգուրիան[9], որ
»Ավքսիմոսը լի է մարտունակ մեծաքանակ զորքով, բազմաթիվ
»այլ բնակավայրեր ռազմունակ բարբարոսների ձեռքում են գտնը-
»վում՝ մինչև Ուրբիվենտոն[10], որը Հռոմին կից է։ Այնպես որ մեր
»գործերն այժմ ավելի վատ վիճակում են, քան առաջ, որովհետև
»այժմ մենք, կարելի է ասել, թշնամիների շրջապատման մեջ ենք,
»էլ չեմ խոսում այն մասին, որ, ինչպես պատմում են, ֆրանկները
»արդեն Լիգուրիայում են, մի բան, որ պետք է բոլոր հռոմայեցի-
»ներիս մեջ մեծ երկյուղ առաջացնի։ Արդ, իմ կարծիքով, անհրա-
»ժեշտ է զորքի մի մասն ուղարկել Լիգուրիա և Մեդիոլանոն, իսկ

»մնացածներն էլ թող անհապաղ շարժվեն Ավքսիմոսի և այնտեղ
»գտնվող թշնամիների վրա՝ անելու համար այն, ինչ թույլ կտա
»աստված։ Իսկ այնուհետև յուրաքանչյուրին ինչպես որ ավելի
»ճիշտ է թվում պատերազմը մղել, թող այդպես անի»։ Բելիսա-
րիոսն այսքանն ասաց, իսկ Նարսեսը պատասխանեց այսպես.
«Ոչ ոք չի առարկի, ով զորավար, քո ասածների մեծ մասի ճշմար-
»տացիությանը։ Բայց իմ կարծիքով կայսեր ամբողջ զորքն առանձ-
»նացնել Մեդիոլանոնի և Ավքսիմոսի համար միանգամայն ձեռ-
»նրտու չէ։ Դու այդ գործի համար կարող ես հռոմայեցիներից ում
»որ ցանկանաս՝ վերցնես։ Իսկ մենք կայսեր համար կնվաճենք
»էմիլիա[11] երկիրը, որը, ինչպես պատմում են, արդեն գոթերի ձեռ-
»քում է գտնվում և այնպես կսասանենք Ռավեննան, որ մեր դեմ
»եղած թշնամուն կտրենք որևէ օգնության հույսից և կանենք ինչ որ
»ուզենք։ Որովհետև եթե մենք ձեզ հետ համաձայնվենք Ավքսիմո-
»սը պաշարել, վախենում եմ, որ Ռավեննայից եկող բարբարոսնե-
»րը մեր հաշիվները խառնեն և պարենի պակասություն էլ զգալով
»տեղում կոտորվենք»։ Ահա Նարսեսն այսքանն ասաց։ Բելիսա-
րիոսը, վախենալով, որ հռոմայեցիները մասերի բաժանվելով և
շատ ցրվելով կխորտակեն կայսեր գործերը և անկարգապահություն
կառաջանա, ցույց տվեց Հուստինիանոսի՝ զորահրամանատարնե-
րին հասցեագրված նամակը։ Այնտեղ գրված էր հետևյալը. «Մենք
»Իտալիա ենք ուղարկել մեր դանձապահ Նարսեսին ոչ նրա համար,
»որպեսզի գլխավորի զորքը։ Մենք ցանկանում ենք, որ ամբողջ
»զորքը գլխավորի Բելիսարիոսը, տանելով ուր որ ինքը հարմար է
»գտնում, իսկ դուք բոլորդ [պետք է] նրան հետևեք՝ հօգուտ մեր
»պետության»։ Կայսեր նամակն այդպիսի բովանդակություն ուներ։
Իսկ Նարսեսը, կառչելով նամակի վերջավորությունից պնդում էր,
որ տվյալ դեպքում Բելիսարիոսը գործում է ոչ պետության օգտին,
որով իրենք պարտավոր չեն նրան հետևել։

ԳԼՈՒԽ 19

Բելիսարիոսը լսելով այդ, Պերանիոսին[12] մեծ զորքով ուղար-
կեց Ուրբիվենտոնը պաշարելու, իսկ ինքն էլ զորքը տարավ Ուր-
բինոնի[13] վրա, մի ամուր քաղաքի, որն ուներ գոթերի բավական
մեծ կայազոր (այն գտնվում է Արիմինոն քաղաքից լավ քայլողի
համար մեկ օրվա հեռավորության վրա)։ Նրա գլխավորած զորքին
հետևեցին Նարսեսն ու Հովհաննեսը և մնացած բոլորը։ Նրանք մո-
տենալով քաղաքին, երկու մասի բաժանված, բլրի ստորոտում

առանձին-առանձին ճամբար դրեցին։ Բելիսարիոսի մարդիկ բռնեցին քաղաքի արևելյան կողմը, իսկ Նարսեսի կողմնակիցները՝ արևմտյան...

...Նարսեսի մերձավորներից ոմանք ասացին նրան, որ... քաղաքը միանգամայն անառիկ է (և դա իսկապես այդպես էր), և որ ինքը պետք է կայսեր համար վերանվաճեր էմիլիա երկիրը։ Նարսեսը հավանություն տվեց այդ խորհրդին և հակառակ Բելիսարիոսի թախանձագին խնդրանքին՝ մնալ տեղում և միասին գրավել Ուրբիսոն քաղաքը, գիշերով վերացրեց պաշարումը։ Նրանք շտապ կարգով զորքի հետ հասան Արիմինոն։ ...[Ուրբինոնի] գոթերը անձնատուր եղան Բելիսարիոսին, հանձնեցին քաղաքը այն պայմանով, որ անվնաս կմնան և դառնալով կայսեր. հպատակ հռոմայեցի զինվորների հետ հավասար և նման [իրավունքներ] կունենան։

Երբ Նարսեսը լսեց այդ դեպքի մասին, շատ զարմացավ և սխրեց։ Նա շարունակեց Արիմինոնում հանգիստ մնալ, իսկ Հովհաննեսին հրամայեց ամբողջ զորքն առաջնորդել Կայսենեի[14] վրա։ ...Հովհաննեսին այն ժամանակ չհաջողվեց [գրավել] Կայսենեի ամրոցը և նա որոշեց նոր փորձեր չանել, որովհետև գտավ, որ այն անառիկ է, և Հուստինոսի ու մնացած զորքի հետ առաջ շարժվեց։ Նա հանկարծակի հարձակում գործելով, գրավեց Ֆորոկորնելիոս[15] կոչված հինավուրց քաղաքը։ Թշնամիները նրա առաջ անընդհատ նահանջում էին և մարտի չէին բռնվում, որով նա ամբողջ էմիլիան կայսեր համար վերանվաճեց։ Ահա այսպիսին էր իրավիճակն այդտեղ։

ԳԼՈՒԽ 20

Բելիսարիոսը Ուրբինոնը ձմեռ ժամանակ գրավելուց հետո որոշեց, որ անմիջապես Ավքսիմոսի վրա շարժվելը ձեռնտու չէ... Նա Արատիոսին հրամայեց մեծ զորքով ձմեռել Ֆիրմոնում և պահել այն, որպեսզի բարբարոսները հնարավորություն չունենան այդտեղից արշավանքներ կատարելու, աներկյուղ չբռնատիրեն շրջակա բնակավայրերը։ Իսկ ինքը զորքը տարավ Ուրբիվենտոնի վրա։ Այդ գործին նրան դրդում էր Պերանիոսը, որովհետև դասալիքներից լսել էր, որ տեղի գոթերի պարենը սպառվել էր, և հույս ուներ, որ նրանք պարենի պակասության հետ միասին, եթե Բելիսարիոսին էլ տեսնեն ամբողջ զորքով, հեշտությամբ տեղի կտան, ինչ որ իսկապես եղավ...։

ԳԼՈՒԽ 21

*Բելիսարիոսը, երբ իմացավ, որ Ուրաիասը և բարբարոսները
պաշարել են Մեդիոլանոնը, Մարտինոսին և Ուլիարին մեծ զորքով
նրանց դեմ ուղարկեց։ ... [Այնուհետև] Բելիսարիոսը Հովհաննե-
սին և Հուստինոսին հրամայեց, որ Մարտինոսի հետ միասին շտապ
շարժվեն Մեդիոլանոնի վրա։ [Հովհաննեսն ու Հուստինոսն] ասա-
ցին, որ առանց Նարսեսի հրամանի ոչինչ չեն անի։ Այդ իսկ պատ-
ճառով Բելիսարիոսը Նարսեսին գրեց հետևյալը. «Դու համարիր,
»որ կայսեր ամբողջ զորքը մեկ մարմին է, և եթե այն միահամուռ
»չգործի, ինչպես մարդու անդամները, այլ ուզենա գործել անջատ
»անջատ, մենք կկորչենք առանց որևէ կարևոր բան կատարելու։
»Արդ, դու թող Էմիլիան, որը ոչ մի ամրություն չունի և տվյալ իրա-
»դրության մեջ հռոմայեցիների համար ոչ մի կարևոր նշանակու-
»թյուն ունենալ չի կարող և հրամայիր Հովհաննեսին ու Հուստի-
»նոսին Մարտինոսի մարդկանց հետ միասին անհապաղ շարժվեն
»Մեդիոլանոնում գտնվող թշնամիների վրա...»։ Երբ Նարսեսը
կարդաց այդ նամակը, կարգադրեց Հովհաննեսին և Հուստինոսին
մյուս զորքի հետ միասին շարժվել Մեդիոլանոնի վրա...։*

ԳԼՈՒԽ 22

*«...[Բելիսարիոսը] ամբողջ տեղի ունեցածի մասին գրեց կայ-
սեր։ Կայսրն այս կապակցությամբ ոչ ոքի չպատժեց։ Լսելով Բելի-
սարիոսի և Նարսեսի տարաձայնությունների մասին, անմիջապես
ետ կանչեց Նարսեսին և պատերազմի գերագույն հրամանատարու-
թյունը թողեց Բելիսարիոսին։ Այսպիսով Նարսեսը վերադարձավ
Բյուզանդիոն, իր հետ ունենալով փոքրաթիվ զորք։ Իսկ էրուլները
Նարսեսի գնալուց հետո չուզեցին մնալ Իտալիայում, թեև Բելիսա-
րիոսը և՛ իր, և՛ կայսեր կողմից շատ բան էր խոստանում նրանց,
եթե մնան...»։*

ԳԼՈՒԽ 26

*[Գոթական պատերազմի հինգերորդ տարին—539/540 թթ.]։*

*[Ավքսիմոս քաղաքում պաշարված գոթերը] «...բանակցու-
թյունների մեջ մտան բեսսական ծագում ունեցող մեկի հետ, որի
անունն էր Բուրկենտիոս և նախկինում գտնվում էր Նարսես հայի
գլխավորած զորքի կազմում...»։*

[Գոթական պատերազմի մասին գիրք երկրորդ. գլուխ 27, 29]

ԳԼՈՒԽ 27

*[Ավքսիմոսի պաշարման ժամանակ տեղի ունեցած մի ընդհարման մասին]։ «...Ճակատամարտը, որ սկսվեց առավոտյան, երկարեց մինչև կեսօր։ Նարսեսին և Արատիոսին ենթակա զինվորներից յոթ հայ, հոյակապ սխրագործություններ կատարեցին դժվարանցանելի զառիթափ վայրում, կարծես հարթավայրում լինեն, իրենց դիմադրող թշնամիներին կոտորեցին և ետ մղելով՝ փախուստի մատնեցին։ Մնացած հռոմայեցիները, տեսնելով, որ թշնամիները տեղի են տալիս, սկսեցին հալածել և բարբարոսները գլխովին փախուստի դիմելով, նորից պարսպի ետև անցան...»։*

ԳԼՈՒԽ 29

*[Բելիսարիոսի կողմից Ռավեննայում պաշարված գոթերի և բյուզանդացիների միջև բանակցություններ էին գնում. գոթերը ցանկանում էին դադարեցնել պատերազմը]։ «...Այն ժամանակ Բելիսարիոսը Բեսասին, Հովհաննեսին, Նարսեսին և Արատիոսին հրամայեց, որ ամեն մեկը մի տեղ գնա իր զորքով (որովհետև կասկածում էր, թե սրանք անբարյացակամ են տրամադրված իր հանդեպ)՝ անհրաժեշտ պարեն ձեռք բերելու համար Նա ասում էր, թե ինքը այլևս ի վիճակի չէ նման վայրում հոգալ ամբողջ բանակի պարենի մասին։ Վերջիններս, որոնց թվում էր նաև Բյուզանդիոնից նոր ժամանած պրետորիական պրեֆեկտ Աթանասիոսը, այդպես էլ արեցին, իսկ [Բելիսարիոսը] մնացած զորքով և գոթերի դեսպանների հետ շարժվեց դեպի Ռավեննա...»։*

# ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ՅՈԹԵՐՈՐԴ

## [ԳՈԹԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ]

### ԳԼՈՒԽ 3

*[Գոթական պատերազմի յոթերորդ տարին—541/542 թթ.]։*

*[Հռոմեական զորքը Ռավեննայից շարժվում է Վերոնայի վրա։ Երբ հռոմայեցիները գտնվում էին քաղաքից 60 ասպարեզ հեռավորության վրա, նրանց մոտ է գալիս վենետիկցի ոմն Մարկիանոս, խոստանալով օգնել Վերոնայի գրավման գործում. նրա ասելով դարպասները պահող զինվորներից մեկը իրեն ծանոթ է մանկուց և նրա օգնությամբ կարելի կլինի մուտք գործել քաղաք։ Նա պահակին դրամ է տվել, իսկ վերջինս էլ համաձայնվել է քաղաք ընդունել կայսեր զորքը]։*

*«...[Հռոմայեցիներից] ոչ ոք չէր ուզում իրեն վտանգի ենթարկել և միայն ծագումով հայ, արտակարգ քաջ պատերազմող Արտավազեսը[17] միանգամայն կամավոր համաձայնվեց [վտանգի] ենթարկվել։ Նա գլխավորում էր այն պարսիկներին, որոնց մի փոքր առաջ Բելիսարիոսը, գրավելով Սիսավրանոն ամրոցը, Բլեսխամեսի հետ միասին Պարսկաստանից Բյուզանդիոն էր ուղարկել։ Նա ամբողջ զորքի միջից ընտրեց հարյուր հոգի և ուշ գիշերը մոտեցավ պարսպին։ Եվ երբ պահակը ըստ համաձայնության նրանց առաջ բացեց դարպասները, նրանցից մի մասը այնտեղ մնաց ու զորքին էր կանչում, իսկ մյուս մասը բարձրացավ պարիսպների վրա և անակնկալ հարձակում գործելով սկսեց կոտորել պահապաններին։ Երբ մնացած գոթերը գլխի ընկան պատահարի մասին, ուրիշ դարպասներ բացելով փախուստի դիմեցին։*

*Պարսպի առաջ մի շատ բարձր ժայռ կա, որտեղից կարելի էր տեսնել այն ամենը, ինչ կատարվում էր Վերոնայում[18], հաշվել նրա մեջ եղող մարդկանց, ինչպես նաև աչքով անցկացնել ամբողջ դաշտը։ Ահա գոթերն այնտեղ ապաստանելով ամբողջ գիշեր հանդիսատ մնացին։ Հռոմայեցիների զորքը, հասնելով քաղաքից քառասուն*

ասպարեզ հեռավորության վրա, դադարեցրեց առաջխաղացումը, որովհետև զորավարները վիճում էին քաղաքում գտնվող հարստությունների [հարցի] շուրջը։ Ավարի մասին գնացող վիճաբանությունն այնքան երկարեց, որ արդեն լուսացավ և գոթերը բարձունքից իմացան քաղաքում գտնվող թշնամիների ճշգրիտ թիվը, ինչպես նաև այն, թե Վերոնայից որքան հեռավորության վրա է գտնվում [հռոմայեցիների] մյուս զորաբանակը, որից հետո նրանք վազքով քաղաք ներխուժեցին այն դարպասներով, որտեղից նախապես հեռացել էին։ Ներսում գտնվող հռոմայեցիները ի վիճակի չեղան նրանց կանգնեցնել և որոշեցին ապաստանել պարսպի ատամնաշարերի վրա։ Բարբարոսները մեծ բազմությամբ կռվի բռնվեցին նրանց հետ, [հռոմայեցիները] և բոլորից շատ Արտավազդեսը, ուժեղ դիմադրելով հարձակվողներին, հրաշալի քաջագործություններ ցուցաբերեցին։

Հռոմեական բանակի զորահրամանատարները Վերոնայում գտնվող հարստության շուրջն իրար մեջ համաձայնության գալով, որոշեցին մնացած զորքով շարժվել քաղաքի վրա։ Նրանք դարպասները փակ գտան, և թշնամիների կողմից ուժեղ դիմադրության հանդիպելով շտապ նահանջեցին, հակառակ մյուս [հռոմայեցիների] աղերսանքին՝ չլքել իրենց, այլ մնալ տեղում, մինչև որ իրենք, ապաստան գտնելով նրանց մոտ, փրկվեն։ Արտավազդեսի մարդիկ, թշնամու բազմության ճնշման տակ և հույսը կտրելով իրենց մարդկանց օժանդակությունից, բոլորը պարիսպներից ցած թռան։ Նրանցից ովքեր փափուկ տեղ ընկան՝ ողջ առողջ հասան հռոմեական ճամբարը, նրանց թվում էր նաև Արտավազդեսը, բայց ովքեր քարքարոտ տեղ ընկան, բոլորն էլ տեղն ու տեղը կոտորվեցին։ Երբ Արտավազդեսը եկավ հռոմեական ճամբարը, ամենքին պախարակեց ու խայտառակեց և ապա բոլորի հետ միասին ճամբա դուրս եկավ։ Անցնելով էրիդանոս[19] [գետը], նրանք հասան էմիլիայի երկրամասում գտնվող Ֆավենտիա[20] քաղաքը՝ Ռավեննայից հարյուր քսան ասպարեզ հեռավորության վրա։

ԳԼՈՒԽ 4

«Տուտիլասը, իմանալով Վերոնայում կատարվածի մասին, Վերոնայից իր մոտ կանչեց բազմաթիվ գոթերի, և երբ ամբողջ զորքի թիվը հասավ հինգ հազար մարդու՝ շարժվեց թշնամիների վրա։ Իմանալով այդ, հռոմեական զորահրամանատարները խորհուրդ հրավիրեցին։ Արտավազդեսը, հանդես գալով, նրանց ասաց



15—482

հետևյալը. «Ձեզանից ոչ ոք, ով հրամանատարներ, այժմ չմեծա-
»մըտանա, որ մենք քանակապես գերազանցում ենք թշնամիներին,
»որ կռվում ենք Բելիսարիոսի կողմից ստրկացվածների դեմ, և խե-
»լահեղաբար արշավի նրանց վրա։ Քանզի շատերը, ոչ ճիշտ գնա-
»հատելով իրադրությունը, իրենց փործանքի ենթարկեցին։ Ոմանց
»մոտ անտեղի ինքնավստահությունը պատճառ ւ դառնում նրանց
»հղորության ոչնչացման, երբ ընդհակառակը, նախկին անհաջո-
»ղությունը նույն մարդկանց հաջողության հույսեր է ներշնչում.
»հուսալքության հասցրած ճակատագիրը ստիպում է մարդկանց
»հանդես բերել չտեսնված խիզախություն։ Այդպես եմ ասում ել-
»նելով ոչ թե պարզ ենթադրությունից, այլ որովհետև մի փոքր
»առաջ վտանգի ենթարկվելով, աչքովս տեսա այդ մարդկանց խի-
»զախությունը։ Ոչ ոք չկարծե, որ իմ փոքրաթիվ զորքով պարտու-
»թյուն կրելն է թշնամիների ուժի վրա հիանալուս պատճառը։
»Մարդկանց քաջությունը հայտնի է դառնում նրանց դեմ մարտըն-
»չողների քանակապես և՛ գերազանցելու, և՛ չգերազանցելու ժա-
»մանակ։ Մեզ համար, իմ կարծիքով, ավելի ձեռնտու է սպասել
»այն ժամանակին, երբ բարբարոսները կփորձեն անցնել գետը։
»Եվ երբ նրանց կեսն անցնի գետից այս կողմ, ահա այն ժամա-
»նակ մարտի բռնվենք, և ոչ՝ երբ նրանք բոլորը մի տեղ հավաք-
»ված լինեն։ Ոչ ոք թող նման հաղթանակը անփառունակ չհամարի։
»Իրերի ելքն է փառք և անփառունակություն անունները շնորհում,
»և մարդիկ սովորաբար գովում են հաղթողներին, նրանց չի հե-
»տաքրքրում հաղթանակը ձեռք բերելու ճանապարհը»։ Արտավա-
զեսը այսքանն ասաց։ Իսկ զորահրամանատարների կարծիքները
հակասական լինելու պատճառով, անհրաժեշտ ոչինչ չէին ձեռնար-
կում, այլ տեղում մնալով ժամավաճառ էին լինում։

Գոթերի զորքն արդեն շատ էր մոտեցել և նրանք որոշել էին
անցնել գետը...

...Տոտիլասն իր զինվորներից երեք հարյուր հոգու հրամայեց
դետն անցնել իրենց կանգնած տեղից քսան ասպարեզ հեռավո-
րության վրա և դարանել թշնամիների ճամբարի թիկունքում ու երբ
ձեռնամարտն սկսվի, հարձակվել նրանց վրա և ամբողջ ուժով
հարվածել, որպեսզի թշնամին շփոթվելով, չփորձի դիմադրել։ Իսկ
ինքը մնացած զորքով անմիջապես անցավ դետը և շարժվեց հա-
կառակորդի վրա։ Հռոմայեցիները դիմադրություն կազմակերպե-
ցին։ Երբ երկու կողմն էլ առաջ շարժվելով մոտեցան միմյանց,
հսկայական մարմնով և ահռելի տեսքով, նաև համարձակ և քաջ

պատերազմող մի գոթ, որի անունն էր Վալարիս, ասպանդակելով ձին, անցավ մնացած զորքից առաջ և կանգնեց մեջտեղում։ Նա զրահ էր հագած, գլխին սաղավարտ և բոլոր հռոմայեցիներին կոչ էր անում՝ ով որ ցանկանա դուրս գա մենամարտելու։ Բոլորը վախեցած գամվել էին իրենց տեղերին և միայն Արտավազեսը մարտի դուրս եկավ։ Երկուսն էլ ասպանդակեցին ձիերը և երբ իրար շատ մոտեցան, քաշեցին նիզակները։ Արտավազեսին հաջողվեց առաջ անցնելով Վալարիսի աջ կողը խոցել։ Բարբարոսը մահացու հարված ստացած գլորվելու էր գետին, բայց նրա նիզակը ետևից դեմ առնելով ինչ-որ քարի, թույլ չէր տալիս ընկնելու։ Արտավազեսը ենթադրելով, որ նրա ստացած վերքը մահացու չէ, շարունակում էր նիզակն ավելի խոր մխրճել այդ մարդու մարմնի մեջ։ Այնպես պատահեց, որ Վալարիսի գրեթե կանգուն վիճակում գտնվող նիզակի ծայրը կպավ Արտավազեսի զրահին և կամաց-կամաց սահելով ամբողջ զրահի վրայով հասավ Արտավազեսի պարանոցի կաշվին։ Սուր ծայրը պատահաբար կտրեց երակը և դրանից սկսվեց մեծ արյունահոսություն։ Մարդը ոչ մի ցավ չզգաց և ասպանդակեց իր ձին դեպի հռոմայեցիների զորաբանակը, իսկ սպանված Վալարիսը ցած գլորվեց։ Արտավազեսի արյունահոսությունը չէր դադարում և երեք օր անց նա վախճանվեց, հուսալքելով հռոմայեցիներին։ Այս ընդհարման ժամանակ նա շարքից դուրս գալով, մեծապես վատացրեց իրավիճակը, որովհետև այն պահին, երբ ինքը, նետընկեցից հեռու մի տեղում իր վերքն էր բուժում, [հակառակորդ] զորքերն ընդհարվեցին միմյանց։

Սաստիկ մարտի ժամանակ երեք հարյուր բարբարոսներ անցան հռոմայեցիների թիկունքը և հանկարծակի հայտնվեցին։ Հռոմայեցիները, տեսնելով նրանց և կարծելով, որ իրենց դեմ կռվողները քանակապես շատ շատ են, տագնապի մեջ ընկան և անմիջապես, յուրաքանչյուրն ինչպես որ կարողացավ, դիմեց փախուստի։ Բարբարոսները փախչող հռոմայեցիներին խայտառակամահ էին անում, նրանցից շատերին գերի վերցրին և հսկողության տակ դրին։ Նրանք գրավեցին նաև բոլոր դրոշները, մի բան, որ հռոմայեցիներին երբեք չէր պատահել։ Իսկ հրամանատարներից յուրաքանչյուրը մի քանի հոգով, ինչպես որ կարող էր փախուստի դիմեց և մտավ այն քաղաքի պաշտպանների շարքը, որում հաջողվեց ապաստանել։

ԳԼՈՒԽ 6

*[Հուստինիանոս կայսրը լսում է Իտալիայում Տոտիլասի գլխավորությամբ գոթերի հաջողությունների մասին և գոթական պատերազմի ութերորդ տարին 542—543 թթ.]*

*«...շտապ կարգով Իտալիայի պրետորյան պրեֆեկտ նշանակում Մաքսիմինոսին, որպեսզի սա կանգնի պատերազմին մասնակցող հրամանատարների գլուխ, ինչպես և ապահովի զինվորներին անհրաժեշտ պարենով։ Նրա հետ ուղարկեց նաև նավատորմիղ՝ թրակական և հայկական զորքերով։ Թրակացիներին գլխավորում էր Հերոդիանոսը, իսկ հայերին՝ Պերանիոսի եղբորորդի իբերացի Ֆազասը...»։*

ԳԼՈՒԽ 7

*«Մաքսիմինոսը բոլոր նավերով խարիսխ գցեց Սիկիլիայում։ Հասնելով Սիրակուսա, նա ոչինչ չէր ձեռնարկում՝ վախենալով պատերազմից։ Հռոմեական զորքի հրամանատարները, այդ թվում նաև Նեապոլսից Կոնոնը, որը բարբարոսների կողմից խստագույն պաշարման էր ենթարկվել և որի ամբողջ պարենն արդեն սպառվել էր, իմանալով այդ մասին, առանց հապաղելու նրա մոտ մարդ ուղարկեցին, խնդրելով շուտափույթ օգնություն։ Իսկ նա [Մաքսիմինոսը] իր վախկոտությամբ ամբողջ ժամանակն իզուր վատնեց. երկնչելով կայսեր սպառնալիքներից, սլախարակվելով մնացածների կողմից, նա տեղի տվեց ու թեև ինքը շարունակեց մնալ տեղում, ամբողջ զորքը Հերոդիանոսի, Դեմետրիոսի և Ֆազասի գլխավորությամբ Նեապոլիս ուղարկեց՝ սաստիկ ձմռան պահին։*

*Երբ հռոմեական նավատորմիղը մոտեցավ Նեապոլսին, ուժեղ քամի սկսվեց և մեծ փոթորիկ բարձրացավ։ Խավարն ամեն ինչ ծածկել էր, իսկ ալեկոծությունը չէր թողնում նավաստիներին թիավարել կամ որևէ այլ բան ձեռնարկել։ Ալիքների աղմուկից հնարավոր չէր լսել միմյանց։ Առաջացավ մեծ շփոթություն, քամու ուժն իր կամքն էր թելադրում և այն ակամա [հռոմայեցիներին] բերեց ծովափ, ուր թշնամիներն էին կանգնած։ Բարբարոսները հնարավորություն ստացան բարձրանալ հակառակորդի նավերի վրա, սկսեցին կոտորել մարդկանց ու ջրասույզ անել նավերն առանց որևէ դիմադրության հանդիպելու։ Նրանք շատերին գերի վերցրին, այդ թվում նաև զորավար Դեմետրիոսին։ Հերոդիանոսին և Ֆազասին հաջողվեց մի քանի հոգով փախուստի դիմել, որովհետև նրանց նավերը թշնամու զորքին շատ չմոտեցան։*

*Ահա այսպիսին էր իրադրությունը հռոմեական նավատորմիղում...»։*

ԳԼՈՒԽ 13

*[Իտալիայում հռոմայեցիների գործերը շատ վատ վիճակում էին։ Հուստինիանոսն անելանելի դրության մեջ ընկնելով ստիպված է լինում գոթական պատերազմի տասներորդ տարվա—544—545 թթ. սկզբում պարսկական ճակատից երկրորդ անգամ Իտալիա ուղարկել Բելիսարիոսին, թեև արևելյան ճակատում պատերազմը սաստիկ բորբոքվել էր։ Գոթական պատերազմի տասնմեկերորդ տարին—545—546 թթ. ...]*

*«...Բելիսարիոսը Ռավեննայի պահպանության համար թողնում է Հուստինոսին փոքրաթիվ մարդկանցով, իսկ ինքն այդտեղից, Դալմատիայի և նրա բնակավայրերի վրայով, հասնում է Էպիդամնոս[21] և դադար առնում՝ սպասելով զորքի ժամանմանը Բյուզանդիոնից։ Նա կայսեր նամակ գրեց, հայտնեց նրան ներկա իրավիճակը։ [Կայսրը] շուտով այնտեղ ուղարկեց հռոմայեցիներից և բարբարոսներից բաղկացած զորամաս Վիտալիանոսի եղբորորդի Հովհաննեսի և հայազգի Իսաակեսի՝ Արատիոսի և Ներսեսի եղբոր [գլխավորությամբ]։ Նրանք Էպիդամնոսում միացան Բելիսարիոսին։*

*[Կայսրը] միաժամանակ էրուլների իշխանավորների մոտ ուղարկեց ներքինի Ներսեսին համոզելու համար նրանցից շատերին արշավել Իտալիա։ [Ներսեսին] հետևեցին բազմաթիվ էրուլներ՝ Ֆիլիմութի և այլոց գլխավորությամբ, և նրա հետ միասին եկան Թրակիայի շրջանները։ Նրանք պետք է այստեղ ձմեռեին և գարնան սկզբին ուղարկվեին Բելիսարիոսի մոտ...»։*

ԳԼՈՒԽ 18

*[Գոթական պատերազմի տասներկուերորդ տարին—546—547 թթ.]*

*«Երբ Հովհաննեսի և Իսաակեսի զորքը ժամանեց Էպիդամնոս և միացավ Բելիսարիոսին, Հովհաննեսը բոլորին անցկացրեց ծովով...»։*

ԳԼՈՒԽ 19

*[Բելիսարիոսը, վախենալով, որ Հռոմում պաշարված հռոմայեցիները պարենի պակասի ճնշման տակ կհանձնվեն, որոշեց*

պարեն և զորք մատակարարել նրանց Տիբերիս գետի վրայով։ Այնուհետև...]

«...Նա այլ հետևակ և հեծյալ զինվորներ առանձնացրեց, տեղագրեց Տիբերիսի[22] գետաբերանի երկու կողմը՝ ամուր վայրերում, հրամայելով նրանց մնալ տեղում և երբ թշնամիներից ոմանք շարժվեն Պորտոսի[23] վրա, ամբողջ ուժով ետ մղեն։ Նա Իսաակեսին Պորտոս մտցրեց, հանձնեց նրան քաղաքը, իր կնոջը և ինչ որ այնտեղ ուներ՝ կարգադրելով որ քանի դեռ չի լսել, թե Բելիսարիոսը սպանվել է թշնամիների կողմից, ոչ մի դեպքում այնտեղից չհեռանա, հաստատակամորեն պահի [քաղաքը], որպեսզի որևէ դժվարության դեպքում իրենք փախչելու և փրկվելու տեղ ունենան, քանզի այդ վայրում իրենք ոչ մի ամրություն չունեն, ամբողջ շրջակայքը իրենց համար թշնամական է։

...Այդ միջոցին Պորտոսում լուր տարածվեց, ի վնաս հռոմայեցիների, թե իբր Բելիսարիոսը հաղթել է, ջարդել է շղթան, կոտորել այն պահող բարբարոսներին և այլնի մասին...։ Իսաակեսը, լսելով այդ, այլևս չկարողացավ տեղում մնալ, և շտապեց մասնակից դառնալ այդպիսի [մեծ] փառքին։ Անտեսելով Բելիսարիոսի կարգադրությունները, նա արագ շարժվեց դեպի գետի մյուս ափը, ուր Օստիան[24] է գտնվում։ Նա իր հետ վերցրեց Բելիսարիոսի կողմից այստեղ հաստատված զորքերից հարյուր հեծյալ ու արշավեց թշնամիների ամրացված ճամբարի վրա, որոնց գլխավորում էր քաջ պատերազմող Ռուդերիքոսը։ Նա հանկարծակի հարձակվեց այնտեղի բարբարոսների վրա, հարվածեց ոմանց, այդ թվում նաև գիմադրություն ցույց տված Ռուդերիքոսին։ Գոթերն իսկույն թողեցին ճամբարը և նահանջեցին, կա՛մ որովհետև կասկածեցին, որ Իսաակեսի ետևում թշնամիների մեծ բազմություն կա, կամ էլ հակառակորդներին խաբելու համար, որպեսզի կարողանան նրանց գերի վերցնել, ինչ որ և տեղի ունեցավ։

Իսաակեսի հետ թշնամիների ճամբարը ներխուժողները հափշտակեցին այնտեղ գտնվող արժաթեղենը և մնացած դրամը։ Բայց գոթերն անմիջապես հակահարձակման անցան, բազմաթիվ հակառակորդների կոտորեցին և Իսաակեսին մի քանի հոգու հետ գերի վերցրին։ Բելիսարիոսի մոտ փութանակի ժամանած հեծյալները հայտնեցին, որ Իսաակեսը թշնամիների ձեռքն է ընկել։ Բելիսարիոսը ապշեց լսածի վրա և նույնիսկ հարց ու փորձ չարեց, թե ինչպես գերեվարվեց Իսաակեսը։ Ենթադրելով, որ կորել է և՛ Պորտոսը, և՛ իր կինը, որ իրենց բոլոր գործերը շուռ են եկել, որ այլևս

ոչ մի ամրություն իրենց չի մնացել, որտեղ կարելի լիներ փախչելով փրկվել, հուսահատության մեջ ընկավ, ինչ որ նրա հետ երբեք չէր պատահել։ Այդ պատճառով նա զորքը շտապ ետ տարավ՝ հարձակվելու համար դեռևս կռվին անպատրաստ վիճակում գտնվող թշնամիների վրա, ամեն գնով վայրը վերագրավելու նպատակով։

Ահա այսպես հռոմեական զորքը նպատակին չհասած հեռացավ։ Բելիսարիոսը, լինելով Պորտոսում, իմացավ Իսաակեսի հիմարության մասին, հասկացավ, որ անհրաժեշտ չէր այդքան մտահոգվել։ Սակայն այդ դժբախտության պատճառով ունեցած ապրումներից հիվանդացավ։ Բազում օրեր ջերմության մեջ էր, որն իրեն շատ էր տանջում և մահ սպառնում։ Երկու օր անց Ռուդերիքոսը վախճանվեց, իսկ Տուտիլասը այդ պատահարի առթիվ շատ կսկծալով, սպանեց Իսաակեսին»։

ԳԼՈՒԽ 26

«...Տուտիլասը լսելով այդ մասին [Հովհաննեսի Կապուայում գոթերին ջարդ տալու մասին] շատ տխրեց և երդվեց վրեժ առնել Հովհաննեսից։ Զորքի մեծ մասի գլուխն անցած նա շարժվեց նրա վրա, իր մարդկանց մի մասը պահպանության համար տեղում [Հռոմում] թողնելով։ Հովհաննեսն իր հազար մարդով Լևկանիայում էր ճամբար դրել...

...[Տուտիլասը] ուշ գիշերը հարձակվեց թշնամու զորքի վրա։ Վերջիններից և ոչ ոք չփորձեց դիմագրել, որովհետև շատերը դեռ քնած էին։ Բայց գոթերին չհաջողվեց շատ մարդ կոտորել, որովհետև մեծ մասը, օգտվելով մթությունից, կարողացավ աննկատ հեռանալ։ Նրանք ճամբարից դուրս եկան և փախուստի դիմեցին մոտակայքում գտնվող բազմաթիվ լեռները և փրկվեցին։ Նրանց թվում էին ինքը Հովհաննեսը և էրուլների առաջնորդ Արուֆոսը։ Հռոմայեցիներից սպանվեց մոտավորապես հարյուր հոգի։ Հովհաննեսի մարդկանց թվում էր ոմն հայազգի Գիլակիոս[25], փոքրաթիվ հայերից բաղկացած զորամասի հրամանատարը։ Նա ոչ հունարեն, ոչ լատիներեն, ոչ գոթերեն և ոչ մի այլ լեզու չգիտեր, այլ միայն հայերեն։ Գոթերն ահա հանդիպելով նրան հարցնում են, թե ով է նա, որովհետև չէին ուզում պատահած մարդուն սպանել, որպեսզի [հանկարծ] մթության մեջ իրենց մարդկանց չկոտորեն։ Նա ոչինչ չկարողացավ պատասխանել, այլ ասաց միայն, որ զորավար Գիլակիոսն է, քանզի աստիճանի անվանումը, որ կայսրից էր ստացել, բազմիցս լսել էր և սովորել։ Ահա բարբարոսները, հա-

*մոլվելով, որ նա թշնամի է, նախ գերի վերցրին, իսկ շատ չանցած սպանեցին նրան։ Իսկ Հովհաննեսն ու Արուփոսն իրենց զինվորներով արագ փախուստի դիմեցին և վազքով հասան Դրիունտ*[26]*. գոթերն էլ ավարի առնելով հռոմայեցիների ճամբա։րը, հեռացան»։*

ԳԼՈՒԽ 27

*«Այսպիսի վիճակում էին պատերազմական գործերն Իտալիայում։ Հուստինիանոս կայսրը գոթերի և Տուտիլասի դեմ մի այլ զորք էլ ուղարկեց։ Այդ բանին նրան՝ դրդում էր Բելիսարիոսն իր նամակներով, որոնցով նա բազմիցս հաղորդել էր իրավիճակի մասին՝ [օգնություն] աղերսելով։ Կայսրը նախ և առաջ ուղարկեց Պերանիոսի որդի Պակուրիոսին և Սոլոմոնի եղբորորդի Սերգիոսին։ Նրանք, ժամանելով Իտալիա, անմիջապես միացան մյուս զորքին։ Այնուհետև նա ուղարկեց Բերոսին՝ երեք հարյուր էրուլներով և հայազգի Վարազեսին՝ ութ հարյուր զինվորներով։ Իսկ Հայաստանի զորքերի հրամանատար Վալերիանոսին, այնտեղից ետ կանչելով, դորիֆորներով և հյուպասպիստներով, թվով հազարից ավելի, հրամայեց գնալ Իտալիա։ ... Բեռոսը, հասնելով Բրենդեսիոն*[27] *քաղաքի մոտակայքը, ճամբար դրեց։*

*Տուտիլասը ... մեծաքանակ զորքով շարժվեց նրա վրա։ Էրուլները, տեսնելով մոտեցող թշնամիներին, փախուստի դիմեցին մերձակայքում գտնվող անտառը։ Թշնամիները, շրջապատելով նրանց, երկու հարյուր հոգուց ավելի կոտորեցին։ Նրանք արդեն պետք է ձեռք գցեին նաև Բերոսին և մյուսներին, ովքեր թաքնվել էին փշաթփերի մեջ, բայց մի դեպք անակնկալ կերպով փրկեց նրանց։ Այն նավերը, որոնց մեջ էին գտնվում և նավարկում Վարազեսն ու նրան ենթակա հայերը, հանկարծ խարիսխ գցեցին հենց այդ ափին։ Տուտիլասը տեսնելով այդ և ենթադրելով, որ թշնամիների զորքն ավելի մեծ է, քան իրականում էր, հեռացավ այնտեղից, իսկ Բերոսի մարդիկ ուրախությամբ վազքով հասան նավերին։ Վարազեսը այլևս չէր ուզում առաջ նավարկել և նրանց հետ միասին եկավ Տարանտ*[28]*, ուր մի քիչ հետո հասավ նաև Վիտալիանոսի եղբորորդի Հովհաննեսը՝ ամբողջ զորքով...»։*

ԳԼՈՒԽ 31

*«Այդ միջոցին դավադրություն կազմակերպվեց Հուստինիանոս կայսեր դեմ։ Ես այստեղ կպատմեմ, թե ինչպես այդ ծրագրվեց և ինչպես, հակահարված ստանալով, գործը լիակատար անհաջողու-*

թյան մատնվեց։ Արտավանը, բռնակալ Գոնթարիսին սպանելուց հետո, այդ մասին ես վերևում խոսեցի[29], մեծ ցանկություն ունեցավ կնության առնել կայսեր քրոջ դուստր Պրեյեկտային, որի հետ արդեն նշանված էր։ Նա [Պրեյեկտան] ևս շատ էր ցանկանում այդ, թեև ոչ այն պատճառով, որ սիրահարված էր այդ մարդուն, այլ որովհետև շատ շնորհապարտ էր նրա հանդեպ՝ իր ամուսին Արեոբինդոսի վրեժը լուծելու և իրեն էլ փրկելու համար, այն պահին, երբ ինքը դերի էր և շուտով ակամա պետք է բռնակալ Գոնթարիսի մահիճը բաժաներ։ Երբ երկուսն էլ փոխադարձորեն համաձայնություն տվեցին այդ գործին, Արտավանը Պրեյեկտային ուղարկեց կայսեր մոտ, իսկ ինքը, թեպետև ամբողջ Լիբիայի զորավարն էր նշանակված, անհիմն պատճառներ հորինելով, խնդրեց կայսեր, որպեսզի իրեն Բյուզանդիոն փոխադրի։ Նրան դեպի այդ էր մղում ամուսնության, ինչպես նաև դրանից բխող բազմաթիվ հաջողությունների հույսը, այդ թվում և շուտով գահին տիրանալու [ակնկալությունը]։ Երբ մարդիկ անսպասելի հասնում են հաջողության, ապա չեն բավարարվում դրանով, այլ մտածում են ավելի առաջ անցնել, այնքան առաջ, մինչև որ զրկվեն ներկա երջանկությունից, որին անարժան են։

Կայսրը բավարարեց խնդիրքը և Արտավանին փոխադրեց Բյուզանդիոն, նրա փոխարեն մի այլ մարդու նշանակելով Լիբիայի զորավար։ Այդ մասին ես պատմել եմ[30]։ Արտավանը ժամանեց Բյուզանգիոն. դեմոսը հիանում էր նրա գործած քաջագործություններով և անչափ սեր տածում նրա հանդեպ. նա թիկնեղ էր և գեղեցիկ, ազատ կեցվածք ուներ և բացի այդ՝ սակավախոս էր։ Կայսրը նրան շատ պատվեց, նշանակեց Բյուզանդիոնի զորքերի զորավար, ինչպես և ֆեդերատների հրամանատար, շնորհեց հյուպատոսի աստիճան։ Բայց նրան ոչ մի կերպ չհաջողվեց ամուսնանալ Պրեյեկտայի հետ։ Դրա պատճառն այն էր, որ ինքը փոքրուց ամուսնացել էր իր ցեղակից մի աղջկա, որին սակայն շատ վաղուց լքել էր ինչ-որ պատճառով, որի հիման վրա ընդհանրապես ամուսինները ընդհարվում են միմյանց հետ։ Ահա այդ կինը, քանի դեռ Արտավանի գործերն անհաջող էին ընթանում, հանգիստ տանն էր մնում, ոչնչի չէր դիմում, լուռ ու մունջ տանում էր ստեղծված իրավիճակը։ Բայց երբ Արտավանը փառավորվեց իր գործերով և մեծ բախտի արժանացավ, կինն այլևս չկարողացավ տանել իր նվաստ վիճակը, և եկավ Բյուզանդիոն։ Նա ապավինեց կայսրուհու ողորմածությանը և խնդրեց նրա միջնորդությունն իր ամուսնու

հետ միանալու։ Կայսրուհին (նա միշտ ընդառաջում էր դժբախտ կանանց) Արտավանին նրա կամքից անկախ միացրեց այդ կնոջ հետ, իսկ Պրեյեկտային կնության առավ Պոմպեյոսի որդի և Հյուպատիոսի եղբորորդի Հովհաննեսը։ Արտավանը լուռ ու մունջ չտարավ այս դժբախտությունը, շատ զայրացավ և ասում էր, որ հռոմայեցիներին այդքան լավություն անելուց հետո էլ... նրանք չեն թողնում փոխադարձ հավանությամբ ամուսնանալ իր նշանածի հետ, և ինքը ստիպված է հավիտյան կենակցել իր համար ամենաատելի կնոջ հետ, մի բան, որ կարող է մարդու հոգեմաշ անել։ Ոչ շատ անց, երբ կայսրուհին վախճանվեց, նա իսկույն մեծ ուրախությամբ հրաժարվեց կնոջից։

Կայսեր եղբորորդի Գերմանոսը Բորայիդես անունով մի եղբայր ուներ։ Ահա այս Բորայիդեսը՝ Գերմանոսի եղբայրը, փոքր առաջ վախճանվել էր և իր հարստության մեծ մասը թողել իր եղբորը և նրա երեխաներին։ Ինքն էլ ուներ կին և մեկ աղջիկ, որին կտակեց այնքան, ինչքան օրենքն էր պարտադրում։ Կայսրը, սակայն, աղջկա պաշտպանությունն իր վրա վերցնելով, բորբոքեց Գերմանոսի զայրույթը»։

ԳԼՈՒԽ 32

Ահա այսպիսին էին կայսեր փոխհարաբերությունները Արտավանի ու Գերմանոսի հետ։ Բյուզանդիոնում էր գտնվում Արտավանի ազգականներից հայազգի ոմն Արշակ Արշակունի։ Սա փոքր առաջ ձերբակալվել էր պետության դեմ ոտնձգություններ կատարելու, նաև բացահայտված դավաճանության՝ պարսից արքա Խոսրովի օգտին հռոմայեցիների դեմ խռովություն բարձրացնելու փորձի համար։ Կայսրը առանձնապես չպատուհասեց նրան, միայն գանակոծության ենթարկեց, այն էլ ոչ խիստ, և ուղտի վրա ման ածեց քաղաքով մեկ, բայց մարմնական վնաս չհասցրեց նրան, ոչ էլ ձեռք տվեց նրա ունեցվածքին, դեռ ավելին, չաքսորեց նույնիսկ։ Հակառակ դրան Արշակը, կատարվածից դժգոհ, սկսեց դավադրություններ կազմակերպել Հուստինիանոսի և պետության դեմ։ Երբ տեսավ, որ իր ազգական Արտավանը ևս իր պես վիրավորված է, սկսեց ավելի գրգռել նրան, գիշեր ցերեկ հանգիստ չտալ ու պախարակել, անվանելով քաջ մարդ և միաժամանակ ձվատ. նա քաջ էր՝ ի դժբախտություն ուրիշների, երբ բռնատիրությունը ճնշեց և առանց պատճառի բռնեց ու սեփական ձեռքով սպանեց իր ընկեր և սեղանակից Գոնթարիսին։ Իսկ այժմ, երբ իր հայրենիքը ամուր

կապանքների մեջ է առնված, նրա վրա են դրված անօրինակ ծանր
հարկեր, երբ իր հայրը սպանվել է, հակառակ նրան տրված երաշ-
խիքների, երբ ամբողջ իր հարազատ [ժողովուրդը] ստրկացված և
ցրված ամբողջ հռոմեական երկրով մեկ, ինքը վախեցած ու անգործ
նստած է։ Նման պայմաններում Արտավանը իրեն բավարարված է
զգում, որովհետև ինքը հռոմայեցիների զորավար է և հյուպատոս
է կոչվում։ «Դու,—ասաց նա,—լինելով իմ ազգակիցը, բոլորովին
»չես մտնում իմ դրության մեջ. ես անչափ մեծ դժբախտություննե-
»րի հանդիպեցի։ Սակայն խղճում եմ քեզ երկու կնոջ հետ ունեցած
»քո անհաջողության համար, և՛ այն կնոջ համար, որից դու հակա-
»ռակի պես զրկվեցիր, և՛ նրա համար, որի հետ ստիպվեցիր կե-
»նակցել։ Մի քիչ խելք ունեցողի համար ծայրահեղ անմտություն
»է Հուստինիանոսին առանց զլանալու և որևէ վախի սպանելուց
»հրաժարվելը։ Նա, առանց պահապանների, զառամյալ հոգևորա-
»կանների հետ շարունակ մինչև ուշ գիշերը նստած է ինչ-որ ժո-
»ղովարանում, խորհրդածելով քրիստոնեական դոգմաների շուրջը։
»Նույնիսկ Հուստինիանոսի ազգականներից ոչ ոք այգ բանը չի
»ժխտի։ Նրանցից ամենահզորը Գերմանոսն է, որը, կարծում եմ,
»հաճույքով կմիանա քեզ իր երիտասարդ որդիների հետ։ Նրանց
»տարիքից բխող ավյունը և ունեցած զայրույթը նրա դեմ, հույս
»ունեմ, որ ինքնաբերաբար մասնակից կդարձնեն նրանց [այս]
»գործին, որովհետև [Հուստինիանոսը] այնքան է վիրավորել,
»վնաս պատճառել նրանց, որքան ո՛չ մեզ և ո՛չ էլ հայերից որևէ
»մեկին»։ Ահա այսպիսի խոսքերով Արշակը անդադար խելքահան
էր անում Արտավանին և երբ տեսավ, որ սա տեղի տվեց, նույն
գործով դիմեց մի այլ պարսկահայի[31] Խանարանգես անունով։ Այս
Խանարանգեսը երիտասարդ էր, գեղեցիկ կազմվածքով, բայց շատ
թեթևամիտ և չափից ավելի տհաս։

Ահա՛, երբ Արշակը համաձայնության եկավ Արտավանի հետ,
հեռացավ, խոստանալով գործին մասնակից դարձնել Գերմանոսին
և նրա որդիներին։ Գերմանոսի որդիներից ավագը՝ Հուստինոսը,
թեև երիտասարդ էր և նրա աղվամազը դեռ նոր էր բուսնում, բայց
կարող էր և շատ գործունյա։ Նա քիչ առաջ արժանացել էր հյուպա-
տոսի աստիճանին։ Արշակը, գնալով նրա մոտ, ասաց, որ ցանկա-
նում է գաղտնի հանդիպել նրան որևէ մի եկեղեցում։ Երբ երկուսն
էլ մտան եկեղեցի, Արշակը նախ պահանջեց Հուստինոսից երդվել,
որ իրենց խոսակցության մասին բացի իր հորից ոչ մեկին բան չի
ասելու։ Երբ նա երդվեց, [Արշակը] պախարակեց նրան, որ կայսեր

մերձավորագույն ազգականը լինելով, հանգիստ նայում է, թե
ինչպես երկրի իշխանությունը անցնում է շուկայի, անարժան ու
կոպիտ մարդկանց ձեռքը, և ինքը, լինելով այդպիսին, համաձայն-
վում է, որ պետության գործերը վարեն հասարակ ծագում ունե-
ցող մարդիկ. նա ասաց, որ [կայսրը] արհամարհում է ոչ միայն
նրան, այլև նրա հորը, անչափ առաքինի մարդու, որ իր եղբոր՝
Հուստինիանոսին շարքային քաղաքացիների վիճակում է թողել.
նույնիսկ հորեղբոր հարստությունը չկարողացավ ժառանգել, թեև
Բորայիդեսի ցանկությամբ ինքն էր ժառանգելու այն, բայց հե-
տագայում անտեղի զրկվեց նրա մեծ մասից. հակառակ այդ բոլո-
րին, իրենք դեռ քաշելիք ունեն, երբ Բելիսարիոսը շուտով Իտա-
լիայից վերադառնա, քանզի լուր էր ստացվել, որ նա արդեն Իլլի-
րիայում է գտնվում։ Արշակն այս ասելով, հորդորում էր երիտա-
սարդին մասնակցելու դավադրության ընդդեմ կայսեր, միաժամա-
նակ հայտնելով նրան իր և Արտավանի ու Խանարանգեսի միջև
սույն գործի կապակցությամբ կայացած համաձայնության մասին։
Հուստինոսը լսելով այս, ապշահար եղավ, սարսափահար պատաս-
խանեց Արշակին, որ ոչ ինքը, ոչ էլ իր հայր Գերմանոսը նման քայ-
լի երբեք չեն դիմի։

Արշակը եղածի մասին հայտնեց Արտավանին, իսկ Հուստի-
նոսն էլ իր հերթին ամեն ինչ պատմեց հորը։ Վերջինս այս հարցի
շուրջը խորհրդակցեց պալատական կայազորի պետ Մարկելլոսի
հետ, ձեռնտու չէ արդյոք այդ մասին հայտնել կայսեր։ Մարկելլոսը
շատ լուրջ մարդ էր, բարոյական, սակավախոս, նա չէր գործում
շահից դրդված, չէր կարողանում տանել թեթևսոլիկ մարդկանց
ասածն ու արածը, չէր սիրում անհոգ կյանքը։ Նա մշտապես վա-
րում էր խիստ և հաճույքներից զուրկ կյանք, բայց արդարության
թունդ պահապանն էր և ճշմարտասիրության ջերմ պաշտպանը։
Նա չթողեց, որ այդ մասին անմիջապես հայտնվի կայսեր։ «Քեզ հա-
»մար, ասաց նա, ձեռնտու չէ հայտնել այդ մասին, որովհետև, եթե
»ցանկանաս գաղտնի կերպով որևէ բան ասել կայսեր, Արտավանի
»մարդիկ անմիջապես կիմանան մատնության մասին և եթե Ար-
»շակին հաջողվի թաքուն փախչել, դավադրությունը հնարավոր չի
»լինի ապացուցել։ Ես մինչև մանրակրկիտ կերպով ամեն բան
»չստուգեմ, ոչ ինքս հավատ կընծայեմ դրան, ոչ էլ կայսեր կհայտ-
»նեմ։ Ես ցանկանում եմ կամ խոսակցությունը իմ ականջով լսել
»և կամ էլ դուք այնպես կազմակերպեք, որ իմ մարդկանցից որևէ
»մեկը այս [գործի] մասին որևէ հստակ բան լսի նրա կողմից»։

[Գոթական պատերազմի մասին գիրք երրորդ, գլուխ 32]

Գերմանոսը լսելով այդ, հրամայեց իր որդի Հուստինոսին անել այնպես, ինչպես կկարգադրի Մարկելլոսը։ Արշակին դիմելու միտք չուներ, քանի որ, ինչպես արդեն ասացի, [Հուստինոսը] մերժել էր նրա առաջարկը։ Նա հարցով դիմեց խանարանդեսին, նրա մոտ եղե՞լ է արդյոք Արշակը՝ հայտնի ծրագրով, Արտավանի կարգադրությամբ։ [Խանարանգեսը] պատասխանեց, թե «ես երբեք չէի »խիզախի նրա նման մարդու որևէ գաղտնիք վստահել։ Բայց եթե »դու ուզում ես տվյալ գործի կապակցությամբ որևէ բան ասել, »ապա ինձ հետ խորհրդակցելով, կարելի է գործը հաջող գլուխ բե»րել»։ Այդ հարցի շուրջը Խանարանդեսը խորհրդակցեց Արտավանի հետ և Հուստինոսին հայանեց այն ամենը, ինչ նախապես Արշակն էր ասել իրեն։

Երբ Հուստինոսը համաձայնվեց անել ամեն ինչ և խոստացավ հորը համամիտ դարձնել այդ գործին, Գերմանոսը որոշեց խանարանգեսին տեսակցության հրավիրել և սահմանեց խորհրդակցության օրը։ Այդ մասին Գերմանոսն իմաց տվեց Մարկելլոսին և խնդրեց, որ իր մերձավորադույններից որևէ մեկին ուղարկի՝ խանարանգեսի ասելիքին ականջալուր լինելու համար։ [Մարկելլոսը] ուղարկեց Աթանասիոսի փեսա Լեոնտիոսին, մի ճշմարտախոս և շատ արդարասեր մարդու։ Գերմանոսը նրան [իր] տունը մտցնելով, նստեցրեց մի սենյակում, որտեղ կախված էր մի հաստ պաստառ, վարագույրն այն բազմոցի, որի վրա նստած նա ճաշում էր։ Ահա այդ վարագույրի ետևում նա թաքցրեց Լեոնտիոսին, իսկ ինքն իր որդի Հուստինոսի հետ [վարագույրից] դուրս մնացին։ Երբ ժամանեց Խանարանդեսը, Լեոնտիոսը նրանից լսեց այն ամենի մասին, ինչ ծրագրել էին ինքը՝ Խանարանգեսը, Արտավանն ու Արշակը։ Նա ավելացրեց նաև, որ եթե կայսեր սպանեն այն ժամանակ, երբ դեռ Բելիսարիոսը չի ժամանել Բյուզանդիոն, ծրագիրը անհաջողության կմատնվի, որովհետև եթե իրենք կայսր հայտարարեն Գերմանոսին, Բելիսարիոսը, անկասկած, Թրակիայի բնակավայրերից մեծ զորք գումարելով՝ իրենց վրա կշարժվի և նրան դիմագրել հնարավոր չի լինի։ Դրա համար անհրաժեշտ է, որ գործը հետաձգվի մինչև Բելիսարիոսի վերադարձը, որպեսզի երբ նա հասնի Բյուզանդիոն և լինի պալատում, կայսեր մոտ, այն ժամանակ, ուշ երեկոյան դաշույններով անսպասելի հայտնվեն և սպանեն կայսեր հետ միասին նաև Մարկելլոսին և Բելիսարիոսին. դրանից հետո ավելի աներկյուղ կտնօրինեն գործերը։

Նույնիսկ այն ժամանակ, երբ Մարկելլոսը Լեոնտիոսից իմացավ

այդ մասին, նա ոչինչ չասաց կայսեր և շարունակեց անչափ դանդաղել. նա վախենում էր, որ հանկարծ իր շտապողականությամբ անմտորեն Արտավանին ձեռքից բաց կթողնի։ Իսկ Գերմանոսը երկյուղ զգալով, որ իր հապաղումը որևէ մեկի մոտ կասկած կհարուցի իր դեմ, որը, ի դեպ, և տեղի ունեցավ հետագայում, ամեն ինչ հայտնեց Բուզեսին և Կոստանդիանոսին։

Մի քանի օր անց, երբ լուր տարածվեց, որ Բելիսարիոսը շատ մոտիկ է գտնվում, Մարկելլոսը կայսեր ամեն ինչ պատմեց. վերջինս անմիջապես հրամայեց բանտ նետել Արտավանին և նրա համախոհներին, իսկ իշխանավորներից ոմանց հանձնարարեց [ձերբակալվածներին] քննել։ Երբ դավադրությունը ամբողջությամբ լույս աշխարհ եկավ և [հարցաքննությունը] հանգամանորեն դրի առնվեց, կայսրը բոլոր սենատորներին պալատ հրավիրեց, այնտեղ, ուր սովորաբար քննվում էին վիճելի հարցերը։ Նրանք կարդացին այն բոլորը, ինչ [Արտավանը] ասել էր քննիչներին, բայց այնուհանդերձ ոչ պակաս մեղավոր հանեցին Գերմանոսին և նրա որդի Հուստինոսին, մինչև որ Գերմանոսը, դիմելով Մարկելլոսի և Լեոնտիոսի վկայությանը, կարողացավ ցրել կասկածը, որովհետև նրանք, նաև Կոստանդիանոսն ու Բուզեսը երդումներով հաստատում էին, որ Գերմանոսը ոչ մի բան չի թաքցրել, որ ամեն ինչ կատարվել է այնպես, ինչպես ես քիչ առաջ պատմեցի։ Ահա բոլոր սենատորները արդարացրին նրան և նրա որդուն՝ որպես պետության հանդեպ ոչ մի հանցանք չկատարածների։

Երբ բոլորը մտան կայսեր հարկաբաժինը, կայսրը շատ զայրացած և վրդովված՝ կատաղել էր Գերմանոսի դեմ, որ նա հապաղել է իրեն հայտնել, իսկ իշխանավորներից երկուսը, որոնք սպասարկում էին [կայսեր], հաստատում էին նրա ասածը և ցույց տալիս, որ նույնպես վրդովվել են։ Ջանալով կայսեր հաճոյանալ ուրիշների դժբախտացնելով, նրանք անչափ բորբոքեցին կայսեր զայրույթը։ Իսկ մնացածները երկյուղած, չհակառակվելու համար կայսեր, լռում էին։ Միայն Մարկելլոսը ճշմարտությունն ասաց և կարողացավ փրկել մարդուն։ Նա ամբողջ մեղքը իր վրա վերցրեց և ասաց, որ Գերմանոսը ժամանակին է հայտնել իրեն [դավադրության] մասին, բայց ինքը ավելորդ մանրակրկիտությամբ հապաղեց և գործը ձգձգեց։ Ահա այս կերպ նա կարողացավ մեղմել կայսեր զայրույթը։ Մարկելլոսը դրանով բոլորի մոտ մեծ հռչակ վաստակեց, որպես ամենադժվարին պահին առաքինություն ցուցաբերած։ Իսկ Հուստինիանոս կայսրը զրկեց Արտավանին իր

ունեցած պաշտոնից, բայց ուրիշ պատիժ չտվեց, ոչ էլ մնացածներին, այլ միայն բանտարկեց, այն էլ ոչ պետական բանտում, այլ պալատում։

ԳԼՈՒԽ 39

[Գոթերին հաջողվում է գրեթե ամբողջ Սիկիլիան ամայացնել ու ավարի առնել։ Գոթական պատերազմի 15-րդ տարին՝ 549—550 թթ.]

«...Երբ այդ մասին իմացավ կայսրը, մի նավատորմիղ կազմեց, հետևակների մեծ զորաբանակ, և հրամայեց այդ նավերով՝ Լիբերիոսի գլխավորությամբ անհապաղ դեպի Սիկիլիա նավարկել կղզին ամեն գնով փրկելու համար։ Բայց Լիբերիոսին նավատորմիղի հրամանատար նշանակելուց անմիջապես հետո [կայսրը] փոխեց իր մտադրությունը, որովհետև [Լիբերիոսը] արդեն զառամյալ էր, բացի դրանից պատերազմական գործերում անփորձ։ Ներելով Արտավանի թույլ տված բոլոր մեղքերը, նրան նշանակեց Թրակիայի զորքերի հրամանատար, և տալով նրան ոչ մեծ զորաբանակ, իսկույն Սիկիլիա ուղարկեց։ Նա կարգադրեց, որ իր հետ վերցնի Լիբերիոսի նավատորմիղը, որովհետև Լիբերիոսը Բյուզանդիոն էր կանչվում։ Իսկ Տոտիլասի և գոթերի դեմ տարվող պատերազմի գլխավոր հրամանատար նշանակեց իր եղբորորդի Գերմանոսին...»։

ԳԼՈՒԽ 40

«...Սակայն Լիբերիոսը չէր իմացել նավատորմիղի շուրջը կայսեր նոր կարգադրության մասին, և խարիսխ գցեց թշնամիների կողմից պաշարված Սիրակուսայում։ Ետ մղելով այնտեղ գտնվող թշնամիներին, նա ափ դուրս եկավ նավահանգստում և ամբողջ զորքով մուտք գործեց պարիսպներից ներս։ Քիչ հետո Արտավանը հասնելով Կեֆալոնիա[32], իմացավ, որ Լիբերիոսը այնտեղից մեկնել է Սիկիլիա։ [Արտավանն] այնտեղից դուրս գալով, անմիջապես կտրեց Ադրիատիկ կոչված ծովը։ Երբ մոտեցավ Կալաբրիային[33], հանդիպեց մեծ փոթորկի, սաստիկ ուժեղ ու հակառակ ուղղությամբ փչող քամու, որի պատճառով բոլոր նավերը ցրվեցին։ Այնպես էր թվում, որ նրանց մեծ մասը դուրս շպրտվեց Կալաբրիայի ափը և թշնամիների ձեռքն անցավ։ Բայց իրականում այդպես չէր. ուժեղ քամու ճնշման տակ ետ մղվելով, նրանք փոխեցին ընթացքը և նորից դարձան Պելոպոնես։ Մնացածները, նայած ուր էին գըտ-

նըվում, մի մասը ջրասույզ եղավ, մյուս մասը փրկվեց։ Միայն մի նավ, որի վրա էր գտնվում ինքը՝ Արտավանը և որի կայմը այս փոթորկի ժամանակ ջարդվել էր, անչափ վտանգի ենթարկվելով, ալեկոծության ժամանակ դես ու դեն ընկնելով, խարիսխ գցեց Մելիտե[34] կղզում։ Արտավանն ահա այսպես անսպասելիորեն փրկվեց...»։

[Այդ ընթացքում սկլավենները (սլավոնները) երեք մասի բաժանված, ամենայն հավանականությամբ Տոտիլասի գրդմամբ, սկսեցին ավարի առնել Եվրոպան]

«...այնուհետև Հուստինիանոս կայսրը [սկլավենների] դեմ մեծ զորք ուղարկեց, որին գլխավորում էին, ի միջի այլոց, նաև Կոստանդիանոսը, Արատիոսը և Նազարեսը, նաև Գերմանոսի որդի Հուստինոսը, և Հովհաննեսը՝ Ֆագաս մականվանյալը։

Այս զորքը բարբարոսների մի մասին հանդիպում է Ադրիանուպոլսի մոտ, որը գտնվում է Թրակիայի մեջտեղում, Բյուզանդիոնից հինգ օր հեռավորության վրա... Սաստիկ ճակատամարտ է տեղի ունենում, ուր հռոմայեցիները գլխովին պարտության են մատնվում։ Այստեղ սպանվեցին բազմաթիվ զինվորներ և լավագույնները, իսկ զորավարները քիչ էր մնացել ընկնեին թշնամու ձեռքը, բայց հազիվ հազ, մնացածների հետ փախուստի դիմելով փրկվեցին...»։

# ՊԱՏԵՐԱԶՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

## [ԳՈԹԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ]

### ԳԼՈՒԽ 1

*«...Ինչ որ տեղի ունեցավ մինչև հռոմայեցիների և պարսիկների միջև կնքված հնգամյա զինադադարի չորրորդ տարին՝ ես շարադրել եմ նախորդ գրքերում։ Հաջորդ տարին մարական մի մեծ զորաբանակ ներխուժեց Կոլխիս երկիրը։ Նրան գլխավորում էր պատերազմական գործերին քաջածանոթ մի պարսիկ՝ Խորիանես[35] անունով։ Սրան հետևում էին նաև մեծաքանակ բարբարոս դաշնակիցներ՝ ալանների ցեղից։ Երբ այս զորքը հասավ Լազիկայի մի շրջան, որը կոչվում է Մոխերեսիս, հարմար վայրում ճամբարեց և մնաց։ Այստեղ հոսում է Հիպպիս գետը, որը ոչ մեծ է և ոչ էլ նավարկելի, այն կարելի է անցնել և՛ ձիով, և՛ հետիոտն. այդ գետի աջ ափին, նրանից շատ հեռուն պարսիկները ամրացված ճամբար դրեցին։*

*Որպեսզի ընթերցողներին հասկանալի դառնա, թե ինչ են ներկայացնում իրենից Լազիկայի շրջանները, ինչպիսի ժողովուրդներ են այստեղ հաստատված, և որպեսզի նրանք ստիպված չլինեն իրենց անծանոթ հարցերի շուրջ վիճելու, ինչպես, օրինակ, անում են անմիտ վիճաբանության մեջ մտնողները, նպատակահարմար համարեցի այստեղ նկարագրել Եվքսինյան Պոնտոս կոչվածի [ափին] ապրող մարդկանց կենցաղը։ Ես լավ գիտեմ, որ հին մարդիկ էլ են գրել սրա շուրջը, բայց համոզված եմ, որ նրանց ոչ բոլոր ասածներն են ճշմարիտ։ Նրանցից ոմանք տրապիզոնցիների հարևան են ցույց տալիս կա՛մ սաներին, որոնք այժմ ճաներ են կոչվում, կա՛մ կոլխերին, լազ անվանելով ուրիշներին[36], մի անուն, որ մինչև օրս էլ նրանք [լազերը] կրում են։ Սակայն դրանից և ոչ մեկը [ճիշտ] չէ։ Ճաները բնակվում են ծովափից շատ հեռու, հայերի հարևանությամբ՝ միջնաշխարհում. այստեղ վեր են խոյանում միանգամայն անանցանելի և զառիթափ բազմաթիվ*

լեռներ։ [Այստեղ] երկիրը երկար տարածության վրա անմարդաբնակ է, անանցանելի ձորերով, անտառապատ բլուրներով և անելանելի կիրճերով լի։ Այս բոլորը թույլ չեն տալիս ճաներին ծով դուրս գալ։ Ինչ վերաբերում է կոլխերին, ապա նրանց չի կարելի լազ չհամարել, քանի որ նրանք Ֆասիս գետի ափին են բնակվում։ Կոլխերի ժողովուրդը, ինչպես և բազում այլ ժողովուրդներ, այժմ անունն է միայն փոխել և կոչվում է լազեր։ Բացի այդ, [հին] գրողներից հետո անցած երկար ժամանակը անընդհատ փոփոխություններ է մտցրել նախկին վիճակի մեջ. ժողովուրդներ են գաղթել, իրար են հաջորդել իշխանավորներ և փոխվել անուններ։ Ահա ես միանգամայն անհրաժեշտ համարեցի այդ բոլորը քննության ենթարկել և ոչ թե [պատմել] նրանց մասին գոյություն ունեցող հնամենի առասպելները։ Ես չեմ աշխատել որոշել, թե ըստ պոետների տվյալների Պրոմեթեոսը Եվքսինյան Պոնտոսի ո՛ր մասում է գամվել, քանզի ես առասպելը պատմությունից բոլորովին տարբեր բան եմ համարում և ուզում եմ ստույգ կերպով տալ և՛ անունների, և՛ դեպքերի կապակցությամբ այն, ինչ յուրաքանչյուր վայրում այժմ գոյություն ունի։

ԳԼՈՒԽ 2

Այս [Եվքսինյան] ծովը սկիզբ է առնում Բյուզանդիոնում և Քաղկեդոնում և վերջանում է կոլխերի երկրում։ Դեպի Կոլխիս նավարկողի աջ կողմում բյութանացիք են բնակվում և նրանց հարևան հոնորիատներն ու պաֆլագոնները, որոնք ունեն տարբեր շրջաններ, նաև Հերակլիա և Ամաստրիս ծովափնյա քաղաքները։ Նրանցից հետո գալիս է պոնտացիք կոչվող [ժողովուրդը]՝ մինչև Տրապիզոն քաղաքը և նրա սահմանները։ Այնտեղ են գտնվում ծովափնյա քաղաքներ, որոնց թվում Սինոպը, Ամիսոսը։ Ամիսոսին շատ մոտ է Թեմիսկուրոն կոչվածը և Թերմոդոն գետը, ուր, ինչպես պատմում են, գտնվում էր ամազոնուհիների զորքը։ Ամազոնուհիների մասին ես գրելու եմ մի փոքր հետո։ Տրապիզոնցիների սահմանները հասնում են մինչև Սուսուրմէնա գյուղը և Հռիզայոն կոչվող վայրը, որը գտնվում է Տրապիզոնից ծովափով դեպի Լազիկա գնացողի համար երկու օրվա հեռավորության վրա։ Քանի որ հիշատակեցի Տրապիզոնը, չեմ ուզում մի շատ հետաքրքիր երևույթի կողքով անցնել, որ նկատվում է այստեղ։ Տրապիզոնի բոլոր շրջաններում մեղրը դառն է լինում, միայն այստեղ է, որ [մեղրի] քաղցր լինելու համբավը վիճարկվում է։ Այս վայրերի աջ կողմում

վեր են խոյանում Ծանիքի լեռները, որոնցից այն կողմ ապրում են Հռոմայեցիներին ենթակա հայերը։

Ծանիքի այս լեռներից իջնում է Բոաս անունով գետը, որը հոսելով բազմաթիվ մացառուտներով և բլուրներով ծածկված երկրի միջով, անցնում է Լազիկայի շրջանների մոտով և թափվում Եվքսինյան կոչված Պոնտոսը, ուր սակայն նա այլևս Բոաս չի կոչվում։ Ծովի մոտ նա փոխում է իր անունը և ստանում այլ անուն, որն համապատասխանում է իր ընթացքին, քանզի տեղացիները նրան այսուհետև Ակամպսիս են կոչում այն պատճառով, որ նրանց անցնելը այնտեղ, ուր նա խառնվում է ծովին, անհնարին է[37]։ Նա այնքան ուժով և արագությամբ է թափվում, այնքան մեծ ալեկոծություն է բարձրացնում, որ ալիքները հասնում են մինչև ծովի հեռուները և անկարելի դարձնում [ծովի] այդ մասով նավարկելը։ Ծովի այս մասում նավարկողները, թե՛ նրանք, ովքեր դեպի Լազիկա են գիմում, և թե՛ ովքեր այգ երկրից են դուրս գալիս, այգտեղով չեն կարող նավարկել, քանզի գետի հոսանքը կտրել նրանք ի վիճակի չեն։ Այգ իսկ պատճառով նրանք գնում են հեռուն, բաց ծովը և այնտեղ, համարյա ծովի մեջտեղում միայն կարողանում են շրջանցել գետի հոսանքը։ Ահա Բոաս գետի մասին այսքան։

Հռիզայոնից հետո գալիս են հռոմայեցիների և լազերի միջև անկախ ապրող ժողովուրդների շրջանները։ Այստեղ է գտնվում Աթենք անունով մի գյուղ, ոչ թե որովհետև այն հիմնագրել են աթենացի գաղթականներ, ինչպես կարծում են ոմանք, այլ որովհետև հնում Աթենայա անունով մի կին տիրացավ այգ վայրին. նրա գերեզմանը այժմ այնտեղ է գտնվում։ Աթենքից հետո գալիս են Արխաբիսն[38] ու Ապսարուսը[39], մի հին քաղաք, որը գտնվում է Հռիզայոնից մոտ երեք օր հեռավորության վրա։ Սա հնում կոչվում էր Ապսյուրտոս, այն մարդու անունից, որն այստեղ վախճանվեց, քանզի ինչպես պատմում են տեղացիները, Ապսյուրտոսը սպանվեց այստեղ՝ Մեգեյայի և Յասոնի դավադրությամբ, դրա համար էլ վայրն այդպես անվանվեց։ Նա այնտեղ մահացավ, իսկ վայրը ստացավ նրա անունը։ Բայց դրանից հետո անցավ երկար ժամանակ, իրար հաջորդեցին մարդկանց անհամար սերունդներ և ժամանակը կարողացավ մոռացության տալ, թե ինչից է առաջացել վայրի անունը, կարողացավ փոփոխել այն և տալ անվան ժամանակակից ձևը։ Այս Ապսյուրտոսի գերեզմանը գտնվում է քաղաքի արևելյան մասում։ Քաղաքը հնում մարդաշատ էր, նրան շրջապատում էր ամուր պարիսպ, գեղազարդվել էր թատրոնով ու ձիարշա-

վարանով և մնացած ամեն բանով, ինչ որ սովորաբար վկայում է քաղաքի մեծության մասին։ Բայց այժմ դրանցից բան չի մնացել, այլ միայն շենքերի հիմքերը։

Այդ բոլորից հետո զարմանալի է, երբ մեկը կոլխերին համարում է տրապիզոնցիների սահմանակիցներ։ Այդպես դատելով դուրս է գալիս, որ Յասոնը գողանալով ոսկեգեղմը Մեդեյայի հետ ոչ թե Հունաստան, իր հայրենիքը փախավ, այլ նորից դեպի Ֆասիս գետը գնաց, խորքում ապրող բարբարոսների մոտ։ Պատմում են, որ հռոմայեցիների ինքնակալ Տրայանոսի ժամանակ այստեղ մինչև լազերն ու սագիները հաստատված էին հռոմեական զորամասեր։ Այժմ այստեղ բնակվող մարդիկ ոչ հռոմայեցիների կայսեր, և ոչ էլ լազերի թագավորին են հպատակ, այլ կախում ունեն միայն այնքանով, որ քրիստոնյա են և իրենց քահանաներին լազերի եպիսկոպոսներն են ձեռնադրում։ Ցանկանալով երկուսի հետ էլ հաշտ ու խաղաղ ապրել, նրանք համաձայնվել էին ուղեկցել մի երկրից մյուսը ժամանակ առ ժամանակ ճանապարհորդողներին։ Իմ օրոք էլ նույնն են անում։ Նրանք իրենց նավակների վրա մի թագավորի դեսպաններին տեղափոխում են մյուս թագավորի մոտ։ Այսքան ժամանակ նրանք ոչ ոքի հարկատու չեն դարձել։ Այս վայրերի աջ կողմում կախված են գահավեժ լեռներ և երկարությամբ ձգվում են ամայի տարածությունները։ Նրանցից վերև բնակվում են պարսկահայ կոչվածները, ինչպես և հռոմայեցիներին ենթակա հայերը, որոնք տարածված են մինչև Իբերիայի սահմանները։

Ապսարուս քաղաքից մինչև Պետրա քաղաքը և լազերի սահմանները, ուր վերջանում է Եվքսինյան Պոնտոսը, մի օրվա ճանապարհ է։ Այստեղ ծովը վերջանալով, ափին տալիս է մահիկի ձև։ Մահկաձև այս տարածությունը մոտավորապես հինգ հարյուր հիսուն ասպարեզ է, որի ետևում գտնվող ամբողջ [երկիրը] Լազիկան է, որից հետո, միջնաշխարհում Սկյումնիան է և Սվանիան։ Այս ժողովուրդները լազերին են հպատակ. ունեն իրենց բնիկ իշխաններ, որոնցից մեկի մահից հետո սովորության համաձայն լազերի թագավորի կողմից մի ուրիշն է նրա տեղը նշանակվում։ Այս երկրի կողքին, հենց Իբերիայի մոտ ապրում են մեսխերը, որոնք հնից իբերներին են հպատակ։ Սրանց բնակարանները գտնվում են լեռներում։ Մեսխերի լեռները քարքարոտ չեն, այլ բարեբեր, այնտեղ աճում են ամեն տեսակի բարիքներ, իսկ մեսխերը լավ երկրագործներ են և այգեգործներ։ Այս երկրում կան շատ բարձր ան-

տառախիտ և միանգամայն անանցանելի լեռներ, որոնք ձգվում են մինչև Կովկասյան լեռները։ Նրանց ետևում, դեպի արևելք, Իբերիան է, որը տարածվում է մինչև Պերսարմենիա։

Այս երկրում բարձրացող լեռների միջով իջնում է Ֆասիս գետը, սկիզբ առնելով Կովկասյան [լեռներում] և թափվում է Պոնտոսի մեջ, մահկաձև ափի մեջտեղում։ Ոմանք գտնում են, որ նա բաժանում է երկու մայր ցամաքները, որ նրա հոսանքով գնացողի ձախ կողմում Ասիան է, իսկ աջ կողմը Եվրոպա է կոչվում։ Լազերի բոլոր բնակավայրերը գտնվում են եվրոպական մասում, մյուս կողմում նրանք ոչ մի քաղաք, ամրություն կամ հիշատակության արժանի գյուղ չունեն, բացի Պետրայից, որն անցյալում հռոմայեցիները կառուցեցին այստեղ։ Լազիկայի այս մասում, ինչպես պատմում են, պահվում էր այգ ոսկեգեղմը, որի համար ըստ պոետների առասպելաբանության, շինվել է Արգո [նավը]։ Իմ կարծիքով նրանց պատմածի մեջ ոչ մի ճշմարտություն չկա։ Ինձ թվում է, թե Յասոնը Մեգեյայի և ոսկեգեղմի հետ դժվար թե կարողանար այդտեղից փախչել, եթե պալատը և կոլխերի բնակարանները Ֆասիս գետը չբաժաներ այն տեղից, ուր գտնվում էր ոսկեգեղմը։ Այդ բանին են ակնարկում նաև այս [առասպելը] գրի առնող պոետները։ Ահա Ֆասիսը այստեղով հոսելով թափվում է, ինչպես պատմեցի, Եվքսինյան Պոնտոսի վերջավորության մեջ։ Մահկաձև [ափի] ասիական կողմում էր գտնվում Պետրա քաղաքը, իսկ հակադիր ափին՝ եվրոպական մասում ապսիլացիների երկիրն է։ Ապսիլացիները լազերին են հպատակ և հնից քրիստոնյա են դարձել, ինչպես նաև մնացած բոլոր ժողովուրդները, որոնց այս գլխում ես հիշատակեցի։

ԳԼՈՒԽ 3

Այս երկրի վերևում է գտնվում Կովկաս լեռը։ Այս Կովկաս լեռը այնքան բարձր է, որ նրա գագաթին ոչ մի ժամանակ չի տեղում ո՛չ անձրև, ո՛չ էլ ձյուն, որովհետև այն ամպերից բարձր է։ Իսկ մեջտեղից մինչև լեռան ոտքը ամեն ինչ ծածկված է հավիտենական ձյունով։ Այսպիսով նրա ստորոտները շատ բարձր են, մյուս լեռների գագաթներից ոչ ցածր։ Կովկասյան լեռնաշղթան իր մի մասով ձգվում է դեպի հյուսիս արևմուտք և հասնում մինչև Իլլիրիա և Թրակիա, իսկ մյուս մասը, ձգվելով դեպի հարավ-արևելք, հասնում է այն լեռնանցքները, որոնք այստեղ ապրող հոնական ժողովուրդներին տանում են դեպի պարսից և հռոմայեցիների երկրները։ Այդ

լեռնանցքներից մեկը կոչվում է Ցուր[40], իսկ մյուսը դեռ հնից կոչվում է Կասպից դուռ[41]։ Այն երկիրը, որը ձգվում է Կովկասյան լեռներից մինչև Կասպից դռները, ալանների, մի անկախ ժողովրդի ձեռքում է գտնվում։ Նրանք հաճախ դաշնակցում են պարսիկների հետ և արշավում հռոմայեցիների և այլ ընդհանուր թշնամիների վրա։ Ահա այսքան Կովկաս լեռան մասին։

Այստեղ են բնակվում սաբեյր կոչված հոները և մնացած հոնական ժողովուրդները։ Ինչպես պատմում են, հենց այստեղից էին ծագում ամազոնուհիները, որոնք [հետագայում] ճամբար դրեցին Թեմիսկուրոս [քաղաքի] և Թերմոդոն գետի մոտ, ինչպես մի քիչ առաջ ասել եմ, այնտեղ, որտեղ ներկայումս գտնվում է Ամիսոս քաղաքը։ Ներկայումս Կովկաս լեռան շրջաններից և ոչ մեկում ամազոնուհիների մասին հիշատակություն կամ անուն չի պահպանված, թեև Ստրաբոնի և ուրիշների գրքերում շատ է խոսվում նրանց մասին։ Ինձ ամազոնուհիների կապակցությամբ ամենից հավանականն է թվում այն մարդկանց ասածը, ովքեր գտնում են, թե երբևիցե քաջ կանանց ժողովուրդ չի եղել, որ մարդկային բնությունը միայն այստեղ, Կովկասյան լեռներում չէր կարող փոխվել, որ իրականում այդ շրջաններից բարբարոսները մեծ զորքով, իրենց կանանցով, արշավել են Ասիայի վրա և ճամբարելով Թերմոդոն գետի մոտ, այնտեղ են թողել իրենց կանանց։ Իրենք ասպատակում էին Ասիայի լայնատարած շրջանները, բայց տեղի բնակիչների դիմադրության հանդիպելով, բոլորը կոտորվել են, նրանցից ոչ ոք չի վերադարձել կանանց ճամբարը։ Ահա դրանից հետո այս կանայք, հարևանների սարսափից և պարենի պակասությունից ստիպված, ակամա զինվում են տղամարդկանց կողմից ճամբարում թողնված զենք ու զրահով, տղամարդու ձև ստանում և քաջություն ու առաքինություն ցուցաբերում։ Այդ բանին էր մղում նրանց կարիքը, մինչև որ բոլորն էլ կոտորվեցին։ Ես էլ եմ կարծում, որ իրականությունն այս է, որ ամազոնուհիները իրենց ամուսինների հետ են արշավանքի դուրս եկել։ Այդ բանի համար ինձ հիմք է ծառայում այն, ինչ իմ օրերում էլ է կատարվում։ Սովորությունները անցնելով սերնդե-սերունդ, կարող են վկայել այն մասին, ինչ կատարվել է անցյալում։ Հոները բազմիցս ասպատակել են հռոմեական երկիրը, և դիմադրության հանդիպելով, նրանցից շատերը սպանվել են այնտեղ։ Բարբարոսների նահանջից հետո հռոմայեցիները սպանվածների մեջ գտնում են նաև կանանց դիակներ։ Կանանց ոչ մի զորք Ասիայի կամ Եվրոպայի որևէ երկրում

գոյություն չի ունեցել։ Մենք երբեք չենք լսել, որ Կովկասյան լեռները որևէ ժամանակ զրկված լինեին տղամարդ բնակիչներից։ Ահա այսքանը ամազոնուհիների մասին։

Ապսիլացիներից հետո մահկաձև ափի մյուս ծայրին բնակվում են աբազգները[12], տարածվելով մինչև Կովկասյան լեռները։ Սրանք դեռ հնից հպատակ էին լազերին, մշտապես ունեցել են իրենց ցեղակից երկու թագավորներ, որոնցից մեկը հաստատված է երկրի արևմտյան մասում, իսկ մյուսը՝ արևելյան։ Դեռ իմ ժամանակ այս բարբարոսները պաշտում էին սրբազան պուրակներն ու անտառները, որովհետև նրանք բարբարոսական միամտությամբ ենթադրում էին, թե ծառերն աստվածներ են։ Իրենց տիրողների անչափ դրամասիրության պատճառով նրանք շատ էին տանջվում, որովհետև այս ժողովրդի բոլոր գեղադեմ և գեղեցիկ մարմնով տղաներին երկու թագավորներ էլ առանց քաշվելու հափշտակում էին ծնողներից, ներքինացնում, ուղարկում հռոմայեցիների երկիրը և ցանկացողին մեծ գումարի դիմաց վաճառում։ [Երեխաների] հայրերին նրանք իսկույն սպանում էին, որպեսզի երբևէ երեխաների հանդեպ կատարված անարդարության համար վրիժառու չլինեն թագավորից, որ իրենց հպատակների մեջ որևէ կասկածելի մարդ չլինի։ Որդիների գեղեցկությունն ահա պատճառ էր դառնում [հայրերի] խորտակման, որովհետև թշվառները կոտորվում էին, և նրանց դժբախտության պատճառ որդիների մահաբեր գեղեցկությունն էր։ Այդ է պատճառը, որ հռոմայեցիների երկրում ներքինիների մեծ մասը, ոչ պակաս չափով նաև կայսեր արքունիքում, ծագումով աբազգներ էին։

Բայց Հուստինիանոսի թագավորության ժամանակաշրջանում աբազգների ամբողջ [ապրելակերպը] փոփոխվեց դեպի ավելի մեղմը։ Նրանք ընդունեցին քրիստոնեական հավատքը, իսկ Հուստինիանոս կայսրը նրանց մոտ ուղարկեց պալատական մի ներքինու, ծագումով աբազգ, Եվֆրատաս անունով, բացարձակորեն արգելելու նրանց թագավորներին այսուհետև այս ժողովրդի մեջ որևէ մեկին տղամարդկությունից զրկելը, քանզի դա բնության բռնաբարումն է դանակով։ Աբազգները ուրախությամբ ընդունեցին այդ և ապավինած լինելով կայսեր հրամանին, ամբողջ ուժով արգելակում էին այդ սովորությանը։ Նրանցից յուրաքանչյուրը վախի մեջ էր ապրում, որ հանկարծ գեղեցիկ որդու հայր կդառնա։ Հուստինիանոս կայսրը նույն ժամանակ աբազգների երկրում կառուցեց նաև աստվածածնի տաճար, նրանց երկրում հաստատեց հոգևորա-

կյանների, այնպես արեց, որ նրանք յուրացնեն քրիստոնյաների բոլոր սովորությունները. իսկ աբազգները, գահընկեց անելով իրենց երկու թագավորներին, իսկույն անցան ազատ կյանք վարելու։ Այդ մասին ահա այսքան։

ԳԼՈՒԽ 4

Աբազգների սահմաններից դուրս, Կովկասյան լեռան կողմը աբազգների և ալանների միջև բնակվում են բրուխները։ Իսկ Եվքսինյան Պոնտոսի ափին հաստատված են զեխերը։ Հնում հռոմայեցիների ինքնակալը զեխերի վրա թագավոր նշանակեց, բայց այժմ այս բարբարոսները ամենևին չեն ենթարկվում հռոմայեցիներին։ Նրանցից դենր բնակվում են սագինները, որոնց պատկանող ծովափի մի մասը հռոմայեցիները դեռ վաղուց էին գրավել և կառուցել այնտեղ երկու ամրոց՝ Սեբաստոպոլիսն ու Պիտիուսը[13], որոնք գտնվում են միմյանցից երկու օրվա հեռավորության վրա, և հենց սկզբից այնտեղ հաստատել կայազոր։ Ինչպես ես ասել եմ, հնում հռոմայեցիների զորքերը բռնել լին Տրապիզոնից սկսած մինչև սագինները ընկած ամբողջ տարածությունը։ Այժմ նրանց են մնացել միայն այդ երկու ամրոցները, ուր մինչև իմ ժամանակները դեռ կայազոր կար, որպեսզի դիմադրի պարսից արքա Խոսրովին, որը լազերի առաջնորդությամբ հասել էր Պետրա և այնտեղից ուզում էր պարսից զորք ուղարկել նշված ամրոցները գրավելու և այնտեղ հաստատվելու համար։ Հռոմայեցիները այդ մասին ավելի շուտ իմացան և կանխեցին [նրա մտադրությունը], հրդեհելով տները, հիմնահատակ քանդելով պարիսպները։ Նրանք այնուհետև մտնելով նավերը, իսկույն դիմեցին դեպի դիմացի մայր ցամաքը՝ Տրապիզոն քաղաքը։ Ճիշտ է, ամրոցներն ավերելով նրանք վնաս հասցրին հռոմայեցիների պետությանը, բայց մեծ օգուտ էլ տվեցին, այն իմաստով, որ թշնամիները երկրին չտիրացան, քանզի պարսիկները ձեռնունայն վերադարձան Պետրա։ Ահա այսքան այնտեղ կատարվածի մասին։

Սագիններից վերև հաստատված են հոնական բազմաթիվ ժողովուրդներ...

ԳԼՈՒԽ 5

...Մեոտիս լճից և Տանայիս գետից այն կողմ դաշտավայրերում լայն տարածության վրա, ինչպես ասել եմ, հաստատված են կուտրիգուր հոները։ Նրանցից հետո ամբողջ երկիրը գտնվում է

սկյութների և տավրոսցիների ձեռքում, և նրա մի մասը այժմ ևս կոչվում է Տավրիկա։ Պատմում են, որ այնտեղ էր գտնվում Արտեմիսի տաճարը, որի գլխավոր քրմուհին ժամանակին Ագամեմնոնի դուստր Իփիգենիան է եղել, թեև հայերը, որպես հիմք վերցնելով այն ավանդությունը Օրեստեսի և Կոմանա քաղաքի մասին, որ ես մեջ եմ բերել իմ գրքում[44], պնդում են, թե այդ տաճարը գտնվելիս է եղել իրենց Կելեսենե կոչված երկրում, թե այդտեղի բոլոր բնակիչներն այն ժամանակ կոչվելիս են եղել սկյութներ։ Բայց այդ մասին ով ինչպես ուզում է, թող դատի...

ԳԼՈՒԽ 7

Ես վերևում խոսել եմ այն մասին, թե ինչու Խոսրովը ձգտում էր փութանակի յուրացնել Լազիկան։ Այստեղ կպատմեմ, թե ինչն էր և՛ նրան, և՛ պարսիկներին ամենից ավելի դրդում դեպի այդ։ Իմ պատմածը հասկանալի կդառնա այժմ, քանի որ արդեն մանրամասն նկարագրել եմ այդ երկիրն ամբողջությամբ։ Այս բարբարոսները, Խոսրովի գլխավորությամբ, մեծ զորքով հաճախ ներխուժում էին հռոմայեցիների երկիրը, իրենց թշնամիներին անասելի փորձությունների մատնելով, ինչպես այդ մասին հատուկ գրքերում ես պատմել եմ։ Բայց նրանք դրանով ոչ մի օգուտ ձեռք չբերեցին, այլ [միայն] մարդկային զոհեր և նյութական վնասներ կրեցին, քանզի միշտ մեծ կորուստներով դուրս էին քշվում հռոմայեցիների երկրից։ Այդ իսկ պատճառով, վերադառնալով իրենց հայրենի երկիրը [պարսիկները] թաքուն հայհոյում էին Խոսրովին և անվանում նրան պարսից ժողովրդի դահիճ։ Մի անգամ, երբ նրանք ծանր փորձանքի հանդիպելով վերադառնում էին Լազիկայից, քիչ էր մնացել բացահայտ նրա դեմ ընդվզեին և խայտառակամահ անեին, բայց նա նախօրոք իմացավ այդ մասին և զգուշացավ, շատ քաղցր խոսքերով կարողանալով խաբել [զորքի մեջ] գտնվող մեծամեծներին։ Արդ, ցանկանալով իր վրայից նետել նման մեղադրանքը, նա ջանում էր պարսից երկրի համար շատ օգտակար որևէ բան կատարել։

Նա անմիջապես հարձակվեց Դարա քաղաքի վրա, բայց ետ մղվեց այնտեղից, ինչպես ես այդ մասին պատմել եմ, և հույսը բոլորովին կտրեց, թե կկարողանա այդ վայրը գրավել։ Նա ի վիճակի չէր այն ոչ գրոհով առնել, այնքան լավ էր այն պահվում իր պաշտպանների կողմից, ոչ էլ պաշարման միջոցով, որովհետև Դարա քաղաքում դիտմամբ միշտ մեծ քանակությամբ պարենամթերք

էին կուտակում, որպեսզի նա ի վիճակի լինի դիմանալ երկարատև [պաշարման]։ Իսկ նրա մոտակայքում էլ ժայռոտ տեղում բխում է մի աղբյուր, առաջացնելով մի մեծ գետ, որն հոսում է ուղիղ դեպի քաղաքը։ Թշնամիները չեն կարող փոխել նրա հունը, այդ բանում նրանց խանգարում ¿ վատ տեղանքը։ Նա հոսում է պարիսպներից ներս, շրջում ամբողջ քաղաքով մեկ, և լցնելով նրա ջրամբարները դուրս գալիս, հոսելով պարսպի մոտ գտնվող մի անդունդի մեջ ու անհետանալով։ Թե նա այնուհետև որտեղից է դուրս դալիս, մինչև օրս ոչ ոքի համար պարզ չէ։ Այս անդունդը վաղուցվա բան չէ, նա Անաստասիոս կայսեր կողմից քաղաքի կառուցումից հետո առաջացավ, դա բնությունը ինքնաբերաբար արեց, որի պատճառով Դարան պաշարել ցանկացողները ճնշվում են ջրի սաստիկ պակասից։

Ահա Խոսրովի այս փորձն էլ անհաջող անցավ։ Նա մտածեց, որ նույնիսկ եթե հաջողվի գրավել հռոմայեցիների մի որևէ այլ քաղաք, այնուամենայնիվ նա ի վիճակի չի լինի այնտեղ՝ հռոմայեցիների երկրի մեջտեղում մնալ, որովհետև թշնամին իր թիկունքում թողել է բազմաթիվ ամրություններ։ Այդ էր պատճառ, որ Անտիոքը գետնին հավասարեցնելուց հետո նա հեռացավ հռոմայեցիների երկրից։ Խելքը կորցնելով, նա անձնատուր էր լինում մեծամեծ երազանքների, ծրագրելով անհնարին բաներ։ Լսած լինելով, թե ինչպես Եվքսինյան Պոնտոսի ձախ կողմում, Մեոտիս լճի շուրջն ապրող բարբարոսներն առանց երկյուղի ասպատակում են հռոմայեցիների երկիրը, նա կարծում էր, որ եթե պարսիկները տիրեն Լազիկային, ապա առանց դժվարության հնարավոր կլինի նույնն անել, ցանկացած ժամանակ գնալ ուղիղ Բյուզանդիոնի վրա, այն էլ առանց ստիպված լինելու ծովով նավարկել, ինչպես մշտապես անում էին մյուս բարբարոս ժողովուրդները, որոնք [ծովի] ափին են բնակվում։ Ահա այս պատճառով էր, որ պարսիկները փորձեցին յուրացնել Լազիկան։ Ես վերադառնում եմ այնտեղ, որտեղ ընդհատեցի իմ խոսքը։

ԳԼՈՒԽ 8

Ահա Խորիանեսն ու մարաց զորքը ճամբարեցին Հիպպիս գետի ափին։ Երբ այդ մասին իմացան կոլխերի թագավոր Գուբազեսը և հռոմեական զորքի հրամանատար Դագիսթայոսը, խորհրդակցեցին և թշնամիների վրա առաջնորդեցին հռոմայեցիների ու լազերի զորքը։ Հիպպիս գետի դիմացի ափին նրանք ճամբարեցին և խորհրր-

դակցում էին իրենց անելիքի շուրջը, թե որն է ավելի ձեռնտու՝ մնալ ու դիմադրել հարձակվող հակառակորդներին, թե հարձակվել նրանց վրա։ Եթե իրենք նախահարձակ լինեն, պարսիկներին ցույց կտան իրենց արիությունը, հակառակորդներին պարզ կդառնա, որ արհամարհում են նրանց. նախահարձակ լինելով կկարողանան ճնշել հակառակորդի ոգին։ Երբ հաղթեց թշնամիների վրա արշավելու [կողմնակիցների] կարծիքը, իսկույն բոլորը հարձակվեցին նրանց վրա։ Լազերը չէին ուզում հռոմայեցիների հետ մի շարքում լինել, պատճառաբանելով, որ հռոմայեցիները մարտի մեջ են մտնում. վտանգի դիմում ոչ [իրենց] հայրենիքի, կամ իրենց հարազատների համար, մինչդեռ իրենք [կռվում են] հարազատ երեխաների, կանանց, հայրենիքի վրա կախված վտանգի դեմ, որ իրենց կանանց առաջ ամոթից կկարմրեն, եթե հակառակորդի կողմից պարտության մատնվեն։ Նրանք կարծում էին, որ վտանգը արիություն կըներշնչի իրենց, որից նրանք զուրկ էին։ Նրանք վառվում էին թշնամիների դեմ մենակ, ինքնուրույն դուրս գալու ցանկությամբ, որպեսզի մարտի ժամանակ հռոմայեցիները, որոնք նույն ավյունով չեն մասնակցի կռվին, չքայքայեն իրենց շարքերը։ Լազերի այս անմտությունից անչափ ուրախացած Գուբազեսը հավաքեց նրանց հռոմայեցիներից մի քիչ հեռու և հորդորեց հետևյալ կերպ. «Ես »տեսնում եմ, ո՛վ զինվորներ, որ ձեզանից ոչ ոք դեպի քաջություն »մղող հորդորների կարիքը չի զգում։ Իմ կարծիքով հորդորի կարիք »չունեն նրանք, որոնց ոգին իրերի բերմամբ բարձր է։ Այդ վերա»բերում է ներկայումս և ձեզ։ Վճռական մարտը կանանց և երե»խաների, հայրենի հողի համար է, մի խոսքով, ամեն ինչի համար »է, քանզի դրանցից [զրկելու] նպատակով են մեր վրա արշավում »պարսիկները։ Ոչ ոք թույլ չի տա, որ իրենից խլեն ունեցածը, և »բնությունն է, որ ստիպում է պաշտպանվել։ Դուք գիտեք, որ ոչինչ »չի կարող պարսիկների ագահության առաջն առնել, երբ նրանք »բավականաչափ հզոր են։ Նրանք, եթե այս պատերազմում հաղ»թեն, չեն բավարարվի միայն տիրելով մեզ, կամ հարկ դնելով մեզ »վրա և ընդհանրապես մեզ հպատակեցնելով։ Մի մոռացեք այն »մասին, ինչ պատճառեց մեզ Խոսրովը հեռու անցյալում։ Ես թույլ »եմ տալիս ինձ խոսելու պարսիկներից մեր ձեռք բերած փորձառու»թյան մասին, որպեսզի աշխատենք լազերի բնաջնջման առաջն »առնել։ Մարերի դեմ մեր պայքարը, ո՛վ ժողովուրդ, դժվարին չէ։ »Մենք հաճախ ենք կռվել նրանց դեմ և մարտում գերազանցել։ »Փորձառու մարդկանց համար դժվարություն գոյություն չունի,

»որովհետև գործի դժվարությունները նախօրոք հաղթահարվում են »խոհեմությամբ և փորձառությամբ։ Թշնամիներին պետք է արհա»մարհել նաև այն բանի համար, որ մարտերում պարտվել են, քաջ »չեն մեզ պես։ Երբ մարդու ոգին կոտրվում է, սովորաբար այն չի »կարող այլևս վերականգնվել։ Ահա այդ ի նկատի ունենալով, բարի »հույսերով, մի մարդու պես շարժվենք հակառակորդների դեմ»։

Գուբազեսն այդ ասաց և առաջնորդեց լազերի զորքը։ Ճակատը հետևյալ կերպ էր դասավորված։ Ամենից առաջ շարվել էին լազերի հեծյալները, որոնք և հարձակման անցան։ Թիկունքից, բայց ոչ մոտ, այլ բավական հեռվից, նրանց հետևում էր հռոմայեցիների հեծելազորը։ Հռոմայեցիներին գլխավորում էին ազգով գեպացի Ֆիլեգադոսը, մի շատ գործունյա մարդ, ապա անչափ քաջ պատերազմող Հովհաննես հայր՝ Թովմայի որդին, Գուզես մականվանյալը, որի մասին ես հիշատակել եմ նաև նախորդ գրքերում[10]։ Այնուհետև իրենց հետևակով գալիս էին լազերի թագավոր Գուբազեսը և հռոմայեցիների զորավար Դագիսթայոսը՝ այն հաշվով, որ եթե հանկարծ պատահի, որ հեծելազորը փախուստի մատնվի, ապա հնարավորություն ունենա հեշտությամբ ապավինելու իրենց մոտ։ Ահա այս կերպ դասավորվեցին հռոմայեցիներն ու լազերը։ Խորիանեսը, ընտրելով իր զինվորներից հազար զրահապատ և ընդհանրապես շատ լավ զինված մարդկանց, ուղարկեց առաջ՝ հետախուզության, իսկ ինքը մնացած ամբողջ զորքի հետ նրանց ետևից էր ընթանում, ճամբարի պահպանության համար թողնելով մի քանի հոգու։ Լազերի հեծելազորը առաջ անցնելով, խայտառակ կերպով իր խոսքը դրժում է, գործի ժամանակ ի դերև հանում եղած հույսերը։ Հանկարծակի հանդիպելով թշնամիների առաջապահ ջոկատին, նրանց տեսքից վախեցած, իսկույն շրջեցին ձիերը, անկանոն կերպով նահանջեցին և շտապ կարգով միացան հռոմայեցիներին։ Լազերը անարժան չհամարեցին ապավինել նրանց մոտ, ում հետ նախապես հրաժարվում էին մի շարքում լինել։ [Հակառակորդները] մոտեցան իրար, բայց ոչ ոք չէր ուզում նախահարձակ լինել ու ընդհարվել, այլ միայն երկու կողմն էլ մոտեցող հակառակորդներին ստիպում էին վերադառնալ. երբ մեկը վերադառնում էր, մյուսը առաջ էր նետվում. մեկ նահանջելով, մեկ հակահարձակման անցնելով, նման հանկարծակի փոփոխությունների ընթացքում՝ ահագին ժամանակ վատնեցին։

Հռոմեական այս բանակում ծագումով պարսկահայ մի զորավար կար, Արտավան անունով. նա շատ վաղուց դասալիք էր եղել

և կամավոր անցել հռոմայեցիներին ենթակա Հայաստան, բայց ոչ սովորական ձևով, այլ կոտորելով հարյուր քսան ռազմունակ պարսիկների։ Այդ արարքը մի տեսակ երաշխիք էր իր հավատարմության՝ դեպի հռոմայեցիները։ Նա այն ժամանակ եկել էր Հայաստանի զորավար Վալերիանոսի մոտ և խնդրել հռոմեական զորքից հիսուն [զինվոր]։ Նրա խնդիրքը բավարարվեց, և նա շարժվեց դեպի Պերսարմենիայում գտնվող ինչ-որ ամրոց։ Նրան իր զինվորներով ընդունեց ամրոցի մեջ հարյուր քսան հոգուց բաղկացած պարսկական կայազորը, որովհետև դեռ հայտնի չէր, որ նա հավատարիմ չէ [պարսկական] պետությանը և որ ուզում է ապստամբություն բարձրացնել։ [Արտավանը] սպանում է այդ հարյուր քսան հոգուն և հափշտակելով ամրոցում եղած հսկայական հարստությունը, գալիս է Վալերիանոսի և հռոմեական զորքի մոտ։ Նա այդ արարքով ապացուցեց, որ ինքը վստահելի է հռոմայեցիներին և այսուհետև մասնակցեց նրանց արշավանքներին։ Նշված մարտի ժամանակ այս Արտավանը հռոմայեցի երկու զինվորներով գնաց թշնամի բանակների մեջտեղը։ Այնտեղ եկան նաև թշնամիներից մի քանիսը, որոնց վրա հարձակվեց Արտավանը և նիզակի հարվածով տեղն ու տեղը սպանեց հոգով ու մարմնով անչափ քաջ ու հզոր պարսիկներից մեկին՝ ձիուց ցած գլորելով խողխողեց։ Սպանվողի մոտ գտնվող բարբարոսներից մեկը թրով հարվածեց Արտավանի գլխին, բայց հասցրած վերքը մահացու չէր։ Արտավանի զինվորներից մեկին՝ ծագումով գոթ, այն ժամանակ, երբ [պարսիկը] ձեռքը Արտավանի գլխի վրա էր բարձրացրել, հաջողվում է հարվածել նրա ձախ կողին և սպանել։ Ահա մնացած հազար հոգին. կատարվածից սարսափահար, նահանջեց և սպասում էր Խորիանեսին, որը պարսից ու ալանների մյուս զորքով [մոտենում էր] և շուտով միացավ նրանց։

Գուբազեսի և Դագիսթայոսի հետևակն արդեն հասավ հեծյալներին և երկու կողմն էլ սկսեցին ձեռնամարտը։ Այն ժամանակ Ֆիլեգագոսն ու Հովհաննեսը, համոզված լինելով, որ իրենց փոքրաթիվ զորքով ի վիճակի չեն դիմադրել հարձակվող բարբարոսական հեծելազորին, հատկապես երբ տեսան, թե ինչ է ներկայացնում իրենից լազերի ուժը, իջան ձիերից և ստիպեցին, որ բոլոր հռոմայեցիներն ու լազերը նույնն անեն։ Նրանք բոլոր թշնամիների դեմ մի խոր ճակատ կազմեցին, երկարելով իրենց նիզակները։ Բարբարոսները չգիտեին ինչ անեն (նրանք չէին կարող հարձակվել հակառակորդների վրա, որովհետև վերջիններս հետևակ էին, ոչ էլ

ի վիճակի էին սասանել նրանց շարքը), նրանց ձիերը նիզակների ծայրերից և վահանների բախման շառաչյունից վախեցած ծառս էին լինում։ Դրա համար բոլորը դիմեցին աղեղներին, հույս ունենալով բազմաթիվ նետերի [արձակմամբ] թշնամիներին փախուստի մատնել։ Հռոմայեցիները լազերի հետ միասին նույնն էին անում։ Երկու կողմից շատ նետեր էին արձակվում և երկու կողմից էլ շատերն էին ընկնում։ Պարսիկներն ու ալաններն ավելի հաճախ էին նետեր արձակում, քան հակառակորդները, բայց նրանց նետերը մեծամասամբ հարվում էին վահաններին։

Այս մարտում նետահար եղավ պարսից հրամանատար Խորիանեսը։ Թե ում կողմից նա հարված ստացավ՝ ոչ ոք չիմացավ, որովհետև նետր բազմության միջից գալով՝ խրվեց նրա կոկորդին ու վայրկենապես սպանեց նրան. մի մարդու մահով մարտի ընթացքը փոխվեց և հռոմայեցիները հաղթող դուրս եկան։ Խորիանեսը ձիուց գետին տապալվեց ու փռվեց երեսնիվայր. բարբարոսները վազքով շտապեցին դեպի ամրացված վայրը, իսկ հռոմայեցիները, լազերի հետ, շատերին կոտորեցին և հույս ունեին, որ դրոհով կվերցնեն հակառակորդի ճամբարը։ Բայց հսկա մարմնով քաջ մի ալան, որ կարողանում էր արագ ու վարպետորեն նետեր արձակել և մեկ և մյուս ուղղությամբ, կանգնել էր ամրության նեղ մուտքի առջև. նա անսպասելիորեն մեծ խոչընդոտ դարձավ հակառակորդների համար։ Սակայն Թովմայի որդի Հովհաննեսը մենակ ընդհուպ մոտեցավ նրան և նիզակի անսպասելի հարվածով սպանեց։ Դրանից հետո հռոմայեցիներն ու լազերը գրավեցին թշնամիների ճամբարը։ Բարբարոսներից շատերը հենց տեղում կոտորվեցին, իսկ մնացածները ինչպես որ կարողացան՝ փախան իրենց հայրենի երկիրը։ Ահա այսպիսի վախճան ունեցավ պարսիկների ներխուժումը Կոլխիս։ Իսկ սպարսկական մի այլ բանակ Պետրայի կայազորին առատ պարեն և ամեն անհրաժեշտ բան մատակարարելուց հետո հեռացավ։

ԳԼՈՒԽ Ց

Այդ միջոցին տեղի ունեցավ հետևյալը. լազերը, գնալով Բյուզանդիոն, կայսեր առաջ դավաճանության և պարսկասիրության մեջ ամբաստանեցին Դագիսթայոսին։ Նրանք պնդում էին, թե պարսիկները համոզեցին նրան չգրավել Պետրան, երբ նրա պարիսպներն արդեն փուլ էին եկել, որ այդ ընթացքում թշնամիները ավազով լցված պարկեր շարեցին քարի փոխարեն և դրանցով ամ-

րապնդեցին պարսպի քանդված մասերը։ Նրանք ասում էին նաև, որ Դադիսթայոսը կամ շահից դրդված, կամ էլ իր անփութությամբ հետաձգեց հարձակումը և կորցրեց ամենահարմար առիթը, որն այլևս չկարողացավ ձեռք բերել։ Կայսրը նրան բանտ նետեց, իսկ մի փոքր առաջ Իտալիայից ժամանած Բեսսասին նշանակեց Հայոց զորավար և ուղարկեց Լազիկա՝ հրամայելով գլխավորել այնտեղ գտնվող հռոմեական բանակը։ Զորքով [Լազիկա] էին ուղարկվել նաև Բուզեսի եղբայր Բենիլոսը, ապա Թրակիայից Օդոնախոսն ու Բաբասը և ծագումով էրուլոս Ուլիգագոսը։

Նաբեդեսը զորքով Լազիկա ներխուժելով, ոչ մի հիշարժան բան չկատարեց, այլ միայն իր զորքը հռոմայեցիների և լազերի դեմ ապստամբած աբազգների մոտ տարավ և որպես պատանդ վերցրեց նրանց մեծամեծների վաթսուն երեխաների։ Նաբեդեսը այդ ընթացքում ի միջի այլոց Ապսիլիայում հանդիպեց Օպսիտեսի կին Թեոդորային ([Օպսիտեսը] Գուբազեսի հորեղբայրն էր, լազերի թագավորը), գերի վերցրեց նրան և տարավ Պարսկաստան։ Այս կինը ծագումով հռոմայեցի էր։ Դեռ վաղուց լազերի թագավորները Բյուզանդիոն մարդ էին ուղարկում և կայսեր համաձայնությամբ խնամիանում սենատորների հետ ու իրենց համար կին բերում։ Գուբազեսն, անկասկած, հռոմայեցի կնոջ որդի էր։ Այժմ պատմեմ. թե ինչ պատճառով այս աբազգները ապստամբեցին։

[Աբազգները] իրենց թագավորներին գահընկեց անելուց հետո, որի մասին ես փոքր առաջ պատմել եմ, կայսեր կողմից այնտեղ էին ուղարկվում հռոմայեցի զինվորներ, որոնք տեղ հասնելով ջանում էին երկիրը ենթարկել հռոմայեցիների իշխանության՝ այնտեղ նոր կարգեր սահմանելով։ Դա աբազգների համար շատ ծանր էր և անչափ դժգոհություն առաջացրեց։ Երկյուղելով, որ շուտով իրենք կդառնան հռոմայեցիների ստրուկները, նրանք վերականգնեցին իրենց թագավորների իշխանությունը՝ արևելյան երկրի վրա դրին Օպսիտես կոչվածին, իսկ արևմտյանի՝ Սկեպարնասին։ Լավ օր տեսնելու ոչ մի հույս չունենալով, անցյալի ծանր իրավիճակը, համեմատած ներկայի հետ, փոքրադույն չարիք համարելով, նրանք, բնականաբար, նախընտրեցին նախկինը ու վախենալով հռոմեական զորքից, գաղտնի կերպով անցան պարսիկների կողմը։ Երբ Հուստինիանոս կայսրն իմացավ այդ մասին, հրամայեց Բեսսասին մեծ զորքով շարժվել նրանց վրա։ Վերջինս հռոմեական զորքի միջից բազմաթիվ զինվորներ ընտրեց, նրանց վրա հրամանատարներ կարգեց Ուլիգագոսին, Թովմայի որդի Հովհաննեսին և

անմիջապես նավերով ուղարկեց աբազգների դեմ։ Աբազգների թագավորներից մեկը՝ Սկեպարնասը [այդ պահին] ինչ-որ գործով Պարսկաստանում էր գտնվում, նա քիչ առաջ կանչվել էր Խոսրովի կողմից և ժամանել նրա մոտ։ Իսկ մյուս [թագավորը], իմանալով հռոմայեցիների հարձակման մասին, ոտքի հանեց բոլոր աբազգներին և փութաց դիմագրելու։

Ապսիլիայի սահմաններից այն կողմը՝ Աբազգիա մուտք գործելու տեղում այսպիսի մի վայր կա։ Կովկասյան լեռներից սկիզբ է առնում մի բարձր լեռ, որը աստիճանաբար ցածրանալով սանդուղքաձև ձգվում և վերջանում է Եվքսինյան Պոնտոսի [ափին]։ Աբազգները դեռ հին ժամանակներն այս լեռան ստորոտին մի մեծ ու անառիկ ամրոց էին կառուցել։ Ահա այստեղ ապավինելով, նրանք միշտ ետ էին մղում թշնամիներին, որոնք ի վիճակի չէին լինում հաղթահարել դժվարին տեղանքը։ Միայն մեկ տեղ կա, որով կարելի է մուտք գործել այս ամրոցը և աբազգների երկիրը, այն էլ այնքան [նեղ] է, որ միանգամայն անհնարին է անցնել երկու հոգով, այլ միայն մեկ-մեկ, այն էլ հետիոտն։ Այս կածանից վերև գտնվում է մի ժայռոտ ձոր, որը ձգվում է ամրոցից մինչև ծովը։ Այգ վայրը կրում է ձորի բնույթին համապատասխանող անուն, որովհետև տեղացիք հունարեն լեզվով նրան Տրախեա[46] են կոչում։

Հռոմայեցիների նավատորմիղը խարիսխ գցեց աբազգների և ապսիլացիների սահմանների միջև։ Հովհաննեսն ու Ուլիգագոսը ափ հանելով զինվորներին, հետիոտն առաջ էին գնում, իսկ նավաստիները նավերի վրա ծովափի մոտ հետևում էին զորքին։ Երբ հասան Տրախեայի մոտ, նրանք տեսան, որ բոլոր աբազգները զինված ու շարք կանգնած սպասում են և՛ կածանի վերևում, որին նոր հիշատակեցի, և՛ ամբողջ ձորով մեկ։ [Հռոմայեցիները] ընկան անելանելի դրության մեջ, չիմանալով տվյալ դեպքում ինչպես վարվել, մինչև որ Հովհաննեսը, երկար մտածելուց հետո, դժվարությունից դուրս գալու ելք գտավ։ Ուլիգագոսին զորքի կես մասով թողեց տեղում, իսկ մնացածներին նավ բարձրացրեց։ Թիավարելով, նրանք անցան Տրախեա վայրը, հայտնվեցին թշնամիների թիկունքում, և դրոշները սլարգած շարժվեցին նրանց վրա։ Աբազգները տեսնելով, որ թշնամիները հարձակվում են և՛ ճակատից, և՛ թիկունքից, մարտնչելու մասին այլևս չէին մտածում, ոչ էլ իրենց շարքերն էին պահպանում, այլ անկարգ ձևով սկսեցին նահանջել։ Նրանք այնքան էին վախեցել ու շփոթվել, որ նույնիսկ իրենց հայրենի դժվարին տեղանքը չճանաչեցին, որ կարողանային այնտե-

ղով հեշտությամբ գնալ։ Հռոմայեցիները երկու կողմից հետապնդեցին նրանց և շատերին կոտորեցին. նրանք փախչողների ետևից հասան ամրոցը և փոքր դարպասը դեռ բաց գտան, որովհետև պահակները մինչև որ չընդունեին բոլոր փախստականներին, մտադիր չէին փակել դռները։ Հալածողները, խառնվելով փախստականներին, բոլորը միասին շարժվեցին դեպի դարպասները, մի մասը փրկվելու համար, իսկ մյուսը՝ ամրոցը գրավելու։ Տեսնելով դարպասները բաց, միասին ներս մտան, իսկ դռնապանները ի վիճակի չէին աբազգներին տարբերել թշնամիներից, ոչ էլ փակել դարպասները, որովհետև բազմությունը ուժեղ ճնշում էր գործադրում։

Աբազգները ուրախությամբ անցան պարիսպներից ներս, բայց ամրոցի հետ միասին [թշնամու] ձեռքն ընկան։ Սակայն հռոմայեցիներն էլ, ուզենալով հակառակորդի հետ իրենց հաշիվը մաքրել, ընկան դժվարին դրության մեջ։ Տեղում բազմաթիվ տներ կային, որոնք գտնվում էին մեկը մյուսին մոտ և բոլոր կողմերից ցանկապատված էին կարծես պարիսպներով։ Աբազգները, բարձրանալով տների վրա, ամբողջ ուժով դիմադրում էին, բարձրից հարվածում թշնամիներին։ Նրանք ահ ու սարսափի մեջ էին իրենց երեխաների ու կանանց համար, կարեկցում էին նրանց և անելանելի վիճակի մեջ էին, երբ հռոմայեցիները միտք հղացան կրակի տալ տները։ Նրանք ամեն կողմից հրկիզեցին դրանք և այս մարտում լիակատար հաղթանակ տարան։ Աբազգների թագավոր Օպսիտեսը մի քանի հոգով կարողացավ փախչել և գնալ մոտակայքում բնակվող հոների մոտ՝ Կովկաս լեռը։ Մնացած [աբազգները] կամ այրվեցին բնակարանների հետ միասին, կամ ընկան թշնամիների հարվածների տակ։ Հռոմայեցիները գերի վերցրին իշխանների կանանց՝ բոլոր երեխաներով, հիմնահատակ քանդեցին ամրոցի պարիսպները և գրեթե ամբողջ երկիրը ամայացրին։ Ահա աբազգների ապստամբությունը այսպիսի վախճան ունեցավ։ Իսկ Ապսիլիայում պատահեց հետևյալը։

ԳԼՈՒԽ 10

Ապսիլացիք դեռ հնուց ենթակա էին լազերին։ Այս երկրում մի շատ անառիկ ամրոց կա, որ տեղացիք Ցիբիլե են կոչում։ Լազերի մեծամեծներից Տերդետես անունով մեկը, որն այս ժողովրդի վրա մագիստրոսի իշխանությունն ուներ, ընդհարվելով լազերի թագավոր Գուբազեսի հետ և թշնամանալով նրան, պարսիկներին գաղտնի խոստացավ հանձնել այս ամրոցը։ Այդ մտադրությունն իրա-

կանացնելու համար նա պարսից զորքը առաջնորդեց դեպի Ապսիլիա։ Երբ մոտեցան ամրոցին, իրեն հետևող լազերի հետ նա անցավ առաջ և մտավ պարիսպներից ներս, որովհետև ամրոցի պաշտպանները նրա վրա չէին կասկածում և որևէ հիմք չունեին չվստահելու լազերի ղեկավարին։ Երբ այնուհետև հասավ նաև պարսից զորքը, Տերդետեսը ընդունեց այն ամրոցի մեջ։ Այդ բանից հետո մարերը սկսեցին մտածել ոչ միայն Լազիկային տիրանալու մասին, այլև Ապսիլիային։ Լազերը և հռոմայեցիները Պետրայում զբաղված լինելով և մարերի զորքի կողմից դժվարին դրության մեջ ընկնելով չկարողացան պաշտպանել Ապսիլիան։

Այստեղի կայազորի պետը՝ ազգով ապսիլացի, մի շատ գեղեցիկ կին ուներ։ Այս կնոջը հանկարծ ուժեղ սիրահարվեց պարսից զորքի հրամանատարը։ Սկզբում նա փորձեց դայթակղեցնել նրան, բայց երբ տեսավ, որ կինը տեղի չի տալիս, դիմեց բռնության։ Կնոջ ամուսինը սաստիկ զայրացած, գիշերով սպանեց [պարսկին] և նրա հետ ամրոցում գտնվող բոլորին, որոնք իրենց հրամանատարի կրքի զոհը դարձան, և տիրացավ ամրոցին։ Իսկ ապսիլացիները դուրս եկան կոլխերի հպատակությունից, պատճառաբանելով, հանեցին գերաններր, որոնց մասին ես նոր հիշատակեցի, և նրանց նուիրյուն ցույց չտվին։ Բայց Գուբազեսը նրանց դեմ ուղարկեց մի քիչ առաջ հիշատակված Թովմայի որդի Հովհաննեսին՝ հազար հռոմայեցիներով։ Վերջինս նրանց հանգստացրեց, համոզեց և այդպիսով առանց մարտի տիրացավ [Ապսիլիային] ու նրանց նորից լազերին հպատակեցրեց։ Ահա այսպես վերջացավ ապսիլացիների և Ցիբիլե ամրոցի գործը։

Նույն այդ ժամանակ Խոսրովի տմարդությունը նույնիսկ սեփական սերնդին չխնայեց։ Նա ընդհարվեց իր ավագ որդի Անաստոզադոսի հետ (այս անունը պարսկերեն նշանակում է «Անմահ»), այն բանի համար, որ նա անօրեն կյանք էր վարում և առանց քաշվելու հարաբերության մեջ էր մտնում հոր կանանց հետ։ Խոսրովն սկզբում որպես պատիժ որդուն աքսորեց։ Պարսկաստանում կա Վազարինե շատ հարուստ երկիրը, ուր, Կտեսիֆոնից յոթ օր հեռավորության վրա, գտնվում է Բելապատոն քաղաքը։ Ահա հոր հրամանով Անատոզադոսը այստեղ էր ապրում։

Խոսրովն այդ միջոցին ծանր հիվանդացավ։ Նա հիվանդոտ մարդ էր, և նույնիսկ լուր տարածվեց, թե նա մահացել է։ Հասկանալի է, նա ամեն տեղից հաճախ բժիշկներ էր հրավիրում իր մոտ, որոնց թվում նաև Տրիբունոս բժշկին, ծագումով պաղեստինացի։

Տրիբունոսը զարգացած, բժշկական արվեստի մեջ շատ գիտակ և, բացի այդ, անչափ խոհեմ, բարեպաշտ և ծայրահեղ բարի մարդ էր։ Մի անգամ, երբ Խոսրովը հիվանդացել էր,.նա բուժեց նրան և պարսից երկրից հեռացավ, ստանալով արքայից բազմաթիվ թանկարժեք նվերներ։ Նախորդ զինադադարի ժամանակ Խոսրովը խնդրեց Հուստինիանոս կայսրից, որ նա մի տարով այս բժշկին իր մոտ ուղարկի։ Երբ տարին լրացավ, ինչպես վերևում պատմել եմ[47], Խոսրովն առաջարկեց Տրիբունոսին խնդրի ինչ որ ցանկանա։ Իսկ նա ոչ մի բան չխնդրեց, այլ միայն այն, որ Խոսրովն ազատ արձակի հռոմայեցի գերիներից ոմանց։ [Խոսրովը] ազատ արձակեց երեք հազար հոգի և այն երևելի գերիներին, որոնց հանվանե խնդրել էր [բժիշկը], որով Տրիբունոսը բոլոր մարդկանց մոտ մեծ հռչակ ստացավ։

Երբ Անատողադոսն իմացավ իր հոր՝ Խոսրովի հիվանդության մասին, կամենալով տիրանալ թագավորությանը, ապստամբություն բարձրացրեց։ Թեև հայրը առողջացավ, բայց նա այդ քաղաքում սկսած ապստամբությունը շարունակեց և պատերազմ հրահրեց։ Խոսրովն իմանալով այդ, նրա դեմ Ֆաբրիզոսի գլխավորությամբ զորք ուղարկեց։ Ֆաբրիզոսը մարտում հաղթեց Անատողազոսին և գերի վերցնելով, փոքր անց Խոսրովի մոտ բերեց։ Վերջինս վնասեց որդու աչքերը, բայց տեսողությունից չզրկեց։ Պարզապես վերևի և ներքևի կոպերը այլանդակեց հետևյալ կերպ. շիկացած երկաթե մի ասեղով որդու փակ աչքերի կոպերը այրեց և փչացրեց նրանց տեսքը։ Խոսրովն այդպես վարվեց միայն ու միայն այն մտքով, որպեսզի որդին թագավորություն ստանալու այլևս ոչ մի հույս չունենա, որովհետև, ինչպես ես նախապես ասել եմ, ըստ պարսից օրենքների, ֆիզիկական թերություն ունեցող մարդուն չի թույլատրվում թագավոր դառնալ։

ԳԼՈՒԽ 11

Ահա այսպիսին էր Անատողազոսի բախտն ու ճակատագիրը։ Վերջանում էր զինադադարի հինգերորդ տարին։ Հուստինիանոս կայսրը Խոսրովի մոտ ուղարկեց պատրիկ Պետրոսին, որը մագիստրոսի աստիճան ուներ, Արևելքի վերաբերյալ խաղաղության հարցը երկուստեք հիմնավորապես տնօրինելու համար։ [Խոսրովը] նրան ետ ուղարկեց, խոստանալով շուտով նրա ետևից մարդ հղել՝ երկու կողմերին էլ ձեռնտու պայմաններով հաշտություն կնքելու համար։ Շատ չանցած նորից ուղարկեց Իսդիգունասին, վես և ծայրահեղ

մեծամիտ մի մարդու, որի ամբարտավանությունն ու փքվածությունը ոչ մի Հռոմայեցու դուր չեկավ։ Նա իր հետ էր տանում կնոջը, երեխաներին, եղբորը. նրան էր հետևում նաև ծառաների մեծ բազմություն և այնպիսի տպավորություն էր թողնում, թե մարդիկ մարտի են գնում։ Նրան էին ուղեկցում նաև ամենաերևելիներից երկու պարսիկ, որոնք գլխներին կրում էին ոսկե խույրեր։ Բյուզանդիոնի բնակիչներին զայրացնում էր այն, որ Հուստինիանոս կայսրը նրան ընդունեց ոչ որպես սովորական մի դեսպանի, որ նրա հանդեպ ցուցաբերեց շատ ավելի մեծ սիրալիրություն և մեծարանք։

Բրադուկիոսը այս անգամ նրա հետ Բյուզանդիոն չեկավ, որովհետև, ինչպես պատմում են, Խոսրովը սպանեց նրան. նրա մեղքն այն էր միայն, որ Հռոմայեցիների կայսեր սեղանակիցը դարձավ։ [Խոսրովն] ասել էր, թե «մի հասարակ դեսպան կայսեր կողմից այնքան մեծ պատվի արժանանալ կարող էր միայն դավաճանելով պարսից պետությանը»։ Ոմանք ասում են, թե ինքը՝ Իսդիգուսնասը նրան ամբաստանեց, իբր նա Հռոմայեցիների հետ գաղտնի բանակցությունների մեջ էր մտել։ Այս դեսպանը նախ հանդիպելով կայսեր, հաշտության մասին ոչինչ չասաց, միայն մեղադրեց Հռոմայեցիներին զինադադարը խախտելու մեջ, որպես փաստ վկայակոչելով այն, որ Արեթասը և Հռոմայեցիներին ենթակա սարակինոսները զինադադարի ժամանակ ջարդել են Ալամունդարոսին։ Նա երկրորդական այլ մեղադրանքներ էլ առաջ քաշեց, որոնք կարևոր չգտա հիշատակել։

Բյուզանդիոնում ահա այդ էր տեղի ունենում։ Իսկ Բեսսասը ամբողջ հռոմեական զորքով պաշարեց Պետրան։ Հռոմայեցիները փորում էին պարսպի տակը, այնտեղ, որտեղ նախկինում Դագիսթայոսը գետնափոր էր արել և քանդել նրա պարիսպը։ Ասեմ թե ինչու նրանք հենց նույն տեղն էին փորում։ Քաղաքի նախկին կառուցողները պարսպի հիմքերը գլխավորապես ժայռի վրա գցեցին և տեղ-տեղ միայն հողի վրա հաստատեցին։ Պարսպի այն մասը, որը գտնվում էր քաղաքի արևմտյան կողմում, շատ երկար չէր, իսկ այդ մասի երկու կողմից շարունակվող պարսպի հիմքերը կառուցված էին կարծր և անհաղթահարելի ժայռի վրա։ Ահա այս [նեղ] մասի տակն էր փորել նախկինում Դագիսթայոսը, իսկ այժմ և նույն ձևով Բեսսասը. և՛ Դագիսթայոսին, և՛ Բեսսասին տեղանքը թույլ չէր տվել ծավալվել, դրա համար նրանք փորել էին այնքան, ինչքան հնարավոր էր։

Երբ պարսիկները Դագիսթայոսի նահանջից հետո ուղեցին

վերականգնել պարսպի քանդված մասերը, նրանք շինարարությունը նախկինի պես չկատարեցին, այլ հետևյալ կերպ. դատարկված տարածությունը լցրին մանրախիճով, ապա նրա վրա հաստ գերաններ դրին, որոնք լավ քերել էին և շատ ողորկ դարձրել, այնուհետև դրանք միմյանց կապեցին և բավական լայն շարվածք ստեղծեցին։ Այդ խաղաց պարսպի հիմքերի դեր, իսկ դրանց վրա հմուտ կերպով վերջացրին շինարարությունը։ Հռոմայեցիները ոչինչ չգիտեին այդ մասին և որոշեցին գետնափորը անել հիմքերից ցած։ Նրանք դատարկեցին գերանների տակ եղած ամբողջ հողը, հանեցին գերանները, որոնց մասին ես նոր հիշատակեցի, և նրանց հաջողվեց շատ տեղերում սասանել պարիսպը։ Սրա մի մասը հանկարծակի նստեց, ոչ փուլ եկավ այս կամ այն կողմ, ոչ էլ պատից որևէ քար շարժվեց, այլ պարզապես ամբողջությամբ ուղիղ նստեց, կարծես ինքնաբերաբար, իջավ ու մնաց կանգուն դատարկված տեղում։ Նա [շարունակում] էր պաշտպանել այդ տարածությունը, ճիշտ է, ունենալով ոչ թե նախկին բարձրությունը, այլ մի փոքր պակաս։ Քանզի այն բանից հետո, երբ գերանների տակի ամբողջ տարածությունը դատարկվեց, նրա վրա բարձրացրած պարիսպը ամբողջությամբ նստեց։

Հռոմայեցիների համար սակայն դրանից հետո էլ հնարավոր չեղավ անցնել պարիսպներից ներս։ Պարսից մեծաքանակ զորքը, որ Մերմերոեսի գլխավորությամբ ժամանել էր այստեղ, բավական նորոգեց նախկին կառույցը և պարիսպը բարձրացրեց։ Հռոմայեցիները, երբ տեսան պարսպի սասանվելն ու նորից կանգուն մնալը, դժվարին և անելանելի դրության մեջ ընկան։ Նրանք այլևս ի վիճակի չէին դետնափոր անել, քանի որ նախկինը ծածկվել էր, նրանք չէին կարող գործի դնել խոյերը, որովհետև զառիվեր տեղանքում էին գտնվում, իսկ այս մեքենաները հնարավոր էր քարշ տալ միայն ու միայն հարթ և տափարակ տեղանքով։

Բախտի բերմամբ հռոմեական բանակում գտնվում էին փոքրաքանակ բարբարոս սաբեյրներ, հետևյալ պատճառով։ Սաբեյրները հոնական ժողովուրդ են, մեծ բազմություններով բնակվում են Կովկասյան լեռների մոտ և բաժանված են բազմաթիվ իշխանությունների։ Նրանց իշխանությունների մի մասը դեռ հնուց հռոմեական ինքնակալի հետ լավ հարաբերությունների մեջ էր, իսկ մյուս մասն էլ՝ պարսից արքայի։ Յուրաքանչյուր թագավոր իր դաշնակից [սաբեյրներին] ըստ սովորության որոշակի ոսկի էր տալիս, ոչ ամեն տարի, այլ երբ դրա կարիքը զգացվում էր։ Այն

ժամանակ Հուստինիանոսը իր բարեկամ սաբեյրների մոտ մարդ ուղարկեց դրամով և կոչ արեց դաշնակցել։ Այդ մարդը (այն պատճառով, որ ճանապարհի մեջտեղում թշնամիներ էին գտնվում և հնարավոր չէր ապահով, այն էլ դրամով, անցնել Կովկասյան լեռները) ժամանում է Բեսսասի մոտ, հռոմայեցիների այն զորքի, որը Պետրան էր պաշարում և մարդ ուղարկում սաբեյրներին հայտնելու, որ շտապ իր մոտ գան դրամն ստանալու։ Բարբարոսներն իրենց իշխանավորներից ընտրեցին երեք հոգու և փոքրաթիվ մարդկանցով անմիջապես Լազիկա ուղարկեցին։ Ահա սրանք, տեղ հասնելով, հռոմայեցիների հետ մասնակցություն ունեցան [Պետրայի] պաշարմանը։

[Սաբեյրները], երբ տեսան, որ հռոմայեցիները հուսահատվել են և շփոթվել, մի մեքենա հորինեցին, որի նմանը ի սկզբանե անտի ո՛չ սպարսիկներից, ո՛չ հռոմայեցիներից որևէ մեկի մտքով չէր անցել, թեև յուրաքանչյուր պետության մեջ և՛ անցյալում, և՛ այժմ մեծ քանակությամբ մասնագետներ են եղել։ Այնուհետև երկու կողմն էլ միշտ օգտագործում են այդպիսի մեքենան, երբ պաշարում են ժայռոտ և դժվարանցանելի տեղանքում գտնվող ամրություններ։ Բայց մինչև այդ ոչ մեկի մտքով չանցավ այն, ինչ տվյալ դեպքում այս բարբարոսները [հնարեցին]։ Մարդկային մտքի բնությունն այնպիսին է, որ անընդհատ նոր բաներ է հղանում։ Այս սաբեյրները մի խոյ են սարքում, բայց ոչ սովորական, այլ նոր ձևով։ Նրանք այդ մեքենան չծանրաբեռնեցին ո՛չ ուղղահայաց, ո՛չ էլ հորիզոնական գերաններով, այլ իրար կապելով հաստ ձողեր, գերանների փոխարեն ամրացրին մեքենայի շուրջը։ Այնուհետև ամբողջ մեքենան ծածկեցին կաշիներով, տալով նրան խոյի ձև։ Մեքենայի մեջտեղով, ինչպես ընդունված է, ազատ կախված շղթաներին միայն մեկ գերան. ամրացրին, որի սրված և երկաթապատ, սլաքի նման հատու ծայրը պետք էր անընդհատ հարվածեր պարսպին։ Մեքենան այնքան թեթև էր, որ մեջը գտնվող մարդիկ կարիք չունեին այն քաշելու կամ հրելու։ Այն քառասուն հոգին, որոնք պետք է բարձրացնեին դերանը և նրանով հարվածեին պարսպին, մտնելով մեքենայի մեջ և կաշիներով պատսպարված, առանց որևէ դժվարության կրում էին մեքենան իրենց ուսերի վրա։

Այս բարբարոսները սարքեցին նման երեք մեքենա, հանելով գերաններն ու երկաթն այն խոյերի վրայից, որոնք հռոմայեցիները թեև պատրաստի ունեին, բայց ի վիճակի չէին քաշել պարսպի մոտ։ Յուրաքանչյուր [խոյի] մեջ մտան քառասունից ոչ պակաս ընտիր

հռոմայեցիներ և տարան հասցրին ընդհուպ մինչև պարիսպը։ Յուրաքանչյուր մեքենայի երկու կողմերից շարված էին զրահակիր և գլուխները սաղավարտներով ծածկված ուրիշ [հռոմայեցիներ]։ Նրանց ձեռքերին նիզակներ կային, որոնց ծայրին ամրացված էր երկաթե կեռ, հատուկ դրա համար, որ երբ խոյի՝ պարսպին հասցրած հարվածը խախտեր քարերի շարվածքը, այս նիզակներով կարողանային դուրս հանել խախտված քարերը։ Հռոմայեցիներն անցան գործի և հաճախակի հարվածներից պարիսպը սկսեց սասանվել, իսկ մեքենայի երկու կողմում գտնվողները կեռ նիզակներով հանում ու գցում էին պարսպի խախտված քարերը. թվում էր, որ քաղաքն ահա գրավվելու է։

Բայց պարսիկները հղացան հետևյալ միտքը։ Իրենց վաղուց սարքած փայտե աշտարակը տեղափոխեցին պարիսպների վրա. նրա մեջ մտան իրենց ամենամարտունակ զինվորները, որոնց գլուխն ու մարմինը պաշտպանված էին երկաթե զրահներով և սաղավարտներով։ Սրանք, ծծումբ ու կուպր լցնելով կավե անոթների մեջ (ինչպես և մի նյութ, որին մարերը «նավթա» են կոչում, իսկ հույները՝ Մեդեյայի ձեթ) և բոցավառելով շպրտում էին խոյ մեքենաների վրա. քիչ էր մնացել, որ բոլորը կրակի ճարակ դառնային։ Բայց [մեքենաների] շուրջը գտնվողները, որոնց ես վերևում հիշատակեցի, նոր նշածս նիզակներով շարունակ հեռացնում էին նետված անոթները, մաքրում մեքենաների ծածկերը դրանցից և անմիջապես գետին գցում. նրանք հասկանում էին, որ երկար չեն դիմանա։ Անոթներն իսկույն պետք էր հեռացնել, որովհետև կրակի կպած տեղն անմիջապես բռնկվում էր։ Ահա այդպիսին էր դրությունն այնտեղ։

Զրահ հագած Բեսսասը մարտական վիճակի բերեց ամբողջ զորքը և հրամայեց աստիճաններ հենել նստած պարսպի վրա։ Նա հորդորեց [զինվորներին] բաց չթողնել հարմար առիթը և այնուհետև ինքը գործով ցույց տվեց իր քաջությունը։ Նա յոթանասունհինգ մարդ էր, շատ ծեր, բայց առաջինը բարձրացավ աստիճանի վրա։ Տեղի ունեցած մարտում և՛ հռոմայեցիները, և՛ պարսիկները այնպիսի քաջություն ցուցաբերեցին, որի նմանը, գոնե այս ժամանակաշրջանում, ոչ մի տեղ հանդես չի բերվել։ Բարբարոսների զորքի թիվը հասնում էր երկու հազար երեք հարյուր մարդու, իսկ հռոմայեցիները վեց հազար հոգի էին։ Երկու կողմից էլ նա, ով չսպանվեց, գոնե վիրավորվեց և միայն քչերին հաջողվեց անվնաս մնալ։ Հռոմայեցիներն ամբողջ ուժով ջանում էին բարձրանալ, իսկ

պարսիկները մեծ դժվարությամբ դիմադրում էին։ Երկու կողմից էլ շատերն էին սպանվում, բայց այնուամենայնիվ քիչ էր մնացել, որ պարսիկները խուսափեին վտանգից։ Աստիճաններից բարձրանալու ժամանակ մեծ հրմշտկոց եղավ և բազմաթիվ հռոմայեցիներ կոտորվեցին, որովհետև նրանք կռվում էին թշնամիներին իրենց վերևում ունենալով։ Զորավար Բեսսասը գետին էր տապալվել ու փռվել։ Այն ժամանակ երկու կողմից էլ մեծ աղմուկ բարձրացավ, և բարբարոսները ամեն տեղից վրա խուժեցին ու սկսեցին հարվածել նրան։ Վերջինիս թիկնապահները շտապ կարգով հավաքվեցին նրա շուրջը։ Նրանք սաղավարտներով էին, բոլորը զրահ հագած, վերևից պատսպարվել էին վահաններով, ու մի մարմին կազմած, [Բեսսասի] վրա կարծես տանիք սարքեցին, և զորավարին շատ ապահով կերպով ծածկեցին. ամբողջ ուժով նետված սլաքները հարվում էին այդ [տանիքին]։ Անընդհատ նետվող և վահանների ու այլ զենքերի վրա ջարդվող նետերից աղմուկ բարձրացավ. յուրաքանչյուր [մարտիկ] գոռում էր, ծանր շնչում ու տանջվում։ Բոլոր հռոմայեցիները, ջանալով պաշտպանել զորավարին, առանց ժամանակ կորցնելու, նետեր էին արձակում պարսպի վրա և այդ ձևով ետ մղում թշնամիներին։

Բեսսասը (նա չէր կարողանում կանգնել, որովհետև նրան խանգարում էր սպառազինությունը, բացի այդ նա թեթև էլ չէր, ընդհակառակը, շատ գեր էր և ինչպես ասվեց՝ ծեր), թեև այդպիսի վտանգի էր ենթարկվել, իրեն չկորցրեց և հանկարծակի մի միտք հղացավ, որ փրկարար դարձավ և՛ իր, և՛ հռոմայեցիների համար։ Նա հրամայեց իր թիկնապահներին, որ իրեն ոտից քարշ տան պարսպից հեռու։ Նրանք այդպես էլ արեցին։ Մի մասը նրան քարշ էր տալիս, իսկ մյուսը՝ նրա հետ նահանջում, միմյանց պատսպարելով վահաններով այնքան տարածության վրա, ինչքան նրան քաշում էին, որպեսզի հանկարծ նա, բացվելով, թշնամիների կողմից հարված չստանա։ Երբ Բեսսասին ապահով տեղ հասցրին, նա կանգնեց և հորդորելով [զինվորներին] շարժվեց պարսպի վրա, նորից ոտք դրեց աստիճաններին և սկսեց բարձրանալ։ Իրեն հետևող հռոմայեցիները թշնամիների հանդեպ մեծ քաջություն ցուցաբերեցին։ Պարսիկները, երկյուղած, հակառակորդից ժամանակ խնդրեցին, որպեսզի պատրաստվեն հեռանալու, հանձնելով քաղաքը։ Բեսսասը, ենթադրելով որ դա խորամանկություն է, որի նպատակն է այդ միջոցին ամրացնել պարսպի պաշտպանունակությունը, ասաց, որ ի վիճակի չէ դադարեցնելու մարտը, իսկ եթե

*ուզում են իրեն հետ բանակցություններ վարել, թող մարտի ժամանակ հատուկ մարդկանց ուղարկեն պարսպի մի այլ տեղ, ցույց տալով վայրը, ուր ինքն էլ կգնա։*

*[Թշնամիները] չընդունեցին նրա առաջարկը. նորից բորբոքվեց սաստիկ մարտը, տեղի ունեցավ մեծ հրմշտկոց և երբ, դեռ մարտի ելքն անորոշ էր, պարիսպը մի այլ տեղից, ուր հռոմայեցիները նախապես գետնափոր էին արել, հանկարծակի փուլ եկավ։ Ահա երկու կողմից էլ շատերը այստեղ թափվեցին։ Հռոմայեցիները, թեև երկու մասի էին բաժանված, թվով շատ էին գերազանցում թշնամիներին, ու ավելի ուժեղ էին հարվածում և ետ մղում հակառակորդներին։ Պարսիկներն ի վիճակի չէին դիմանալու, որովհետև երկու կողմից էին ճնշվում և երկու ճակատով պայքարելու ստիպված լինելով, ամենուրեք ակնհայտ էր նրանց սակավամարդությունը։ Ահա այդ ժամանակ, երբ երկու զորքերն էլ մարտի մեջ էին և ո՛չ պարսիկներն էին կարողանում դիմադրել իրենց վրա ճնշում գործող թշնամիներին, ո՛չ էլ հռոմայեցիներն էին ի վիճակի լրիվ ապահովել ամրոց ներխուժումը, մի հայազգի երիտասարդ, Թոմայի որդի Հովհաննեսը, որի մականունն էր Գուզես, թողեց քանդված պարիսպը, այդտեղի քաշքշուկը և իրեն հետևող փոքրաթիվ հայերով անցավ զառիթափ մասը, որտեղից քաղաքը բոլորի ենթադրությամբ անառիկ էր, ու հարձակվեց այնտեղի պաշտպանների վրա։ Բարձրանալով պարսպի ատամնաշարի վրա, նա նիզակով սպանեց պարսիկ պաշտպաններից մեկին, որն ամենամարտունակն էր համարվում։ Եվ ահա այս մասից հռոմայեցիները հնարավորություն ստացան մուտք գործել։*

*Փայտե աշտարակի վրա գտնվող պարսիկները մեծ քանակությամբ հրակիր կավե անոթներ բռնկեցրին, որպեսզի նետեն ու նրանց պարունակած նյութով հրկիզեն մեքենաները՝ ներսում եղած մարդկանց հետ միասին. նրանք համոզված էին, որ հռոմայեցիները ի վիճակի չեն լինի այսքան մեծ քանակությամբ անոթները հեռու մղել։ Բայց հանկարծ հարավից նրանց դեմ մեծ ոռնոցով ուժեղ, սաստիկ քամի փչեց և աշտարակի տախտակներից մեկը բռնկվեց։ Պարսիկները սկզբում չզգացին այդ (քանզի բոլորը զբաղված, իրարանցման, երկյուղի ու շփոթության մեջ էին և օրհասական վիճակը բթացրել էր նրանց զգոնությունը)։ Բոցը՝ Մեդեյայի ձեթ կոչվածի և մյուս նյութերի բռնկումով կամաց-կամաց բորբոքվեց, տարածվեց ու համակեց ամբողջ աշտարակը՝ այնտեղ եղած պարսիկների հետ միասին։ Բոլորը ածուխ դարձած գետին*

գլորվեցին, մի մասը պարսպից ներս, իսկ մյուսը՝ դուրս, այնտեղ
ուր գտնվում էին մեքենաները և նրանց շուրջը եղած հռոմայեցի-
ները: Մյուս հռոմայեցիները, որոնք կռվում էին փուլ եկած պա-
րըսպի մոտ, օգտվելով թշնամիների վհատումից և տեղի տալուց,
անցան պարիսպներից ներս և Պետրան վերջնականապես գրավվեց:
Հինգ հարյուր պարսիկ ապաստանեցին միջնաբերդում և ամ-
րանալով այդ ամրոցում, հանգիստ մնում էին, իսկ մյուսներին,
որոնք ընդհարման ժամանակ չէին սպանվել, բոլորին՝ մոտ յոթ
հարյուր երեսուն հոգու, հռոմայեցիները գերի վերցրին: Սրանցից
միայն տասնութ հոգի չէին վնասվել, մնացած բոլորը վիրավոր
էին: Հռոմայեցիներից էլ շատերը և լավագույններն ընկան, որոնց
թվում նաև Թովմայի որդի Հովհաննեսը: Քաղաք մտնելու ժամա-
նակ բարբարոսներից մեկը քարով հարվածեց նրա գլխին ու սպա-
նեց: Նա թշնամիների դեմ մղվող կռվում հրաշալի քաջագործու-
թյուն կատարեց:

ԳԼՈՒԽ 12

Հաջորդ օրը հռոմայեցիները պաշարեցին միջնաբերդում
ապաստանած բարբարոսներին, առաջարկեցին նրանց ապահովու-
թյան երաշխիքներ, սպասելով, որ պարսիկները կհանձնվեն, բայց
նրանք չընդունեցին այդ առաջարկը և անցան դիմադրության: Թեև
դիտեին, որ երկար չեն դիմանա դժվարություններին, բայց ուղում
էին հերոսաբար զոհվել: Բեսսասը, կամենալով փոխել նրանց մտա-
դրությունը և նրանց մեջ ապրելու ցանկություն առաջացնել, հրամա-
յեց հռոմայեցի զինվորներից մեկին, սովորեցնելով այն, ինչ պետք
էր ասել պարսիկներին, մոտենալ նրանց և հորդորել: [Զինվորը],
ընդհուպ մոտենալով, ասաց այսպես. «Ինչո՞ւ համար, ով քաջ
»պարսիկներ, կորստյան եք ձգտում, աննպատակ փութկոտությամբ
»մահվան դիմում և այդպիսով բացահայտորեն խեղաթյուրում քա-
»ջագործության իմաստը: Արիություն չէ այն, երբ փորձում են դեմ
»կանգնել անհնարին մի բանի, ոչ էլ խոհեմություն՝ հաղթողներին
»չենթարկվելը: Այսպիսի բախտի արժանացողների համար բոլո-
»րովին էլ անփառունակ չէ ապրելը: Անհուսալի վիճակում գտնը-
»վողը, եթե նույնիսկ ամենախայտառակ արարքները գործի, ապա
»նա հիրավի տեղ ունի արդարանալու, քանզի անելանելի փորձու-
»թյան հանդիպողին ներում են: Հուսաբեկված լինելով, մի նետ-
»վեք բացահայտ վտանգի մեջ, ձեր փրկությունը մի փոխեք հպար-
»տության հետ, հիշեք, որ անհնարին է վախճանվածներին կենդա-

»նացնելը, իսկ ողջ մնացողները կարող են հետագայում, եթե դա »ավելի նախընտրելի են համարում, ինքնասպանություն գործել։ »Արդ, վերջին անգամ լուրջ մտածեք, լավ կշռադատեք, թե ինչն է »ձեռնտու, նկատի ունենալով այն, որ ձեր վճիռը ամենալավը լի- »նի, որովհետև մահացածը այլևս զղջալ չի կարող։ Մենք ափսո- »սում ենք, որ կռվում ենք ձեր դեմ, մեր մեղքն է գալիս, որ դուք »սպանվում եք, ձեր հանդեպ, ովքեր կյանքի մասին սեթևեթում եք »և հիմարություն ցուցաբերում, ուզում ենք ողորմած լինել, որով- »հետև այդպիսին է քրիստոնյա հռոմայեցիների օրենքը։ Ձեզ ոչինչ »չի մնում, այլ միայն այն, որ անցնելով ավելի լավ պետության »հպատակության տակ, Խոսրովի փոխարեն Հուստինիանոսին հա- »մարեք ձեզ տեր։ Մենք խոստանում ենք ձեզ երաշխիքներ տալ։ »Ինքնասպանության մի դիմեք, երբ հնարավոր է փրկվել։ Փորձու- »թյան հանձնվելը առանց որևէ օգուտ քաղելու փառք չի բերում, »քանզի դրա մեջ արիություն չկա, այլ ընդհակառակը, դա արիու- »թյան սպանությունն է։ Քաջ է նա, ով տանում է ամենամեծ փոր- »ձությունները հաջողության ակնկալությամբ։ Մարդիկ չեն գովում »կամավոր մահը, այն ժամանակ, երբ փորձության մեջ առկա է »փրկության որևէ բարի հույս։ Կյանքի աննպատակ ոչնչացումը »հիմարություն է։ Խիզախության անվան տակ մահվան ձգտելը »գիտակից մարդիկ անխոհեմություն են համարում։ Դուք պետք է »նկատի ունենաք և այն, որ չպետք է աստծու հանդեպ ապերախտ »լինել, քանզի եթե նա ուզենար ոչնչացնել ձեզ, ով մարդիկ, ապա »ձեզ չէր կարկառի նրանց ձեռքը, ովքեր ուզում են փրկել ձեզ։ Ահա »մեր ասածը այս է, իսկ դուք որոշեք այնպես, ինչպես դուք ան- »հրաժեշտ եք գտնում»։

Հորդորը մոտավորապես այսպիսին էր։ Պարսիկները սակայն նույնիսկ լսել չէին ուզում և խուլ էին ձևանում։ Այն ժամանակ, զորավարի հրամանով, հռոմայեցիները կրակի տվին միջնաբերդը, ենթադրելով, որ այս կերպ թշնամիները կհանձնվեն։ Հրդեհը արագորեն տարածվեց։ Բարբարոսները աչքի առաջ ունենալով իրենց խորտակումը, լավ գիտենալով, որ իրենք [փրկության] ոչ մի հույս չունեն և մոխրի են վերածվելու, գիտենալով նաև, որ պաշտպանվելով էլ չեն կարող փրկվել, հակառակ այդ բոլորին չէին ուզում հանձնվել թշնամիներին, այլ ի զարմանս հռոմեական զորքի, բոլորը միասին վառվեցին ու ոչնչացան։ Այս դեպքը պարզ ցույց տվեց, թե Խոսրովը ինչքան մեծ նշանակություն էր տալիս Լազիկային։ Նա լավագույն զինվորներին էր ընտրել որպես Պետրայի

կայազոր, այնքան շատ զենք էր բերել այնտեղ, որ ավար վերցնելու ժամանակ յուրաքանչյուր հռոմայեցի զինվորի հասավ հինգ հոգու սպառազինություն, թեև անհագին քանակությամբ զենք էլ վառվել էր միջնաբերդում։ Այստեղ հայտնաբերվեցին հացի և ապխտած մսի հսկայական պաշարներ, որոնք հինգ տարի կարող էին բավարարել բոլոր պաշարվածներին։ Պարսիկներն այնտեղ գինի չէին պահում, այլ միայն քացախ և բավարար չափով ընդեղեն։ Երբ հռոմայեցիները գտան նաև առվից հոսող ջուրը, շատ զարմացան և չէին կարողանում այդ բացատրել, մինչև նրանց հայտնի դարձավ գաղտնի ջրմուղի մասին։ Թե ինչ է այդ, ես այժմ կպատմեմ։

Երբ Խոսրովը, գրավելով Պետրան, այնտեղ կայազոր հաստատեց, ապա լավ գիտենալով, որ հռոմայեցիները ամեն միջոցով պաշարելու են և առանց հապաղելու քանդելու են ջրի առուները, մտածեց հետևյալը։ Քաղաք հոսող ջուրը նա երեք մասի բաժանեց և մի շատ խոր ջրանցք փորելով, առավ երեք ջրմուղների մեջ։ Առաջինը գտնվում էր ջրանցքի ամենացածր տեղում, որը ծածկեց հողով և քարերով մինչև ջրանցքի մեջտեղը։ Նրա վրա նա անցկացրեց գաղտնի երկրորդ ջրմուղը, որի վրա կառուցեց երրորդ ջրմուղը, այն, որ բոլորի համար նկատելի է և [հոսում է] գետնի վրայով։ Այսպիսով ջրանցքը գաղտնի երեք հարկ ուներ։ Այդ մասին հռոմայեցիները պաշարման սկզբում չգիտեին և ավերելով երևացող առուն, այլևս ջրանցքով չզբաղվեցին՝ դրանով իրենց գործը վերջացած համարելով։ Նրանք կարծում էին, որ պաշարյալները ջրի պակաս կզգան, բայց սխալվեցին։ Պաշարումը երկարեց, և երբ հռոմայեցիները թշնամիներից ոմանց գերի վերցրին, իմացան, որ պաշարյալները առվից են ջուր ստանում։ Տեղն ու տեղը փորելով նրանք գտան երկրորդ ջրմուղը, որը ևս անմիջապես ավերեցին և կարծում էին, որ այլևս թշնամիները ուժասպառ կլինեն։ Այս երկրորդ դեպքը ևս նրանց համար դաս չեղավ։ Երբ նրանք գրավելով քաղաքը, ինչպես վերևում ասվեց, տեսան նորից առվով հոսող ջուրը, զարմացան և մեծ տարակուսանքի մեջ էին։ Գերիներից իմանալով իրականությունը, նրանք համոզվեցին և՛ թշնամիների՝ գործի մեջ ունեցած փութաջանության, և՛ իրենց թափթփվածության մեջ։

Բեսսասր բոլոր գերիներին անմիջապես ուղարկեց կայսեր, իսկ Պետրայի պարիսպը հիմնահատակ ավերեց, որպեսզի թշնամիները նորից իրենց գլխացավանք չպատճառեն։ Կայսրը շատ գովեց նրա առաքինությունն ու շրջահայեցությունը՝ ամբողջ պարիսպը

քանդել տալու հարցում։ Ահա Բեսսասը իր հաջողությունների և առաքինության համար բոլոր մարդկանց մոտ նորից հռչակ ստացավ։ Քանզի անցյալում, երբ նա կարգվել էր Հռոմի կայազորի [պետ] և հռոմայեցիները նրա վրա, որպես շատ քաջ մարդու, մեծ հույսեր էին դնում, նա անհաջողության մատնվեց և Հռոմը գրավվեց գոթերի կողմից, ինչպես ես այդ մասին վերևում ասել եմ, և հռոմայեցիները մեծ կորուստներ ունեցան։ Հուստինիանոսը նրան ետ էր կանչել Բյուզանդիոն և նշանակել պարսիկների դեմ [մղվող պատերազմի] զորավար։ Այն ժամանակ բոլորը ծիծաղում էին այդ բանի վրա, այպանում կայսեր կարգադրությունը, որ այդ Բեսսասին, գոթերի կողմից գլխովին պարտության մատնվածին, այդ մեկ ոտքը գերեզմանում գտնվող ծերունուն, կյանքի մայրամուտին ընձեռում է մարական պատերազմի [ղեկավարությունը]։ Բայց ահա, երբ բոլորը այդպիսի կարծիքի էին, այս զորավարը հաջողություն ձեռք բերեց և նման սխրագործություն [կատարեց]։ Այնպես որ մարդկային գործերը տնօրինողը ոչ թե մարդն է, այլ աստծու կամքը, որին մարդիկ, անգիտանալով երևույթների պատճառները, բախտ են անվանում։ Երբ մի երևույթ չի ունենում այն ելքը, ինչ ակնկալում են մարդիկ, վերջիններս այս կապում են բախտի անվան հետ։ Բայց այս հարցը յուրաքանչյուրը թող իր ցանկացածի պես բացատրի։

ԳԼՈՒԽ 13

Մերմերոեսը, երկյուղ զգալով, որ անցած երկար ժամանակվա ընթացքում Պետրային և այնտեղ թողնված պարսիկներին որևէ փորձանք կպատահի, ամբողջ զորքի գլուխն անցած շարժվեց դեպի այն կողմը։ Այդ բանին էր նրան մղում հարմար եղանակը, քանզի ձմեռը վերջացել էր։ Բայց երբ այդ միջոցին նա մանրամասն իմացավ պատահածի մասին, փոխեց ճանապարհը, քաջ գիտակցելով, որ լազերը Ֆասիս գետի մյուս կողմում Պետրայից բացի ոչ մի բնակավայր չունեն։ Նա շուտ եկավ և գրավեց Իբերիայից Կոլխիս տանող ճանապարհները, այնտեղ, ուր հնարավոր է Ֆասիսն անցնել։ Ոտքով անցնելով [Ֆասիսը], ինչպես նաև Ռեոն[48] կոչված գետը, որը ևս այդ տեղում նավարկելի չէ, նա հայտնվեց Ֆասիսի աջ ափին։ Մերմերոեսը գրեթե ամբողջ զորքը տարավ Լազիկայի առաջին և խոշորագույն քաղաքը, որը կոչվում է Արխայոպոլիս։ Բացի մի քանիսից, բոլորը հեծյալ էին, նրանց էին հետևում նաև ութ փիղ, որոնց վրա կանգնելով պարսիկները, կարծես աշտարակների

վրայից սկսած հարվածեին [թշնամու] զինվոր։ Իսկապես որ հիաց-
մունքի է արժանի պարսիկների աշխատասիրությունն ու հնարա-
մտությունը։ Իբերիայից Կոլխիս տանող ճանապարհը, որը զառ-
թափ է և ամենուրեք ծածկված դժվարանցանելի թփուտներով,
խիտ անտառներով, որն անցյալում համարվում էր, նույնիսկ
թեթև հագնված մարդու համար, անանցանելի, նրանք հարթեցին.
այնպես, որ ոչ միայն հեծելազորը հեշտությամբ այնտեղից ան-
ցավ, այլև, իրենց ցանկացած քանակությամբ՝ փղերը։ Այդ արշա-
վանքի ժամանակ նրանց մոտ եկան նաև տասներկու հազար դաշ-
նակից սաբիր կոչված հոներ։ Մերմերոսը սակայն երկյուղ զգա-
լով, որ բարբարոսների այսքան մեծ քանակությունը կարող է հան-
կարծ չենթարկվել իր հրամաններին և պարսից զորքին վնասներ
պատճառել, թույլատրեց, որ իրենց հետ արշավանքի գան
[միայն] չորս հազար հոգի, իսկ մյուսներին, բավական դրամ պար-
գևելով, թույլատրեց գնալ իրենց հայրենի երկիրը։ Հռոմայեցիների
զորքը բաղկացած էր տասներկու հազար հոգուց, որոնք սակայն
բոլորը մի տեղում չէին գտնվում։ Երեք հազարը Արխայոպոլիսն
էր պաշտպանում, որոնց գլխավորում էր Օդոնախոսն ու Բաբասը՝
երկուսն էլ քաջ պատերազմողներ։ Մյուսները ճամբարել էին Ֆասի-
սի գետաբերանի այս կողմում, մտադիր լինելով թշնամիների զոր-
քի հարձակման դեպքում այստեղից ամբողջ ուժով օգնության հաս-
նել։ Նրանց գլխավորում էին Բեննիլոսն ու Ուլիգագոսը։ Նրանց հետ
էր նաև Իտալիայից նոր ժամանած պարսկահայ Վարազեսը՝ ութ
հարյուր ճանների հետ միասին։ Երբ Մերմերոսը շտապով գրավեց
Պետրան, այլևս չէր ուզում շարունակել կռիվը և քաշվելով Պոնտոս
ու Հայաստան, սկսեց հոգ տանել իր իշխանության տակ գտնվող
երկրից ժողովելիք եկամուտների մասին, և ահա այդ զբաղմունքը
պատճառ դարձավ, որ հռոմայեցիների զորքերը նորից վտանգվեն։
Արմենիան թեև նա, հաղթանակից և Պետրան գրավելուց հետո,
ինչպես ասել եմ, անմիջապես զոր լցրեց և իբերների սահ-
մանները և փակեց այնտեղի լեռնանցքները, իմ կարծիքով պարս-
կական զորքը Լազիկա մտնել այլևս չէր կարողանա։ Այժմ զորա-
վարը, թերանալով այդ գործում, քիչ մնաց ամբողջ Լազիկան իր
ձեռքով տար թշնամիներին, բոլորովին անտեսելով կայսեր գոյ-
քը։ Հուստինիանոս կայսրը սովորաբար ներում էր մեղանչած
հրամանատարներին, դրա համար էլ նրանք հաճախ մեղանչում
էին և՛ անձնական կյանքում, և՛ պետության հանդեպ։

Լազերը Իբերիայի սահմաններին մոտ ունեին երկու ամրոց,

Սկանդան և Սարապանիսը[49], որոնք գտնվում էին շատ դժվարանցանելի ու դժվարամատչելի վայրում։ Անցյալում լազերը մեծ ճիգերով էին պահում դրանք, քանզի տեղում անդաստան ոչ մի բույս չի աճում, մարդիկ պարենամթերքը բերում են իրենց ուսերի վրա։ Հուստինիանոս կայսրը պատերազմի սկզբում լազերին հեռացնելով այդտեղից և տեղում հաստատեց հռոմայեցի զինվորներից բաղկացած կայազոր։ Սրանք քիչ անց, պարենի պակասից ճնշված, թողեցին այդ ամրոցները, որովհետև ամենևին սովոր չէին կերակրի նման երկար ժամանակ սնվել կորեկով, իսկ լազերն էլ այլևս չէին կարող երկար ճանապարհ կտրելով նրանց ամեն ինչ հայթայթել։ Անհա պարսիկները գրավեցին ու տիրեցին այդ [ամրոցներին]։ Հաշտության պայմանագրով հռոմայեցիները ետ ստացան դրանք, փոխարենը տալով Բոլոս ամրոցը և Փարանգիոնը։ Այդ բոլորի մասին նախորդ գրքերում ասվել է[50]։ Լազերը այդ ամրոցները հիմնահատակ քանդեցին, որպեսզի դրանք պարսիկները իրենց դեմ պատվար չդարձնեն։ Բայց պարսիկներն այդ [ամրոցներից] մեկը՝ Սկանդան, նորից վերականգնեցին և հաստատվեցին այնտեղ, իսկ Մերմերոեսը մարդոց զորքը տարավ առաջ։

Դաշտավայրում գտնվում է Հոնգարիս անունով քաղաքը, որը Իբերիայից Կոլխիս մտնողին առաջինն է հանդիպում։ Նա դյուրամատչելի է, շատ հեշտությամբ կարելի էր գրավել այն։ Դրա համար էլ լազերը, երկյուղ զգալով պարսիկների հարձակումից, մի փոքր առաջ հիմնահատակ կործանեցին այն։ Երբ այդ մասին իմացան պարսիկները, իսկույն դիմեցին դեպի Արխայոպոլիս։ Մերմերոեսը, իմանալով որ թշնամիները ճամբարել են Փասիսի գետաբերանի շուրջը, շարժվեց նրանց վրա։ Նա գերադասեց նախ պարտության մատնել նրանց և ապա պաշարել Արխայոպոլիսը, որպեսզի նրանք չգնան պարսից զորքի ետևից և վնաս չպատճառեն։ Մոտենալով Արխայոպոլիսի պարսպին, նա ծաղրով ազդանշեց [քաղաքում] գտնվող հռոմայեցիներին և ավելացրեց, որ շատ շուտով գալու է իրենց մոտ, որ նախապես ուզում է խոսել Փասիս գետի շուրջը ճամբարած հռոմայեցիների հետ։ Հռոմայեցիները ասացին, որ նա կարող է գնալ ուր որ ցանկանա, ավելացնելով, որ եթե նա հանդիպի այնտեղի հռոմայեցիներին, դժվար թե վերադառնա։ Հռոմեական զորքի հրամանատարները, երբ իմացան այդ մասին, երկյուղի մեջ ընկան, և վախենալով, որ իրենք այնքան հզոր չեն, որ դիմադրեն հարձակվողներին, մտան իրենց շինած նավակները և բոլորն անցան Փասիս գետը։ Ինչքան պարենն, որ ի վիճակի էին

կրել, նավակներով տեղափոխեցին, իսկ մնացածը, որպեսզի թըշնամիները չկարողանան օգտվել դրանից, թափեցին գետը։ Մի քիչ անց Մերմերոեսը ամբողջ զորքով հասավ այդտեղ և թշնամիների ամբարը միանգամայն դատարկ գտնելով, սրտնեղեց, վրդովվեց և վարանման մեջ էր։ Նա կրակի տվեց հռոմայեցիների ամրացված ամբարը և ղայրույթից կատաղած անմիջապես շրջվեց և զորքը առաջնորդեց դեպի Արխայոպոլիս։

ԳԼՈՒԽ 14

Արխայոպոլիսը գտնվում է մի շատ ժայռոտ բլրի վրա, նրա մոտից հոսում է քաղաքի վերևի լեռներից իջնող մի գետ։ [Քաղաքի] ցածրադիր մասի դարպասները, որոնք տանում են դեպի բլրի ստորոտը, անմատչելի չեն, միայն դաշտից [դարպասները] տանող ճանապարհը անհարթ է։ Իսկ բարձրադիր մասի դարպասները դուրս են գալիս զառիթափ տեղում և այդ պատճառով անչափ դժվարամատույց են, բացի դրանից նրանց առջև տարածվում են մացառուտներով ծածկված վայրեր։ Քանի որ տեղի բնակիչները այլուստ չէին կարող ջուր հայթայթել, քաղաքի կառուցողները մինչև գետը երկու պարիսպ կառուցեցին, որպեսզի ապահով կերպով կարողանան գետից ջուր վերցնել։ Մերմերոեսը որոշել էր ամբողջ ուժով հենց այստեղ գրոհել և հետևյալ պատրաստությունն էր տեսնում։ Նախ և առաջ հրաման տվեց սաբեյրներին պատրաստել բազմաթիվ խոյեր, որոնց մարդիկ կարողանան կրել իրենց ուսերի վրա, որովհետև սովորական մեքենաները ոչ մի կերպ հնարավոր չէր բերել Արխայոպոլսի՝ լեռան ստորոտում գտնվող պարիսպների մոտ։ Նա լսել էր, թե հռոմայեցիների դաշնակից սաբեյրներն ինչ էին արել մի քիչ առաջ Պետրայի պարիսպների հետ, և հետևելով այդ մտահղացմանը, ուզում էր նրանց փորձից օգուտ քաղել։ Նրանք կատարեցին հրամանը և անմիջապես սարքեցին բազմաթիվ այնպիսի խոյեր, որպիսիքը, ինչպես քիչ առաջ ասացի, սաբեյրները սարքել էին հռոմայեցիների համար։ Այնուհետև նա դոլոմիտ կոչվածներին ուղարկեց քաղաքի զառիթափ կողմը, կարգադրելով ամբողջ ուժով նեղել այստեղ գտնվող թշնամիներին։ Դոլոմիտները բարբարոսներ են, բնակվում են Պարսկաստանի կենտրոնում, սակայն երբեք չեն դարձել պարսից արքայի հպատակներ. հաստատված լինելով միանգամայն անանցանելի բարձրաբերձ լեռներում, հնից սկսած մինչև օրս ապրում են անկախ։ Նրանք մշտապես վարձով ծառայում են պարսից բանակում և նրանց հետ արշավում թշնամիների վրա.

բոլորը հետևակ են, յուրաքանչյուրը կրում է թուր, վահան, ձեռ-
քում ունեն երեքալյան նիզակ, շատ լավ են կռվում գահավեժ տե-
ղանքում և լեռնագագաթներում՝ ինչպես տափարակ տեղում։ Այդ
իսկ պատճառով Սերմերոսը կարգադրեց նրանց կռվել այդ տե-
ղում, իսկ ինքը մնացած ամբողջ զորքով շարժվեց դեպի ցածի
դարպասները՝ իր հետ տանելով խոյերը և փղերին։ Պարսիկները
սաբեյրների հետ այնքան շատ նետեր էին արձակում դեպի պա-
րիսպը, որ երկինքը ծածկվեց սլաքներով և քիչ էր մնացել այստեղի
հռոմայեցիներին ստիպեին թողնել ատամնաշարը։ Իսկ դոլոմիտ-
ներն էլ գահավեժ տեղերից թափով պարիսպներից ներս նետելով
նիզակները, շատ էին նեղում իրենց դեմ գտնվող թշնամիներին։
Հռոմայեցիների վիճակը ամեն տեսակետից վատ էր, շատ վատ,
օրհասական։
Այն ժամանակ Օդոնախոսն ու Բաբասը, գուցե կամենալով քա-
ջագործություն ցուցաբերած լինել, կամ էլ ցանկանալով փորձել
զինվորներին, բայց գուցե և աստվածային մղմամբ, մի քանի զին-
վորների թողեցին ատամնաշարերի վրա գիմագրելու, իսկ մեծ մա-
սին հրավիրելով, հետևյալ բովանդակությամբ մի կարճ հորդոր
կարդացին. «Դուք տեսնում եք, ով զինակիցներ, առկա վտանգը և
»մեզ համակած դժվարությունները։ Բայց մենք պետք չ, որ ամե-
»նևին չվհատվենք փորձության առաջ։ Ովքեր կտրել են փրկության
»հույսերը, նրանց կփրկի միայն փրկությունից չկառչելը։ Որովհե-
»տև ով դողում է իր կյանքի վրա՝ հատկապես նա է կործանվում։
»Ներկա դժվարին իրավիճակի մեջ մենք պետք է մտածենք հետև-
»յալի մասին. ատամնաշարից գիմադրելով թշնամիներին, մենք
»մեր փրկության գործը չենք ապահովի, թեկուզ մեծ եռանդ ցուցա-
»բերենք դեպի մարտը։ Երբ ճակատամարտի մասնակիցները իրա-
»րից հեռու են գտնվում, ոչ մեկն էլ հնարավորություն չի ունենում
»քաջագործություն ցուցաբերել, և մարտի [ելքը] մեծամասամբ
»գտնվում է բախտի ձեռքում։ Բայց եթե ընդհարումը տեղի ունենա
»մոտիկից, ապա այստեղ ռազմական ոգին է, որ վճռում է հարցը,
»և արիության հետ հաղթանակն էլ կգա։ Առանց դրան, եթե նույն-
»իսկ պարսպից մարտնչողները հաջողություն ունենան, այդ հաջո-
»ղությունից ոչ մի օգուտ չկա, որովհետև եթե տվյալ դեպքում
»նրանք ետ են մղում թշնամիներին, ապա հաջորդ օրը վտանգը
»նորից իր ամբողջ հասակով կանգնում է, և եթե մի փոքր էլ սխալ
»թույլ տվեցին, պարզ է, որ կոչնչանան ամրությունների հետ միա-
»սին։ Հակառակորդներին ձեռնամարտում հաղթելն է հաստատուն

»փրկություն բերում։ Ահա այդ ի նկատի ունենալով փութանք թըշ-
»նամիների դեմ, ապավինելով բարձրյալի օգնության, ներկա ան-
»հուսալի վիճակում բարի հույսեր ստանալով։ Սովորաբար աստ-
»ված փրկում է նրանց, ովքեր ամենևին փրկության հույսեր չու-
»նեն»։

Ահա այսպես հորդորեցին Օդոնախոսն ու Բաբասը և բացելով դարպասները, վազքով դուրս հանեցին զորքը։ Տեղում մնացին միայն մի քանի հոգի հետևյալ պատճառով։ Նախորդ օրը լազերի մեծամեծներից մեկը, Արխայոպոլսի բնակիչ, բանակցությունների մեջ էր մտել Մերմերոեսի հետ՝ հայրենիքին դավաճանելու մտադրությամբ։ Մերմերոեսը նրանից միայն մի բան խնդրեց անել պարսիկների համար, այն, որ երբ սկսվի գրոհը պարիսպների վրա, նա թաքուն կերպով կրակի տա այն տները, ուր պահվում է ցորենն ու մնացած պարենամթերքը։ Նա այդպիսի առաջարկ արեց, նկատի ունենալով, որ կկատարվի երկուսից մեկը, կամ հռոմայեցիները զբաղված լինելով հրդեհը [հանգցնելու] գործով, հնարավորություն կտան [պարսիկներին] բարձրանալ պարսպի վրա, կամ էլ պաշտպանվելով և դիմադրելով պարսիկներին, անուշադրության կմատնեն այդ տները։ Այդպիսով կհրդեհվեն հացահատիկն ու մյուս պարենամթերքը և իրենք առանց որևէ դժվարության կարճատև պաշարումից հետո կգրավեն Արխայոպոլիսը։ Ահա Մերմերոեսը այդ նկատի ունենալով նման առաջարկ արեց լազին։ Վերջինս խոստացավ խնդիրքը կատարել։ Նա տեսնելով, որ գրոհը եռուն վիճակում է, թաքուն կերպով կրակի տվեց այդ տները։ Երբ հռոմայեցիները հանկարծ նկատեցին բարձրացող բոցը, մի քանիսը շտապեցին այնտեղ և մեծ դժվարությամբ հանգցրին կրակը, որը համենայն դեպս որոշակի վնաս հասցրեց։ Մնացած բոլորը, ինչպես ասվեց, շարժվեցին թշնամիների վրա, շփոթության մատնեցին նրանց և շատերին կոտորեցին։ Վերջիններս չէին փորձում պաշտպանվել կամ հարվածել։ Պարսիկները բոլորովին էլ չէին սպասում, որ թշնամին, լինելով անչափ փոքրաթիվ, դուրս կգա իրենց դեմ, այդ պատճառով գրոհում էին բավական նոսր շարքերով, առանց կարգ ու կանոնի։ Նրանք, ովքեր իրենց ուսերի վրա էին տանում խոյերը, հասկանալի է, անզեն էին և մարտին անպատրաստ, իսկ մյուսներն էլ իրենց ձեռքերում ունենալով ձգած աղեղները, ոչ մի կերպ չէին կարող դիմադրել իրենց ընդհուպ մոտեցած թշնամիներին։ Ահա այսպիսի վիճակում հռոմայեցիները աջ ու ձախ կոտորում էին նրանց։ Այն ժամանակ, ինչպես պատմում էին ոմանք, մի փիղ էլ վիրա-

վորվեց կամ ինքնաբերաբար տագնապի մատնվեց, սկսեց շուռ ու մուռ գալ, ծառս լինել, իր վրա նստածներին ցած գլորեց ու խախտեց մյուս [փղերի] շարքերը։ Բարբարոսները փախուստի դիմեցին այդտեղից, իսկ հռոմայեցիներն առանց որևէ վախի՝ հանդիպածին կոտորում էին։ Իսկապես զարմանալի է, որ հռոմայեցիները քաջատեղյակ լինելով փղերով զինված թշնամիների դեմ մարտնչելու եղանակին, իրադրությունից շփոթված, ոչ մի անհրաժեշտ միջոցի չդիմեցին, բայց դա նրանց համար տեղի ունեցավ ինքնաբերաբար։ Այժմ կպատմեմ, թե ինչը նկատի ունեմ։

Երբ Խոսրովն ու մարաց զորքը գրոհում էին Եդեսիայի վրա, փղերից մեկը, որի վրա էին նստած պարսից ամենամարտունակ զինվորները, մոտեցավ պարսպին և թվում էր, որ կարճ ժամանակամիջոցում, նա ճնշում գործելով [քաղաքի] աշտարակներից մեկի պաշտպանների վրա, որոնց գլխին հաճախակի հարվածներ էին տեղում, պատճառ է դառնալու քաղաքի գրավման։ Այդ փիղը քաղաքավեր մեքենայի էր նման։ Բայց հռոմայեցիներն այդ վտանգից խուսափեցին, աշտարակից մի խոզ կախելով։ Կախված խոզը բնականաբար ճղճղում էր, որից փիղը վախեցած ծառս եղավ և մի քիչ հետո հեռացավ։ [Եդեսիայում] ահա այդ էր տեղի ունեցել, իսկ տվյալ դեպքում իրենց անտարբերության պատճառով զլացած հռոմայեցիների բախտը բանեց։ Բայց քանի որ Եդեսիան հիշեցի, չեմ ուզում լռության մատնել այն հրաշքը, որ այս պատերազմից առաջ տեղի ունեցավ։ Երբ Խոսրովը որոշել էր խախտել այսպես կոչված հավիտենական հաշտության պայմանագիրը, այս քաղաքում մի կին, ամեն ինչով սովորական, երկու գլխանի մի երեխա բերեց։ Ապագա իրադարձությունները հաստատեցին դրա ինչ նշանակելը, որովհետև Եդեսիան, գրեթե ամբողջ Արևելքը և հռոմեական պետության մեծ մասը երկու թագավորների կռվի ասպարեզ դարձան։ Ահա այս կատարվեց այնտեղ։ Ես վերադառնում եմ ընդհատածս խոսքին։

Երբ մարական զորքի մեջ այսպիսի խուճապ առաջացավ, նրանք, ովքեր ետևի շարքերում էին, տեսան առաջին շարքերում գտնվողների շփոթությունը, բայց չիմանալով թե ինչ է պատահել, իրենք էլ վախեցած՝ անկազմակերպ փախուստի դիմեցին։ Նույնը պատահեց նաև դոլոմիտների հետ (նրանք կատարվածը բարձր տեղից էին դիտում), որոնք էլ խայտառակ փախուստի դիմեցին։ [Թշնամիների] փախուստն ընդհանուր էր։ Բարբարոսներից չորս հազար հոգի տեղում ընկան, որոնց մեջ էին երեք զորահրամանա-

*տար։ Հռոմայեցիները գրավեցին նաև պարսկական չորս դրոշ և անմիջապես ուղարկեցին Բյուզանդիոն՝ կայսեր։ Պատմում են, որ պարսիկները կորցրին ոչ պակաս, քան երկու բյուր ձի, որոնք ոչ թե սպանվեցին կամ վիրավորվեցին թշնամիների կողմից, այլ երկար ճանապարհ կտրելով, անչափ հոգնեցին, բացի այդ, երբ Լազիկա հասան, բավարար կեր չգտնելով, սովի ու հիվանդությունների պատճառով գլխովին ոչնչացան։*

*Մերմերոեսը իր այս նախաձեռնության անհաջողությունից հետո ամբողջ զորքով գնաց Մոխերեսիս, որովհետև պարսիկները, հակառակ Արխայոպոլսում կրած անհաջողության, դեռևս իրենց տիրապետության տակ էին պահում մնացած Լազիկան։ Մոխերեսիսը գտնվում է Արխայոպոլսից մեկ օրվա հեռավորության վրա և ունի բազմաթիվ մարդաշատ գյուղեր։ Սա Կոլխիսի ամենաբարեբեր շրջանն է։ Այստեղ աճում են խաղողի որթը և այլ պտղատու ծառեր, մի բան, որ Լազիկայի մյուս [շրջաններում] չկա։ Այստեղով հոսում է Ռեոն գետը, որի ափին դեռ հնում կոլխերը մի ամրոց էին կառուցել, որի մեծ մասը հենց իրենք էլ հետագայում հիմնահատակ քանդեցին, որովհետև ամրոցը լինելով շատ հարթ դաշտավայրում, գտան, որ այն դյուրամատչելի է։ Հնում հունարեն լեզվով այդ ամրոցը կոչվում էր Կոտիաիոն, իսկ այժմ լազերն [հունարենին] անտեղյակ, անվանում են Կոտաիս*[51]*. աղավաղելով անունը։ Այդ մասին պատմել է Արիանոսը։ Ուրիշներն էլ պատմում են, որ այս վայրում անցյալում քաղաք կար և կոչվում էր Կոյտայոն, որ այստեղից էր ծագում Այետեսը*[52]*, և այդ է պատճառը, որ պոետները նրան կոյտայեցի են անվանում, իսկ Կոլխիս երկիրը՝ Կոյտաիս։ Մերմերոեսը շտապում էր այդ [ամրոցը] նորոգել, բայց որովհետև այդ գործի համար և ոչ մի միջոց չուներ, բացի դրանից ձմեռն էլ արդեն վրա էր հասել, ամրոցի քանդված մասերը շտապ կարգով փայտով ամրացրեց և մնաց այնտեղ։ Կոտաիսին շատ մոտ մի անառիկ ամրոց կա՝ Ութիմերեոս անունով, ուր լազերը հուսալի կայազոր ունեին։ Ամրոցը պահպանում էին նրանց հետ միասին նաև փոքրաթիվ հռոմայեցի զինվորներ։ Ահա Մերմերոեսը ամբողջ զորքով [Կոտաիսում] էր մնում, իր ձեռքում ունենալով Կոլխիս երկրի լավագույն [շրջանները], և խոչընդոտ հանդիսանալով հակառակորդին՝ պարեն մատակարարել Ութիմերեոս ամրոցին, ինչպես նաև Սվանիա կամ Սկյումնիա կոչված երկիրը երթևեկել, թեև վերջինս [հռոմայեցիներին] էր ենթակա. թշնամիները, նստած լինելով Մոխերեսիսում, փակում էին լազերի ու հռոմայեցիների՝ դե-*

*պի այնտեղ տանող ճանապարհը։ Ահա այդպիսիք էին պատերազմական գործերը Լազիկայում։*

ԳԼՈՒԽ 15

*Խոսրովի դեսպան Իսդիգուսնասը, որ հաշտության շուրջը բանակցությունների մեջ էր մտել Հուստինիանոս կայսեր հետ, Բյուզանդիոնում շատ ժամանակ վատնեց։ Երկար վիճաբանություններից հետո ի վերջո համաձայնության եկան, որ երկու թագավորները հնգամյա զինադադար կնքեն, որի ընթացքում առանց երկյուղի, այցելելով մեկը մյուսին, և դեսպանություններ ուղարկելով, լուծեն Լազիկային և սաբիրներին վերաբերող վիճելի հարցերը։ Սահմանվեց, որ պարսիկները հռոմայեցիներից ստանում են այս հնգամյա զինադադարի համար քսան կենտինար ոսկի, իսկ նախորդ զինադադարից մինչև ներկա զինադադարի միջև ընկած տասնութ ամիսների համար, երբ երկու կողմերը բանակցությունների մեջ չին՝ ևս վեց կենտինար։ Ահա այս պայմաններով [միայն] պարսիկները պատրաստ էին հաշտության մասին բանակցություններ սկսել։ Իսդիգուսնասը պահանջում էր քսան կենտինարը միանվագ, իսկ կայսրը, որպեսզի իր ձեռքում գրավական ունենա Խոսրովի կողմից պայմանները չխախտվելու մասին, ուզում էր ամեն տարի չորս կենտինար տալ։ Բայց ի վերջո հռոմայեցիները, որպեսզի այն տպավորությունը չստեղծվի, թե իրենք ամեն տարի պարսիկներին հարկ են վճարում, միանգամից տվեցին ամբողջ սահմանված ոսկին. մարդիկ ավելի շուտ ամաչում են ոչ թե վատ արարքից, այլ վատ խոսքից։ Պարսիկների մեջ կար Բերսաբուս անունով շատ խելացի մի մարդ՝ Խոսրով արքայի մտերիմը։ Սրան ժամանակին Վալերիանոսը Հայաստանում պարտության մատնեց և գերի վերցնելով անմիջապես կայսեր ուղարկեց Բյուզանդիոն, ուր նա երկար ժամանակ հսկողության տակ էր։ Խոսրովը ցանկանում էր փրկագնով Բերսաբուսին պարսից երկիրը վերադարձած տեսնել։ Այժմ ահա Հուստինիանոս կայսրը Իսդիգուսնասի խնդրանքով նրան ազատ արձակեց, որովհետև կայսեր հայտնվել էր, թե այս դեսպանն ի վիճակի է Խոսրովին համոզել, որ նա պարսից զորքը դուրս հանի Լազիկայից։ Այս զինադադարը հռոմայեցիների և պարսիկների միջև կնքվեց Հուստինիանոս կայսեր ինքնակալության քսանհինգերորդ տարում[53]։ Հաշտության պայմաններից հռոմայեցիներից շատերը բավական դժգոհ էին, բայց ես չեմ կարող ասել իրավացի էին նրանք արդյոք, թե ոչ։*

Նրանք ասում էին, որ հաշտությունը կնքվեց այն ժամանակ, երբ Լազիկան ամուր կերպով գտնվում է պարսիկների ձեռքում, որ այս հնգամյա ժամկետի ընթացքում նրանց ոչ ոք չի խանգարի և նրանք այդ միջոցին աներկյուղ և հանգիստ կերպով կկարողանան բնակվել Կոլխիս երկրի լավագույն [շրջաններում], իսկ հռոմայեցիները հետագայում նրանց այնտեղից հանելու ոչ մի միջոց չեն ունենա։ Ընդհակառակը, Բյուզանդիոնը ապագայում պարսիկների համար այդտեղից ավելի դյուրամատչելի կլինի։ Ահա շատերն այդ նկատի ունենալով դժգոհ էին, տրտնջում էին և վրդովմունքի մեջ էին։ Ըստ շատերի ենթադրության, այս զինադադարի առթիվ միանգամայն պարզ դարձավ պարսիկների վաղեմի ցանկությունը՝ հռոմայեցիներին հարկատու դարձնել, այն էլ ոչ պատերազմում հաղթանակ տանելով, ոչ էլ այլ կերպ գերազանցելով. որ Խոսրովը հռոմայեցիների վրա սահմանեց տարեկան չորս կենտինար հարկ, մի բան, որին նա հենց սկզբից բացահայտ ձգտում էր, և այժմ տասնմեկ տարվա և վեց ամսվա համար զինադադարի պատրվակով փաստորեն ստանալու էր քառասուն վեց կենտինար հարկ, բայց հաշտության կնքման անվան տակ, թեպետև, ինչպես ասվեց, դեռ շարունակում էր բռնանալ և պատերազմ մղել Լազիկայում։ Եվ վերջապես, որ հռոմայեցիները ապագայում ոչ մի հույս էլ չունեին պրծնել դրանից և գտնում էին, որ դարձել են պարսիկների բացահայտ հարկատուները։ Ահա այսպիսի կարծիքներ էին արտահայտվում։

Իսկ Իսդիգուսնասը այնքան շատ դրամ ստացավ, ինչքան դեսպաններից և ոչ մեկը երբևիցե, և իմ կարծիքով ամենահարուստ պարսիկը դառնալով, վերադարձավ հայրենիք։ Հուստինիանոս կայսրը նրան չափից շատ պատվեց և նվիրեց շատ դրամ։ Նա միակն էր դեսպաններից, որ հսկողության չենթարկվեց։ Նա և նրան ուղեկցող բոլոր բարբարոսները, որոնք շատ շատ էին, ամենամեծ իրավունքներն ստացան, այն է՝ երկար մնալ, հանդիպել ում հետ որ փափագեն, շրջել ամբողջ քաղաքով մեկ, առնել ու ծախել ինչ ցանկանան, ամեն տեսակ գործարքներ կնքել և միանգամայն անկաշկանդ իրենց գործերը վարել, կարծես սեփական քաղաքում լինեին։ Նրանց չէր հետևում և ոչ մի հռոմայեցի, նրանց հետ ամենևին ոչ ոք չէր լինում, ոչ էլ հսկում էր, ինչպես ընդունված է։

Այդ նույն ժամանակ մի այնպիսի բան պատահեց, որ ինչքան մենք գիտենք, նման նախկինում չէր եղել։ Տարվա աշնան ժամանակն էր, բայց այնպիսի արտակարգ շոգ էր ու տոթ, ինչպես ամ-

ռանր։ Ծաղկեցին բնականից ոչ մի տարբերություն չունեցող բաղում վարդեր, կարծես գարուն լիներ։ Գրեթե բոլոր ծառերը նորից պտղաբերեցին, խաղողի որթերի վրա ոչ պակաս չափով ողկույզներ կախվեցին, թեև այգեկութը ոչ շատ օր առաջ վերջացել էր։ Նման երևույթները բացատրելու ընդունակ մարդիկ նախագուշակում էին, թե կկատարվի ինչ-որ անսպասելի կարևոր բան, ոմանք՝ լավ, ոմանք՝ վատ։ Բայց իմ կարծիքով դրա պատճառը հարավային քամիներն էին, որոնք սովորականից շատ ավելի փչեցին, անսովոր կերպով և անժամանակ, և երկրում շատ ջերմություն առաջացավ։ Եվ եթե նույնիսկ, ինչպես նրանք ասում են, որևէ բան նշանակում է այս անակնկալ երևույթը, դա հաստատ կտեսնենք հետագայում տեղի ունեցածից։

ԳԼՈՒԽ 16

Այն միջոցին, երբ Բյուզանդիոնում հռոմայեցիների և պարսիկների միջև հաշտության բանակցություններ էին վարվում, Լազիկայում տեղի ունեցավ հետևյալը. ինչպես ես նախորդ գրքերում ասել եմ, լազերի թագավոր Գուբազեսը, երբ իմացավ, որ Խոսրովը դավադրություն է կազմակերպում իր կյանքի դեմ, մոտ հարաբերություններ հաստատեց հռոմայեցիների հետ։ Բայց լազերից շատերը, հանդիպելով հռոմայեցի զինվորների շատ վատ վերաբերմունքին, և վրդովված լինելով հատկապես զորահրամանատարների դեմ, մեծամասամբ պարսկասեր դարձան, ոչ թե որովհետև հավանում էին պարսից վարչակարգը, այլ որովհետև ուզում էին նրանց օգնությամբ ազատվել հռոմայեցիների իշխանությունից։ Առկա դժվարությունից նախընտրում էին այն, որը դեռ չկար։ Լազերի մեջ կար Թեոֆոբիոս անունով նշանավոր մի մարդ։ Նա միանգամայն գաղտնի բանակցությունների մեջ մտավ Մերմերոեսի հետ և խոստացավ հանձնել Ուքիմերեոս ամրոցը։ [Մերմերոեսը] այդ բանին նրան մղեց մեծ հույսեր տալով, վստահեցնելով, որ նման արարքով նա կդառնա Խոսրով արքայի ամենամտերիմներից մեկը, և պարսիկների մոտ նրա անունը կգրվի ու հավիտյան կհիշվի՝ որպես [իրենց] բարերարի, նա ձեռք կբերի մեծ փառք, հարստություն և կարողություն։ Այդ [խոսքերից] ոգևորված, Թեոֆոբիոսը առավել ջանասիրությամբ դիմեց ձեռնարկին։ Այն ժամանակ հռոմայեցիների և լազերի միջև կապ հաստատելու և ոչ մի հնարավորություն չկար, բայց պարսիկները միանգամայն ազատ շրջում էին նրանց ամբողջ երկրով մեկ։ Հռո-

մայեցիների և լազերի մի մասը սալարել էր Ֆասիս գետի մոտ, իսկ մյուս մասը՝ թաքնվել Արխայոպոլսում, կամ նրա մոտ գտնվող ամրություններում։ Ինքը, լազերի թագավոր Գուբազեսը լեռներում անգործ մնում էր։ Թեոֆոբիոսը առանց որևէ դժվարության, կարողացավ ի կատար ածել Մերմերոեսին տված խոստումը։ Նա, լինելով ամրոցում տեղի լազերից և հռոմայեցիներից բաղկացած կայազորին ասաց, որ հռոմայեցիների ամբողջ զորքը կործանվել է, որ թագավոր Գուբազեսի և նրա հետ եղող բոլոր լազերի գործը խաթարվել է, ամբողջ Կոլխիսը պարսիկների ձեռքում է և ոչ մի հույս չկա, որ հռոմայեցիները կամ Գուբազեսը կկարողանան վերանվաճել երկրի իշխանությունը, քանի որ, եթե նախկինում այս գործին ձեռնարկել էր մենակ Մերմերոեսը, գլխավորելով առավել քան յոթ բյուր պարսիկ մարտիկների, և բազմաթիվ բարբարոս սաբեյրների, այժմ Խոսրովն է գալիս անհամար զորքով, որն անակնկալ կերպով միացավ նրանց, և կոլխերի երկիրը նման զորքի համար նեղ կգա։ Ահա այսպիսի հրեշավոր խոսքերով Թեոֆոբիոսը այստեղի կայազորին գցեց մեծ երկյուղի և շփոթության մեջ։ Նրանք հանուն իր հայրերի աստծո պաղատում էին Թեոֆոբիոսին՝ կարողության սահմաններում նեցուկ կանգնել իրենց ներկա կացությանը։ Նա խոստացավ Խոսրով արքայից փրկության մասին երաշխիքներ ստանալ, որից հետո նրանք ամրոցը թող հանձնեն պարսիկներին։

Երբ Թեոֆոբիոսը ստացավ նրանց հավանությունը, անմիջապես գնաց Մերմերոեսի մոտ և անձնապես հանդիպելով նրան, ամեն ինչ պատմեց։ [Մերմերոեսը] ամենաընտրյալ զինվորներին [Թեոֆոբիոսի] հետ Ութիմերեոս ուղարկեց՝ տեղի կայազորին կյանքի և ունեցվածքի անձեռնմխելիության մասին երաշխիքներ տալու և տիրանալու այդ ամրոցին։ Ահա այս ճանապարհով պարսիկները տիրացան Ութիմերեոս ամրոցին և է՛լ ավելի ամրապնդեցին [իրենց] տիրապետությունը Լազիկայում։ Պարսիկներն այդպիսով ոչ միայն իրենց հպատակեցրին Լազիկան, այլև Սկյումնիան և Սվանիան, իսկ Մոխերեսիսից մինչև Իբերիա ընկած բոլոր շրջանները տանող ճանապարհը հռոմայեցիների և լազերի թագավորի համար այդ ձևով փակվեց։ Ո՛չ հռոմայեցիները, և ո՛չ էլ լազերը ի վիճակի չէին գիմադրել թշնամիներին, որովհետև չէին համարձակվում իջնել լեռներից, ոչ էլ ամրություններից դուրս գալ՝ ընդդեմ թշնամիների։

Մերմերոեսը ձմռանը Կոտաիսում փայտե պարիսպ կառուցեց

և այնտեղ հաստատեց ոչ պակաս քան երեք հազար ռազմունակ պարսիկներից բաղկացած կայազոր։ Նա բավարար քանակությամբ զինվորներ թողեց Ութիմերեոսում, կառուցեց լազերի մյուս ամրոցը՝ Սարապանիսը, որը գտնվում է Լազիկայի հեռավոր ծայրամասում, ուր և հաստատվեց։ Այնուհետև, երբ իմացավ, որ հռոմայեցիներն ու լազերը ճամբար են գրել Ֆասիսի գետաբերանի մոտ, ամբողջ զորքով շարժվեց նրանց դեմ։ Գուբազեսն ու հռոմեական զորքի հրամանատարները, տեղեկանալով այդ մասին, չդիմադրեցին թշնամիներին, այլ ցրվեցին և յուրաքանչյուրը փրկվեց ինչպես կարողացավ։ Գուբազեսը բարձրացավ լեռնագագաթները, ձմեռելու իր կնոջ, երեխաների և մերձավորագույն ազգականների հետ. տաժանելի պայքար մղելով [ձմռան] դժվարությունների և անելանելի վիճակի դեմ. նա հույս ուներ Բյուզանդիոնից օգնություն ստանալ, մի բան, որ մխիթարություն էր իր համար ներկա վիճակում և ակնկալում էր ավելի լավ [օրեր տեսնել]. դա իհարկե մարդկային է։ Մյուս լազերը, հարգանք տածելով դեպի թագավոր Գուբազեսը, նույնպես ձմեռում էին լեռնագագաթներում. ճիշտ է այնտեղ թշնամիների կողմից ոչ մի փորձության չէին հանդիպում, որովհետև ոսոխների համար այս լեռները, հատկապես ձմռանը, անհաղթահարելի են և միանգամայն անմատչելի, բայց կոտորվում էին սովից, սառնամանիքից և այլ դժվարություններից։

Մերմերոեսը Մոխերեսիսի գյուղերում հնարավորին չափ շատ տներ կառուցեց, բոլոր շրջաններից հավաքեց պարեն, ապա սկսեց լեռնագագաթներն ուղարկել իր կողմն անցած դասալիքներից ոմանց և երաշխիքներ տալով կարողացավ իր մոտ բերել [ուրիշ] շատերին։ Վերջիններիս նա առատորեն ապահովում էր պարենով, որի կարիքը նրանք զգում էին և հոգում էր նրանց մասին կարծես իր հարազատները լինեին. որպես երկրին տիրացած՝ ամեն ինչ տնօրինում էր ազատորեն։ Նա Գուբազեսին գրեց հետևյալը. «Երկու բան է կարգավորում մարդկանց կյանքի ընթացքը՝ ուժն ու »խոհեմությունը։ Հզորները, իրենց հարևաններից ուժեղ լինելով, »ապրում են ինչպես որ ցանկանան և վարվում են ավելի թույլերի »հետ այնպես, ինչպես իրենք են ուզում։ Իսկ նրանք, ովքեր իրենց »թուլության պատճառով ծառայում են հզորներին, տկարությունը »բուժում են խոհեմությամբ, հաճոյանում են հզորներին և կարո»ղանում են նախկինի պես իրենց երկրում ապրել, հաճկատարու»թյամբ օգտվում են այն ամենից, ինչից իրենց թույլ լինելու պատ»ճառով զուրկ են։ Եվ դա այդպես է ոչ միայն մի ժողովրդի մոտ,

»դա ընդհանուր է բոլոր մարդկանց համար։ Համայն աշխարհում
»դա կարծես բնական օրենք է։ Դու, ո՞վ սիրելի Գուբազես, եթե
»հույս ունես պատերազմում հաղթել պարսիկներին, մի դանդաղիր,
»թող քեզ ոչինչ չխանգարի այդ գործում։ Դու մեզ կգտնես Լազի-
»կայի ցանկացած տեղը՝ քո հարձակմանը դիմադրող, մենք կմար-
»տնչենք այս երկրի համար ինչքան որ կարողություն ունենք։ Հե-
»տևաբար դու պետք է մեր դեմ քաջաբար կռվես։ Բայց ինքդ գի-
»տես, որ ի վիճակի չես հաղթահարելու պարսից զորությունը։
»Դու, ով քաջդ, անցի՛ր երկրորդին՝ «ծանիր՝ զքեզ»-ին, երկրպա-
»գի՛ր քո տեր Խոսրովին որպես արքայի, հաղթողի և տիրակալի,
»խնդրի՛ր ողորմած լինի քո կատարածի համար, որպեսզի փրկվես
»տաժանելի փորձություններից։ Ես իմ վրա եմ վերցնում Խոսրով
»արքային՝ քո հանդեպ ողորմած անելու, քեզ երաշխիքներ տալու
»գործը։ Ես քեզ որպես պատանդ եմ տալիս պարսից երևելի իշխա-
»նավորների երեխաներ և [հավաստիացում], որ ամեն ինչ, կյան-
»քըդ, թագավորությունդ առհավետ ապահով կլինենաս։ Բայց
»եթե դրանից և ոչ մեկը դու չես ցանկանում ունենալ,
»թո՛ղ, գնա՛ մի ուրիշ երկիր և հնարավորություն տուր քո ան-
»մտությամբ դժբախտ դարձած լազերին ազատ շնչելու,
»աղատվելու իրենց վրա ծանրացած տանջանքներից։ Սին
»հույսերով տարվելով մի՛ ցանկար նրանց կատարյալ կործա-
»նումը։ Ես նկատի ունեմ հռոմայեցիներից [սպասածդ] օգնու-
»թյունը։ Նրանք երբեք ի վիճակի չեն լինի քեզ սատժելու,
»ինչպես մինչև օրս էլ չկարողացան»։ Մերմերոեսն այդ գրեց։
Բայց Գուբազեսը չէր համոզվում և շարունակեց մնալ լեռ-
նագագաթներում, սպասելով հռոմայեցիների օգնությանը. դեպի
Խոսրովը ունեցած իր թշնամության պատճառով, ամենևին չէր
ուզում հույսերը կտրել հռոմայեցիներից. մարդիկ իրենց դատողու-
թյունը մեծամասամբ համարեցնում են իրենց ցանկություններին
և միշտ քաղցր խոսքն են ունկնդրում, ընդունում այն ամբողջու-
թյամբ, չեն ստուգում՝ գուցե սխալ է, իսկ տխրեցնող [խոսքին] չեն
հավատում, որովհետև նա ցավ է պատճառում, չորոնելով՝ գուցե
դա ճիշտ է։

ԳԼՈՒԽ 17

Այդ նույն ժամանակ Հնդկաստանից եկող մի քանի մենակ-
յացներ, իմանալով, որ Հուստինիանոս կայսրը ջանում է, որ հռո-
մայեցիներն այլևս մետաքսը պարսիկներից չգնեն, եղան կայսեր
մոտ, խոստացան նրան տնօրինել մետաքսի գործն այնպես, որ-

պեսզի հռոմայեցիներն այդ ապրանքն այլևս չգնեն իրենց թշնամի պարսիկներից և կամ այլ ժողովրդից։ Նրանք երկար ժամանակ ապրել էին հնդկական բազմաթիվ ժողովուրդներով բնակեցված երկրում, որը կոչվում է Սերինդա և մանրակրկիտ ուսումնասիրել, թե ի՛նչ ձևով կարելի է հռոմայեցիների երկրում մետաքս ստանալ։ Կայսրը մանրամասն հետաքրքրվեց և հարցուփորձ արեց՝ ճշմարիտ է արդյոք նրանց խոսքը, իսկ մենակյացները պատասխանեցին, որ մետաքս ստեղծողը ինչ-որ որդեր են, որոնց ուսուցիչը բնությունն է, որն ստիպում է նրանց անընդհատ աշխատել։ Որդերը ողջ վիճակում այնտեղից բերել հնարավոր չէ, բայց նրանց ձվերը՝ միանգամայն հեշտ է ու դյուրին։ Յուրաքանչյուր որդ ածում է անհամար քանակությամբ ձու։ Այս ձվերը ածությունից շատ ժամանակ հետո մարդիկ ծածկում են գոմաղբով և նրանով տաքացնելով կենդանացնում են։ Այս զեկույցի վրա կայսրը խոստացավ նրանց մեծ պարգևներ շնորհել, համոզեց անցնել գործի և խոսքը իրականություն դարձնել։ Նրանք գնացին Հնդկաստան և այնտեղից Բյուզանդիոն բերեցին ձվերը, որոնք՝ վերևում ասված եղանակով որդի վերածելով, սնեցին թթի տերևներով և այնպես արեցին, որ հռոմայեցիների երկրում ևս մետաքս ստացվի։ Այն ժամանակ հռոմայեցիների և պարսիկների միջև պատերազմական վիճակն անա այդպիսին էր, այդպիսին էր նաև մետաքսի գործը։

Իսդիգուսնասը ձմեռը վերջանալուց հետո դրամով եկավ Խոսրովի մոտ և հաղորդեց [կնքված] համաձայնության մասին։ Խոսրովը դրամը վերցրեց և առանց որևէ հապաղման զինադադար կնքեց, բայց ոչ մի ձևով չուզեց հրաժարվել Լազիկայից։ Նա այդ փողով դաշնակցեց սաբեյր հոների հետ և նրանցից մեծաքանակ զորք ստանալով մի քանի պարսիկների հետ իսկույն Մերմերոեսին ուղարկեց, առաջարկելով ամբողջ ուժով գործի անցնել. նա նրան ուղարկեց նաև բազմաթիվ փղեր։

Մերմերոեսը պարսից և հոների ամբողջ զորքով դուրս եկավ Մոխերեսիսից, շարժվեց լազերի ամրությունների վրա՝ իր հետ տանելով նաև փղերին։ Հռոմայեցիները ոչ մի դիմադրություն ցույց չտվեցին, այլ Մարտինոսի ղեկավարությամբ աստիճանաբար ամփոփ... Ֆասիսի գետաբերանի մոտ, մի անառիկ տեղում ու հանգիստ մնացին։ Նրանց հետ էր նաև լազերի թագավոր Գուբազեսը։ Մարերի այս զորքը իր հետ ինչ-որ բան պատահելու պատճառով ոչ հռոմայեցիներին, ոչ լազերին որևէ վնաս չհասցրեց։ Սկզբում Մերմերոեսը, տեղեկանալով, որ Գուբազեսի քույրը ինչ-որ ամրո-

ցում է գտնվում, զորքը տարավ նրա վրա, ամեն գնով այն գրավելու համար։ [Ամրոցի] պաշտպանները համառորեն դիմադրում էին, նրանց օժանդակում էր նաև տեղանքը և այսպիսով բարբարոսները ստիպված եղան հեռանալ։ Այնուհետև նրանք շտապեցին աբազգների վրա։ Տիբիլե ամրոցի հռոմեական կայազորը փակեց ճանապարհը, որն, ինչպես ասվեց վերևում, շատ նեղ էր և դժվարին տեղում էր գտնվում և անանցանելի էր։ Մերմերոեսը, ի վիճակի չլինելով պաշտպանների վրա որևէ կերպ ճնշում գործադրելու, զորքը ետ՝ դեպի Արխայոպոլիս տարավ այն պաշարելու համար։ Նա փորձեց գրոհել պարսպի վրա, բայց երբ տեսավ, որ գործը առաջ չի գնում, նորից ետ դարձավ։ Հռոմայեցիները հալածում էին նահանջող թշնամիներին և շատերին՝ դժվարանցանելի տեղերում կոտորեցին, այդ թվում նաև սաբեյրների հրամանատարին։ Նրա դիակի շուրջը կատաղի մարտ տեղի ունեցավ և երբ մութն ընկավ, պարսիկները կարողացան ետ մղել և փախուստի մատնել հակառակորդներին, որից հետո շարժվեցին դեպի Կոտաիս և Մոխերեսիս։ Ահա թե այնտեղ ինչ տեղի ունեցավ հռոմայեցիների և պարսիկների միջև։

Ինչ վերաբերում է Լիբիայի գործերին, ապա ամեն ինչ հռոմայեցիների համար շատ հաջող էր ընթանում, որովհետև Հովհաննեսը, որին Հուստինիանոսը նշանակել էր այստեղի զորավար, չլսված և շատ մեծ հաջողությունների հասավ։ Նա բարեկամացավ մավրուսիոսների մի իշխանավորի հետ, նրա անունն էր Կուցինաս, ապա նախ մարտում հաղթեց [մավրուսիոսների] մնացած իշխանավորներին, իսկ քիչ հետո իրեն ենթարկեց Անտալասին և Իավդասին, որոնց իշխանությունը տարածվում էր Բյուզակիոնի և Նումիդիայի մավրուսիոսների վրա և նրանց իր ստրուկները դարձրեց։ Այսուհետև Լիբիայում հռոմայեցիները չունեին ոչ մի թշնամի, քանզի այդ [երկրի] վրա տեղացած պատերազմների և ապստամբությունների հետևանքով երկիրը մեծամասամբ մարդաթափ եղավ։

ԳԼՈՒԽ 19

«...Հուստինիանոս կայսրը զորավար Արատիոսին ուղարկեց Խինիալոնի և մյուս հոների մոտ..., որպեսզի նրանց զրամ խոստանալով շտապ կարգով հեռացնի հռոմայեցիների երկրից։ Նրանք իմանալով ուտիգուրների հարձակման մասին, ապա և դրամական մեծ գումար ստանալով Արատիոսից, որոշեցին այլևս սպանություններ, գերեվարություններ և այլ չարիքներ չգործել ու հեռանալ [հռոմեական] երկրից...»։

[Գոթական պատերազմի մասին գիրք չորրորդ, գլուխ 21, 24, 25]

ԳԼՈՒԽ 21

*«...Հաջորդ տարին Հովհաննեսը մտադրվել էր Սալոնայից դուրս գալ և շուտափույթ առաջնորդել զորքը՝ Տոտիլասի և գոթերի դեմ։ Սակայն կայսրը թույլ չտվեց նրան, հրամայեց մնալ տեղում, մինչև որ տեղ հասնի ներքինի Նարսեսը, քանզի նա ցանկանում էր, որ [Նարսեսը] լինի սույն պատերազմի գլխավոր հրամանատարը...*

*...Նարսեսը կայսրից ստացած մեծ զորքով և շատ դրամով ուղարկվեց։ Նա իր զինվորներով հասավ Թրակիայի մեջտեղը և մի որոշ ժամանակ մնաց Ֆիլիպպուպոլսում*[1]*, որովհետև ճանապարհը փակ էր. մի հոնական զորամաս մուտք էր գործել հռոմեական պետության սահմանները և որևէ դիմադրության չհանդիպելով, տակն ու վրա էր անում ամեն ինչ։ Եվ երբ նրանց մի մասը շարժվեց դեպի Թեսալոնիկե, իսկ մյուս մասն էլ Բյուզանդիոն, [Նարսեսը] հազիվ կարողացավ դուրս գալ այնտեղից ու շարժվել առաջ»։*

ԳԼՈՒԽ 24

*«Նույն այդ ժամանակ Սիկիլիայում գտնվող հռոմայեցիների գործերը հետևյալ վիճակում էին։ Լիբերիոսը Բյուզանդիոն եկավ, կանչվելով կայսեր կողմից, իսկ Արտավանը կայսեր որոշման համաձայն գլխավորեց Սիկիլիայում գտնվող ամբողջ հռոմեական զորքը։ Նա պաշարեց [Սիկիլիայի] ամրություններում թողնված փոքրաթիվ գոթերին և ովքեր որ իր դեմ կռվի դուրս եկան, պարտության մատնեց, իսկ մնացածները, երբ նրանց պարենը լրիվ վերջացավ, համաձայնության գալով հանձնվեցին...»։*

ԳԼՈՒԽ 25

*«...Փոքր անց լանգոբարդները դիմեցին Հուստինիանոս կայսեր, որ նա, համաձայն դաշնակցային պարտավորությունների, իրենց օգնական զորք ուղարկի՝ ընդդեմ գեպացիների։ Հուստինիանոսը բավարարեց խնդիրքը, հիմնվելով այն բանի վրա, որ գեպացիները իր հետ դաշինք կնքելուց հետո, ի վնաս հռոմայեցիների, Իստրոս գետով են անցկացրել սկլավեններից ոմանց։*

*Այդ զորքը գլխավորում էին Գերմանոսի որդիներ Հուստինոսն ու Հուստինիանոսը, ապա նաև Արատիոսը և Սուարտուասը...։*

*...Կատաղի ճակատամարտում գեպացիները պարտվում են և, ինչպես պատմում են, այս ընդհարման ժամանակ նրանցից շատերը սպանվում են։ Լանգոբարդների թագավոր Ավդուինը իր մարդ-*

կանցից ոմանց ուղարկեց Բյուզանդիոն՝ ավետիսներ հաղորդելու Հուստինիանոս կայսեր, որ պարտվել են թշնամիները, բայց միաժամանակ պախարակելու համար, որ կայսեր զորքը, հակառակ կնքված դաշինքի, չի ժամանել իր մոտ, թեև ինքը լանգոբարդների մի մեծ զորք բիչ առաջ ուղարկեց Նարսեսի մոտ՝ [մարտնչելու] համար ընդդեմ Տոտիլասի և գոթերի...

...Իսկ Իտալիայում տեղի ունեցավ հետևյալը. կրոտոնացիք և Պալլադիոսի գլխավորությամբ այստեղ [Կրոտոն քաղաքում] գտնվող կայազորը, առնված լինելով գոթերի սեղմ օղակի մեջ և զգալով պարենի սուր պակաս, բազմիցս, թշնամիներից գաղտնի մարդ ուղարկեցին Սիկիլիա, հայտնելու այնտեղի հռոմեական զորքի հրամանատարներին և հատկապես Արտավանին, որ եթե նրանք շտապ կարգով օգնության չհասնեն, իրենք շուտով կամավոր կերպով կհանձնվեն թշնամիներին և նրանց կհանձնեն նաև քաղաքը: Բայց այդտեղից ոչ ոք օգնության չհասավ: Վերջանում էր ձմեռը, ինչպես և տասնյոթերորդ տարին[56] այս պատերազմի, որ Պրոկոպիոսը շարադրեց»:

ԳԼՈՒԽ 26

«...Նարսեսը, դուրս գալով Սալոնայից, ամբողջ հռոմեական զորքով, որն անչափ մեծ էր, շարժվեց Տոտիլասի և գոթերի վրա: Նա կայսրից ահագին դրամ էր ստացել, որով նա պետք է շատ մեծ զորք հավաքագրեր և ապահովեր այն ամեն ինչով, ինչ պատերազմին էր անհրաժեշտ, բացի դրանից վճարեր Իտալիայում գտնվող զինվորների անցյալի բոլոր պարտքերը, մի բան, որ կայսրը շատ էր ձգձգել. Նրանք, ինչպես ընդունված է պետության կողմից, չէին ստացել իրենց հասանելիք ռոճիկը: Նա պետք է նաև ճնշում գործեր Տոտիլասի մոտ փախած դասալիքների վրա և սիրաշահեր դրամով, որպեսզի փոխեն իրենց դիրքը դեպի պետությունը:

Եթե Հուստինիանոսն անցյալում այս պատերազմի վրա ի միջի այլոց էր նայում, այժմ ի վերջո շատ մեծ պատրաստություն տեսավ: Երբ Նարսեսն իմացավ, որ [կայսրը] մտադիր է իրեն տալ Իտալիայի զորահրամանատարությունը, ցուցաբերեց զորավարին վայել պատվասիրություն, ասաց, թե միայն մի ձևով կծառայի կայսեր, եթե նա իրեն տրամադրի բավարար քանակությամբ զորք: Եվ ահա նա այս ձևով հռոմեական պետության կայսրից ստացավ բավարար քանակությամբ դրամ, զորք ու զենք և իր հանդես բերած արտակարգ ջանասիրությամբ կազմեց մեծ բանակ...

...Նարսեսը շատ առատաձեռն էր, կարիքի մեջ գտնվողներին օժանդակելու միշտ ընդունակ. կայսեր կողմից օժտված լինելով շատ մեծ իրավունքներով, առանց վախենալու նա անում էր այն, ինչ ուզում էր։ Բաղում հրամանատարներ և զինվորներ դեռ անցյալում արժանացել էին նրա բարերարությանը։ Երբ նա նշանակվեց Տուտիլասի և գոթերի դեմ մղվող պատերազմի գլխավոր հրամանատար, ամեն մեկը ուրախությամբ պատրաստակամություն էր հայտնում նրան ծառայել, ոմանք դրանով ցանկանում էին երախտապարտ լինել անցյալում նրանից տեսած լավության համար, ոմանք էլ, բնականաբար, ակնկալելով մեծ բախտի արժանանալ նրա ձեռքով։ Նրա հանդեպ շատ լավ էին տրամադրված հատկապես էրուլները և մյուս բարբարոսները, որովհետև այս մարդուց շատ լավություններ էին տեսել...

...Նարսեսն ամբողջ զորքով հասավ Ռավեննա»։

ԳԼՈՒԽ 28

«Ռավեննա ժամանած Նարսեսին և նրա զորքին միացան զորավարներ Վալերիանոսն ու Հուստինոսը և ինչքան հռոմեական զորք որ կար այնտեղ...

...Նարսեսը... Ռավեննայում Հուստինոսի գլխավորությամբ կայազոր թողնելով, անմիջապես արշավանքի դուրս եկավ։ Հասնելով Արիմինոն քաղաքի մոտակայքը, գտավ որ իրենց համար անցումը այնտեղով դժվարին կլինի, որովհետև գոթերը քիչ առաջ քանդել էին տեղի կամուրջը...

...Նարսեսը առանց երկյուղի գետի վրա կամուրջ կապեց և հեշտությամբ անցկացրեց ամբողջ զորքը...»։

ԳԼՈՒԽ 29

«...Տուտիլասն, իմանալով որ թշնամիները անցել են Արիմինոնը, ամբողջ Տուսկիան[57] կտրելով հասավ Ապեննինա կոչված լեռ և ճամբար դրեց տեղացիների կողմից Տագինա կոչված գյուղին շատ մոտ վայրում։ Հռոմայեցիների զորքը ևս Նարսեսի գլխավորությամբ քիչ հետո նույնպես ճամբար դրեց Ապեննինա լեռան վրա, հակառակորդի ճամբարից մոտ հարյուր ասպարեզ հեռավորության վրա...

...Նարսեսը իր մարդկանցից ոմանց ուղարկեց Տուտիլասի մոտ խորհուրդ տալու, որ նա վերջ տա պատերազմին, մտածի հաշտության մասին, նկատի ունենա, որ իր մարդիկ փոքրաքանակ են, այն էլ ի միջի այլոց հավաքագրված և այդ պատճառով ի վիճակի

չէ երկար պայքարել ամբողջ հռոմեական պետության դեմ։ Նա պարզադրեց նաև, որ եթե տեսնեն, որ Տոտիլասը մտադիր է պատերազմելու, իմանան, թե ե՛րբ է ուզում նա ճակատամարտ տալ, թող որոշակի օր նշանակի։ Երբ պատգամավորները եղան Տոտիլասի մոտ, ի կատար ածեցին այն, ինչ կարգադրվել էր։ Տոտիլասը երիտասարդական ավյունով ասաց, որ բոլոր դեպքերում իրենք պատերազմելու են, իսկ պատգամավորների հարցին, թե «ով քաջդ, ո՞ր օրն ես նշանակում ճակատամարտը», պատասխանեց. «մենք կհանդիպենք այստեղ ութ օր հետո»։ Պատգամավորները, գալով Նարսեսի մոտ հաղորդեցին ամեն ինչի մասին, իսկ նա, ենթադրելով, որ Տոտիլասը խորամանկություն է դիմել, պատրաստվեց հաջորդ օրը մարտ տալու։ Նա ճիշտ էր հասկացել թշնամիների մտադրությունը, քանզի հաջորդ օրն իսկ անձնապես Տոտիլասը ամբողջ զորքով հայտնվեց։ Նրանք գտնվում էին միմյանցից ոչ ավելի, քան երկու նետընկեց հեռավորության վրա...»։

ԳԼՈՒԽ 31

«...Զորքերը մարտի էին դասավորվել հետևյալ կերպ. երկու կողմն էլ շարվել էին դեմ առ դեմ, հնարավորին չափ խոր ու լայն ճակատ կազմած։ Հռոմեական զորքի ձախ թևը՝ բլրի մոտ գլխավորում էին Նարսեսն ու Հովհաննեսը, ունենալով հռոմեական զորքի լավագույն մարտիկներին... Աջ թևում էին գտնվում Վալերիանոսը, Հովհաննես Ֆագասը և Դագիսթայոսը՝ մնացած բոլոր հռոմեական զորքով։ ...Ճակատի կենտրոնում Նարսեսը տեղագրեց լանգոբարդներին, հերուլներին և մնացած բարբարոսներին։ Նա նրանց հրամայեց ձիերից իջնել, կազմել հետևակ, որպեսզի եթե հանկարծ մարտի ընթացքում վախկոտություն ցուցաբերեն, կամ էլ դավաճանություն, չկարողանան անմիջապես փախուստի դիմել։ ...Որոշ ժամանակ ոչ ոք չէր սկսում մարտը, այլ հանգիստ մնում էին, սպասելով հակառակորդի հարձակմանը։

Այնուհետև գոթերի զորքից Կոկկաս անունով մեկը, որը քաջ մարդու մեծ հռչակ ուներ, ասպանդակեց իր ձին, եկավ կանգնեց հռոմեական զորքի դիմաց և հրավիրեց ցանկացողին իր հետ մենամարտի դուրս գալ։ Այդ Կոկկասը անցյալում հռոմեական զինվոր էր և դասալիք էր եղել Տոտիլասի մոտ։ Իսկույն նրա դեմ դուրս եկավ Նարսեսի դորիֆորներից մեկը, ծագումով հայ, անունը Անդալաս[58], նա էլ ձի էր հեծած։ Կոկկասը նախահարձակ եղավ թշնամուն նիզակահար անելու մտադրությամբ, նշան բռնելով նրա փո-

րին։ Բայց Անզալասը հանկարծակի մի կողմ քաշեց իր ձին և [հակառակորդի] թափը օգուտ չունեցավ։ Այդ ձևով [Անզալասը] հայտնվեց թշնամու կողքին և իր նիզակը խրեց նրա ձախ կողին։ Նա անշնչացած, ձիուց դետին գլորվեց։ Հռոմայեցիների զորքի մեջ մեծ աղաղակ բարձրացավ...»։

ԳԼՈՒԽ 32

«...Արդեն երեկո էր և երկու զորքերն էլ հանկարծ շարժվեցին, գոթերը բռնեցին նահանջի ճամփան, իսկ հռոմայեցիները նրանց հալածելու։ Գոթերը չէին կարողանում դիմադրել հարձակվող թշնամիներին և տեղի տալով փախուստի դիմեցին...։ Այս մարտում սպանվեց վեց հազար գոթ, իսկ շատերն էլ գերի հանձնվեցին հակառակորդներին, որոնք քիչ հետո կոտորեցին նրանց։ [Տոտիլասը սպանվում է փախուստի ժամանակ]։

...Ահա այսպես վերջ գտավ Տոտիլասի կյանքն ու իշխանությունը, նրա, ով տասնմեկ տարի ղեկավարել էր գոթերին և եթե նկատի ունենանք նրա անցյալում ցույց տված քաջագործությունը, նման [մահը] անփառունակ էր...»։

ԳԼՈՒԽ 33

«Նարսեսը կատարվածից շատ գոհ մնաց, նա ամեն ինչ վերադրում էր աստծուն, ինչպես էլ դա այդպես էր. ապա նա սկսեց իր գործերը կարգի բերել։

...Նա հրամայեց Վալերիանոսին իր ամբողջ զորքով պաշտպանել Պադոս գետի շրջակայքը, որպեսզի գոթերը չկարողանան առանց երկյուղի հավաքվել, իսկ ինքը մնացած ամբողջ զորքով շարժվեց Հռոմի վրա։ Անցնելով Տուսկիայի վրայով, նա պայմանով տիրացավ Նարնիային, իսկ Սպոլիտիոնում, որն անպարիսպ էր, թողեց կայազոր, կարգադրելով վերականգնել գոթերի կողմից պարսպի ավերված մասերը. որոշ քանակությամբ էլ զինվորներ ուղարկեց՝ գրավելու համար Պերուսիոնի պահակատեղին...

Հռոմում գտնվող գոթական կայազորը հենց որ իմացավ, թե հռոմեական զորքը և Նարսեսը իր վրա են գալիս, նախապատրաստվեց հնարավորին չափ դիմադրելու։ Տոտիլասը, երբ առաջին անգամ էր գրավել քաղաքը, նրա շինություններից շատերը կրակի էր տվել։ Բայց հետագայում, մտածելով, որ գոթերը իրենց փոքրաթիվ զորքով ի վիճակի չեն լինի պաշտպանել Հռոմի ամբողջ պարիսպը, մի կարճ պատնեշով պարսպապատեց քաղաքի մի փոքր մասը՝ Ադրիանոսի գերեզմանի մոտակայքում և այդ [նոր] պատնեշը,

կպցնելով նախկին պարսպին, բերդանման դարձրեց։ Գոթերը այստեղ փոխադրեցին իրենց գանձերը և այդ ամրությունը հաստատորեն պահպանում էին, ոչ մի ուշադրություն չդարձնելով քաղաքի մնացած պարիսպների վրա։ ...Նարսեսը աղեղնավորների մեծաքանակ զորքի գլուխն անցած հարձակվեց պարսպի մի մասի վրա, իսկ նրա մի այլ մասի վրա հարձակվեց Վիտալիանոսի եղբորորդի Հովհաննեսն իր զինվորներով։ Իսկ Փիլեմութն ու էրուլները մի այլ կողմից էին հարձակվում։ ... Այդ միջոցին Դագիսթայոսը Նարսեսի կարգադրությամբ մեծաքանակ զորքով և Նարսեսի ու Հովհաննեսի դրոշով, բազում աստիճաններով անսպասելիորեն գրոհեց պարսպի մի հատվածի վրա, որը ոչ մի պաշտպան չուներ։ Առանց որևէ դիմադրության հանդիպելու, նա պարսպին հենեց աստիճանները, իր զինվորներով անցավ պարսպից ներս և բաց արեց ցանկացած դարպասը։ Երբ գոթերը այդ տեսան, այլևս արիության մասին չէին մտածում. յուրաքանչյուրը, ինչպես որ հաջողվեց փախուստի դիմեց... Նարսեսն այն ժամանակ ամբողջ զորքով գրոհեց [նշված] ամրության վրա։ Բարբարոսները վախեցան և իրենց կյանքի ապահովության մասին երաշխիքներ ստանալով, իրենց էլ, ամրությունն էլ իսկույն հանձնեցին՝ Հուստինիանոս կայսեր ինքնակալության քսանվեցերորդ տարին[59]։ Ահա այսպես նույն կայսեր թագավորության ընթացքում Հռոմը հինգերորդ անգամ գրավվեց և նրա դարպասների բանալիները Նարսեսն անհապաղ ուղարկեց կայսեր»։

## «ԳԱՂՏՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»

ԳԼՈՒԽ 2

«...Երբ Բելիսարիոսն արդեն գրավել էր Սիսավրանոն ամրոցը, մեկից իմանում է, որ [իր կին Անտոնինան] ճամփա է դուրս եկել։ [Բելիսարիոսը] ամեն ինչ մի կողմ թողած, զորքը ետ բերեց։ Ես նախապես պատմել էի[1], որ ճամբարում զանազան դեպքեր էին պատահել, որոնք նրան ստիպում էին ետ վերադառնալ, սակայն վերոհիշյալ հանգամանքն ամենից առաջնահերթն էր նրա վերադարձի համար։ Բայց ինչպես ես այս գրքի սկզբում ասացի[2], ինձ համար այն ժամանակ բոլոր պատճառների մասին խոսելը վտանգավոր էր։ Բելիսարիոսն այսպիսով հանցավոր է բոլոր հռոմայեցիների առջև, որովհետև նա իր անձնական գործերը պետության ամենակարևոր գործերից բարձր դասեց։ Համակված լինելով կնոջ հանդեպ ունեցած իր կրքով, նա ամենևին չէր ուզում հռոմեական երկրից հեռու գտնվել, որպեսզի հենց որ իմանա իր կնոջ Բյուզանդիոնից հեռանալու մասին, անմիջապես վերադառնա, բռնի նրան և պատժի։ Այդ էր պատճառը, որ նա հրամայեց Արեթասին և նրա զորքին անցնել Տիգրիս գետը, որոնք ոչ մի խոսքի արժանի բան չկատարած տուն վերադարձան, իսկ [Բելիսարիոսը] այդ ժամանակ հազիվ մեկ օրվա հեռավորության վրա էր գտնվում հռոմեական սահմաններից. Սիսավրանոն ամրոցը գտնվում է Նիսիբիս քաղաքից թեթև զինված մարդու համար մեկ օրից ոչ ավել հեռավորության վրա, այսքան է նրանց միջև ընկած տարածությունը։ Ես համոզված եմ, որ եթե [Բելիսարիոսը] ամբողջ զորքով անցներ Տիգրիս գետը, ապա կկարողանար ավարի առնել Ասորեստանի բոլոր շրջանները և առանց դիմադրության հանդիպելու կհասներ Կտեսիֆոն քաղաքը, ազատելով այստեղ գտնվող անտիոքացի և մնացած բոլոր հռոմայեցի ռազմագերիներին, կվերադառնար իր հայրենի սահմանները։ Նա իր այդ արարքով նաև պատճառ դարձավ, որ Խոսրովը աներկյուղ վերադառնա Կոլխիսից։ Ես այստեղ կպատմեմ, թե ինչպես դա տեղի ունեցավ։

Երբ Կավադի որդի Խոսրովը ներխուժեց Կոլխիս երկիրը, գրավեց Պետրան և կատարեց այն, ինչ նախապես ես պատմեցի[3], ահա

այդ ժամանակ մարական զորքը դժվարանցանելի ճանապարհների և մարտերի պատճառով բաղում զոհեր տվեց. Լաղիկան, ինչպես ես ասել եմ, լեռնային է և դժվարանցանելի։ Այդ բոլորից բացի մարերի վրա խուժեց նաև ժանտախտը, որի պատճառով զորքի մեծ մասը ոչնչացավ, մի մասն էլ պարենի պակասությունից կոտորվեց։ Այդ միջոցին պարսից երկրից եկած մարդիկ հայտնեցին, թե Նիսիբիս քաղաքի տակ Բելիսարիոսը մարտում պարտության մատնելով Նաբեդեսին, առաջ է շարժվում, թե պաշարելով Սիսավրանոն ամրոցը գրավել է այն և դերի վերցրել Բլեսխամեսին և ութ հարյուր պարսից հեծյալների, թե հռոմեական մի այլ զորաբանակ, սարակինոսների ցեղապետ Արեթասի գլխավորությամբ ուղարկված է, որպեսզի անցնելով Տիգրիս գետը, ավարի առնի այդ բոլոր շրջանները, որոնք դեռ չէին թալանվել։ Այդ միջոցին Խոսրովը հոներից բաղկացած զորք էր ուղարկել հռոմայեցիներին ենթակա Հայաստան, որպեսզի այդտեղի հռոմայեցիները, զբաղվելով դրանցով, չկարողանան օգնության հասնել Լազիկայում։ Ուրիշները [Խոսրովին] պատմեցին, թե այս բարբարոսները հանդիպեցին ու կռվի բռնվեցին Վալերիանոսի և հռոմայեցիների հետ, թե նրանք ճակատամարտում գլխովին պարտություն կրեցին, և թե նրանց մեծ մասը ոչնչացավ։ Երբ այդ իմացան պարսիկները, որոնք իրենց հերթին վատ վիճակում էին Լաղիկայում, ապա վախենալով, որ նահանջի ճանապարհին, ժայռոտ և անտառախիտ վայրերում կհանդիպեն թշնամու զորքին և բոլորը խայտառակամահ կլինեն, նաև երկյուղ զգալով իրենց երեխաների, կանանց և հայրենիքի համար, նրանց երևելիները սկսեցին պախարակել Խոսրովին, թե նա դրժել է իր երդումները և բոլոր մարդկանց համար ընդհանուր օրենքները, հաշտության գոյության ժամանակ անտեղի ներխուժել հռոմայեցիների երկիրը, թե անարդարություն է գործել մի հին և ամենապատվական պետության հանդեպ, որին պատերազմում պարտության մատնել ի վիճակի չէ։ Նրանք մտադիր էին ապստամբություն բարձրացնել։ Խոսրովը վախենալով դրանից, չարիքի առաջն առավ հետևյալ կերպ. Նրանց կարդաց այն նամակը, որ մի քիչ առաջ Զաբերգանեսին էր դրել [Թեոդորա] կայսրուհին։ Նամակում հետևյալն էր գրված. «Թե դու, ով Զաբերգանես, ինչքան
»բարեկամաբար ես տրամադրված մեր պետության հանդեպ, ես
»համոզվել եմ այն ժամանակ, երբ դու փոքր առաջ դեսպանու-
»թյամբ ժամանել էիր մեզ մոտ։ Արդ, դու արդարացրած կլինես քո
»հանդեպ ունեցած իմ հույսերը, եթե համոզես Խոսրով արքային՝

»խաղաղասիրական զգացմունքներ տածել դեպի մեր պետությունը։ »Եթե դու այդ կատարես, ապա խոստանում եմ, որ անչափ մեծ բա- »րերարություն կցուցաբերի քո հանդեպ իմ ամուսինը, որը առանց »իմ համաձայնության ոչինչ չի անում»։ Խոսրովն այդ կարդալուց հետո ամոթանք տվեց պարսից երևելիներին, որոնք պետություն են համարում կնոջ կառավարածը և այդ ձևով կարողացավ նրանց սթափեցնել։ Բայց հակառակ դրան, նա այնտեղից մեծ երկյուղով հեռացավ, ենթադրելով, որ ճանապարհին կհանդիպի Բելիսարիոսի զինվորներին։ Սակայն նրա դեմ ոչ մի թշնամի դուրս չեկավ և նա ուրախությամբ վերադարձավ իր երկիրը»։

ԳԼՈՒԽ 3

«...[Բելիսարիոսը] անմիջապես ուղարկվեց մարերի և Խոսրովի դեմ, որոնք երրորդ անգամ էին ներխուժում հռոմայեցիների երկիրը, բայց խայտառակվեց միայն, թեև նա մեծ բան էր համարում այն, որ պատերազմը այդտեղից հեռացրեց։ Բայց երբ Խոսրովն անցնելով Եփրատ գետը առանց որևէ դիմադրության գրավեց մարդաշատ Կալլինիկոն[4] քաղաքը և բյուրավոր հռոմայեցիների գերի վերցրեց, Բելիսարիոսը չշտապեց վռնդել թշնամիներին, այլ մնաց տեղում, այն տպավորությունը թողնելով, որ կամ դավաճան է, կամ՝ վախկոտ»։

ԳԼՈՒԽ 11

«...[Հուստինիանոսը] խաղաղությունն ապահովելու համար Խոսրովին բազում կենտինար ոսկի տալուց հետո, կամայականորեն, առանց որևէ պատճառի ինքը պատճառ դարձավ հաշտության վերացման։ Նա ջանք էր թափում և աշխատում Ալամունդարոսին և պարսիկներին դաշնակից հոներին իր կողմը գրավել, որի մասին իր տեղում ես, թվում է, պարզ ու հստակ ասել եմ...»[5]։

ԳԼՈՒԽ 12

[Հուստինիանոսի և Թեոդորայի ապօրինի կերպով դրամ շորթելու մասին. թե ինչպես նրանք հափշտակեցին Բասիլեյոսի որդի Հովհաննեսի ունեցվածքը]։

«...Բասիլեյոսի որդի Հովհաննեսը, որ Եդեսիայի ամենաերևելի բնակիչն էր, Բելիսարիոսի կողմից բռնի, իբր պատանդ, հանձնըրվում է՝ պարսիկների ձեռքը, որի մասին ես նախորդ շարադրանքում գրել եմ[6]։ Այս Հովհաննեսին Խոսրովը չէր ազատում, մեղադրելով հռոմայեցիներին բոլոր պայմանները խախտելու մեջ, պայ-

մաններ, որոնք չխախտելու համար էր Բելիսարիոսի կողմից ստացել [Հովհաննեսին] և պնդում էր, որ նրան կվերադարձնի միայն որպես ռազմադերու։ [Հովհաննեսի] տատը (նա դեռ ողջ էր), ուզում էր ոչ պակաս քան երկու հազար լիտր ոսկի փրկագին տալով ազատել իր թոռան, բայց երբ այդ փրկագինը Դարա հասավ և այդ մասին իմացավ կայսրը, թույլ չտվեց, որ գործարքը տեղի ունենա, պատճառաբանելով, որ չպետք է հռոմայեցիների ոսկին բարբարոսներին տրվի։ Շատ չանցած Հովհաննեսը հիվանդացավ ու մահացավ, իսկ [Դարայի] քաղաքապետը մի նամակ սարքեց, որն իբր մի փոքր առաջ իրեն՝ որպես բարեկամի, գրել էր Հովհաննեսը, թե ուզում է, որ այդ հարստությունը կայսրն ստանա...»։

ԳԼՈՒԽ 18

«...Այս նույն ժամանակները սարակինոսները՝ հռոմեական Արևելքի վրա՝ Եգիպտոսից սկսած մինչև Պարսկաստանի սահմանները, անգագար արշավանքներ կատարելով ու շարունակ կոտորածներ սարքելով, այդտեղի շրջանները ամբողջությամբ մարդաթափ արեցին, նույնիսկ հնարավոր չէր ստուգել և իմանալ կոտորված մարդկանց քանակը։ Իսկ խուսրովը և պարսիկները չորս անգամ ներխուժեցին հռոմայեցիների երկիրը, ավերեցին քաղաքները։ Քաղաքներում և յուրաքանչյուր վայրում դերի վերցրած մարդկանց մի մասին նրանք սպանեցին, մյուս մասին էլ իրենց հետ տարան։ Ուր նրանք ոտք էին դնում, այդ երկիրն ամայանում էր բնակիչներից։ Նրանք այդտեղից ներխուժեցին Կոլխիս երկիրը և մինչև օրս չեն դադարեցնում կոլխերի, լազերի և հռոմայեցիների կոտորածները։

Բայց միաժամանակ հռոմայեցիների երկրից պարսիկները, սարակինոսները, հոները, սկլավենները կամ էլ ուրիշ հայտնի բարբարոսներ չեն կարողացել անվնաս հեռանալ, որովհետև արշավանքների, իսկ առավել ևս պաշարումների և ընդհարումների ժամանակ հաճախ սպարտություն էին կրում և ոչ պակաս չափով, [քան հռոմայեցիները] կոտորվում։ Ոչ միայն հռոմայեցիները, այլև գրեթե բոլոր բարբարոսները ճաշակեցին Հուստինիանոսի արյունռուշտությունը։ Խոսրովն էլ, ճիշտ է, չարագործ մարդ էր, ինչպես տեղում ասել եմ, բայց պատերազմների առիթները ինքը [Հուստինիանոսն] էր տալիս։ Նա չէր ուզում իր ծրագրերի իրականացման համար հարմար առիթ որոնել, այլ ամեն ինչ անում էր անպատեհ ժամանակին։ Խաղաղության և հաշտության ժամանակ նա անվերջ առիթներ էր ստեղծում հարևանների հետ պատերազմե-

լու համար։ Առանց որևէ պատճառի պատերազմի բռնվելով, նա իր դրամասիրության պատճառով անհրաժեշտ միջոցառումների չէր դիմում, հրատապ գործը մի կողմ թողած, վերացական գործերով էր տարվում, ուսումնասիրում աստուծո բնության հարցերը։ Լինելով արյունռուշտ և արյունարբու, պատերազմին էլ վերջ չէր տալիս, բայց ոչ էլ կարողանում էր հաղթել թշնամիներին, որովհետև իր գծծության պատճառով չէր դիմում անհրաժեշտ միջոցների։ Ահա ամբողջ երկիրը նրա թագավորության ժամանակ ողողված էր մարդկային արյունով, և՛ հռոմայեցիների, և՛ բարբարոսների։

ԳԼՈՒԽ 23

«...Մարերն ու սարակինոսները ավարի առան Ասիայի մեծ մասը, իսկ հոները, սկլավենները և անտերը՝ ամբողջ Եվրոպան։ Նրանք քաղաքների մեծ մասը հիմնահատակ ավերեցին, մյուս մասի վրա էլ շատ մեծ ռազմատուգանք դրեցին, բնակիչներին ստրկացրին, գրավելով նրանց ունեցվածքը։ Նրանց անվերջ արշավանքների պատճառով յուրաքանչյուր երկիր ամայացավ իր բնակիչներից և ահա նույնիսկ այդպիսի պայմաններում [Հուստինիանոսը] չվերացրեց հարկերը, բացի այն քաղաքներից, որոնք թշնամու ձեռքն էին ընկել, այն էլ միայն մեկ տարով։ Եթե նա, ինչպես Անաստասիոս կայսրն արեց, յոթ տարով վերացներ [թշնամու] ձեռքն անցած քաղաքների հարկերը, նույնիսկ այդ քիչ կլիներ, որովհետև եթե Կավադը հեռացավ քաղաքներից շատ քիչ ավար վերցնելով, ապա Խոսրովը ամեն ինչ կրակի տվեց ու հիմնահատակ ավերեց. նա շատ ավելի մեծ դժբախտություն պատճառեց տառապյալներին...»։

ԳԼՈՒԽ 24

«...Քանի որ խոսք բացեցի ստրատիոտների մասին, կավելացնեմ նաև հետևյալը։ Անցյալում հռոմեական կայսրերը պետության բոլոր հեռավոր շրջաններում, հռոմեական պետության սահմանների պաշտպանության համար մեծաքանակ զորքեր էին պահում, որոնց անվանում էին լիմիտանայոս[8]։ Սրանք հատկապես արևելյան սահմաններում դիմադրում էին պարսիկների և սարակինոսների հարձակումներին։ Հենց սկզբից Հուստինիանոս կայսրը վատ էր վերաբերվում սրանց հետ, ի միջի այլոց նայում նրանց վրա, և նույնիսկ չորս-հինգ տարվա ռոճիկը ուշացրել էր, և երբ հռոմայեցիների ու պարսիկների միջև խաղաղություն կնքվեց, այս խեղճերը ստիպված եղան, կարծես խաղաղության բարիքներից օգ-

տրվելու համար, պետությանը նվիրել այդքան երկար ժամանակվա իրենց [չստացած] ռոճիկը։ Հետագայում առանց որևէ պատճառի նրանցից խլվեց և ստրատիոտես անունը։ Դրանից հետո ահա․ հռոմեական պետության սահմանները զուրկ մնացին պաշտպաններից, իսկ ստրատիոտները մյուս օրն իսկ սկսեցին բարեպաշտ մարդկանցից ողորմություն խնդրել։

Սկզբում պալատի պահպանության համար առանձնացվել էին երեք հազար հինգ հարյուրից ոչ պակաս ստրատիոտներ, որոնց սխոլարիոս էին անվանում։ Ի սկզբանե անտի պետությունը սրանց վճարում էր շատ ավելի բարձր ռոճիկ, քան մնացած բոլոր [ստրատիոտներին]։ Անցյալում կայսրերը սրանց ընտրության ժամանակ նկատի ունեին մարդկանց արժանիքները և հայերին էին տալիս նախապատվությունը։ Բայց սկսած Զենոն կայսրից, [ստրատիոտ] անունը սկսվեց տրվել վախկոտ և պատերազմի մասին բոլորովին գաղափար չունեցող մարդկանց։ Ժամանակի ընթացքում նույնիսկ ստրուկները գրամով դնում էին ստրատիոտի կոչումը։ Երբ թագավորությունը Հուստինոսն ստացավ, Հուստինիանոսը շատերին արժանացրեց այդ պատվին, նրանցից շատ դրամ շորթելով...»։

ԳԼՈՒԽ 30

«...Հետախույզների մասին կասեմ հետևյալը։ Պետությունը դեռ վաղուց բազմաթիվ մարդկանց էր սլահում, որոնք գնալով թշնամիների մոտ, լինելով պարսից արքունիքում, կամ առևտրի, կամ էլ այլ պատրվակով, ճշգրիտ կերպով ամեն ինչ հետախուզում էին, վերադառնում հռոմայեցիների երկիրը և թշնամիների բոլոր գաղտնիքները հաղորդում իշխանություններին։ Վերջիններս նախօրոք տեղյալ լինելով, ապահով էին և ոչ մի անակնկալի չէին հանդիպում։ Այս սովորությունը դեռ վաղուց գոյություն ուներ նաև մարերի մոտ։ Խոսրովը, ինչպես պատմում են, ավելի բարձր ռոճիկ տալով հետախույզներին, մեծ օգուտներ քաղեց նրանցից։ Նա իմանում էր այն ամենը, ինչ տեղի էր ունենում հռոմայեցիների մոտ։ Իսկ Հուստինիանոսը նրանց վրա ոչ մի դրամ չծախսելով, հռոմայեցիների երկրից վերացրեց հետախույզների անունն անգամ, որի պատճառով շատ սխալներ թույլ տրվեցին, և Լազիկան գրավվեց թշնամիների կողմից, որովհետև հռոմայեցիներն ամենևին չգիտեին, թե պարսից արքան իր զորքով երկրի որ մասում է գտնվում...»։

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ ՀՐՈՎԱՐՏԱԿԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՌԱԶՄԱԿԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՅՄԱՆ ՄԱՍԻՆ[1]

«Հուստինիանոս կայսրը Ջետային[2] Հայաստանի, Պողեմոնյան Պոնտոսի և ազգությունների փառավորյալ զորավարին:

*Շնորհիվն աստուծո, ստանալով հռոմայեցիների իշխանությունը, մենք, մղված հոգատարությունից և խոհեմ կշռադատելով գտանք, որ անհրաժեշտ է Հայաստանի, Պողեմոնյան Պոնտոսի և ազգությունների համար սույն հրովարտակով հիմնադրել հատուկ ռազմական ղեկավարի պաշտոնը։ Մենք քո պայծառափայլությանը, որն իր նախկին գործունեությամբ աչքի է ընկել, նշանակում ենք այդ պատասխանատու պաշտոնին։ Հայտնի պրովինցիաներից Մեծ Հայքը, որը և Ներքնագույն է կոչվում, և ազգությունները (այն է Անղետենան, Ինգիլենան, Ասթիանենան, Սոֆենան, Սոփանենան՝ Մարտիրոպոլիս քաղաքով և Բալաբիտենան), նաև Առաջին և Երկրորդ Հայքերը հանձնում ենք քո հոգատարությանը՝ նրանց դուքսերի հետ միասին, որով միանգամայն վերանում է կոմեսի պաշտոնը։ Քո տրամադրության տակ ենք դնում որոշ լեգեոններ ոչ միայն նրանք, որոնք մենք նոր ենք հավաքագրում, այլև առանձնացնելով մայրաքաղաքի զորքերի կազմից, ինչպես և Արևելյան ու այլ զորքերից։ Դրանով սակայն այս վերջին զորաբանակների լեգեոնների թիվը չի կրճատվում, քանի որ մենք նախապես նրանց կցել էինք բազում լեգեոններ. դրանով մենք պետությանը չենք ծանրաբեռնում, ոչ էլ ավելորդ ծախսեր անում։ Մենք այժմ վերոհիշյալ զորաբանակներից վերցնում ենք որոշ լեգեոններ, բայց դրանից հետո նրանց կազմում մնում է ավելին, քան կար մինչև մեր երջանիկ թագավորությունը»։*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ ԷԴԻԿՏԸ ՀԱՅՈՑ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ[3]

«Հայոց ժառանգական [իրավունքի] մասին։

*Մենք ցանկանում ենք հայերի վրա ևս ամբողջությամբ տարածել մեր օրենքները, տալ նրանց պատշաճ հավասարություն, ազատել նրանց նախկին անարդարությունից։*

### ԳԼՈՒԽ. Ա

*Մենք վերջերս իմացանք նրանց մոտ գոյություն ունեցող բարբարոսական և կոպիտ մի օրենքի մասին, որ վայել չէ ո՛չ հռոմայեցիներին, ո՛չ էլ մեր պետության արդարության ոգուն, այն, որ ծնողներին ժառանգելու [իրավունք] ունեն միայն տղամարդիկ, բայց ոչ երբեք կանայք։ Այդ իսկ պատճառով սույն սրբազան օրենքով հրամայում ենք քո պայծառափայլությանը[1], որ ժառանգելու իրավունքը նույնը լինի, ինչպես թելադրում են հռոմայեցիների օրենքները, որ Հայաստանում ժառանգելու իրավունքը տարածվի և՛ տղամարդկանց, և՛ կանանց վրա։ Մենք այդ նպատակով ենք մեր օրենքներն այնտեղ ուղարկել, որպեսզի նման հարցերի կապակցությամբ դիմեն նրանց։*

*1. Եվ քանի որ մենք բոլորովին անտեղի ենք համարում [վերանայել] այն, ինչ արդեն կատարվել է անցյալում, այդ պատճառով հրամայում ենք, որ սույն օրենքը ուժի մեջ մտնի մեր բարեպաշտ թագավորության սկզբից հաշված[2], և այդ օրից մինչև այժմ վախճանված մարդկանց թողած ժառանգության հարցերը լուծել այս [նոր] օրենքի համաձայն, բացառյալ այն դեպքերը, երբ հարցն արդեն լուծված է, և այս կամ այն կերպ որոշված։ Այդպիսի դեպքերում հրամայում ենք հարցը չվերանայել և թողնել ուժի մեջ։*

*2. Մենք ցանկանում ենք, որ նշված ժամանակվանից կանայք ևս իրավունք ունենան, այսպես կոչված, տոհմային կալվածքներից ժառանգություն ստանալու։ Իսկ եթե գտնվեն այնպիսիք, ովքեր հակառակ իրենց սովորութային ժառանգական իրավունքի, իրենց դուստրերին արդեն գրանցել են որպես ժառանգորդ, այդ դեպքում այդ կանայք և նրանցից ծնված երեխաները մասնակից թող դառնան տոհմային կայքի ժառանգմանը։*

### [Վ ե ր ջ ա բ ա ն]

*Քո գերազանցությունը թող պահպանի և ի կատար ածի սույն սրբազան օրենքով արտահայտված մեր կամքը, որպեսզի մեր օրենքները տարածվեն և ուժ ունենան բոլորի վրա։ Սույն օրենքը, ինչպես ասացինք, գործողության մեջ է մտնում մեր թագավորության սկզբից, որից սկսած պետք է խստիվ ղեկավարվել նրանով, և բոլորը [պարտավոր են] այն պահպանել»։*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ 21-ՐԴ ՆՈՎԵԼԼԱՆ՝ ՀԱՅՈՑ ԺԱՌԱՆԳԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԻ ՄԱՍԻՆ[6]

«Հայերի մասին, որպեսզի նրանք ևս ամեն ինչում հետևեն հռոմայեցիների օրենքներին: Նույն կայսրը Ակակիոսին, Հայաստանի գերապայծառ անթյուպատոսին:

### [Ն ե ր ա ծ ու թ յ ու ն]

*Ցանկանալով, որ Հայոց աշխարհում գործեն լավ օրենքներ և այնպես անել, որ այն ոչնչով չտարբերվի մեր պետությունից, մենք զարդարեցինք այն հռոմեական վարչաձևով, վերացրինք նրա նախկին անվանումները։ Մենք սովորեցրինք նրանց օգտվել հռոմեական կարգ ու կանոնից և կարգադրեցինք, որ նրանք [կառավարվեն] միայն այն օրենքներով, որոնք ընդունված են հռոմայեցիների մոտ։ Մենք որոշեցինք սույն օրենքով վերացնել նրանց այդ սխալը, որպեսզի, հակառակ իրենց բարբարոսական սովորույթին, ծնողներին, եղբայրներին և մնացած ազգականներին ժառանգելու իրավունք ունենան ո՛չ միայն տղամարդիկ, այլև կանայք, որ կանայք առանց պռույգի չամուսնանան, և որպեսզի նրանք այսուհետև չգնվեն իրենց ապագա ամուսինների կողմից, մի առավել բարբարոսական սովորույթ, որ մինչև օրս նրանց մոտ օրենքի ուժ ունի։ Լոկ նրանք չեն, որ նման վայրենի սովորություն ունեն, այլև ուրիշ ժողովուրդներ ևս։ Դա մարդկային բնության անպատվությունն է, կանանց սեռի ստորացումը։ Կնոջը դիտում են որպես ցածր և անպատիվ մի էակի, ամեն մի պատվից զրկված լինելու արժանի, կարծես նա աստուծուց չի ստեղծվել և չի մասնակցում սերնդի հարատևմանը։*

## ԳԼՈՒԽ Ա

Արդ, սույն սրբազան օրենքով սահմանում ենք, որ հայերի մոտ ևս ուժ ունենան կանանց՝ ժառանգելու մասին մեր իրավունքը, մեր օրենքները, ոչ մի տարբերություն գոյություն չունենա տղամարդկանց և կանանց միջև։ Ինչպես որ սահմանված է մեր օրենքներով՝ ծնողներին ժառանգելու իրավունքի մասին, այն է հոր, մոր, պապին, տատին և այսպես վերընթաց գծով, կամ էլ վայրընթաց գծով՝ որդուն, դստեր ժառանգելու մասին, ահա այդ նույն կարգով կատարվի նաև հայերի մոտ և Հայաստանում գործող օրենքները ոչնչով չտարբերվեն հռոմայեցիների [օրենքներից]։ Քանի որ նրանք մեր պետության հպատակներն են և մյուս ժողովուրդների հետ միասին մեզ են ծառայում և վայելում մեր [բարիքները], ապա չի կարելի, որ միայն նրանց մոտ կանայք չօգտվեն այն հավասարությունից, որ գոյություն ունի մեզ մոտ։ Բոլորի վրա հավասարապես թող տարածվեն մեր օրենքները, և այն [օրենքները], որոնք մենք վերցրել ենք հներից և զետեղել մեր ինստիտուցիաների և դիգեստաների մեջ, ինչպես նաև նախկին ինքնակալների և մեր կողմից հրապարակված օրենքները։

## ԳԼՈՒԽ Բ

Մենք սահմանում ենք, որ այս բոլորը ուժի մեջ լինեն ընթացիկ տասնչորսերորդ ինդիկտիոնի սկզբից[7], սույն օրենքի հրապարակումից։ Մենք գտնում ենք, որ անցյալի վրա այն տարածելը ոչ թե կկարգավորեր հարցը, այլ ընդհակառակը առաջ կբերեր խառնաշփոթություն։ Այն թող ուժի մեջ մտնի, ինչպես ասացինք, ընթացիկ ինդիկտիոնի սկզբից. այսուհետև ժառանգելու մեջ հավասարություն կա, ժառանգելու իրավունքը հավասարապես տարածվում է և՛ կանանց, և՛ տղամարդկանց վրա։ Անցյալում կատարվածը և՛ տոհմական կալվածների[8], և՛ որևէ այլ կայքի [ժառանգության] վերաբերյալ՝ թույլ ենք տալիս մնա անփոփոխ, և կանայք ոչ մի դեպքում չպետք է մաս ունենան այդ տոհմական կալվածներից և ընդհանրապես ժառանգությունից, որն արդեն տրվել է մինչև 13-րդ ինդիկտիոնը ներառյալ։ Մեր սույն օրենքը ուժի մեջ է մտնում միայն նշված ժամանակվանից, այն է 14-րդ ինդիկտիոնից։

## Վերջաբան

Քո պայծառափայլությունը և քեզանից հետո պաշտոնդ ստացողները մեր սույն սրբազան օրենքը թող հավիտյան սլահպանեն»։

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ 31-ՐԴ ՆՈՎԵԼԼԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱՐԵՆՈՐՈԳՈՒՄՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ⁹

«Հայաստանի չորս արխոնտների նշանակման մասին

*Նույն կայսրը Արևելքի սրբազան պրետորիոնի երկիցս պրեֆեկտին, ամենափառավորյալ Հովհաննեսին՝ ապոհյուպատոսին և պատրիկին։*

### [Ներածություն]

*Այն ինչ թափթփված է և դես ու դեն ցրված, եթե պետք եղած կարգի բերվի և դասավորվի՝ բոլորովին այլ տեսք կստանա։ Տղեղը գեղեցիկ կդառնա, վատը՝ լավ, այն, ինչ նախկինում ցրված էր և խառնիճաղանջ, ձև կստանա և որոշակիություն ձեռք կբերի։ Մենք ահա այդպիսի վատ դրության մեջ գտանք Հայոց երկիրը և որոշեցինք ընդհանուր ձևի բերել այն, որպեսզի բարեկարգ վիճակը նրան անհրաժեշտ հզորություն տա և պետք եղած կարգ ու կանոնը հաստատվի։*

### ԳԼՈՒԽ Ա

*Այդ իսկ նպատակով մենք կազմակերպեցինք չորս Հայք, մեկը՝ Ներքնագույնը, որի մայրաքաղաքը կրում է մեր բարեպաշտ անունը, անցյալում Բաղանիս կամ Լեոնտոպոլիս։ Նրան մենք շնորհեցինք անթյուպատոսություն և նրա կառավարիչ նշանակեցինք պայծառափայլ Ակակիոսին, որի պաշտոնը համարում ենք սպեկտաբիլային[10] և շնորհում նրան բոլոր այն, ինչ հասնում է անթյուպատոսության։ Մենք նրան շնորհեցինք անթյուպատոսի նշանակներ և օժտեցինք բոլոր այն իրավունքներով, որ հասնում են այդ պաշտոնին։ Ներքնադույն [Հայքին] մենք տալիս ենք հետևյալ քաղաքները. Թեոդոսուպոլիսը, որը նախկինում ևս նրա կազմի մեջ էր մտնում, Սատալան, Նիկոպոլիսը, Կոլոնիան՝ վերցնելով այն, այսպես կոչված, Առաջին Հայքից, Տրապիզոնն ու Կերասուսը՝ նախկին Պոդեմոնյան Պոնտոսից։ Այսպիսով որոշ [քաղաքներ] վերցնելով պրովինցիայի պայծառափայլ արխոնտից, ինչպես և երևելի մոդերատորից, կազմում ենք մեկ ամբողջական պրովինցիա՝ յոթ քաղաքով և նրանց շրջաններով։*

*1. Մենք կազմակերպեցինք Երկրորդ Հայքը, որ նախապես Առաջին [Հայք] էր կոչվում՝ Սեբաստիա կենտրոնով։ Մենք նրան տվեցինք Սեբաստուպոլիս քաղաքը, որն անցյալում էլ նրա կազ-*

*մում էր, դրա վրա ավելացրած նաև Կոմանան՝ վերցնելով այն անցյալում Պողեմոնյան Պոնտոս կոչվածից, Զելան՝ Հելենոպոնտոսից, նաև Բրիսան, այնպես որ այս պրովինցիայի կազմում կա հինգ քաղաք, իսկ կառավարման հեգեմոնային ձևը թողնում ենք, ինչպես որ նախկինում էլ էր, իսկ կառավարչին չտվեցինք ավելի բարձր աստիճան, այլ թողեցինք նույնը, ինչ նախկինում ուներ։*

*2. Այնուհետև կազմեցինք Երրորդ Հայքը, որ նախկինում Երկրորդ [Հայք] էր կոչվում։ Կենտրոնը հին, երևելի Մելիտենե քաղաքն է, որ գտնվում է շատ հարմար վայրում, ունի առողջ կլիմա և գտնվում է Եփրատի հոսանքից ոչ հեռու։ Մենք ներկա հրամանագրով հարմար գտանք այն բարձրացնել սպեկտաբիլային աստիճանի, նրա արխոնտին հորջորջել հուստինիանոսյան կոմես, և որպես ռոճիկ սահմանում ենք յոթ հարյուր սոլիդ, նրա օգնականին՝ յոթանասուն երկու սոլիդ, իսկ նրա գիվանատան՝ վաթսուն սոլիդ և այն ամենը, ինչ սահմանված է նման աստիճանների համար։ Տաքսեոտ կոչվածները [պարտավոր են] զբաղվել ինչով որ իրենք անցյալում զբաղվում էին, մասնավորապես սլետական հարկերի գանձման գործով։ Նրանց անունն է միայն փոխվում և կոչվում են այժմ կոմիտիանոսներ, իսկ մնացած ամեն ինչը մնում է անփոփոխ, ինչպես նախկինում տաքսեոտների ժամանակ։ Նրան տալիս ենք հետևյալ քաղաքները. Արքա, Արաբիսոս, Արիարաթիա, մյուս Կոմանա (սա կոչվում է նաև Ոսկե [Կոմանա]), Կուկուսոս, որոնք և անցյալում էլ ուներ, և այսպիսով նրա կազմում կա վեց քաղաք։*

*3. Մենք կազմեցինք նաև Չորրորդ Հայքը, որ նախկինում պրովինցիայի կառուցվածք չուներ։ Նա բնակեցված լինելով ազգություններով, կրում էր տարբեր բարբարոսական անուններ՝ Ցոփանենե, Անզիտենե, Ցոփանե, Ասթիանենե, Բալաբիտենե և գտնվում էր սատրապների իշխանության ներքո։ Այս իշխանության նման հորջորջումը ո՛չ հռոմեական է, ո՛չ էլ մեր նախնիներից է գալիս, այլ ներմուծված է օտար պետությունից։ Մենք այնտեղ ևս քաղաքացիական կառավարում հաստատեցինք, քաղաքացիական արխոնտ նշանակելով, և նրան տվեցինք Մարտիրոպոլիս քաղաքը ու Կիթարիզոն ամրոցը։ Եվ քանի որ մենք նրան կոնսուլային դարձրինք, հետևաբար նա դասվեց օրդինար[11] պրովինցիաների շարքը, այնպես որ չորս Հայքերից երկուսը սպեկտաբիլային են, որոնցից մեկը կառավարվում է անթյուպատոսի կողմից, մյուսը՝ կոմեսի, Առաջին Հայքի կառավարիչը անթյուպատոս է, իսկ Երկրորդ Հայ-*

ֆինը՝ կոմես։ Ինչ վերաբերում է Երկրորդ և Չորրորդ [Հայքի] կառավարիչներին, ապա նրանք օրդինար են։ Մենք կարգադրեցինք, որ մինչև հինգ հարյուր դահեկան գումարի բողոքարկման հարցերով չդիմեն երջանիկ քաղաքին, այլ մերձակա սպեկտաբիլային արխոնտներին։ Այդ իսկ պատճառով մենք սահմանում ենք, որ Սեբաստիա, Առաջին Հայքի արխոնտին, այն է՝ անթյուպատոսին ուղղվեն բողոքարկումներր Երկրորդ Հայքից, իսկ մինչև վերոհիշյալ գումարի չափով բողոքարկումները Չորրորդ Հայքից՝ Մելիտինե, Երրորդ Հայքի կոմեսին։

ԳԼՈՒԽ Բ

Այս բոլորից հետո մենք նպատակահարմար գտանք, որ Երրորդ Հայքի կառավարիչ նշանակենք մի հայտնի մարդու, որն արդեն երկար ժամանակ ծառայել է մեզ և արժանի է այդ մեծ և կարևոր պաշտոնին։ Այդպիսին մենք համարում ենք պայծառափայլ Թովմային, որը երկար ժամանակ պաշտոնավարել է Հայաստանում, բացի դրանից նա օգտակար է և ազնվորեն է մեզ ծառայել ու ծառայում։ Ահա նրան ենք մենք առաջ քաշում այդ պաշտոնին, որպեսզի նա կառավարի այս պրովինցիան մեր կողմից սահմանված կարգի համաձայն, հոգ տանի կատարելու մեր այլևայլ կարգադրությունները, որոնք ուղղակի մեր կամ անուղղակի՝ սրբազան կոմմոնիտորիաների կողմից են տրվում նրան, և՛ իրեն վստահված պրովինցիայի, և՛ մյուս [պրովինցիաների] վերաբերյալ։ Այդ առթիվ մենք պատրաստել ենք նրա համար բազում և զանազան հարցերի վերաբերյալ սրբազան կոմմոնիտորիաներ, որոնք նա պետք է ի կատար ածի շրջաններում ևս։

1. Ինչպես բազմիցս ասել ենք, հոգևորականության վերաբերյալ պետք է պահպանել նախկին իրավիճակը, ոչ մի բան չի փոխվում ո՛չ մետրոպոլիտների իրավունքների հարցերում, ո՛չ էլ նրանց ձեռնադրության գործում։ Ովքեր որ անցյալում իրավունք են ունեցել ձեռնադրելու, այժմ էլ թող ձեռնադրեն, և նախկին մետրոպոլիտները թող մնան իրենց վիճակում։ Այդ հարցում որևէ նորամուծություն չի կատարվում։

ԳԼՈՒԽ Գ

Միանգամայն հասկանալի է, որ քանի որ Երրորդ Հայքի կոմեսին մենք ոչ միայն քաղաքացիական, այլև ռազմական իշխանությամբ օժտեցինք, ապա նրան են ենթարկվում նաև այդ [պրո-

վինցիաներում] գտնվող զինված ուժերը։ Նա, որպես ռազմական ղեկավար, իրավունք ունի իր կողմից կարգադրություններ անելու նրանց, հոգ տանել և ապահովել նրանց մատակարարումը, քննել նրանց թույլ տված ապօրինությունները, թույլ չտալ, որ զինվորները բռնանան հպատակների վրա։ Եթե ավելի ծանր հանցանք կատարվի, ապա նա [պետք է] լսի այդ քրեական գործը՝ եթե օրինազանցները զինվորականներ են։ Նա օժտված է այն բոլոր լիազորություններով, ինչ որ ռազմական ղեկավարները։ Ինչպես որ մենք ռազմական լիազորություններ տվեցինք Իսավրիայի, Պակատյան Փռյուգիայի կոմեսներին, նույնպես և Լիկաոնիայի, Պիսիդիայի և Թրակիայի պրետորներին, այնպես և նա ոչ միայն քաղաքացիական գործերում իշխանություն ունի, այլև ռազմական։ Նա իրավասու է և' զինվորական, և' քաղաքացիական անձնավորություններին կարգադրություններ կատարելու, որպես միասնական իշխանության կրող։ Նրա հիմնական հոգսը պիտի լինի այն, որ պրովինցիաներում ոչ մի հանցագործություն տեղի չունենա, անհրաժեշտ պատիժ սահմանի [զանցանքների համար]։ Նրա այդ իրավասությունը տարածվում է պրովինցիայի բոլոր անձնավորությունների վրա [հավասարապես], մասնավոր անձնավորություն է նա, զինվորական, թե պետական պաշտոնյա։ Մենք ուզում ենք, որ մեր հպատակների մեջ մշտապես տիրի անդորրությունը, որպեսզի աշառությունը օրենքի հանդեպ արհամարհանք չառաջացնի։

## Վերջաբան

Այսպիսով քո գերազանցությունը թող ջանա այժմ և միշտ պահպանել այն, ինչ ներկայացրել ենք մենք՝ չորս Հայքերի կազմակերպման մասին կարգադրությամբ, մասնավորապես Երրորդ [Հայքի] մասին, որը և պատճառ դարձավ սույն սրբազան օրենքի հրապարակման, և ամեն ինչ անի, իր կողմից նույնիսկ հատուկ կարգադրություններ հրապարակելով, մեր սահմանած ամենամյա հարկերը հավաքելու համար»։

## ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ
## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

1 *Հուստինիանոս կայսր (527—565)։ Մինչև 527 թ. իշխել է իր հորեղբայր Հուստինոսի հետ։ Նրա մասին ավելի մանրամասն տե՛ս սույն աշխատության Առաջաբանում։*

2 *Բարբարոս բառը հունական աղբյուրներում չունի այն նշանակությունը, ինչ տալիս ենք մենք նրան այժմ։ Հույները բարբարոս էին անվանում բոլոր ոչ հունական ժողովուրդներին իրենց համար անհասկանալի, կոպիտ թվացող լեզվի համար։ (Հմմտ. Ստրաբոն, 14, 2, 28.* „οἶμαι δὲ τὸ βάρβαρον κατ᾽ ἀρχὰς ἐκπεφωνῆσθαι οὕτως κατ᾽ ὀνοματοποιιαν ἐπι τῶν δυσεκφόρως καὶ σκληρῶς καὶ τραχέως λαλούντων“*)։ Սրանից էլ բարբարոս բառը դարձավ հավասարազոր օտարազգի, այլազգի, այլացեղ, այլալեզու հասկացություններին։*

3 *Զորավար Բելիսարիոսը ծնվել է 505 թվականին Դարդանիայում։ Երիտասարդ ժամանակ ապագա կայսր Հուստինիանոսի թիկնապահն էր։ Երբ Հուստինիանոսը կայսր դարձավ, նա նշանակվեց Պարսկաստանի դեմ տարվող պատերազմի զորահրամանատար։ 527 թ. նշանակվեց Դարա ամրոցի կայազորի պետ։ Այդ ժամանակ էր, որ Պրոկոպիոսը դարձավ Բելիսարիոսի խորհրդականը։ 532 թ. Կոստանդնուպոլսում Հուստինիանոսի դեմ ծագած «Նիկա» ապստամբության հիմնական ճնշողը Բելիսարիոսն էր։ 532 թ. պարսկա-բյուզանդական հաշտությունից հետո, 533 թ. Բելիսարիոսը գլխավորեց վանդալների դեմ մղվող պայքարը Աֆրիկայում։ 535 թ. Բելիսարիոսը գլխավորեց վեստգոթերի դեմ մղվող պայքարը Իտալիայում։ 540 թ. նա նորից գլխավորեց վերսկսված բյուզանդա-պարսկական պատերազմը, բայց սկզբում անհաջողության մատնվելով, 541 թ. կանչվեց Բյուզանդիոն։ 545 թ նա նորից Իտալիայում էր գտնվում և գլխավորում էր գոթերի դեմ մղվող պայքարը։ 549 թ. հետո մասնավոր կյանք էր վարում։ Իր կյանքի վերջին տարիներին, 563 թ. մեղադրվեց Հուստինիանոսի դեմ դավադրություն կազմակերպելու մեջ։ Բելիսարիոսը մահացավ 565 թ. մարտին։ Պրոկոպիոս Կեսարացին նրան ամենամռայլ գույներով է նկարագրում իր «Գաղտնի պատմության» մեջ։*

4 *Պրոկոպիոսն այստեղ ակնարկում է Հոմերոսի Իլիականի հետևյալ հատվածները, որոնք ժամանակին մատնացույց է արել Պրոկոպիոսի բնագրի հրատարակիչ Մալտրետուսը։ Իլիական, Ե. 192, Ը. 267, ԺԱ. 370, 371, Դ. 123, ԺԱ. 390։ Աղեղնավորների արհամարհված լինելը Հոմերոսի ժամանակ երևում է Իլիականի ԺԱ երգի 385-րդ տողից։*

5 *Հռոմայեցիներ։ Բնագրում* Ῥωμαῖοι: *Բյուզանդական աղբյուրներում հռոմա-*

լեցիներ են անվանվում ոչ միայն լատինալեզու բնակչությունը, այլև հույն։ Միջին դարերում «հոռոմայեցիներ» անվան տակ ենթադրվում էին հույները (այստեղից հայոց «հոռոմները»), որովհետև ʻΈλλην — հելլեն բառը ստացել էր նոր նշանակություն՝ հեթանոս, կռապաշտ։

6 Պրոկոպիոսը հաճախ պարսիկներին հին ավանդությամբ անվանում է մարեր։

7 Արկադիոս կայսրը, Թեոդոս Մեծի որդին։ Իշխել է Արևելահռոմեական կայսրության վրա 395—408 թթ.։ Պրոկոպիոսը և՛ բյուզանդական կայսեր, և՛ պարսից արքայից արքային, և այլ ժողովուրդների թագավորներին անվանում է βασιλεύς: Մենք, երբ հարցը բյուզանդացիների թագավորի մասին է, թարգմանում ենք «կայսր», պարսիկների թագավորի մասին՝ «արքա», իսկ մնացած ժողովուրդների՝ «թագավոր»։

8 Խոսքը ապագա Թեոդոս Փոքր կայսեր մասին է։ Իշխել է 408—450 թթ.։

9 Հոնորիոսը Թեոդոս Մեծի մյուս որդին էր, Արկադիոսի եղբայրը։ Իշխել է Արևմտահռոմեական կայսրության վրա 395—423 թթ.։

10 Ակնարկում է գոթական արշավանքները։

11 Տե՛ս ծանոթություն 6։

12 Հունարեն Ἰσδιγέρδης (պարսկ. Yazdegerd)։ Խոսքը Հազկերտ Ա-ի մասին է (399—421)։ Մովսես Խորենացին Թեոդոս Փոքրի մասին գրում է հետևյալը. «վախճանեալ Արկադեայ փոխանակ նորա թագաւորէ նորին որդի, որ կոչեցաւ Թէոդոս փոքր. և զնոյն բարեկամութիւն կալաւ ընդ մերում աշխարհիս և ընդ արքային մերում Վռամշապհոյ. բայց զմասն իւր ոչ հաւատաց նմա, այլ ինքեան կալաւ գործակալօք և խաղաղութիւն արար ընդ Յազկերտի արքայի Պարսից» (Գ, 54)։

13 Բնագրում Οὐαραράνης (նույն անունն ունեցող մի այլ անձնավորություն Պրոկոպիոսի մոտ բերված է Οὐαραράνης ձևով)։ Խոսքը պարսից արքա Bahram V Gōr-ի մասին է, Հազկերտ Ա-ի որդու (421—438)։ Թեոփանեսի ժամանակագրության մեջ նա հիշատակվում է որպես Γοροράνης կամ Γοράννης (Wa-յի փոխարեն Go-, կամ ինչպես ենթադրում է Յուստին (տե՛ս F.Justi, Iranisches Namenbuch, Marburg, 1895, S. 362, No 14) փխ. Gōr Warahran-ի)։ Հիշատակվում է Եղիշեի կողմից Վռամ ձևով (տե՛ս Եղիշէ. Վասն Վարդանայ և հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 6), ինչպես և Մովսես Խորենացու (Գ, 56), Սեբեոսի (տե՛ս Սեբեոսի Պատմութիւն ի Հերակլն, Երևան, 1939, էջ 20)։ Այս Վռամի ժամանակ է, որ վերանում է հայ Արշակունիների թագավորությունը՝ 428 թ.։

14 Արևելքի զորավար, բնագրում τῆς ἕω στρατηγός: Բյուզանդական կայսրությունը քաղաքական իմաստով բաժանված էր չորս մասի, պրեֆեկտուրաների, որի յուրաքանչյուրի գլխին կանգնած էր praefectus praetorio-ն։ Պետության արևելյան մասը գտնվում էր praefectus praetorio Orientis և praefectus praetorio Illyrici իշխանության ներքո։ Արևելյան պրեֆեկտուրայի մեջ էին մտնում հինգ դիոցեզներ. Oriens, Aegyptus, Asiana, Pontica և Thracia: Զերադույն իշխանությունը գտնվում էր magister militum—զորահրամանատարի ձեռքում։ Պետության արևելյան կիսում այդպիսի հրամանատարները հինգն էին, որոնցից երկուսը մնում էին մայրաքաղաքում և կոչվում էին magistri militum praesentales, իսկ երեքը՝ Թրակիայում, Իլլիրիայում և Արևելքում։ Վերջինս լատիներեն տերմինով կոչվում էր magister militum per Orientem — հունարեն, ինչպես վերևում հիշատակեցինք τῆς ἕω στρατηγός։ Հուստինիանոսը

*սրանց կողքին Հայաստանի վրա նշանակեց մի նոր* magister militum, *որի իշխանությունը բացի Հայաստանից, տարածվում էր նաև Պոլեմոնյան Պոնտոսի և հարավային Հայաստանի սատրապություն-նախարարություն-ների վրա։ Նրա պաշտոնական անվանումն էր* magister militum per Armeniam, et Pontum Polemoniacum et gentes: *Այդ մասին մանրամասն տե՛ս. Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, С.-Петербург, 1908, стр. 92—93; Byzantium, An Introduction to East Roman Civilization, ed. by *N. H. Baynes* and *H. St. L. B. Moss*, Oxford, 1949, p. 295; *G. Ostrogorsky*, Histoire de l'État byzantin, Paris, 1956, p. 70; *E. Stein*, Histoire du Bas-Empire, t. I, Paris, 1959, p. 122 sqq.

15 *Հաշտության պայմանագրի այս կետը, այսինքն այն, որ սահմանամերձ գոտում ռազմական շինարարությունը արգելվում է, արձանագրված է նաև Պրոկոպիոսի մյուս աշխատության մեջ (տե՛ս «Կառուցումների մասին», Բ, 1, սույն աշխատության 167 էջը)։*

16 *Հունարեն* Περόζης. *պարսկ.* Pērōz: *Հազկերտ Բ-ի որդին (459—484)։ Հայ աղբյուրներից նրան բազմիցս հիշատակում է Ղազար Փարպեցին և Սեբեոսը։*

17 *Հփթաղներ (հունարեն* Ἐφθαλῖται*) կամ «սպիտակ հոներ»* (Λευκοὶ Οὖννοι)*, պարսկ.* Hētal*, արաբ.* Haital *(հմմտ. Bailey*, Bulletin of the School of Oriental Studies, VI, 4 (1932), p. 946 sq.)*։ Հփթաղները բյուզանդական այլ աղբյուրներում կոչվում են նաև հոներ, հաճախ թուրքեր և աբդելներ. Տե՛ս Theophylacti Simocattae* Historiae, ed. C. de Boor, Lipsiae, 1887, lib. VII, cap. 7, 8, p. 257, lib. IV, cap. 6, 10, p. 161): *Հփթաղների առաջին ներխուժումը Խորասան տեղի ունեցավ 427 թ.։ Նրանց դեմ համառ պայքար մղեցին պարսից Վարահրան Ե (Վռամ կամ Վահրամ Գուր) և Հազկերտ Բ արքաները, որոնց հաջողվեց պարտության մատնել նրանց։ Բայց Հազկերտի մահից հետո հփթաղներն իրենց թագավոր Ակշունվարի գլխավորությամբ գրավեցին Չագանիանը, Բադաշխանը, Բալխը, Թոհարիստանը և Գարչիստանը։ Պարսից արքա Պերոզի արշավանքները (459 և 478 թթ.), ինչպես և վերջին 484 թ. արշավանքը անհաջող էին։ Հփթաղների հաջողությունը պայմանավորված էր այն սուր դասակարգային պայքարով, որ տվյալ ժամանակաշրջանում ծավալվել էր Պարսկաստանում և որի արտահայտությունը հիմնականում մազդակյան շարժումն էր։ Հայ հեղինակներից հփթաղների մասին հիշատակում է Եղիշեն (քուշաններ անվան տակ)։ Պերոզի պատերազմների մասին ընդդեմ հփթաղների մանրամասն խոսում է Ղազար Փարպեցին, իսկ օտար հեղինակներից՝ Հովհաննես Անտիոքացին (տե՛ս* Excerpta de insidiis ex Joanne Antiocheno, ed. C. de Boor. Berolini, 1905), *ինչպես և համառոտակի Իեշու Սյունակյացը (տե՛ս Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв. н. э. Сирийская хроника Иешу Стилита как исторический источник, Москва—Ленинград, 1940, стр. 131—132) *Պրոկոպիոսի աղբյուրը տվյալ պատմության համար Եվստաթիոս Եպիփանեցու աշխատությունն է, որը հասնում էր մինչև Անաստասիոս կայսեր 12-րդ տարին։ Եվստաթիոսի աշխատությունը մեզ չի հասել։ Նրանից որոշ մեջբերումներ է արել Եվագրիոսը (տե՛ս Evagrius*, The ecclesiastical history, ed. Bidez and Parmantier, London, 1896). *Հփթաղների մասին նորագույն ուսումնասիրություններից տե՛ս O. G. Wesendonk*, Kūsan,

Chioniten und Hephthaliten, Klio, 26 (1933), 336—346; *R. Ghirshman* Les Chionites-Hephtalites, Le Caire, 1948; *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, 2-e ed., Copenhague, 1944, p. 292 sqq.; *С. П. Толстов*, По следам древнехорезмийской цивилизации, Москва—Ленинград, 1948; стр. 213 и сл.; *А. Н. Бернштам*, Очерк истории гуннов, Ленинград, 1951, стр. 183—197; *К. В. Тревер*, Кушаны, хиониты и эфталиты по армянским источникам IV—VII вв., Советская археология, том 21 (1954), стр. 131—147; *G. Moravcsik*, Byzantinoturcica, Die byzantinischen Quellen der Geschichte der Türkvolker, Zweite durchgearbeitete Auflage, Berlin, 1958, Bd. I, S. 69 sq.

18 Գորգո քաղաք։ Միջին պարսկերենում՝ Գուրգան։ Քաղաք պարսից պետության հյուսիս-արևելքում, Կասպից ծովի մոտ, Գուրգան գետից հարավ։ Ռոուլինսոնը ենթադրում էր, որ այն կառուցվել է Պերոզի կողմից որպես պատվար ընդդեմ սպիտակ հոների։ Այժմ այն կոչվում է Sadd-i-Iskander կամ Kizil Alang։ Տե՛ս P. *Sykes*, A History of Persia, vol. I, London, 1921, p. 436.

19 Զենոն կայսր—474—491 թթ.։

20 Բյուզանդիան ձգտում էր սասանյան պետության թուլացման, դրա համար էլ դրդեց պարսկա-հեփթաղյան պատերազմը, սակայն երբ տեսավ, որ պարսից զորքը կարող էր գլխովին ոչնչանալ հեփթաղների կողմից, նա իր դեսպան Եվսեբիոսի միջոցով ուզեց կանխել այդ բանը։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 87.

21 Հեփթաղների թագավորի անունը մեզ տալիս են արևելյան աղբյուրները միայն, այն է պարսկական և արաբական, որոնք օգտագործել են խվատայնամակը։ Նա կոչվում էր Akhshunvar, Akhshuvan կամ Khushnuvāz, որ փաստորեն անուն չէ, այլ սոգդերեն kushevan «թագավոր» բառի աղավաղված ձևը։ Տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 294, n. 1; *G. Widengren*, Xosrau Anōsurvān, les Hephtalites et les peuples turcs, Orientalia Suecana, vol. I, Uppsala, 1952, p. 75, n. 1.

22 Մոգեր (հունարեն μάγοι)։ Մեծ տաճարների վերակացուները կրում էին mōghan mōgh (գրվում էր maguan magu կամ magu maguān) տիտղոսը։ Ամենաբարձր խավին էին պատկանում mōbadh-ները։ Հունական և լատինական հեղինակները ոչ մի տարբերություն չեն դնում մոգերի և մոբադների միջև, երկուսին էլ պարզապես անվանելով μάγος կամ magus։ Բոլոր mōbadh-ների վրա կանգնած էր mōbadhan mōbadh-ը, որը կոչվում էր նաև Mōghan andarzbadh. Հայկական սկզբնաղբյուրներում նա անվանվում է «մոգպետ», «մովպետան մովպետ», «մուբիտան մուբիտ», «մովան հանդերձապետ» կամ «մովան անդերձապետ» և կամ էլ «մոգաց անդերձապետ» (տե՛ս Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, «մոգ» բառը)։ Մոբադան մոբադը արքայից արքայի խորհրդականն էր. նա ուներ խոշոր ազդեցություն պետական բոլոր հարցերի լուծման գործում։ Այդ մասին գրում է և Եղիշեն. «քանզի ի բառնալ ազգին Արշակունեաց,—գրում է նա,— տիրեցին աշխարհիս Հայոց ազգն Սասանայ պարսկի, որ վարէր զեւր իշխանութիւնն օրինօք մոգուց» (Եղիշէ, Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, Երևան, 1957, էջ 6)։ Մոգերի մասին մանրամասն տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 116—122; *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, М.—Л., 1956, стр. 305.

23 Բնագրում Καβάδης, պարսկ. Kawāt։ Արքայից արքա Կավադը (488—531)։ Հայ հեղինակներից նրան հիշատակում է Սեբեոսը։

24 Աղով երդվելը Պարսկաստանում շատ էր տարածված։ Այդ մասին հիշատակություն կա նաև հայկական աղբյուրներում։ Երբ հայոց արքա Արշակ Բ-ը որոշեց գնալ Տիզբոն, այնուամենայնիվ նա նպատակահարմար համարեց պարսից արքայից պահանջել, որ նա երդվի աղով։ Այդ մասին Փավստոս Բուզանդը գրում է. «Իսկ Արշակ խնդրէր (ի Շապհէ—Հ. Բ.) հաւատարիմ երդումն ուխտիւ ի նմանէն, զի յայսմ հետէ անկասկած երթիցէ առ նա։ Եւ նա եա բերել՝ ըստ օրինացն հաւատարիմ երդմանց թագաւորութեանն Պարսից՝ աղ, կնքել վարազ նկարադիր մատանեաւ, և յղեաց» (Դ., 53)։

Հփթաղների և Պերոզի երդման մասին հիշատակություն ունի Ղազար Փարպեցին. «առաքեաց առ Պերոզ Հփթաղն, թէ «քո ընդ իս ուխտ է երդմամբ, դրով և կնքով, թէ չկռուեմ ընդ քեզ. և սահմանս կարգեցաք, զորովք չիշխեսցուք թշնամութեամբ անցանել առ միմեանս. արդ յիշեա զուխտն և զնեղութեան պաշարումն, յորմանէ ողորմեալ իմ արձակեցի զքեզ, և ոչ սպանի, և ի բաց դարձիր խաղաղութեամբ, և մի մեռանիր. ապա թէ ոչ լսես բանից իմոց՝ գիտա, զի կորուսանեմ զքեզ և զամենայն զանպիտան բազմութիւնդ, յոր դու յուսացեալ ես։ Քանզի ես և արդարութիւն ուխտապահութեան ի միասին կումք, և դու և ուխտազանցութեանն ստութիւն ի միասին եք. և արդ՝ դու ինձ զիարդ կարես յաղթել» (Գ. 85)։

25 Արաբ և պարսիկ ժամանակագիրների նկարագրության համաձայն Պերոզը սպանվեց իր բազմաթիվ մարդկանց հետ միասին հփթաղների թագավորի կողմից փորված մի փոսի մեջ և այս պատմվածքը (եթե դա նույնիսկ ճշմարիտ չէ) համենայն դեպս շատ հին է, որովհետև Ղազար Փարպեցին, մի ժամանակակից հեղինակ, ակնարկում է այդ մասին (տե՛ս Գ. 85)։ Հմմտ. *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 294.

26 Պրոկոպիոսը սխալմամբ Պերոզի անմիջական հաջորդ է համարում Կավադին։ 484—488 թթ. թագավորել է Վաղարշը։

27 Կավադը իշխանության սկզբում իր դիրքն ամրապնդելու համար կապեր հաստատեց Մազդակի հետ, ժամանակի խոշոր մի սոցիալական շարժման պարագլխի։ Կանանց համայնացման մասին, որ վերագրվում է մազդակյաններին և Կավադին, խոսում է նաև Իեշու Սյունակյանցը, բայց ուսումնասիրողները գտնում են, որ համենայն դեպս ընտանիքի վերացման մասին օրենք չի եղել, բայց չեն փորձում ժխտել Պրոկոպիոսի և Իեշու Սյունակյացի հաղորդած վերոհիշյալ փաստերը։ Մազդակյան շարժման և գաղափարախոսության մասին մանրամասն տե՛ս Th. *Nöldeke*, Geschichte der Perser und Araber zur Zeit der Sassaniden aus der arabischen Chronik des Tabari, Leiden, 1879; *A. Christensen*, Le règne du roi Kawadh I et le communisme mazdakite, Det kongelige Danske Videnskabernes Selskabs historisk-filologiske Meddelelser, IX, 6, 1925; Idem, Two versions of the history of Mazdak, Dr. Modi memorial volume, Bombay, 1930; *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, стр. 278—316; *Otakar Klíma*, Mazdak. Geschichte einer sozialen Bewegung im Sassanidischen Persien, Praha, 1957.

28 Պրոկոպիոսի մոտ շփոթություն կա։ Նա այստեղ Վաղարշ է անվանում իրականում Ջամասպին։ Կավադի դեմ բարձրացված ապստամբությունից հետո գահ բարձրացավ ոչ թե Վաղարշը, այլ Ջամասպը։ Վաղարշը իրականում

թագավորել էր Պերոզից անմիջապես հետո, 484—488 թթ., որի մասին Պրոկոպիոսը ոչինչ չգիտե, և Պերոզի անմիջական հաջորդ է համարում Կավադին։ Այդ մասին տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 348—349։

29 Գուսանաստադես, բնագրում Γουσαναστάδης, պարսկերեն Gushnaspdādh անունն է։

30 Խանարանգես, պարսկ. kanārang։ Խանարանգը Աբհարշահր նահանգի (սրա կենտրոնն էր Նիշապուր քաղաքը) մարզպանի հատուկ տիտղոսն էր, որի խնդիրն էր պաշտպանել երկիրը բարբարոսների հարձակումներից։ Խանարանգ նշանակում էր ռազմական գործերի ղեկավար։ Այդ պաշտոնը ժառանգական էր և պատկանում էր, սկսած Պերոզ արքայի ժամանակներից, Աբհարշահր նահանգի իշխանավորներին։ Խանարանգ տիտղոսը հանդիպում է նաև ասորական աղբյուրներում qanaraq ձևով։ Խանարանգեսի մասին մանրամասն տե՛ս *A. Christensen*, L'Empire des Sassanides, p. 27; *Idem* L'Iran sous les Sassanides, p. 107 n. 3; *J. Marquart*, Eranšahr nach der Geographie des Pseudo-Moses Chorenazi, Berlin, 1901, S. 74—75; *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, стр. 301։

31 Անհուշ բերդի մասին տե՛ս ցածր, ծանոթ. 38։

32 Տե՛ս ցածր, ծանոթ. 34։

33 Տե՛ս հաջորդ ծանոթությունը։

34 Խոսքը Արշակ Բ-ի մասին է (350—367)։ Պրոկոպիոս Կեսարացին որպես աղբյուր է հիշատակում «Հայոց պատմությունը», որոշակի ցույց չտալով նրա հեղինակի անունը։ Այդ մասին ուսումնասիրողները արտահայտել են զանազան կարծիքներ, որոնց մասին խոսք կլինի հետագայում։ Ինչ էլ որ լինի նրա աղբյուրը՝ Փավստոսը անմիջականորեն կամ միջնորդված, ինչպես ենթադրում են ոմանք, թե Փավստոսի օգտագործած որևէ աշխատություն, համենայն դեպս այս պատմությունը համընկնում է Փավստոս Բուզանդի մոտ եղածին (Դ. 54), այն տարբերությամբ, որ Պրոկոպիոսի մոտ պարսից արքան կոչվում է Պակուր, իսկ Փավստոսի մոտ դա Շապուհն է։

35 Խոսքը սպարապետ Վասակ Մամիկոնյանի մասին է։

36 Բնագրում Χόπρος, որ միայն այդ իմաստն ունի՝ դոմաղբ։ Շարունակության մեջ Պրոկոպիոսը մի քանի անգամ էլ այն անվանում է Χόπρος, բայց այլ տեղերում՝ հող՝ χοῦς։

37 Վասակի մահապատժի մասին վկայություն ունի Փավստոս Բուզանդը։ «Ապա ետ հրաման թագաւորն Պարսից մորթել զզօրավարն Հայոց Վասակ, և զմորթն հանել և լնուլ խոտով, և տանել ընդ նոյն բերդն յԱնդմըշն՝ որ Անյուշն կոչեն, ուր արգելին իսկ զթագաւորն Արշակ»։ Այսպիսի մահապատիժը տարածված էր Պարսկաստանում և գալիս է դեռ Աքեմենյան ժամանակներից և այն կոչվում էր «պարսկական» մահապատիժ։ Հայկական աղբյուրները ևս այս անվանում են պարսկական մահապատիժ. «ըստ պարսկի օրինակին հրամայէր (Ներսեհ արքան) զմորթն ի բաց հանել (Վարազի), և խոտով լնուլ» (Փավստոս Բուզանդ, Գ., 21, հմմտ. Խորենացի, Գ, 50)։

38 Անհուշ բերդ, պարսկերեն Andmishn, կամ Gelgard, Թեոփիլակտոս Սիմոկատտասի մոտ (Գ, 5) Γιλιγέρδα. Պրոկոպիոսը թարգմանում է անունը τὸ τῆς Λήθης φρούριον (Մոռացության բերդ), և անհավանական չէ, որ նա ներքոհիշյալ փաստը ևս վերցրած լինի Փավստոսից կամ նրա որևէ աղ-

բյուրից։ Փավստոսի մոտ այդ մասին հետևյալն է գրված. «յաւուրց ժամանակաց՝ յորմէ թագաւորութիւնս Պարսից կանկնեալ է, եւ բերդն այն Անյուշ բերդ կոչեցեալ է, չիք ոք մարդ եղեալ ի մարդկանէ՝ որ իշխեցեալ է յիշեցուցանել թագաւորաց զոր յայնմ բերդի եդեալ դոք է թագաւորաց, յիշելով զայն մարդ՝ որ յայնմ բերդի դոք եդեալ է» (Ե., 7)։ Նույն Փավստոսը Արշակի բանտարկության մասին գրում է հետևյալը. «Ապա տայր հրաման Շապուհ արքայ Պարսից՝ բերել շղթայս եւ արկանել ի պարանոցն Արշակայ և յոտս և ի ձեռս նորա երկաթս, և խաղացուցանել դնա յԱնդմըշն՝ զոր Անյուշ բերդն կոչեն» (Դ., 54)։ Մի քիչ հետո նա նույնիսկ տեղադրում է այս բերդը՝ «դի յԱնդմըշն բերդի կայ յերկրին Խուժաստանի» (Ե., 5), «ի կողմանս Խուժաստանի յԱնդմըշն բերդին. այս ինքն որ անուն Անյուշն բերդն կոչեն» (Ե., 7)։ Այս բերդը հիշատակում է նաև Մովսես Խորենացին. «Անուշն կոչեցեալ բերդն» (Գ., 35, Գ., 50, Գ., 55) և այլ հայ պատմագիրներ։ Հյուբշմանը Անդմիշնը նույնացնում է Անդիմիշկի հետ, Dizfūl քաղաքի (Խուժիստան) հին անվան հետ։ Տե՛ս *H. Hübschmann,* Armenische Grammatik, I Theil, Leipzig, 1895, S. 19։

39 Փավստոս Բուզանդը տալիս է մանրամասնություններ այս հայ իշխանի մասին (Ե., 7), որ նա կոչվում էր Դրաստամատ և «լեալ էր իշխան տան գաւառին և հաւատարիմ գանձուց Անգեղ բերդին, և ամենայն բերդացն արքունի՝ որ ի կողմանս յայնս. սոյնպէս և յերկրին Ծոփաց ի Բնաբեղ բերդին գանձքն լեալ էին ընդ նովաւ, և բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն»։ Նա միաժամանակ ցույց է տալիս, որ «զայս Դրաստամատն ներքինի զիշխանն զԱնգեղ տանն գերեալ տարեալ էր յերկիրն Պարսից ի ժամանակին յորժամ կալան զԱրշակ արքայն Հայոց»։ Փավստոսը կոնկրետացնում է այն «բարբարոս ժողովրդի» անունը, որի դեմ էր կռվել այս Դրաստամատը, դրանք քուշաններն էին, այսինքն Պրոկոպիոս Կեսարացու հեփթաղները։

40 Փավստոսը գրում է, որ Դրաստամատը «ուրախ առնէր զնա (զԱրշակ) գուսանօք»։ (Ե., 7)։

41 Այս պատմությունը, ինչպես ենթադրում է Ն. Ադոնցը, վերցված է Մար Աբաս Կատինայի (IV դար) Հայոց Պատմությունից, որը մտել է Փավստոս Բուզանդի Պատմության մեջ (տե՛ս *Н. Адонц,* Начальная история Армении у Себеоса в её отношениях к трудам Моисея Хоренского и Фавста Византийского, Византийский Временник, том VIII, 1901, вып. 1—2 стр. 20 и 33 отдельного оттиска)։ Մանուկ Աբեղյանը գտնում է, որ Պրոկոպիոսը օգտվել է Փավստոսի հայերեն տեքստից կամ անձնապես, կամ էլ մեկի օգնությամբ (տե՛ս նրա Հայոց հին գրականության պատմությունը, Գիրք առաջին, Երևան, 1944, էջ 168)։ Իսկ Հ. Մանանդյանը (տե՛ս նրա Начальная история Армении Мар-Абаса (К вопросу об источниках Себеоса, Моисея Хоренского и Прокопия Кесарийского), Палестинский Сборник, выпуск 2 (64—65), 1956, стр. 76—77) հավանական է դտնում, որ Պրոկոպիոս Կեսարացին ուղղակի կամ անուղղակի կերպով օգտվել է Մար Աբասի պատմության ոչ թե հայերեն, այլ հունարեն տեքստից։ Գ. Աբգարյանը վերջերս հրատարակած իր ուսումնասիրության մեջ պնդում է, որ Պրոկոպիոսի՝ Փավստոսից օգտվելու հանգամանքը անկասկած է։ Տե՛ս նրա «Սեբեոսի պատմությունը» և Անանունի առեղծվածը, Երևան, 1965, էջ 103։

XIX դարի հայագետների արտահայտած կարծիքների մասին (Սեն-

Մարտենի, Նեյմանի, Ք. Պատկանյանի և Մ. Էմինի, ապա նաև Դեստունիսի) մանրամասն տե՛ս Прокопия Кесарийского История войн Римлян с Персами, книга первая, Санкт-Петербург, 1876, приложение 1 (стр. 349—354) „Сличение рассказа Прокопия о Пакурии и Арсаке с сходным рассказом о них Фавста“.

42 Սեոսես, բնագրում Σεόσης։ Պարսկերեն Siyāvush անունն է, որի աստիճանն էր artēshtārānsālār, զորահրամանատար։ Այս Սիյավուշի մասին մանրամասն տե՛ս A. *Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 355 sq.

43 Կավադի փախուստի մասին հեփթաղների մոտ և նրա Պարսկաստան վերադառնալու տե՛ս նաև Իեշու Սյունակյացի ժամանակագրության մեջ. *Н.В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 136։ Կավադի փախուստը Պարսկաստան թվագրվում է 498/499 թվականով։ Տե՛ս նույն տեղում, էջ 92։

44 Տե՛ս ծանոթ. 29։

45 Տե՛ս ծանոթ. 30։

46 Ադերգունդունբադես (հունարեն 'Αδεργουνδουνβάδης). պարսկերեն Adhurgundādh անունն է։ Տե՛ս A. *Christensen*, op. cit., p. 351։

47 Ոչ թե Վլասես (Վաղարշը) պիտի լինի, այլ Ջամասպը։ Տե՛ս ծանոթ. 28։

48 Ադրաստադարան սալանես (artēshtārānsālar)։ Սա զորքի գլխավոր հրամանատարն էր։ Պրոկոպիոսի պնդումը այն մասին, որ Սեոսեսը (Սիյավուշը) առաջին և վերջին մարդն էր, որ ստացավ այս պաշտոնը ճիշտ չէ, որովհետև նրանից առաջ Kārnāmagh-ում (13. 3) հիշված Միհր Ներսեհի որդիներից մեկը՝ Կարդարը (V դարում) կրում էր այս տիտղոսը։ Կավադ Ա-ից հետո սկզբնաղբյուրներում այս տիտղոսը այլևս չի հանդիպում։ Տե՛ս A. *Christensen*, op. cit., p. 131—132, n. 1.

49 Ասորական աղբյուրների տվյալների համաձայն Կավադի դեսպանությունը Բյուզանդիոն և դրամ պահանջելը տեղի ունեցավ 491 թվականի վերջում։ Իեշու Սյունակյացը մեջ է բերում Անաստասիոս կայսեր պատասխանն այդ առթիվ. «Ինչպես ինձանից առաջ թագավորած Զենոնը քեզ դրամ չէր ուղարկում, այնպես էլ ես չեմ ուղարկում քեզ (ոսկին), քանի չես վերադարձրել ինձ Նիսիբինը։ Ես էլ քիչ պատերազմներ չեմ մղում բարբարոսների դեմ, որոնք դեպիդներ են կոչվում և նրանց դեմ, ովքեր բլեմմիեսներ են կոչվում և շատ շատերի դեմ։ Ես (սոված) չեմ թողնի հռոմեական զորքը, որպեսզի կերակրեմ քո զորքը»։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 135. Անաստասիոսի նման խիստ պատասխանը բացատրվում է Պարսկաստանի թուլացումով՝ տվյալ ժամանակաշրջանում։ Երկրում գնում էր բացահայտ դասակարգային պայքար, բացի այդ, Իրանին հպատակ բազմաթիվ ժողովուրդներ ապստամբություն էին բարձրացրել։ Երբ Բյուզանդիայում ծագեց իսավրացիների ապստամբությունը, Կավադը խորհելով, որ Բյուզանդիան դժվարին դրության մեջ է գտնվում, 495 թվականի վերջին, կամ 496 թ. սկզբին նորից դրամ պահանջեց, բայց դարձյալ բացասական պատասխան ստացավ։ Ըստ Իեշու Սյունակյացի տվյալների, Անաստասիոսը նրան պատասխանեց հետևյալ կերպ. «Եթե դու փոխարինաբար ես ուզում, ապա ես քեզ կուղարկեմ, բայց եթե ըստ սովորության, ապա ես չեմ արհամարհի հռոմեական զորքերին, որոնք կռվի մեջ են իսավրացիների հետ, որպեսզի օգնություն ցուցաբերեմ պարսիկներին»։

Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 136։

50 Անաստասիոսի և Կավադի ժամանակվա պարսկա-բյուզանդական պատերազմների պատմությունը շարադրելիս Պրոկոպիոս Կեսարացին օգտագործել է Եվստաթիոս Եպիփանեցու աշխատությունը։ Այդ պատմությունը Պրոկոպիոսի մոտ որոշ չափով մանրամասն է մինչև 503 թվականի դեպքերի շարադրությունը, դրանից հետո ավելի համառոտ է դառնում, որովհետև Եվստաթիոսի գործը ավարտվում է 503 թվականի դեպքերի շարադրմամբ։ Պրոկոպիոսի աղբյուրները հետագա շրջանի մասին պետք է ենթադրել, որ ավելի սուղ են եղել։ Տե՛ս *Н.В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв. с.27։ Վերոհիշյալ պատերազմների մասին կա առանձին ուսումնասիրություն։ Տե՛ս *Merten*, De bello Persico ab Anastasio gesto, Lipsiae, 1905.

51 Պրոկոպիոս Կեսարացին ընդհանուր կերպով ասում է, որ Կավադը սկզբում «ինքը անձամբ հարձակվեց Հայաստանի վրա» և մեծ ավար վերցրեց։ Ասորի ժամանակագիր Իեշու Սյունակյացը տալիս է արժեքավոր մանրամասնություններ, որ արշավանքը Կավադը կատարել է հոնական զորքով և նախ և առաջ հարձակվել է Թեոդոսուպոլիս քաղաքի վրա Հայաստանում (502 թվականի օգոստոսի վերջին և սեպտեմբերին), և որ մի քանի օր հետո գրավեց այդ քաղաքը, այն պատճառով, որ նրա կառավարիչ Կոստանդինը, որը թշնամաբար էր տրամադրված դեպի կայսրը, ապստամբություն էր բարձրացրել հռոմայեցիների դեմ և քաղաքը հանձնել թշնամուն։ Այս դեպքը հիշատակում է նաև բյուզանդական ժամանակագիր Թեոփանեսը, որն այս Կոստանդինին հիշատակում է որպես սենատոր և իլլիրական զորաբանակների հրամանատար (տե՛ս *Theophanis* Chronographia, t. I, p. 144)։ Իեշու Սյունակյացը տալիս է ուրիշ մանրամասնություններ էլ, որ Կավադը թալանեց քաղաքը, հրդեհեց այն, ամայացրեց քաղաքի հյուսիսային մասում գտնվող բոլոր բնակատեղիները և գերեվարեց բնակչությունը, որ նա հիշյալ Կոստանդինին իր զորահրամանատարը դարձրեց, պաշ քաղաքում կայազոր թողնելով հեռացավ։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 148. Իեշուն պատմում է նաև, որ պարսից զորքը Թեոդոսուպոլիսը գրավելուց հետո ամայացրեց Ագելը, Սուֆը, Արմենիան և Արաբը (նույն տեղում, էջ 149)։ Ագելը դա Անգեղն է, Սուֆը՝ Ծոփքը, Արմենիան՝ Բյուզանդական Հայաստանը, իսկ Արաբը՝ բյուզանդացիներին պատկանող մի նահանգ Մծբինից արևմուտք (տե՛ս *Marquart*, Eranšahr S. 162—63, նաև *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 41, прим. 1. Համմտ. *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 149)։ Նույն Իեշուն մի քիչ հետո պատմում է, որ երբ Կավադի զորքի մի մասը արաբ թագավոր Նաամանի (Նաաման Գ Իբն ալ Ախվազ, Խիրայի արաբների թագավոր 438—503 թթ.) գլխավորությամբ պաշարում էր Եդեսիա քաղաքը, նրա պաշտպան Եվգենիոսը, տեսնելով պաշտպանության անհուսալիությունը, իր զորքը փրկելու համար դուրս եկավ քաղաքից, հարձակվեց Թեոդոսուպոլսում գտնվող պարսկական կայազորի վրա, կոտորեց բոլորին և գրավեց քաղաքը։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 150։

52 Ամիդ քաղաք, Միջագետքի հնագույն կենտրոններից մեկը, այժմ Դիարբեքիր, Տիգրիս գետի աջ ափին։ Դեռևս 230 թ. այստեղ դաղթել էին հռոմայեցիներ։ Կոստանդին Բ. կայսրն այն ընդարձակեց և ամրացրեց։ Կավադի կողմից

Ամիդի պաշարման մասին խոսվում է նաև Զաքարիա Միտիլենացուն վերագրված ժամանակագրությունում (Historia ecclesiastica Zachariae Rhetori vulgo abscripta, lib. VII, cap. 4. Corpus scriptorum christianorum orientalium, Scriptores syri, series tertia, t. VI, f. 2, ed. E. W. Brooks, t. II, Parisiis, 1921), ինչպես և Իեշու Սյունակյացը (տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 149—150)։ Բյուզանդական աղբյուրներից այդ պատերազմի մասին խոսում են Թեոփանեսն ու Մալալասը։ Ամիդի պաշարումն սկսվեց 502 թվականի հոկտեմբերի 5-ին։

53 Այս Հակոբը հիշատակվում է նաև Իեշու Սյունակյացի ժամանակագրության մեջ։ Նա Հակոբ Սերուգցին է կամ Բատնացին, ասորի գրող, Իեշուի ժամանակակիցը։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв, стр. 151։

54 Բնագրում Ἐνδιηλων։

55 503 թվականի հունվարի 11-ին։ Ասորական պատմիչներ Զաքարիա Միտիլենացին, Հովհաննես Եփեսացին և Իեշու Սյունակյացը գտնում են, որ Ամիդ քաղաքը պարսիկների ձեռքն անցավ դավաճանությամբ։ Վանքի վանահայրը լինելով պարսիկ, դավաճանել էր։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 101—102։

56 Իեշու Սյունակյացի և Զաքարիա Միտիլենացու տվյալներով Ամիդ քաղաքում կոտորվեց 80.000 մարդուց ավելի։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 151։

57 Ասորական սկզբնաղբյուրները ցույց են տալիս, որ Կավադի կայազորը բաղկացած էր երեք հազար հոգուց։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 105։

58 Խոսքը ապագա կայսր Հուստինոս Ա-ի մասին է (518—527)։

59 Թեոփանեսն այս Փարսմանին անվանում է Զունայի հայր, ծագումով լազ։ Տե՛ս *Theophanis* Chronographia, p. 224.

60 Քաղաք Միջագետքում։

61 Բնագրում Ἀρζάμων։

62 Սիֆրիոսի ասորերեն անվանումը Աշպարին է։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 153։

63 Այժմ Բատման գետ։

64 Բնագրում Ἀρζανηνή։ Խոսքը Աղձնիքի մասին է։

65 Մեկ լիտր ոսկին հավասար էր 72 ոսկեդրամի, դահեկանի։

66 Իեշու Սյունակյացը պատմում է, որ Ամիդի գրավումից հետո Արեոբինդոսը իր զորքով գնաց Պարսկահայաստան, կոտորեց տաս հազար հայ և պարսիկ տղամարդ, գերեվարեց երեսուն հազար կին ու երեխա, թալանեց ու կրակի տվեց բազմաթիվ գյուղեր։ Ամիդ վերադարձին նա քշեց տարավ հարյուր քսան հազար ոչխար, խոշոր եղջյուրավոր անասուններ և այլն։ Պատմիչը դրում է նաև, որ այս դեպքերի ժամանակ ոմն «Մուշլեկ (իմա Մուշեղ) հայ, որը պարսիկների իշխանության ներքո էր, դավաճանեց և իր զորքով անցավ բյուզանդացիների կողմը»։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 161։

67 Զաքարիա Միտիլենացին գիտե այս դավաճան գյուղացու անունը՝ Գադոնա, Ակարա գյուղից։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 122։

68 Բնագրում Θιλασάμων. գտնվում էր Ամիդից հարավ-արևմուտք։ Տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches, Bruxelles, 1935, 600 թվականի քարտեզը։

69 Ասորական աղբյուրների համաձայն, Գլոնեսի որդին դրանից հետո բանտարկեց տաս հազար երևելի ամիդցիների, արգելեց ամիդցիներին քաղաքից դուրս գալ պարեն հայթայթելու համար։ Այդ պատճառով քաղաքում զգացվեց պարենի խիստ պակասություն, սով, որը հասավ մարդակերության։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 122—123։

70 Բյուզանդական ժամանակագիր Թեոփանեսը պատերազմի վերջն է համարում Անաստասիոս կայսեր թագավորության տասնևհինգերորդ տարին։ Եթե Անաստասիոսի թագավորության առաջին տարին համարել 491 թվականը, ապա պատերազմը ավարտվել է 505 թվականին։ Հաշտության բանակցությունները տևեցին բավական երկար և հաշտությունը կնքվեց 506 թվականին։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв. стр. 126։ Ասորի պատմիչ Զաքարիա Միտիլենացու տվյալներով մագիստրոս Կելլերը Կավադին ուղարկեց 11 կենտինար ոսկի Ամիդ «քաղաքի ազատագրման և խաղաղության համար»։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 126։ Բյուզանդական ժամանակագիր Թեոփանեսը գրում է, որ բյուզանդացիների կողմից տրվել է երեք տաղանդ ոսկի, որի դիմաց նրանք ստացան Ամիդը, պարսիկների մոտ գտնվող պատանդներին, որոնց թվում և Բարսեղ Եդեսացուն։ Ալիպիոսը հիվանդանալով վախճանվել էր գերության մեջ։ Տե՛ս *Theophanis* Chronographia, p. 148—149։

71 Ասպեբեդ, պարսկ. Aspahapet-ի հունարեն տառադարձությունը. ծագում է հին պարսկական spādhapati-ից, պահլավական spāhbadh-ը, որն արտասանվում էր ƏSpāhbadh։ Նշանակում է զորագլուխ, զորապետ։ Հայկական սկզբնաղբյուրներում հանդես է գալիս «սպարապետ» ձևով (Ագաթանգեղոս, Եղիշե), ինչպես և «ասպարապետ» (Փարպեցի)։ Փոտ պատրիարքի մոտ նա հանդես է գալիս որպես 'Ασπέβεδος։ Թեոփանեսի ժամանակագրության մեջ այս տիտղոսը սխալմամբ ընդունված է որպես հատուկ անուն (ὡς ἀποστεῖλαι Κουάδην 'Ασπέτιον τὸν στρατηγὸν περὶ εἰρήνης ἐσπουδασμένος διαλεχθῆναι Ῥωμαίοις. *Theophanis* Chronographia, p. 148։ Իեշու Սյունակյացի աշխատության մեջ նա հանդես է գալիս որպես «աշտաբիդ», որ թարգմանվում է «մագիստրոս»։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 155։ Aspahapet—սպարապետի մասին տե՛ս *F. Justi*, Iranisches Namenbuch, S 306; *H. Hübschmann*, Armenische Grammatik, I Theil, S. 240; Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հատոր Ջ, էջ 399; *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 104, n. 1։

72 Կասպից դռներ, բնագրում Κάσπιαι πύλαι (լատիներեն Caspiae portae) Դարյալի կիրճը։ Հ. Մանանդյանը առաջ է քաշել մի նոր ենթադրություն, որի համաձայն Caspiae portae-ն դա Մեսոփս—Կոլխիսի ճանապարհն է, որի երկարությամբ, այժմյա Ախալքալաքի քաղաքի մոտ գտնվում էր Ասպիդա կամ Կասպիդա գավառ և Caspiae կայանը։ Տե՛ս նրա О местонахождении Caspia via и Caspiae portae, Исторические Записки, том 25, 1948, стр. 65—66։

73 Ենթադրվում է Բյուզանդիային ենթակա Հայաստանը։

74 Ոչ թե Պարսկահայք նահանգն է նկատի առնված, այլ պարսից տիրապետության տակ գտնվող Հայաստանը։

75 Հասկանալի է, Աղվանքի մասին է խոսքը։

76 Նկատի ունի Արևելյան Վրաստանը։ Արևմտյան Վրաստանը Պրոկոպիոսի մոտ կոչվում է Լազիկա կամ հին անունով՝ Կոլխիս։

77 Մեոտիս լճի տակ Պրոկոպիոսը հասկանում է այժմյա Ազովի ծովը։

78 Ալեքսանդր Մակեդոնացին։

79 Ալեքսանդր Մակեդոնացու այստեղ կառուցած ղարպասների մասին, ինչպես նաև ամրոցի՝ վկայում է Արրիանոսը։ Տե՛ս *Arriani* Anabasis, III, 15, 2։

80 Դարա, հունարեն Δάρας կամ Δάρα։ Բյուզանդական տերիտորիայում, Մծբինից մի քիչ հյուսիս և՝ նրա դիմաց գտնվող մի փոքր աննշան վայր էր, որ Անաստասիոս կայսեր կողմից 507 թվականից վերածվեց ամրացված քաղաքի և ստացավ Անաստասիուպոլիս անունը։ Այդ քաղաքի ավերակների վրա այժմ գտնվում է մի փոքր գյուղ, որ կոչվում է Դարա կամ Կարադերե։ Դարայի մասին տե՛ս հետևյալ ուսումնասիրությունները. *Sachau* Reise in Syrien und Mesopotamien, Leipzig, 1883; *Collinet*, Une ville neuve byzantine en 507. La fondation de Dara (Anastasiopolis) en Mésopotamie, Mélanges offerts à G. Schlumberger, Paris, 1924, I, 55; *W. Ensslin*, Zur Gründunsgeschichte von Dara—Anastasiopolis, Byzantinishe—Neugriechische Jahrbücher, V, 1927, 324—347։ Ասորի պատմիչ Իեշու Սյունակյացը Դարա քաղաքի հիմնադրումը դնում է 505—506 թթ. (տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 166—7), իսկ Զաքարիա Միտիլենացին գրում է, որ շինարարությունը ավարտվեց «երկու երեք տարում» (տե՛ս նույն տեղում, էջ 129), այսինքն հաշտության պայմանագրի կնքումից անմիջապես հետո, մի բան, որ արդեն այդ պայմանագրի բացահայտ խախտումն էր։ Շինարարության գործով զբաղվողներին պարսիկների հարձակումներից պաշտպանելու համար այնտեղ էր ուղարկվել Փարսմանը (տե՛ս ծանոթ. 59) իր զորաբանակով (տե՛ս նույն տեղում, էջ 167)։

81 Նիսիբիս, հունարեն Νίσιβις. հայերեն Մծբին։ Քաղաք բյուզանդա-պարսկական սահմանագլխում։ Այն հիշատակվում է դեռ սեպագիր արձանագրություններում։ Վերանորոգվում է հունա-մակեդոնական տիրապետության ժամանակաշրջանում։ Պարթևական ժամանակաշրջանում Նիսիբիսը դառնում է պատվար մեկ Պարթևաստանի, մեկ Հռոմի ձեռքում։ Երբ Սասանյան Պարսկաստանը տնտեսական և կուլտուրական կապեր հաստատեց Բյուզանդիայի հետ, սահմանամերձ Նիսիբիս քաղաքը հայտարարվեց որպես մի կետ, ուր պայմանագրով կարող էին մուտք գործել Պարսկաստանի հետ առևտուր անող բյուզանդական առևտրականները։ Սովորաբար Նիսիբիսում էին տեղի ունենում դիվանագիտական հարաբերությունները և կնքվում պայմանագրեր՝ Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև։ Մովսես Խորենացին Մծբին քաղաքի հիմնադրումը սխալմամբ վերագրում է հայոց Սանատրուկ արքային։ Ինչպես ցույց է տալիս Հ. Մանանդյանը, դա ոչ թե Մծբինն էր, այլ Մծուրնը։ Տե՛ս *Я. А. Манандян*, О торговле и городах Армении в связи с мировой торговлей древних времен (V век до н. э.—XV в. н. э.), Ереван, 1954, стр. 112 и сл.)։ Մծբինի մասին մանրամասն տե՛ս *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, стр. 50—64։

82 Թեոդոսուպոլիս-Կարինը կառուցվել էր Թեոդոս Բ կայսեր կողմից։ Պրոկոպիոսն ավելի մանրամասն է գրում այս քաղաքի վերաբերյալ իր «Կառուցումների մասին» աշխատության մեջ։ Թեոդոսուպոլիսը Հուստինիանոս կայսրը դարձրեց բյուզանդական Մեծ Հայքի (կամ Ներքնագույն Հայքի) զորավարի նստավայրը։

83 Հուստինոս Ա. (518—527)։

84 Կաոսես (պարսկերեն Kāūs)։ Gushnaspshāh-ների տոհմի վերանալուց հետո, մի տոհմ, որ տիրում էր Padhashkhvārgar-ում՝ Padhashkhvār-ի լեռնային շրջաններում (Տաբարիստան) մինչև Արշակունիների հարստության վերջը, Կավադը այս շրջանների կառավարումը թողեց Կաոսեսին։ Մարկվարտը ենթադրում է, որ Phthasuarsan-ը (Padhashkhvārshāh—„Padhashkvār-ի իշխանը“), Կավադի որդին, որը հիշատակվում է Թեոփանեսի կողմից (տե՛ս *Theophanis* Chronographia, p. 261) ոչ այլ ոք է, քան Կաոսեսը։ Տե՛ս *A. Christensen,* L'Iran sous les Sassanides, p. 353։

85 Զամես, հունարեն Ζάμης։ Պարսկական Ջամասպ անունն է։

86 Խոսքը ապագա արքայից արքա Խոսրով Անուշիրվանի մասին է (531—579)։

87 Բնագրում 'Ἀσπεβέδης. այն է spāhbadh-ի կամ Eran spāhbadh Բոե-յի (Boē անունը տալիս է Իեշուա Ստյունակյացը) քրոջից։ Տե՛ս *A. Christensen,* L'Iran sous les Sassanides, p. 336, n. 6. Համմտ. *H. Hübschmann,* Armenische Grammatik, I, S. 59, 78։ Ասպեբեդը, ինչպես ցույց ենք տվել (տե՛ս ծանոթ. 71) հատուկ անուն չէ, այլ ռազմական տիտղոս, որ նշանակում է զորավար, հայերեն՝ սպարապետ։

88 Հուստինիանոս Ա (527—565)։

89 Քվեստոր, հունարեն κοιαίστωρ. լատիներեն՝ Quaestor, այն է Quaestor Sacri Palatii։ Սա կայսերական պետական խորհրդի՝ Consistorium-ի նախագահն էր, ժամանակակից տերմինով՝ արդարադատության մինիստրը։

90 Խոսքը Հուստինիանոսի մասին է։

91 Տե՛ս ծանոթություն 42։

92 Տե՛ս ծանոթություն 48։

93 Բնագրում Μεβόδης. պարսկերեն Māhbōdh անվան հունարեն արտասանությունը։

94 Լազիկան Արևմտյան Վրաստանն էր, ի տարբերություն Իբերիայի, որի տակ հասկացվում էր Արևելյան Վրաստանը։ Պրոկոպիոսը և ընդհանրապես բյուզանդական աղբյուրները հաճախ Լազիկայի փոխարեն գործ են ածում հին անունը՝ Կոլխիս, իսկ լազերին անվանում են կոլխեր։ Այդ առթիվ Ագաթիասը ուղղակի գրում է, որ «οἱ δὲ Λαζοὶ Κόλχοι τὸ παλαιὸν ὠνομάζοντο, καὶ οὗτοι ἐκεῖνοι τυγχάνουσιν ὄντες», *Agathiae* Historiae, p. 103։ Նույն բանն է ասում նաև Պրոկոպիոսը մի այլ տեղում։ Տե՛ս սույն աշխատության 242-րդ էջը։

95 Պրոկոպիոսի այս հաղորդումը շատ հետաքրքրական է, որովհետև հիմք է տալիս ենթադրելու, որ դեպքը վերաբերում է մազդակյանների դեմ մղված պայքարին, մի շարժում, որ իր առավելագույն տարածումն էր գտել տվյալ ժամանակաշրջանում։ Պրոկոպիոսը միակ հեղինակն է, որ տալիս է մեզ Սիյավուշի (Սեոսեսի) անկման մանրամասնությունները, առանց հիշատակելու, որ նա աղանդավոր էր եղել, քանի որ բյուզանդացի հեղինակը չէր էլ հետաքրքրվում Պարսկաստանում տարածված աղանդներով։ Մենք չգիտենք, արդյոք

մազդակյանների մոտ կա՞ր իրենց մեռելներին թաղելու սովորությունը։ Մենք այնքանր դիտենք, որ Սեոսեսը աղատեց դահրնկեց արված և բանտարկված Կավադին՝ վերջինիս մազդակյանների հետ ունեցած կապի պատճառով և որովհետև Կավադը հովանավորում էր զրադաշտական հաստատություններին և հավատքին թշնամական տրամադրված և կրոնական նորամուծությունների կողմնակից մարդկանց։ Սրանից բխում է, որ Սեոսեսր հարում էր մազդակյաններին։ Սակայն մաղդակյան գաղափարները սկսում են սպառնական դառնալ արքայի համար և այդ տեսակետից Կավադի դիրքը Սեոսեսի հանդեպ հասկանալի է։ Արքայից արքան սկսեց ավելի ու ավելի հակադրվել մազդակյաններին և անցնել զրադաշտական հոգևորականության կողմը։ Նրա ամենամոտիկ խորհրդականներից մեկն է դառնում Մեբոդեսը, այն է Māhbodh-ը, որն ստանում է Sarnakhvèraghān այսինքն «nakhvēr-ների (նախարարների) գլխավոր» տիտղոսը. Տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 356։

96 Տե՛ս ծանոթություն 48։

97 Պրոկոպիոսը գրում է Ասիայի իբերներ, որպեսզի չշփոթեն Եվրոպայի իբերների հետ, որոնք ապրում էին Իսպանիայում։

98 Գուբդենը վրաց թագավոր օծվեց Վախթանգ Գորգասալից հետո։ Վրաց պատմությունը ընդդեմ Պարսկաստանի թվագրվում է 523 թ.։ Տե՛ս „Очерки истории СССР", III—IX вв., М., 1958, стр. 251։

99 Բոսպորոսի տակ ենթադրվում է Կիմմերյան Բոսպորոսը, ժամանակակից Կերչ քաղաքը։

100 Խերսոնի տակ ենթադրվում է ժամանակակից Սևաստոպոլ քաղաքը։

101 Վարիզ, հունարեն Οὐαρίζης։ Դա հայերեն Վահրիճն է, որ պարսկերենից է փոխառնված, պարսկերեն ձևն է Վահրիզ։ Հայկական աղբյուրներում այդ հանդես է գալիս ոչ թե որպես տիտղոս, այլ հատուկ անուն։

102 Այս Պերանիոսը հետագայում գլխավորում էր Հուստինիանոսի զորքը Լիբիայում և Իտալիայում մղվող մարտերում։

103 Սիտտասը (աղբյուրներում նրա անվան գրության ձևերը բազմապիսի են՝ Σίττας. Τζίττας. Ζίττας. Ζτίττας) նշանավոր բյուզանդական զորավար էր, ծագումով հայ։ Ըստ Ն. Ադոնցի Սիտտաս նրա կոչումն էր, իսկ իսկական անունն էր Ուրսիկիոս։ 528—529 թթ. Հուստինիանոսը նրան նշանակեց magister militum per Armeniam et Pontum Polemoniacum et gentes։ Նա առաջին անձնավորությունն էր հայերի այն երկար շարքում, որոնք նրանից հետո բազում գարեր և՛ ռազմական, և՛ քաղաքական ասպարեզում հսկայական դեր խաղացին Բյուզանդիայում։ Սիտտասը խնամիական կապերով կապված էր նաև Հուստինիանոսի արքունիքի հետ։ Իր կինը Թեոդորա կայսրուհու քույր Կոմիտոն էր։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 138; *Ernest Stein*, Histoire du Bas-Empire, tome II, Paris-Bruxelles-Amsterdam, 1949, p. 290։

104 Այս Նարսեսին չպետք է նույնացնել նույնանուն Նարսես ներքինու հետ, որ Բյուզանդիոնում պետական դանձապահ էր, և որին Պրոկոպիոսը հիշատակում է մի փոքր հետո։ Տե՛ս Գիրք Ա, 15,։

105 Սեն-Մարտենը Արատիոս (Ἀράτιος) անունը համարում է հայկական Հրահատ անվան բյուզանդական արտասանությունը։ Տե՛ս նրա 2-րդ ծանոթությունը Lebeau-ի Histoire du Bas-Empire նոր հրատարակության 8-րդ հատորի 43-րդ էջում։ Նարսեսն ու Արատիոսը ունեին մի եղբայր ևս՝

Իսաակեսին (Սահակին), որի մասին Պրոկոպիոսը հիշատակում է մի քիչ հետո (Ա. 15)։ Ն. Ադոնցն այս երեք եղբայրներին համարում է Կամսարական ընտանիքին պատկանող, որպես կռվան ունենալով այն փաստը, որ վերոհիշյալ անձնավորություններից մոտ կես դար առաջ ապրած Արշավիր Կամսարականի երեք որդիները կոչվում էին նմանապես Ներսեհ, Հրահատ և Սահակ (Ղազար Փարպեցի, Գ. 68, Գ. 90)։ Տե՛ս *E.Stein*, Histoire du Bas-Empire, t. II, p. 292,n.1։ Արատիոսը բյուզանդական զորքում կարևոր դեր է խաղացել և բազմիցս է հիշատակվում Պրոկոպիոսի գործերում։

106 Ներսեսի և Արատիոսի իտալական արշավանքի մասին Պրոկոպիոսը մանրամասն պատմում է «Գոթական պատերազմի մասին» աշխատության մեջ։

107 Մինդուոս, բնագրում, Μινδουος։

108 Հիերապոլիս ('Ιεράπολις նաև Βαμβύκη, Manbidj)։ Հին քաղաք Հալեպից հյուսիս-արևելք՝ երկու օրվա հեռավորության վրա։ Հիշատակվում է նաև «Աշխարհացոյց»-ում «քաղաք Հերապալիս՝ որ է Մաբուկ»։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 112։

109 Ամմոդիոս (Պրոկոպիոսի մոտ՝ 'Αμώδιον)։ Ամրոց հյուսիսային Միջագետքում, Դարայից 14 փարսախ հեռավորության վրա։ Նրա արամեական անունն է 'Ammudin։ Այժմ այն կոչվում է Tell 'Amude։

110 Պիտյուաքսես, հայկական սկզբնաղբյուրների «բդեշխ»-ը, որից և «բդեշխություն», մի ինստիտուտ, որ փոխ է առնվել Պարթևական Պարսկաստանից։ Սասանյանների ժամանակ նրանք Պարսկաստանում կոչվում էին bidhakhsh, վրացերեն՝ pitiakhshi, patiashkhi, patiashk։ Հունական սկզբնաղբյուրներում Πιτιάξης, Πιτυάξης, Πιτιάξης. ասորերեն՝ aptaksha։ Բդեշխությունները Հայաստանում առաջին կարգի մեծ իշխանություններ էին սահմանային շրջաններում։ Այդ պատճառով էլ բդեշխներն հայկական սկզբնաղբյուրներում կոչվում են «սահմանապահք», «կողմնակալք»։ Արշակունիների ժամանակ Ագաթանգեղոսի և Փավստոսի տվյալների համաձայն Հայաստանում գոյություն ունեին չորս բդեշխություն։ Սեն-Մարտենը ենթադրում է, որ վերոհիշյալ Պիտյուաքսեսի տակ ենթադրվում է Աղձնիքի հայ բդեշխը, որը գտնվում էր պարսից հպատակության մեջ։ Տե՛ս նրա 2-րդ ծանոթությունը Lebeau-ի Histoire du Bas-Empire-ի 8-րդ հատորի, 136-րդ էջում։ Բդեշխների և բդեշխությունների մասին տե՛ս *Marquart*, Eranšahr nach der Geographie des Ps. Moses Choren., Berlin, 1901; Հ. Մանանդյան, Ֆեոդալիզմը հին Հայաստանում, Երևան, 1934; *Herzfeld*, Paikuli Monument and Inscriptions of the Early history of the Sassanian Empire, gloss. No 214, 781; *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, pp. 22, 102:

111 Սեն-Մարտենը Բարեսմանաս (Βαρεσμανάς) անունն ուզում է ուղղել Μαρεσβανάς —Մարեսբանաս և նրա տակ տեսնել «մարզպան» տիտղոսը, ավելի կոնկրետ, հայոց մարզպան Մժեժ Գնունուն։ Տե՛ս նրա 3-րդ ծանոթությունը *Lebeau*-ի Histoire du Bas-Empire-ի 8-րդ հատորի էջ 136։ Տե՛ս նաև *V. Minorsky*, Roman and Byzantine Campaigns in Atropatene, BSOAS, 1944, XI, 2, p. 260:

112 Միրրանես (պարսկերեն Mihrān հայերեն՝ Միհրան)։ Սասանյան Պարսկաստանում եղել են յոթ մեծ ընտանիքներ, որոնց ձեռքում էր գտնվում երկրի իշխանությունը։ Նրանցից մեկ ընտանիքը կոչվել է Mihrān: Բյուզանդական հեղինակները պարսկական տոհմանունները շփոթում են տիտղոսների

հետ։ Տվյալ դեպքում Պրոկոպիոսը Պերոզի տոհմանուն Միհրանը ընդունում է սխալմամբ որպես տիտղոս։ Նա Պերոզ-Միհրան էր։ Տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 103, n 3: Հայկական սկզբնաղբյուրներում «Միհրան»-ի տոհմանուն լինելը շատ պարզ է երևում։ Այսպես, օրինակ, Եղիշեի մոտ կարդում ենք. «Իսկ կրտսեր որդւոյն Յազկերտի դայեակն, Ռահամ անուն ի Միհրան տոհմէն» (Եղիշեի վասն Վարդանայ և Հայոց պատերազմին, էջ 197)։ Ղազար Փարպեցու մոտ՝ «զՇապուհն ի Միհրան տոհմէն» (Գ., 79)։

113 Էրուլները (Eruli, Heruli) գերմանական ժողովուրդ էին, որոնք, դաշնակցած գոթերի հետ, սկսած III դարից արշավանքներ էին կատարում Հռոմեական կայսրության դեմ։ Անաստասիոս կայսեր ժամանակ ընդունեցին քրիստոնեությունը և հաստատվեցին Դանուբ գետի հարավում (512 թ.)։ Նրանք, դաշնակցած Հուստինիանոս կայսեր հետ, մասնակցեցին պարսիկների, վանդալների և գոթերի դեմ Բյուզանդիայի մղած պատերազմներին։

114 Մասսագետների քոչվոր ժողովուրդը ապրում էր Կասպից ծովի հյուսիսարևելյան շրջաններում, մինչև Արալյան լիճը։ Նրանց մասին հիշատակում է Հերոդոտոսը։ Պրոկոպիոսը հին տրադիցիայով այստեղ մասսագետ է անվանում հոներին։ Հայկական աղբյուրներում նրանք կոչվում են մազքութներ։

115 Այսինքն Բյուզանդիոն քաղաքի (Կոստանդնուպոլսի) բնակիչ։

116 «Անմահներ»-ի զորաբանակ գոյություն ուներ Պարսկաստանում դեռ Աքեմենյան ժամանակաշրջանում և բաղկացած էր տաս հազար հեծյալներից։ Այդ մասին հիշատակում է Հերոդոտոսը։ Սասանյան ժամանակաշրջանի «անմահները» ըստ երևույթին կազմակերպված էին աքեմենյան ձևով։ Նրանք «անմահ» էին կոչվում, որովհետև անընդհատ համալրվում էին և պահպանում սահմանված տաս հազարի քանակը։ Նրանց հրամանատարի տիտղոսն էր varthraghnighan-khvadhāy (տե՛ս *A. Christensen*, L'Iran sous les Sassanides, p. 208)։ Հայկական սկզբնաղբյուրներում «անմահների» գնդի մասին հիշատակում են Եղիշեն «գունդն մատեան» ձևով (էջ 115, 117) և Փավստոսը «մատենիկ գունդ» ձևով։ Բարսեղ վարդապետի Մարկոսի ավետարանի մեկնության մեջ այդ գնդի մասին հետևյալն է գրված. «էր և ի պարսկաց տունն գունդ մի՝ անուանեալ գունիգի և նմայրեան, այսինքն գունդ անմահական և ոչ ոք ունէր իշխանութիւն տանջել զնոսա՝ երբ մեղանչէին»։ Տե՛ս *H. Hübschmann*. Armenische Grammatik, I Theil, S. 192; Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հատ. Գ, էջ 867։

117 Բնագրում Καδισηνοί։

118 Բնագրում στράτευμα Σουνιτῶν։ Ուսումնասիրողների մի մասը սունիտների տակ ենթադրում է սյունեցիներին, Հայաստանի Սյունիք նահանգի բնակիչներին (տե՛ս *N. Adontz*, Les Taronites en Arménie et à Byzance, Byzantion 10 (1935), fasc. 2, p. 531), իսկ մյուս մասը՝ Սվանեթիայի բնակիչներին։ Ավելի հավանական է այս վերջին ենթադրությունը, թե խոսքը սվանների մասին է։

119 Բնագրում Οὖννοι οἱ Σάβειροι ἐπικαλοῦνται։ Սաբեյր հոները ապրում էին Հյուսիսային Կովկասում։ Նրանց տեղադրման մասին Պրոկոպիոսը խոսում է «Պարսկական պատերազմների մասին» աշխատության Բ. գրքի 29-րդ գլխում։ Նրանց մասին տե՛ս *G. Moravcsik*, Byzantinoturcica, Bd. I, S. 67—68, ուր և մանրամասն գրականություն։

120 Հունարեն գրության ձևն է Μερμερόης. պարսկերենն է՝ Mihr-mah-rūī (տե՛ս *F. Justi*, Iranisches Namenbuch, S. 203) կամ Mihr-Mihroe (*E. Stein*. Histoire du Bas-Empire, t. II, p. 291)։ Նրա մասին մանրամասն խոսում են Մենանդրոսն ու Ագաթիասը։ Վախճանվել է Մցխեթայում 554 թվականին։

121 Դորոթեոսը Հայաստանի դուքսն էր, իսկ իրականում Հայաստանի զորավարը Սիտտասն էր magister militum per Armeniam։ Տե՛ս *Н. Адонц*. Армения в эпоху Юстиниана, стр. 135։

122 Սատաղ, քաղաք Փոքր Հայքում, Մեծ Հայքի սահմանի մոտ։ Հուստինիանոսի ռեֆորմների ժամանակ մտավ Ներքնագույն Հայքի մեջ, նախապես I Հայքի մեջ էր գտնվում։ Վերոհիշյալ ճակատամարտը տեղի ունեցավ 530 թվականին։

123 Հունարեն Βῶλος. համապատասխանում է հայոց Բողբերդ ամրոցին. այժմ Բուղա-կալա։

124 Բնագրում Φαράγγιον։ Այս ոսկեհանքերը գտնվում էին Թորթումի ավազանը զատող Ղազան լեռնաշղթայի արևմտյան փեշերի վրա, ուր սկիզբ է առնում Ճորոխը, Սպերի դեմ առ դեմ։ Այս լեռները այժմ էլ հռչակված են իրենց հանքերով։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ Ֆարանգիոն հենց «հանք» է նշանակում, հայ-իրանական «հրահանգ» բառի հետ համեմատելով (պարթևերեն frahang)։ Տե՛ս Ն. Ադոնց, Հայաստանի ոսկեհանքը, Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948, էջ 206—222։

125 Բնագրում Τζάνοι. այլ տեղերում Σάνοι։

126 Տե՛ս վերը, գլուխ 10։

127 Ցասիս գետը ժամանակակից Ռիոնի գետն է։

128 Կոլխիսի տակ ենթադրվում է Լազիկան, Արևմտյան Վրաստանը։ Տե՛ս ծան. 94։

129 Տե՛ս ծանոթություն 124։

130 Տե՛ս ծանոթություն 104, 105, 106։

131 Սա այլ Ներսեհ է, ոչ Արատիոսի եղբայրը։ Հմմտ. ծանոթ. 104։

132 Սահակ Կամսարականը։ Տե՛ս ծանոթ. 105։

133 Խոսքը, հասկանալի է, Հուստինիանոս կայսեր մասին է։

134 Տե՛ս Պրոկոպիոս, «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա., 2։

135 531 թ.։

136 Ադարեթես (հունարեն Ἀζαρέθης. հավանաբար Ἀζαρέφθης)։ Պարսկերեն Hazāraft (Hazārabhd) անունն է։ Հանդես է գալիս նաև հայկական սկզբնաղբյուրներում «Հազարաւուխտ» ձևով։ Հմմտ. Փավստոս, Դ, 22, տե՛ս նաև Ղազար Փարպեցի, Գ., 66, Գ., 85։

137 Սակիկ Ալամունդարոս, բնագրում Ἀλαμούνδαρος ὁ Σακκίκης։ Սա Hira-յի թագավոր al-Mundir III-ն է, Լախմիդների ցեղից։ Նրա արաբական մականունն է ibn ash-Shaqīqa։ Ալ-Խիյարի ճակատամարտում 554 թվականին նա սպանվում է մի ուրիշ արաբական ցեղի՝ գասանիդների ցեղապետ Harith b. Djabala-յի (Պրոկոպիոսի մոտ՝ Արեթաս) կողմից։ Նա թագավոր է դարձել 504 թվականին։ Տե՛ս *А. Г. Лундин*. Из истории Аравии в начале VI в. н. э., Палестинский Сборник, № 2, 1956; стр. 42—52. մանրամասն գրականությունը տե՛ս «Արեթասի» մասին գրված ծանոթագրությունների մեջ ստորև, ծանոթ. 148։ Ալամունդարոսի մասին Պրոկոպիոսը ավելի մանրամասն խոսում է մի քիչ հետո (Գիրք Ա., գլ. 17)։

138 Բնագրում Κελεσηνή նաև Ἐκελεσηνή։ Խոսքը Եկեղյաց գավառի մասին է Բարձր Հայքում։ Հիշատակվում է դեռևս Ստրաբոնի կողմից Ἀκιλισηνή

ձևով։ Այս գավառը կոչվել է նաև Անահտական ('Αναΐτις χώρα) Երիզա կամ Երեզ (այժմ Երզնկա) ավանում գտնվող Անահիտի հռչակավոր տաճարի անունով։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 50։

139 Իրիս գետը այժմ կոչվում է Էշիլ-Ըրմաղ։

140 Կոմանա (բնագրում Κόμανα) քաղաքի անունը Պրոկոպիոսը բխեցնում է κόμη բառից, որ նշանակում է վարսեր։ Կոմանա քաղաքը (կամ Ոսկե Կոմանա χρυσῆ Κόμανα, ինչպես մի քիչ հետո) այժմ կոչվում է էլ-Բոստան, Սաբրոս (այժմ Սեյխան չայ) գետի վրա։

141 Սաբրոս գետը այժմ կոչվում է Սեյխան չայ։

142 Հունարեն μανιαι Ն. Ադոնցը ենթադրում է, որ «Օրեստեսի խելագարությունը մանիա շեշտելով, գրողը ձգտում է մեկնել Մանայարքը, որ մեծ սրբարան է եղել նման Երեզի և Կոմանի»։ Տե՛ս Ն. Ադոնց, Հին հայոց աշխարհայացքը, Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948, էջ 287։

143 Բնագրում Ἄρσινος, Արածանի գետն է։

144 Այժմ Մալաթիա։

145 Այսինքն Եփրատեսիա։

146 Տե՛ս վերը, գլ. 14։

147 Մենք «պատիվ» ենք թարգմանում հունարենի κόσμος բառը, նրա տակ հասկանալով ոչ իհարկե պատիվ բառի ժամանակակից սովորական նշանակությունը։ Հին հայ հեղինակների մոտ «պատիվ» բառը ուներ նաև լանջի և գլխի զարդարանքի, թագի, դիադեմայի նշանակություն։ Այդ պարզ երևում է հայ հեղինակների հետևյալ հիշատակություններից. «պսակօք և պատուովք մեծարեաց զբազումս ի մոգաց և բազմագոյնս ի մոգպետաց», «կապէր և զպատիւ վարսին» (Եղիշե), «եւ այլ յայսմ ազգաց և ի խոնարհ, որ գործակալս անուն բարձեօք առաջի արքային պատիւ ի գլուխ բազմէին» (Փավստոս) և այլն։ Այդ մասին տե՛ս К. П. Патканов, Материалы для армянского словаря, вып. II, стр. 2.

148 Արեթաս Գաբալայի որդի (բնագրում Ἀρέθας τοῦ Γαβαλᾶ), արաբերեն՝ Harith b. Djabala-ն, Ասորիքի արաբական մի հարստության թագավորը՝ գասանիդների տոհմից։ Այդ հարստությունը ծագումով Եմենից էր։ Գասանիդները միաբնակ քրիստոնյաներ էին և որպես սյուզերեն ճանաչում էին Բյուզանդիայի կայսրերին։ Նրանք պաշտպանում էին սահմանները ընդդեմ պարսիկների և վերջիններից վասսալական կախման մեջ գտնվող Խիրայի Լախմիդների։ Գասանիդների տիրապետությունը տարածվում էր Արաբիայի Hawrān-ի և Balkā-յի տերիտորիաների վրա, Փյունիկեի և 2-րդ ու 3-րդ Պաղեստինի վրա։ Ի տարբերություն իրենց ազգակից և միաժամանակ իրենց թշնամի Լախմիդների, որոնք կուլտուրական տեսակետից շատ էին գերազանցում իրենց, գասանիդները նստակյաց չէին։ Գասանիդների հարստության պատմությունը արաբ ժողովրդի պատմության ամենից մութ շրջաններից մեկն է։ Արաբական ավանդության համաձայն գասանիդները ծագել են Ազդ ցեղից, որը հարավային Արաբիայից էր։ Այդ ցեղը Մարիբի կառավարման վերացումից հետո թողեց Եմենը և բարձրացավ հյուսիս՝ դեպի Բատն Մարր, Մեկկայի մոտ։ Ավելի ուշ Ազդ-երի մի ուրիշ խումբ Amr b. Amir Muzaykiyā-յի ղեկավարությամբ գնաց Ասորիք։ Նրանք երկար ժամանակ մնացին Գասան լճի ափին, Ասորիքի անապատում և այնտեղից ստացան Գասանիդներ անվանումը։ Գասանիդների հարստության առաջին

և ամենանշանավոր իշխանը Ջաբալայի որդի Խարիթն էր, որը միաբնակ եկեղեցու ջերմ պաշտպաններից էր։ 529 թ. նա Հուստինիանոս կայսրից ստացավ Ասորիքի բոլոր արաբական ցեղերի ղեկավարի φύλαρχος-ի (ցեղապետի) և պատրիկի կոչում։ Իր թագավորության մեծագույն մասը նա անցկացրեց պատերազմների մեջ՝ ընդդեմ Խիրայի ալ-Մունդիր (Ալամունդարոս) ցեղապետի։ 554 թվականին Հարիթը Կիննեսրինի շրջանում (հունարեն Χαλκίς) վերջնական հաղթանակ է տանում ալ-Մունդիրի դեմ, որը և սպանվում է կռվի դաշտում։ Արեթասի մասին տե՛ս *J. Sauvaget*, Les Ghassanides et Sergiopolis, Byzantion, XIV (1939), pp. 116—130; *I. Kawar*, Procopius on the Ghassānids, Journal of the American Oriental Society, 77 (1957), pp. 79—87; *I. Kawar*, Procopius and Arethas, Byzantinische Zeitschrift, Bd. 50, (1957); pp. 39—67, 362—382; *J. Schleifer*-Ghassān հոդվածը Encyclopédie de l'Islam-ում, ուր և ընդարձակ գրականություն։ Նաև *Н. В. Пигулевская*, Анонимная хроника времени сасанидов, Записки Института Востоковедения, том 7, 1939, стр. 55—78; *Н. В. Пигулевская*, Арабы VI в. по сирийским источникам, Труды второй сессии ассоциации арабистов, 19—23 октября 1937 г., Труды Института Востоковедения, вып. XXXVI, Москва—Ленинград, 1940; *А. Лундин*, К вопросу о хронологии хымъяритских надписей, Палестинский Сборник, вып. 3 (66), 1958, стр. 101.

149 Խալկիս (հունարեն Χαλκίς) արաբերեն Kinnasrın: Քաղաք հյուսիսային Արաբիայում։ Հիշատակվում է նաև «Աշխարհացույց»-ում «[Քա]ղկիդիկէ, յորում քաղաք Քալկիսա, որ է Նիկորիա» (տե՛ս Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 112)։ Կիննասրինի տերիտորիայի վրա, al—Hıyār-ում 554 թվականին տեղի ունեցավ ճակատամարտ, որը վերջացավ գասանիդ Արեթասի հաղթանակով ընդդեմ լախմիդ Ալամունդարոսի։

150 Կալլինիկոն քաղաքը գտնվում էր Միջագետքում։

151 531 թվականի ապրիլի 19։

152 Զամբյուղների մեջ նետեր նետելու միջոցով հաշվառում կատարելը մի շատ հին սովորություն էր իրանական ժողովուրդների մոտ։ Մենք Հերոդոտոսի մոտ (գիրք Դ., գլ. 81) գտնում ենք մի առասպելական պատմվածք, որի համաձայն Սև ծովի շրջաններում ապրող սկյութները մոտավորապես այդ ձևով հաշվառում էին բնակչությունը։ Նման հիշատակություն կա նաև Փավստոս Բուզանդի մոտ՝ մազքթաց զորքի հաշվառման վերաբերյալ։ Նա գրում է. «ինքեանք զինքեանս զիւրեանց զօրս թուել ոչ կարէին։ Բայց ուր լինէր հանդէս, ի նշանաւոր տեղիս գնդի գնդի, դրօշու դրօշու, վաշտուց վաշտուց, յերևելի տեղեաց՝ մէն մի բռնաքար առ այր հրամայէին, զի բերցեն ընկեսցեն՝ զեղջ կուտել. զի որչափ լիցի, այնու երևեսցի նշանակ բազմութեանն, առ իմանալ առ վաղիւ անցելոց իրացն աճաւորութեան նշանակ» (Գ., 7)։

153 Հոմերիտներ, հունարեն Ὁμηρῖται, արաբերեն՝ Himyar։ Արաբիայի հարավում ապրող մի ժողովուրդ։ Արաբական հեղինակների համաձայն հոմերիտները բաժանված էին բազմաթիվ ցեղերի և բնակվում էին Lahadj -ի շրջակայքում, Zafar -ի և Ridā -յի նահանգներում։ Նրանք քրիստոնեությունն ընդունեցին միայն Անաստասիոս կայսեր ժամանակ։ Հռոմեական կայսրերը կանոնավոր հարաբերությունների մեջ էին հոմերիտների հետ՝ իրենց առևտրական շահերից ելնելով, ինչպես նաև ապահովելու համար

իրենց սասանյաններից, որոնք ջանում էին ներթափանցել հարավային Արաբիա՝ Օմանի վրայով։ Բյուզանդիայի հոմերիտների և եթովպացիների հետ ունեցած փոխհարաբերությունների մասին նշված ժամանակաշրջանում տե՛ս *J. Guidi*, Bisanzio ed il regno di Aksum, Studi Byzantini, I (1924), p, 137—139; *A. Vasiliev*, Justin I (518—527) and Abyssinia Byzantinische Zeitschrift, Bd. 33 (1933), S. 67—77; *Н. В. Пигулевская*, Эфиопия и Химъяр в их взаимоотношениях с Восточноримской империей, Вестник Древней истории, 1948, № 1, стр. 87—97; ее же, Законы Химъяритов, Византийский Временник, № 3 (1950), стр. 51—61; ее же, Византия на путях в Индию, Из истории торговли Византии с Востоком в IV—VI вв., Москва—Ленинград, 1951, стр. 260 и сл.; *A. A. Vasiliev*, Notes on some Episodes concerning the Relations between the Arabs and the Byzantine Empire fron the fourth to the sixth century, Dumbarton Oaks Papers, 9/10, 1956, p. 306—316։

154 Արաբիայի ափերը։

155 Ֆինիկոն նշանակում է արմավենիների պարտեզ։

156 Աբոխարաբոս։ Դա Աբուղարիբն է, հավանաբար գասանիդ Արեթասի (Հարիթի) եղբայրը։ Տե՛ս *E. Stein*, Histoire du Bas-Empire, t, II, p. 297։

157 Ավելի ճիշտ՝ Արաբական ծոցի։

158 Ֆիլայ, հունարեն φίλος—«բարեկամ», «սիրելի» բառից։

159 Արատիոսի և Իսաակեսի եղբայրը։ Պրոկոպիոսը սրա մասին խոսում է Առաջին գրքի 12-րդ գլխում։

160 Եթովպացիների այս արշավանքի մասին հարավային Արաբիա հիշատակում է Խուսն ալ-Գուրաբում գտնված հարավ-արաբական մի արձանագրություն, որի տվյալների համապատասխանելը բյուզանդական ժամանակագիրների և պատմիչների հաղորդումների հետ ցույց է տվել դեռևս Հալեվին։ Տե՛ս *J. Halevy*, Etudes sabeennes, Journal Asiatique, 7-e serie, t. I—II 1873, p. 519։ Արաբական այս արձանագրությունը թվագրված է խիմյարների 640 թվականով, որը համապատասխանում է մ. թ. 525 թ.։

161 Եսիմիֆայոսի իսկական անունը Սումաիֆա էր։

162 Բնագրում σηρικόν. լատիներեն serica, որպես Չինաստանում (Seres) տարածված։

163 Սոֆանենե (հունարեն Σωφανηνή) Համապատասխանում է Մեծ Ծոփք գավառին։ Հուստինիանոսի ժամանակ մտավ 4-րդ Հայքի մեջ։

164 Այս հետախույզների մասին Պրոկոպիոսն ավելի մանրամասն խոսում է իր «Գաղտնի պատմության» մեջ։ Տե՛ս սույն աշխատության 296 էջում։

165 Մեբոդես (հունարեն Μεβόδης)։ Խոսքը վերաբերում է ամենայն հավանականությամբ մոբեդան-մոբեդին, գերագույն քրմին, որը պաշտպանում էր Խոսրովին որպես մազդակյանների թշնամի մի արքայի և դրադաշտականության պաշտպանի։ Կավադը մազդակյանների կողմնակից էր։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, стр. 309։ Մեբոդեսի և մոգերի մասին տե՛ս վերը, ծանոթություն 22։

166 Կավադը վախճանվեց 531 թվականի սեպտեմբերի 13-ին։

167 Խոսրով Ա. Անուշիրվան (պարսկերեն Anōsharvan=anōshag-ruvān), որ նշանակում է «անմահ հոգով»։ Խոսրովի նկարագրությունը Պրոկոպիոսի մոտ չի համապատասխանում նրա մասին եղած արևելյան աղբյուրների

նկարագրությանը։ Պրոկոպիոսը տվյալ դեպքում մի անկողմնակալ գրող չէ։ Նա իր աշխատության մեջ ջանք է թափում ամեն կերպ սև գծերով ներկայացնելու Բյուզանդիայի այս ոխերիմ թշնամուն։ Հակառակ դրան, Խոսրովը արևելյան աղբյուրներում արդարության տիպարն է։ Պարսկական ու արաբական աղբյուրներում կարելի է հանդիպել բազմաթիվ առասպելախառն պատմվածքների, որտեղ փառաբանվում է այս արքայի արդարամտությունը։ Բացի դրանից, այդ աղբյուրները Խոսրովին համարում են մեծահոգի և ողորմած արքայի տիպար։ Հայկական աղբյուրներում ևս Խոսրով արքան դրական է արտացոլված։ Խոսրովը, «որ կոչեցաւ Անուշ Ըռուն... հաստատեաց զերկիր, քանզի էր խաղաղասէր և աշխարհաշէն» (Սեբեոս)։ Նույն պատմիչի ասելով «ի ժամ վաղճանին ծագեալ փայլակնացեալ զնովաւ լոյս աստուածային բանին. քանզի հաւատաց ի Քրիստոս» (նույն տեղում)։ Խոսրով Ա-ի ժամանակաշրջանը գրականության և փիլիսոփայության բուռն զարգացման մի շրջան էր, բարձր զարգացման էր հասել բժշկությունը։ Փիլիսոփայության բնագավառում հայտնի էր Պավղոս պարսիկը, որը հատուկ արքայի համար ասորերեն լեզվով շարադրեց Արիստոտելի դիալեկտիկան։ Ինչպես ցույց է տալիս բյուզանդական պատմիչ Ագաթիասը, ինքը Խոսրովը Արիստոտելի և Պլատոնի գործերի սիրահարն էր։ Հակառակ Բյուզանդիայում լայն տարածված կրոնական անհանդուրժողության, Պարսկաստանում տվյալ ժամանակաշրջանում համեմատաբար այդ հարցում այնքան խիստ չէին։ Երբ 529 թ. փակվեց Աթենքի փիլիսոփայական դպրոցը և սկսվեց փիլիսոփաների հալածանքը, նրանցից յոթ հոգի՝ ասորի Դամասկիոսը, կիլիկեցի Սիմպլիկիոսը, փռյուգիացի Եվլամիոսը, լյուդացի Պրիսկիանոսը, փյունիկեցի Հերմիասը և Դիոգենեսը, նաև Իսիդոր գազացին ապաստան գտան Տիզբոնում և լավ ընդունելություն Խոսրովի կողմից։ Բայց այս բոլորը դրամի մի կողմն է միայն։ Խոսրով Ա-ի ժամանակ էր, որ առավել լայն տարածում գտավ ժամանակի ամենահուժկու սոցիալական շարժումներից մեկը՝ մազդակյան շարժումը, որ շահագործվող ու կեղեքվող աշխատավոր մասսաների ընդվզման արտահայտությունն էր։ Հենց ինքը Խոսրովն էր, որ կատաղի պայքար մղեց նրանց դեմ։

168 Կենտինար լատիներեն բառ է՝ centenarium (ժամանակակից ցենտները այստեղից է ծագում), centum բառից, որ նշանակում է հարյուր։ Մեկ կենտինարը հավասար էր հարյուր լիտրի, մոտավորապես 32,75 կիլոգրամի։

169 Մեկ լիտրը, ինչպես նշել ենք, հավասար է 72 ոսկեդրամի, դահեկանի։

170 «Հավիտենական» կոչվող հաշտությունը կնքվեց 532 թվականին։

171 Պարսկերեն Zaurān (հին պարսկ. Zarwān)։ Տե՛ս F. Justi, Iranisches Namenbuch, S. 377։

172 Այս ապստամբությունը, որը կոչվեց «Նիկա»-յի ապստամբություն, ծագեց 532 թվականի հունվարին։ «Դեմոսները» (οἱ δῆμοι) ժողովրդական միություններ էին, որոնց արմատները գալիս են դեռ հին համայնքից, իսկ «կողմերը» τὰ μέρη) ավելի ուշ առաջացած կազմակերպություններ էին, ոչ միայն կրկեսային, այլև սոցիալական, բնակչության բարձր և ցածր խավերի շահերն արտահայտող։ «Կողմերն» ունեին քաղաքային և ռազմական ֆունկցիաներ։ Կայսրը և սենատը կարևոր դեպքերում միշտ անհրաժեշտ էին գտնում խորհրդակցել և ստանալ «դեմոսների» համաձայնությունը այս կամ այն հարցի մասին որոշում ընդունելու կապակցությամբ։ «Կողմերը» առաջացան ձիարշավարանում։ Բյուզանդիայում գոյություն ունեին չորս

«կողմեր»՝ կապույտներ, կանաչներ, սպիտակներ և կարմիրներ։ Սպիտակները հանդես էին գալիս կապույտների հետ, իսկ կարմիրները՝ կանաչների։ Թեև իրենց հիմքում «կողմերը» սպորտային կազմակերպություններ էին, բայց նրանք չէին կարող չօգտագործվել քաղաքական նպատակների համար, որովհետև դեմոսները ուրիշ լայն միություններ չունեին։ Այնպես որ «կողմերը» վերածվում էին քաղաքական միությունների, իսկ սպորտային ներկայացումներն էլ՝ քաղաքական պայքարի։ Ելնելով այն բանից, որ կապույտների թաղամասերը գտնվում էին Կոստանդնուպոլսի կենտրոնում, հին քաղաքում, իսկ կանաչներինը՝ հին քաղաքի պարսպից դուրս, ուսումնասիրողները եկել են այն եզրակացության, որ կապույտներն իրենցից ներկայացնում էին բնակչության առավել բարձր, իսկ կանաչները՝ ցածր, գլխավորապես առևտրա-արդյունաբերական խավը։ Կապույտների վերնախավը արիստոկրատական էր։ VII դարի կեսերից «կողմերը» դադարում են քաղաքական որևէ դեր խաղալուց։ Նրանք պարզապես սպորտային կազմակերպություններ էին և ռազմական։ Բայց «կողմերի» քաղաքական դերի վերացումը դեռ չէր նշանակում դեմոսների քաղաքական դերի վերացում։ Նրանք պահպանեցին իրենց քաղաքական դերը նաև VIII և IX դարերում։ Դեմոսների և «կողմերի» մասին կա բավական ընդարձակ գրականություն։ Նրանից հիշատակում ենք հետևյալ գործերը։ *Ф. И. Успенский*, Партии цирка и димы в Константинополе, Византийский Временник, том 1, 1894; *S. Manojlović;* Le peuple du Constantinople de 400 à 800 après J. C., Byzantion, 1936, t, XI, 2; *Yv. Janssens*, Les Bleus et les Verts sous Maurice, Phocas et Heraclius, Byzantion, t. XI, 2, 1936; *А. П. Дьяконов*, Византийские димы и факции (τὰ μέρη) в V—VII вв., Византийский Сборник, Москва—Ленинград, 1945; *М. В. Левченко*, Венеты и прасины в Византии, V—VII вв., Византийский Временник, том 1 (XXVII), 1947; *Sabine Winkler*, Byzantinische Demen und Faktionen, In: Dt. Historiker-gesellschaft. Sozial-ökonomische Verhältnisse im Alten Orient und im klass. Altertum, Berlin, 1961, S. 317—328։

173 Խոսքը Թեոդորա թագուհու մասին է, Հուստինիանոս կայսեր կնոջ։ Նրա կենսագրության մասին հարուստ նյութ է տալիս Պրոկոպիոս Կեսարացու «Գաղտնի պատմությունը», որը, սակայն, միակողմանի աղբյուր է։ Նրա հեղինակը իր առաջ նպատակ է դրել հնարավորին չափ մութ գույներով նկարագրել նրան։ Ըստ վերոհիշյալ պատմության, նրա ծնողները շատ համեստ ծագում ունեին։ Հայրը՝ Ակակիոս, կրկեսում արջեր էր պահում, իսկ մայրը թեթև բարքերի տեր մի կին էր։ Թեոդորան ինքը սկզբում աշխատում էր կրկեսում որպես պարուհի և երգչուհի։ Հենց այնտեղ էլ նա ծանոթանում է ապագա կայսեր Հուստինիանոսին, ամուսնանում նրա հետ և թագադրվում 527 թ.։ Թեոդորան, լինելով ուժեղ կամքի տեր կին, հսկայական ազդեցություն ուներ Հուստինիանոսի վրա, հատկապես վերոհիշյալ՝ «Նիկա»-յի ապստամբության ժամանակ իր բռնած դիրքից հետո։ Այն ժամանակ, երբ Հուստինիանոսը նայում էր դեպի Արևմուտք, կամենալով վերականգնել վաղեմի հռոմեական կայսրությունը, ավելի հեռատես Թեոդորան նայում էր դեպի Արևելք, նա տեսնում էր, որ Փոքր Ասիան, Ասորիքը և Եգիպտոսն են հանդիսանում պետության հենարանը, դրա համար էլ նա կողմնակից էր ավելի զիջողական կրոնական քաղաքականության դեպի միաբնակությունը,

որը լայն տարածում էր գտել վերոհիշյալ երկրներում։ Իր նպատակին հասնելու համար Թեոդորան կանգ չէր առնում ոչ մի միջոցի առաջ։ Նա դաժան, ուխտադրուժ մի կին էր։ Վախճանվեց 548 թվականի հունիսի 29-ին՝ քաղցկեղից։ Մեզ է հասել Թեոդորա կայսրուհու (ինչպես նաև նրա ամուսնու՝ Հուստինիանոսի) խճանկար պատկերը Ռավեննայի սուրբ Վիտալի տաճարում։ Թեոդորայի մասին տե՛ս *Mallet*, The empress Theodora, English Historical Review, January, 1887; *Ch. Diehl,* Justinien et la civilisation byzantine au VI-e siecle, Paris, 1901 (կա այս գործի ռուսերեն թարգմանությունը. *Шарль Диль,* Юстиниан и византийская цивилизация в VI в., С.—Петербург, 1908)։ Նույնի. Theodora, imperatrice de Byzance, Paris, 1937 (2-e ed.); *W. Holmes,* The age of Justinian and Theodora, t. I—II, London, 1912; *W. Schubart,* Justinian und Theodora, München, 1943։

174 Տե՛ս վերը, ծանոթ. 89։ Տրիբոնիանոսն իր ժամանակի խոշորագույն իրավագետն էր։ Հուստինիանոսը Տրիբոնիանոսի վրա գրեց անցյալում տարբեր կայսրերի կողմից հրապարակված օրենքները հավաքելու գործը։

175 Կայսեր դիմում էին «տեր»՝ δέσποτα արտահայտությամբ, իսկ կայսրուհուն՝ «տիրուհի»— δέσποινα։ Նրանց այդպես չդիմող մարդիկ համարվում էին տգետ և անկուլտուրական։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացու «Գաղտնի պատմության» 30-րդ գլուխը։

176 Բնագրում κογλίας։

177 Խոսքը օստգոթերի թագավոր Ուիտտիգիսի (Վիտտիգիսի) և վանդալների թագավոր Գելիմերի մասին է։

178 541 թվականի մայիսին։

## ՊԱՐՍԿԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ
## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

1 Հուստինիանոս կայսեր գոթերի դեմ Իտալիայում մղած պատերազմները Պրոկոպիոս Կեսարացին նկարագրել է «Պատերազմների մասին» աշխատության 5-րդ, 6-րդ, 7-րդ և 8-րդ գրքերում, որոնք հրատարակիչների կողմից վերնագրված են «Գոթական պատերազմի մասին» (De Bello Gotthico)։ Իտալիան վերջնականապես անցավ Բյուզանդիայի ձեռքը 555 թվականին։

2 Ալամունդարոսի և Արեթասի մասին Պրոկոպիոսը խոսել է Առաջին գրքի 17-րդ գլխում։ Տե՛ս նաև նախորդ գրքի 137 և 148-րդ ծանոթագրությունները։

3 Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

4 Խոսքը «հավիտենական» հաշտության պայմանագրի մասին է, որ կնքվել էր 532 թվականին։ Տե՛ս Առաջին գրքի 22-րդ գլխում։

5 Ստրատա (հունարեն Στράτα լատիներեն Strata) շրջանը գտնվում էր Դամասկոս—Պալմիրա—Սերգիուպոլիս ռազմական ճանապարհի վրա։ Տե՛ս *Н. В. Пигулевская,* Арабы VI в. по сирийским источникам, стр. 67։

6 Պալմիրա կամ Ֆինիկոպոլիս, արևելյան լեզուներում՝ Թադմոր։ Կառուցվել էր դեռևս Սողոմոնի կողմից ասորական անապատում։ Որպես Պալմիրա առաջին անգամ հիշատակվում է Անտոնիոսի պարթևների դեմ մղած պատերազմների ժամանակ։ Տրայանոսը այն հիմնահատակ կործանեց, իսկ վերա-

կանգնվեց Ադրիանոսի կողմից։ Պալմիրայի ավերակները հայտնաբերվեցին 1678 թ.։

7 Տե՛ս Առաջին գրքի 21-րդ գլուխը։

8 Լիգուրացի հոգևորականների մասին, որոնք դեսպանության են գնում պարսից արքայի մոտ, հիշատակում է Պրոկոպիոս Կեսարացին նաև «Գոթական պատերազմի մասին» աշխատության Երկրորդ գրքի 22-րդ գլխում։

9 Այս Սիմեոնի մասին տե՛ս վերը, Գիրք առաջին, գլ. 15։

10 Սիտտասի մասին տե՛ս վերը, Գիրք առաջին, գլուխ 15։

11 Ասպետյանների տակ (բնագրում Ἀσπετιανῶν. այլ ձեռագրերում Ἀπετιανῶν) Դեստունիսը հավանական է գտնում տեսնել հայկական հայտնի Աբեղյանների տոհմը (տե՛ս նրա թարգմանության 2-րդ հատորի 18-րդ էջի ծանոթությունը)։ Անհավանական չէ Ասպետյանների տակ ենթադրել Բագրատունիներին, որոնց նախարարության ավագը կոչվում էր «Ասպետ»։ Հմմտ. Յ. Մarկուարտ, Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնք, Վիեննա, 1913, էջ 3։

12 Բնագրում εἰς χωρίον Οἰνοχαλάκων։ Բառը բարդ է։ Վերջին χαλάκων-ի տակ դժվար չէ նկատել հայոց «քաղաք» բառը։

13 Արտավան Արշակունին հիշատակվում է Պրոկոպիոսի կողմից նաև «Վանդալական պատերազմի մասին», ինչպես և «Գոթական պատերազմի մասին» աշխատություններում։ Արտավան Արշակունուն Ն. Ադոնցը նվիրել է առանձին ուսումնասիրություն։ Տե՛ս նրա «Արտավան Արշակունի» հոդվածը «Պատմական ուսումնասիրություններ»-ում, Պարիս, 1948, էջ 297—319։

14 Այս հատվածում Պրոկոպիոսը և հայ աղբյուրները համերաշխ չեն։

15 532 թ. «Հավիտենական» հաշտությունը։

16 Խոսքը Բոսպորոս քաղաքի մասին է, ժամանակակից Կերչի։

17 Արևմտականների տակ նկատի ունի Իտալիայի գոթերին։

18 539 թ.։

19 Գիրք Բ., 1։

20 Իստրոսի տակ նկատի ունի Դանուբ գետը։

21 Իլլիրիան ժամանակակից Ալբանիայի տերիտորիան է։

22 Խերրոնեսոսի տակ նկատի ունի Թրակական թերակղզին։

23 Այս Անաստասիոսի մասին տե՛ս վերը, էջ 76։ Սա Դարա քաղաքում սպանել էր բռնատիրող Հովհաննեսին։

24 Խոսքը Հուստինիանոս կայսեր՝ Ալամունդարոսին և հոներին գրած նամակների մասին է, որոնցով կայսրը գրգռում էր նրանց ընդդեմ պարսիկների։

25 540 թ.։

26 Կիրկեսիոնը ամրոց էր Միջագետքում, կառուցված Եփրատ և Խաբուր գետերի խառնման տեղում։ Կիրկեսիոնի և այնտեղ կատարված շինարարության մասին Պրոկոպիոսը խոսում է իր «Կառուցումների մասին» գրքում (Բ., 6)։ Տե՛ս սույն աշխատության 177 էջում։

27 Աբորրաս գետ (հունարեն Ἀβόρρας) Խաբուր գետը Միջագետքում։ Հիշատակվում է դեռ սեպագիր արձանագրություններում Cha-bur ձևով։

28 Զենոբիա քաղաքի մասին տե՛ս Պրոկոպիոսի «Կառուցումների մասին» աշխատությունը (Բ., 8)։ Տե՛ս սույն աշխատության 181 էջ։

29 Օդոնաթոսի մասին տե՛ս Պրոկոպիոսի «Կառուցումների մասին» աշխատությունը (Բ., 8)։

30 Սուրոնը գտնվում էր Կալլինիկոն քաղաքի դիմաց, Եփրատի աջ ափին, Սերգիուպոլսից հյուսիս։

31 Սերգիուպոլիս, քաղաք Ասորիքում, Պալմիրայի անապատում, Եփրատից 25 կիլոմետր հարավ։ Արաբներն այն անվանում են Al-Rusāfa։ Անաստասիոս կայսրը Կոստանդնուպոլիս է տանում այս քաղաքի պատրոն սուրբ Սերգիոսի աչը, որն ըստ ավանդության հրաշքներ էր գործում։ Այդ դեպքի պատվին քաղաքն ստանում է Սերգիուպոլիս անունը։ Գեորգ Կիպրացին (ed. Gelzer, V, 863) հիշում է քաղաքի երրորդ անունը՝ Անաստասիուպոլիս։ Առաջին անգամ Հուստինիանոս կայսրն էր, որ պարսպապատեց այն 542 թվականից առաջ։ Սերգիուպոլսի մասին մանրամասն տե՛ս Honigmann-ի հոդվածը (Al-Ruşāfa) Encyclopedie de l'Islam-ի մեջ, 1936, էջ 1265—1267, ուր և մանրամասն գրականություն։

32 Բերիան ժամանակակից Հալեպ քաղաքն է։

33 Լատիներեն asecretis։ Կայսեր քարտուղարն էր։

34 Անտիոքը գրավվեց 540 թ. հունիսին։

35 Այսինքն՝ Հուստինիանոսին։

36 Տե՛ս Գիրք Բ., գլ. 1։

37 Խոսքը Օրոնտես գետի վրա գտնվող, Ասորիքի Ապամիա քաղաքի մասին է, և ոչ Միջագետքի։

38 Դաֆնե արվարձանում գտնվող պարտեզի մասին հիշատակություն ունի դեռևս Ստրաբոնը (ԺԶ, 2)։

39 Խոսքը յուրաքանչյուր քաղաքի, դեմոսի տարբեր գույների՝ կողմերի (այսինքն կուսակցությունների) մասին է։ Տե՛ս Առաջին գրքի առթիվ մեր 172-րդ ծանոթությունը։

40 Այսինքն Հուստինիանոսի սիրած գույնը։

41 Բարբալիսոս քաղաք-ամրոցը գտնվում էր Հիերապոլսից հարավ, Եփրատի աջ ափին։ Պրոկոպիոսն այն հիշատակում է նաև «Կառուցումների մասին» աշխատության մեջ (Բ., 9)։ Դա ժամանակակից Քալաաթ բալի գյուղն է։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 44։

42 Աբգար անունով Միջագետքում գոյություն է ունեցել 29 թագավոր, որոնք թագավորել են Օսրոենում, մայրաքաղաք ունենալով Եդեսիա քաղաքը—նմթ. I դարից մինչև մթ I դարը։ Մի առասպելի համաձայն այս թագավորներից մեկը, հավանաբար Աբգար V-ը, որը տառապում էր ծանր հիվանդությամբ. նամակ է գրում Քրիստոսին, որ նա գա իրեն բուժի։ Վերջինս մերժում է հրավերը, բայց գրում, որ կուղարկի իր աշակերտներից մեկին։ Եվսեբիոսն իր «Եկեղեցական պատմության» մեջ գրում է, որ ուղարկվում է Թադեոս առաքյալի որդի Հուդան (29 թ.)։ Այս առասպելն ունի այլևայլ տարբերակներ։ Լիպսիուսը գտնում է բազմաթիվ անախրոնիզմներ, որոնցից երևում է, որ առասպելն իր տակ պատմական հող չունի։ Առասպելը ըստ երևույթին հորինվել է, որպեսզի ասորական եկեղեցուն առաքելական ծագում տրվի։ Աբգար թագավորի հետ կապված առասպելի մասին մանրամասն տե՛ս *Lipsius*, Die Edessenische Abgarsage kritisch untersucht, Brunswick, 1880; *Alfr. Gutschmidt*, Untersuchungen über die Geschichte des Königreiches Osroene, Memoires de l'Academie de St. Petersbourg, vol. 35, 1887; *Tixeront*, Les origines de l'eglise d'Edesse et la legende d'Abgare, Paris, 1888; *N. Cartojan*, Legenda lui Augar, Bucarest, 1925: *Н. В. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье.

43 Բնագրում lacuna։

44 Բատնե (հունարեն Βάτναι)։ Այժմ կոչվում է Sarūdj, Քաղաք Միջագետքում, Եդեսիային մոտիկ, կառուցվել է մակեդոնացիների կողմից։

45 Կարրե (հունարեն՝ Κάρραι, արաբերեն՝ Harrān)։ Միջագետքի հնագույն քաղաքներից, Balikh գետի ակունքների մոտ, Եդեսիայի և Ras 'Ain-ի միջև։

46 Կտեսիֆոնը հայկական սկզբնաղբյուրների Տիզբոն քաղաքն է, սլարսից պետության մայրաքաղաքը՝ Տիգրիս գետի ափին։

47 Խոսրովի Անտիոքը ('Αντιόχεια Χοσρόου), Տիզբոնից արևելք, ուր այժմ գտնվում է մի մուսուլմանական սրբավայր, որ կոչվում է Salman Pak։ Խոսրովի Անտիոքի պաշտոնական անունն էր Vēh-Antiokh-Khusrō, սակայն նա սովորաբար կոչվում էր Rumaghān (արաբերեն՝ Er-Rumiyya— «հույների քաղաք»)։ Հայկական սկզբնաղբյուրներից Սեբեոսը, խոսելով Խոսրով Ա-ի մասին, գրում է, որ նա «առ մարտիւ զԱնտիոք պխիղացուց, եւ գերեալ նստոյց առ Թագաւորական կայանին»։ Նույն հեղինակը Խոսրովի Անտիոք քաղաքի կառուցման մասին գրում է. «Շինեալ քաղաք եւ անուանեալ զնա Վեհ Անջատոք Խոսրով, զոր անուանեալ Շահաստանի Ոկնոյ կոչեն» (գլուխ Բ.)։

48 Երկրաշարժը տեղի ունեցավ 526 թ.։

49 541 թ.։

50 Լազերի թագավորի ստացած նշանակները մանրամասն նկարագրում են Պրիսկոսը, նաև Զատկական ժամանակագրությունը և Մալալասը։ Նման նշանակներ էին ստանում նաև հարավային Հայաստանի · հայ նախարարները, սատրապները, մինչև Հուստինիանոս կայսրը։ Պրոկոպիոսը դրանց մանրամասն նկարագրությունն է տալիս իր «Կառուցումների մասին» աշխատության մեջ (Գ., 1), որի թարգմանությունը տե՛ս սույն աշխատության 190 էջում։

51 Տե՛ս Գիրք Ա., գլուխ 12։

52 Այսինքն Աղձնիքից, Եղիշեի մոտ մեկ անգամ հիշատակվում է Արզնարզիւն ձևով։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 33—34։

53 Ժամանակակից Ցիխիսձիրի քաղաքը։

54 «Մոնոպոլիոնի» մասին Պրոկոպիոսը հիշատակություն ունի նաև «Գաղտնի պատմության» մեջ (Գլ. 20)։

55 Անիաբեդ անվան այլ տարընթերցումներն են Βενιαμίδην, 'Αβενιαμίδην։ Համապատասխանում է պարսկերեն a'inbed-ին, որ նշանակում է արարողապետ։ Տե՛ս *F. Justi*, Iranisches Namenbuch, S. 16:

56 Պետրա հունարեն նշանակում է վեմ, ժայռ։

57 Հունարենում՝ Ναβέδης։ Լագարդը (Gesammelte Abhandl., 191) այդ համարում է ոչ թե հատուկ անուն, այլ հասարակ, հայերեն «նահապետ» բառը, որը նաև տիտղոս էր։

58 Սիսավրանոն, հունարեն Σισαυράνων։ Քաղաք Միջագետքում, ժամանակակից Sērwan-ը, Նիսիբիսից 39 կիլոմետր արևելք։

59 Պրոկոպիոսը հին անունով Ասորեստան է անվանում պարսից երկիրը։ Հայկական աղբյուրներում էլ է հանդիպում նույն բանը։

60 Փագաս (Φαγᾶς) հունարեն նշանակում է «շատակեր»։

61 Արեթասի Ասորեստանյան գործունեության մասին Պրոկոպիոսը հիշատակում է նաև «Գաղտնի պատմության» մեջ (գլուխ 2), որի թարգմանությունը տե՛ս 291-րդ էջում։

62 542 թ.։

63 Համտ. Գիրք Բ., գլ. 5։

64 Հին քաղաք Եփրատի աջ ափին։ Կոչվում էր նաև Դուրա։ Այս քաղաքի ավերակները հայտնաբերվեցին 1920 թ. և այնտեղ կատարվեցին հնագիտական հսկայական նշանակություն ունեցող պեղումներ։

65 Σιλεντιάριος, դա լատիներեն Silentiarius-ն է։ Սիլենտիարիոսները սկզբում, հռոմեական ժամանակաշրջանում, ստրուկներ էին, որոնց պարտականությունն էր տիրոջ տան անդորրի պահպանումը։ Հետագայում արքունիքում հանդես եկավ սիլենտիարիոսների հատուկ ծառայություն, որն հետևում էր կայսեր և նրա ընտանիքի անդամների ննջասենյակներում կարգ ու կանոնի, ապա նաև հանդիսակարգի պահպանման և այլն։ Նրանք մոտ երեսուն հոգի էին։

66 Ինչպես և հայերեն՝ կայսր։

67 «Գաղտնի պատմության» մեջ Պրոկոպիոսը ցույց է տալիս այս Հովհաննեսի պատանդ հանձնվելու իսկական դրդապատճառները։ Տե՛ս սույն աշխատության 294 էջը։

68 Այս Վասակը, Արտավան Արշակունու անեղբայրը, 539 թ. գլխավորել էր հայ ապստամբների պատվիրակությունը Խոսրովի մոտ։ Տե՛ս Գիրք Բ., գլ. 3։

69 Համաճարակը բռնկվեց 542 թ., Անտիոքի գրավումից (540 թ.) երկու տարի հետո (տե՛ս *Evagrius*, Hist. eccl. IV, 29, *Migne*, Patr. t. 86, pars 2 col. 2752)։

70 Պելուսիոն, քաղաք Եգիպտոսում, Նեղոսի դելտայում, ժամանակակից Պորտ Սայիդից արևելք։

71 Հասկանալի է, որովհետև նրանք իմունիտետ էին ձեռք բերել։

72 Համաճարակը տարածվում էր, ըստ երևույթին, նավերի միջոցով։

73 544 թ.։

74 Տե՛ս 71 ծանոթությունը։

75 'Αποκρισιάριος կամ Referendarius.

76 Սիկայ (հունարեն Συκαί) ժամանակակից Ղալաթիան։

77 Խոսքը Կոստանդնուպոլսի դեմոսի մասին է, որ բաժանված էր տարբեր «կողմերի»։ Այդ մասին տե՛ս Ա. գրքի 24 գլուխը։

78 543 թ.։ Ադարբիգանի տակ ենթադրվում է Ատրպատականը։ Ատրուշանը հայկական աղբյուրների համաձայն գտնվում էր Ատրպատականի Գանձակ քաղաքում։ Սեբեոսը այս ատրուշանը անվանում է «հրատ»։ Խոսելով արաբական առաջին արշավանքների մասին, Սեբեոսը ցույց է տալիս, որ արաբները գրավեցին, հասան «մինչև ցԳանձակ քաղաք և ցՀրատն մեծ՝ որ յԱտրպատական դաւառի»)։

79 Հունարեն 'Εστία-ն, լատիներեն՝ Vesta։ Օջախի աստվածությունը։ 'Εστία հունարեն նշանակում է օջախ։

80 Այսինքն հայոց կաթողիկոսին։ Սեն-Մարտենը ենթադրում է, որ խոսքը Հովհաննես Բ. Գաբեղյանի (533—551) մասին է։ Տե՛ս նրա 2-րդ ծանոթությունը *Lebeau*-յի Histoire du Bas-Empire-ի 9-րդ հատորի 75-րդ էջում։

81 Խոսրովի դեմ որդու բարձրացված ապստամբության մասին Պրոկոպիոսը հիշատակում է նաև «Գոթական պատերազմի մասին» աշխատության մեջ։ Տե՛ս սույն աշխատության 259 էջում։ Այնտեղ Պրոկոպիոսը տալիս է ապստամբ որդու անունը՝ Անատողադոս ('Ανατώζαδος), պարսկերեն՝ Anōšazad (տե՛ս *F. Justi*, Iranisches Namenbuch, S. 18)։ Ապստամբությունը ճնշվում է և Անատողադոսը խեղանդամ դարձվում, որպեսզի այլևս արքա

չղառնա, որովհետև ըստ պարսից օրենքի, մարմնական որևէ պակասություն ունեցող անձնավորություն չէր կարող գահ բարձրանալ։
82 Իհարկե, ոչ Ներքինի Նարսեսը, այլ Նարսես Կամսարականը։
83 Կիթարիզոն, հունարեն Κιθαριζων։ Այն գտնվում էր պարսկա-բյուզանդական սահմանի վրա, Հաշտյանք գավառում։ Նրա կոնկրետ տեղը դեռ հայտնի չէ։ Ն. Ադոնցը հնարավոր է համարում այն տեղադրել ժամանակակից ներքո-հիշյալ ամրացված տեղերից որևէ մեկում—Շեյխ-Սելիմկալա, Աղնաբերդ կամ Աստեղաբերդ, կամ էլ Ճապաղ ջրում գտնվող Դարեղոա-յում Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, стр. 19,22)։ Ս. Երեմյանը գտնում է, որ Կիթարիզոնը, ըստ երևույթին հետագայում կոչվել է Ճապաղջուր։ Տե՛ս Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 59։
84 Սահակ Կամսարականը, կրտսեր եղբայրը Նարսեսի և Արատիոսի (տե՛ս Պարսկական պատերազմի մասին» Գիրք Ա., գլ. 15), որ Բոլոբերդը գաղտնի կերպով հանձնեց բյուզանդացիներին։
85 Խորզիանենե, Պրոկոպիոսի մոտ՝ Χορζιανηνῆ։ «Կառուցումների մասին» աշխատության մեջ հիշատակվում է Κορζάνη —Կորզանե կամ Χορζάνη — Խորզանե ձևով։ Հայոց Խորձյան գավառն է Չորրորդ Հայքում։ Կորյունի մոտ կոչվում է «Խորձենական գաւառ»։ Գտնվում էր Կիթառիճի և Թեոդոսուպոլսի միջև։ Այս գավառում էր գտնվում Արտալեսոն քաղաք-ամրոցը, որ Հուստինիանոսը դարձրեց դուքսի նստավայր (տե՛ս «Կառուցումների մասին» աշխատության Գ., 3)։ Այժմ կոչվում է Քըղի՝ Մեւս Գայլ գետի վերին և միջին հոսանքի ձորահովիտը։ Կենտրոնն էր Կողոբերդ կամ Կեղի։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 55։
86 Ֆիսոն վայրը (հունարեն Φισων)։ Մայաֆարկինից ոչ հեռու, Դինի և Գագրուի միջև այժմ գտնվում է մի փոքր գյուղ Ֆիս անունով։ Նրա հյուսիսային մասում գտնվում են հին ամրոցի հոյակապ ավերակները, որոնք, ամենայն հավանականությամբ, պատկանում են Հուստինիանոս կայսեր կողմից կառուցված Ֆիսոն ամրոցին։ Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, стр. 11։ Ֆիսոնի մասին Պրոկոպիոսը հիշատակում է նաև «Կառուցումների մասին» աշխատության Գ գրքի 3-րդ գլխում։
87 Բնագրում Δούβιος։ Խոսքը Դվին քաղաքի մասին է։ Պրոկոպիոսն այն անվանում է χώρα. որ նշանակում է համընդհանուր, տիեզերական։ բաժություն, ագարակ, շրջան նաև քաղաք՝ ավելի ուշ շրջանի բնագրերում։
88 Καθολικός. որ նշանակում է համընդհանուր, տիեզերական։
89 Բնագրում Ἀγγλων։ Հայկական Անգղ անունով ամրոց է։ Այդպիսի Անգղներ Հայաստանում բազմաթիվ էին։ Սեն-Մարտենը դրա տակ ենթադրում է Ծաղկոտն գավառում գտնվող Անգղը։ Տե՛ս նրա 4-րդ ծանոթությունը Lebeau-ի Histoire du Bas-Empire աշխատության 9-րդ հատորի 76-րդ էջում։ Այն հիշատակվում է Եղիշեի կողմից։
90 Բնագրում Ταρὼνων χώρα։ Խոսքը Տարոնի (Տարաւն) մասին է։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 85։
91 Խոսրովի 4-րդ արշավանքը տեղի ունեցավ 544 թ.։
92 Լատիներեն aggesta։ Նշանակում է «հողաբլուր»։
93 Այսինքն Κασσα։ քաղաքի բնակիչներին։
94 Եդեսիա քաղաքն ուներ վեց դարպաս, որոնցից ամեն մեկը իր անունն ուներ։ Պրոկոպիոս Կեսարացու Βαρλαῶν πύλαι կոչվածը համապատասխանում է Barlāhā -ին։ Մի այլ դարպասի անունն էր Shāe , որն ամենայն հա-

վանականությամբ համապատասխանում է Պրոկոպիոսի Σοῖναι πύλαι-ին։ Այդ մասին տե՛ս *Duval*, Histoire d'Edesse, p. 207, n. I։ Համա. *E.Honigmann*-ի հոդվածը (Orfa) Encyclopédie de l'Islam-ում։

95 Բնագրում Τριπυργία. այսինքն «երեք աշտարակ»։

96 Տե՛ս 94-րդ ծանոթագրությունը։

97 Տրիբունոս բժշկի մասին տե՛ս նաև «Գոթական պատերազմի մասին» աշխատության մեջ (Դ. 10)։

98 545 թվականին։

99 Պրոկոպիոսը հունացնում է սեմական աստվածուհի Al Uzza-յին, դարձնելով Աֆրոդիտե։

100 Արեթասին դավաճանության մեջ կասկածելու պատճառը Պրոկոպիոսը ցույց է տվել վերը։ Տե՛ս էջ 128։

101 Իսդիգունաս, հունարեն Ἰσδιγούσνας. պարսկերեն Yazdwšnasp անունն է։ Սագումով Միհրանյան տոհմից։ Տե՛ս *F. Justi*, Iranisches Namenbuch, S. 149, № 4։

102 Գիրք Ա, գլուխ 12։

103 Գիրք Բ, գլուխ 19։

104 Այս Բրադուկիոսի ճակատագրի մասին տե՛ս «Գոթական պատերազմի մասին» աշխատության մեջ, գիրք Դ, գլուխ 11։

105 Բնագրում Φαρσάνσης։

106 549 թվականին։

107 Բնագրում Βόας (միջին դարերում արտասանվում էր Վոաս), համապատասխանում է հայերեն Վոհ կամ Ճոհ գետին։ Ճորոխ գետն է, որ լատինական սկզբնաղբյուրներում կոչվում էր նաև Ակամպսիս։

108 Ջեխերի ազգային պատկանելիությունը դեռ լրիվ չի որոշված։ Նրանց տակ ենթադրվում են ադիգեական (չերքեզական) ծագում ունեցող ցեղեր։ Տե՛ս *З. В. Анчабадзе*, Из истории средневековой Абхазии (VI—XVIII вв.), Сухуми, 1959, стр. 34։

109 Բնագրում Ἀρχαιόπολις։ Եգերացիների Ջիխան-Քվիջա, վրացերեն Ցիխե-Գոջի քաղաքը։ Այժմ Նաքալաքեվի գյուղն է։ Արխայոպոլիսը Լազիկայի թագավորության մայրաքաղաքն էր։ Տե՛ս Երեմյան, Հայաստանն ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 41։

110 Այժմ Սուխումի քաղաքը։

111 Բնագրում Πιτυοῦς (սեռականը Πιτυοῦντος)։ Վրացական աղբյուրների Բիճվինթան, այժմ Պիցունդա վայրը Աբխազիայում։

112 Բնագրում Σκάνδα,

113 Բնագրում Σαραπάνις։ Այժմ կոչվում է Շորապանի։

114 Հռոդոպոլիս (Ῥοδόπολις) հունարեն նշանակում է «վարդերի քաղաք», «վարդաքաղաք», «վարդաշեն»։ Վրացական Վարդցիխե կամ Վարցիխե քաղաքն է։

115 Մոխորեսիս քաղաքը և գավառը գտնվում էին այժմյան Ցխենիս ծղալի և Ռիոնի գետերի միջև։

116 Մոնոպոլիոնի մասին տե՛ս վերը, Գիրք Բ, գլ. 15։

117 Բնագրում Ῥιζαῖον. համապատասխանում է այժմյան Ռիզե նավահանգստին։

118 Աթինա քաղաքը Խաղտիքում, այժմ էլ նույն անունով բնակավայր։ Վերջերս անվանվել է Բազար։ Տե՛ս Ս. Տ. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 32։

119 Այս Թովմայր որդի հայազգի Հովհաննեսի մասին Պրոկոպիոսը հիշատակում է նաև «Գոթական պատերազմի մասին» աշխատության Դ գրքի 8-րդ գլխում (տե՛ս սույն աշխատության 252 էջը)։ Ն. Ադոնցը վերոհիշյալ Թովմային նույնացնում է Հուստինիանոսի 31-րդ նովելլայում (գլ. 2) հիշատակված Հայաստանի կոմես Թովմայի հետ։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 178։

120 Այսինքն Աթինա։ Տե՛ս ծանոթ. 118։

121 549 թվականին։

122 548 թվականին։ Հովհաննես Կապադովկացու և Թեոդորա կայսրուհու սրված հարաբերությունների մասին տե՛ս վերը, էջ 71։ Հովհաննեսը հնարավորություն չուներ Կոստանդնուպոլիս վերադառնալ Թեոդորայի կենդանության ժամանակ։

## ԿԱՌՈՒՑՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

1 «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, գլ. 9։

2 «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, գլ. 10։

3 «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, գլ. 2։

4 Փղերը պարսկական բանակում օգտագործվում էին հեծելազորի հետ միասին և իրենց մռնչյունով, զարհուրելի արտաքինով ահ ու սարսափ էին տարածում թշնամու և նրա ձիերի վրա։ Պարսիկները փղեր օգտագործեցին նաև հայերի դեմ Ավարայրի ճակատամարտում։

5 Ֆրուրա (հունարեն φρουρά) նշանակում է պահակատեղի։

6 Խոսքը, հասկանալի է, ոչ թե Թեոդոսուպոլիս-Կարինի մասին է, այլ Աբորրա գետի ափին գտնվող Թեոդոսուպոլսի, որի մասին Պրոկոպիոսը խոսում է մի քիչ հետո։

7 Անթիմիոս Տրալլացին և Իսիդորոս Միլետացին Հուստինիանոսի խոշորագույն ճարտարապետներն էին, որոնց նախագծով կառուցվեց, ի միջի այլոց, նաև սուրբ Սոֆիայի տաճարը Կոստանդնուպոլսում՝ 537 թ.։

8 Բերդը գտնվում էր Ամիդի շրջակայքում և հունարեն կոչվում էր 'Ῥάβδιος կամ Τουραβδίον, որը Tur Abdin-ի տառադարձությունն է։ Հիշատակվում է «Աշխարհացոյց»-ում «Տուր-Աբդին գաւառ» ձևով։ Տե՛ս Ս. Երեմյան. նշվ. աշխ., էջ 113։ Ներկայումս կոչվում է Hatim Ta i Qalesy (տե՛ս *Marquart*, Eranšahr, S. 114; *E. Honigmann*, Die Ostgrenze, S. 12 sq.).

9 Բնագրում 'Ρωμαίων ἀγρός, որ նշանակում է «Հռոմայեցիների ագարակ»։

10 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 19։ Մանրամասնություններ տե՛ս «Գաղտնի պատմության» մեջ, գլ. 2։

11 Ապադնաս, հունարեն 'Απάδνας, գտնվում էր Ամիդի շրջակայքում։ Նույնանուն բերդ կար նաև Օսրոենում։ Երկուսի մասին էլ հիշատակություն կա Notitia dignitatum-ում։ Տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze, S. 14.

12 Բիրթոնը գտնվում էր Եփրատի ափին, Դեյր-էզ Զորի շրջակայքում։

13 Նշանակում է սպիտակ քար։

14 Բնագրում 'Αννούκας, համապատասխանում է Tell Hānūqa-յին։ Տե՛ս *E. Honigmann*, Die Ostgrenze, S. 16.

15 Բնագրում Σκιρτός։ Համապատասխանում է Դայսան գետին։ Տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 33։

16 Հավանաբար ժամանակակից Տաբուսր Դեյր-էզ Զորի մոտ։

17 Զենոբիա քաղաքը կառուցված էր Եփրատի վրա։ (Նրա մասին տե՛ս նաև «Պարսկական պատերազմի մասին» աշխատության Բ գրքում, գլ. 5)։ Նրա տեղում այժմ գտնվում է Զելեբիյե գյուղը։

18 Բնագրում lacuna.

19 Բնագրում Ζεῦγμα։ Նշանավոր գետանցք և քաղաք Եփրատ գետի աջ ափի վրա, Ասորիքում, կառուցված Սելևկոս Ա-ի կողմից, այժմյան Խալֆան գյուղի մոտ։ Տե՛ս Ս. Երեմյան, նշվ. աշխ., էջ 52։

20 Ասորիքի Անտիոքում կատարված շինարարության և այլ հարցերի մասին տե՛ս *G. Downey*, Procopios on Antioch, A Study of a Method in the „de Aedificiis" Byzantion, 14 (1939), p. 361—378։ «Աշխարհացոյց»-ում այն կոչվում է «Աւազն Անտիոք»։ Տե՛ս Ս. Երեմյան, նշվ. աշխ., էջ 112։

21 «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 8։

22 Ὀνοπνίκτης, թարգմանաբար նշանակում է «էշ խեղդող»։

23 Կյուրոս, քաղաք հյուսիսային Ասորիքում։ Կառուցվել է 320—300 թթ. մթա մակեդոնացիների կողմից։ Այս քաղաքի անունից հյուսիսային Ասորիքի մի ամբողջ շրջան կոչվում էր Կյուրրեստիկե։ Այժմ կոչվում է Խորրես։

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

1 Արևելք ասելով Պրոկոպիոս Կեսարացին, ինչպես նաև այլ բյուզանդական հեղինակներ, նկատի ունի Միջագետքն ու Ասորիքը։ Պարսկահայաստանը Արևելք հասկացողության մեջ չէր մտնում։

2 Այսինքն Կարինը, և ոչ թե Աբորրա գետի ափին գտնվող Թեոդոսուպոլիս քաղաքը։

3 Խոսքը Ալեքսանդր Սևերոսի մասին է (205—225)։

4 Այս «Հայոց պատմության» մասին Պրոկոպիոսը հիշում է մի քանի անգամ։ Տե՛ս վերը, «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, 34, 41-րդ ծանոթագրությունները։ Պրոկոպիոս Կեսարացին առաջին հայ Արշակունուն համարում է պարթևների թագավորի եղբայր ու անվանում նրան Արշակ։ Անանունի մոտ ևս առաջին հայ Արշակունին կոչվում է Արշակ, բայց նա հանդես է գալիս որպես պարթևների թագավոր Արշակի որդին։ Խորենացին ի տարբերություն Անանունի, առաջին հայ Արշակունուն համարում է պարթև Արշակի եղբայր, ինչպես և Պրոկոպիոսի մոտ, բայց վերջինիս տալիս է Վաղարշակ անունը։ Ինչպես Գ. Սարգսյանն է ցույց տալիս, Պրոկոպիոսի վերոհիշյալ ցուցումը անհնար է բխեցնել Անանունի կամ Խորենացու տվյալներից։ Մանրամասն տե՛ս Գ. Սարգսյան, Մովսես Խորենացու «Հայոց պատմության» ժամանակագրական համակարգը, Երևան, 1966, էջ 127 և հտ.։

5 Խոսքը Արշակ Գ թագավորի մասին է, որի ժամանակ տեղի ունեցավ Հայաստանի առաջին բաժանումը՝ 387 թ.։

6 Թեոդոս Մեծի որդին (395—408)։

7 Թեոդոս Փոքրը (408—450)։

8 «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 3։

9 Հայաստանի կոմեսը նստում էր Թեոդոսուպոլիս—Կարինում։ Նրա նշանակման մասին հիշատակում է նաև Մովսես Խորենացին (Գ., 46)։

10 Բնագրում στρατηγός։ Լատիներեն տերմինով այս զորավարը կոչվում էր Magister militum per Armeniam։ Նա նշանակվեց 529 թ.։ Մեզ է հասել այդ առթիվ հրապարակված հրամանագիրը։ Առաջին զորավարը Սիտտասն էր, որն այդ պաշտոնում մնաց մինչև 531 թ.։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 136։ Նրա իշխանությունը տարածվում էր ոչ միայն Մեծ Հայքի, այլև Պոլեմոնյան Պոնտոսի և հարավային Հայաստանի ինքնավար իշխանությունների, սատրապությունների վրա։ Սիտտասի լրիվ տիտղոսն էր Magister militum per Armeniam et Pontum Polemonia cum et gentes։ Տե՛ս Corpus luris Civilis, vol. II, Codex lustinianus-liber I, 29, 5. Զորավարի նստավայրն էր Թեոդոսուպոլիս-Կարինը։

11 Այսինքն բյուզանդական Մեծ Հայքը, որը կոչվում էր նաև Ներքնագույն Հայք Magnam Armeniam, quae Interior dicebatur, Cod lust. lib. I, 29, 5։, Հուստինիանոսի 31-րդ նովելլայում այն կոչվում է ἐνδοτάτη։

12 Սատրապների տակ հասկացվում են հայկական ինքնավար նախարարությունները հարավային Հայաստանում։ Պրոկոպիոսը նրանք թվով հինգ է համարում, բայց իրականում, ինչպես ցույց է տրված Հուստինիանոս կայսեր մի հրովարտակում (Codex lustinianus, De officio magistri militum, I, 29, 5) վեց էին (gentes: Anzetenam videlicet, Ingilenam, Asthianenam, Sophenam, Sophanenam, in qua est Martyropolis, Balabitenam)։ Աղբյուրների այս հակասության շուրջ տե՛ս Կ. Գյուտերբոկ, Հռովմեական Հայաստան, էջ 45, նաև *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 43—44։

13 Նշանակների նման նկարագրության մենք հանդիպում ենք նաև Մալալասի մոտ՝ լաջերի թագավորի կապակցությամբ։ Տե՛ս *Malalae* Chronographia, p. 413։ Համմտ. *Theophanis* Chronographia, p. 259—260։

14 Իլլոսի և Լեոնտիոսի ապստամբությունը Զենոն կայսեր դեմ ծագեց 484 թ.։

15 Հունարեն Βαλαβιτηνή. լատ. Balabitena։ Համապատասխանում է հայոց Բալահովիտին, Արածանի գետի վրա, Եփրատի և Արևմտյան Տիգրիսի միջև։ Այժմ կոչվում է Պալու։

16 Բնագրում ἔθνη. լատիներեն gentes.

17 Նախքան Հուստինիանոսի ռեֆորմները, ռազմական կենտրոն էր համարվում Մելիտենե քաղաքը, ուր նստում էր Հայաստանի դուքսը։ Հուստինիանոսի ռեֆորմներից հետո դուքսը ենթարկվում էր զորավար-ստրատեգին։ Նոր նշանակված դուքսերից մեկը նստում էր Արտալեսում, երկուսը, ինչպես ցույց է տալիս Պրոկոպիոսը, սատրապական տերիտորիայում՝ Կիթարիզոնում և Մարտիրոպոլսում, իսկ երկուսն էլ Օրոնում և Ցանզակում։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 139—140։

18 Մարտիրոպոլիս քաղաքը գտնվում էր Նիմֆիոս գետի ափին, որը բյուզանդացիների և պարսիկների միջև սահման էր այստեղ։ Պրոկոպիոսն այն հիշատակում է նաև «Պարսկական պատերազմի մասին» աշխատության մեջ (Ա, 21)։ Հայկական աղբյուրներում այն կոչվում է Մարտիրոսաց քաղաք։

19 Կիթարիզոն-Կիթառիճի մասին տե՛ս վերը, ծան. 83։

20 Մեծ Ծոփք գավառը։

21 Նիմֆիոս գետն այժմ կոչվում է Բաթման սու։

22 Արքսանենե, Պրոկոպիոսի մոտ Ἀρζανηνή. Ամմիանոս Մարկելինոսի մոտ Arzanena, Arzianena, արաբական աղբյուրներում Arzan։ Հայոց Աղձն—Արղն գավառն է Աղձնիք աշխարհում։ Մանրամասն տե՛ս Հ. Հյուբշման, Հին հայոց տեղվո անունները, Վիեննա, 1907, էջ 73 հտ.։

23 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, գլ. 9։

24 Իլլիրիսոս և Սաֆխաս լեռնանցք։ Գտնվում էր Ֆիսոն վայրի մոտ։ 586 թ. բյուզանդական զորավար Ֆիլիպպիկոսը իր դեպի Ամիդ նահանջի ժամանակ ճանապարհին վերակառուցեց Ֆատախ և Ալալեյս ամրոցները Իզալա լեռներում և այնտեղ զորաբանակ հաստատեց։ Այս երկու ամրությունները համապատասխանում են Պրոկոպիոսի հիշատակած կլեյսուրներին՝ Իլլիրիսոսին և Սաֆխասին։ Իլլիրիսոսը հանդիպում է հայկական աղբյուրներում Ոլոր ձևով, ասորիների մոտ՝ Հալորաս, իսկ արաբների մոտ՝ Հալուրիս։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 10—11։

25 Ասթիանենե երկիր։ Չորրորդ Հայքի երկրորդ գավառն էր, ուներ կարևոր ռազմա-ստրատեգիական նշանակություն և կազմում էր արքունի տան սեփականությունը։ Տե՛ս Ս. Երեմյան, նշվ. աշխ., էջ 62։ Հիշատակված է Հուստինիանոսի Կոդեքսում Asthianena նաև նրա 31-րդ նովելլայում՝ Ἀσθιανηνή ձևով։ Համապատասխանում է հայկական աղբյուրների Հաշտենք գավառին։ Նա հարավային Հայաստանում գտնվող վեց ինքնավար սատրապություններից մեկն էր։ Հաշտյանքը, ինչպես նաև Բալահովիտը Պարսկահայաստանից անջատվել էին և մտել բյուզանդական պետության կազմում 377 թ.։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана. стр 44։

26 Խորզանե, բնագրում Χορζανή։ Խորձյան գավառն է։

27 Արտալեսոնը գտնվում էր Կիթարիզոնից մեկ օրվա հեռավորության վրա դեպի հյուսիս, Մանանաղիի մոտ։ Բյուզանդական պատմիչ Մենանդրոսը 576 թվականին Խոսրով Անուշիրվանի արշավանքի կապակցությամբ հիշատակում է Արաբեսոն (Ἀραβέσσων) գյուղը, որն համապատասխանում է Արտալեսոնին։ Արտալեսոնը ժամանակակից Էնդիրիսն է։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 20—21։

28 Սատալան (Սատաղը) Առաջին Հայքի քաղաք էր, որը հետագայում, Հուստինիանոս կայսեր ժամանակ, մտավ նորաստեղծ Ներքնագույն Հայքի սահմանների մեջ։ Սատալայից Մելիտենե ձգվում էր պաշտպանական երկրորդ գիծը, որն իր դիրքով և նշանակությամբ հավասար էր Թեոդոսուպոլիս—Մարտիրոպոլիս առաջին գծին։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 141։

29 Այս Օսրոենե վայրը ոչ մի առնչություն չունի Օսրոենե երկրի հետ, որը հիշատակված է «Կառուցումների մասին» աշխատության Երկրորդ գրքում (գլ. 8)։ Պտղոմեոսը իր «Աշխարհագրության» մեջ հիշատակում է այն շրջանը, որտեղ էր գտնվում նաև Սատալա քաղաքը, Օրբալեսենե ձևով։ Նրանից հարավ գտնվում էր ըստ Պտղոմեոսի Օրսենե գավառը։ Պրոկոպիոսի տեքստի հրատարակիչ Մալտրետուսը Պրոկոպիոսի հիշատակած այս Օսրոենեն նույնացնում է Պտղոմեոսի վերոհիշյալ Օրսենեի հետ։ Ն. Ադոնցը ոչ մի ընդհանուր բան չի գտնում ոչ Օրբալեսենեի, և ոչ էլ Օրսենեի հետ և ենթադրում է, որ ավելի շուտ այս Օսրոենեի տակ ենթադրվում է հայկական Երեզը (տե՛ս *Н. Адонц*. Армения в эпоху Юстиниана, стр. 60, прим. 1)։

30 Կոլոնիա քաղաքը կառուցվել է դեռևս հռոմեական ժամանակաշրջանում, բայց զարգացավ առանձնապես բյուզանդացիների կողմից։ Հուստինիանոս կայսեր կառուցած ամրությունների ավերակները մինչև օրս երևում են։ Կոլոնիայի տեղում է գտնվում այժմ Կոյլի-Հիսար գյուղը։

31 Հունարեն Βαιβερδών։ Հայոց Բաբերդն է։ Ավելի ուշ շրջանի բյուզանդական աղբյուրներում նա հանդես է գալիս արևմտահայ արտասանությամբ Παιπερτε կամ Παϊπερτ։

32 Արեոն, Լյուսիորմոն և Պետրիոս վայրերի տեղադրությունը հայտնի չէ։ Ն. Ադոնցի ենթադրությամբ նրանք Բայբերդի մոտակայքում պետք է գտնված լինեն։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 147։

33 Լյուտարարիզոն (հուն. Λυταραρίζων) Ն. Ադոնցը նույնացնում է Օլոտոյարիզի հետ։ Տե՛ս *Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 147։

34 Գերմանոսի Ֆուսատոնը Ն. Ադոնցը նույնացնում է IX դարում Տրապիզոնի մետրոպոլիայի մեջ մտնող եպիսկոպոսանիստ քաղաքներից մեկի՝ Կերամեոնի հետ, ժամանակակից Կրոմի, Գյումուշխանեից հյուսիս գտնվող մի գյուղ (*Н. Адонц*, ук. соч., стр. 148։) Ս. Տ. Երեմյանը Գերմանոսի Ֆուսատոնի տակ ենթադրում է VII դարի «Մղոնաչափք»-ում հանդիպող Փոսաղուոն վայրը, որ գտնվում էր Կարինից դեպի Կոլոնիա տանող ճանապարհի վրա, Մեծ Հայքի և Փոքր Հայքի սահմանագծում, Գայլ գետի (Լյուկոս) ակունքների մոտ, և որ Փոսաղուոն լեռնանցքը համապատասխանում է այժմյան Վավուկի լեռնանցքին։ Տե՛ս Ս. Երեմյան, նշվ. աշխ., էջ 88։

35 Ժամանակակից Սվազ քաղաքը։

36 Նիկոպոլիսը գտնվում էր Փոքր Հայքում։ Կառուցվել էր Պոմպեյոսի կողմից՝ Միհրդատի դեմ հաղթանակ տանելուց հետո։ Այժմ կոչվում է Շաբին Գարահիսար։

37 Տեղն անհայտ։ Ն. Ադոնցի ենթադրությամբ Բաբերդի մոտակայքում պետք է եղած լինի։ Տե՛ս *Н. Адонц*, ук. соч., стр. 147։

38 Կուկարիզոնը գտնվում էր Կարինի մոտ, ժամանակակից Կոկարիսի տեղում։ Հայերեն անունն է Կուկայառիճ և հիշատակված է դեռ Խորենացու կողմից «Հաւուկ ի Կուկայառիճոյ» (Բ, 65)։ Տե՛ս *Н. Адонц*, ук. соч., стр. 147։

39 Հունարենում Βίζανα։ Այս քաղաքը Հուստինիանոս կայսեր 31-րդ նովելլայում (գլ. 1) կոչվում է Լեոնտոպոլիս և Բաղանիս և համապատասխանում է հայերեն Վժանին։ Նույնանուն մի գյուղ գոյություն ունի մինչև օրս էլ Եփրատի ափին, Եկեղյաց գավառի և Մանանաղիի սահմանագլխին (տե՛ս *Н. Адонц*, ук. соч., стр. 144—145)։ Հուստինիանոսն այն վերանվանում է Հուստինիանուպոլիս։ Ն. Ադոնցը ցույց է տալիս, որ Վժանը գտնվում էր Թեոդոսուպոլսի և Երզնգյանի միջև, որ Լեոնտոպոլիսը սխալմամբ են նույնացնում Վիժան—Բիզանա—Բաղանիսի հետ, նույնիսկ կայսեր վերոհիշյալ նովելլայում, այդ քաղաքների իրար շատ մոտիկ գտնվելու պատճառով։

40 Այժմ կոչվում է էսկի Մալաթիա։ Մինչև Հուստինիանոս կայսրը բյուզանդական դուքսի նստավայրն էր։ Իեշու Սյունակյացը ամբողջ Հայաստանի դուքսին անվանում է Մելիտենեի դուքս (տե՛ս *Н. В. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв., стр. 150)։

41 Հռոմեական կայսր Տրայանոս (98—117)։

42 Տե՛ս վերը, ծանոթ. 11։

43 Տե՛ս «Կառուցումների մասին», Գիրք Գ, գլ. 1։

44 Այսինքն անվանվեց Անաստասիուպոլիս։

45 Բնագրում հոգնակի թվով է բերված τῶν 'Αρμενίων։ Նկատի ունի Ա, Բ, Գ, Դ Հայքերը։

46 Յումինա քաղաքը գտնվում էր Բիղանա—Վժանից ոչ հեռու, Երզնկայի մոտ, Քեշիշ-դաղի նախալեռներում, ուր այժմ գտնվում է Ջիմին վայրը։ Հուստինիանոսն այն վերանվանեց Հուստինիանուպոլիս։ Այստեղ էր նստում նաև եպիսկոպոսը, որը կոչվում էր Հուստինիանուպոլսի եպիսկոպոս կամ գավառի անունով՝ Եկեղյաց գավառի եպիսկոպոս։ Տե՛ս Н.Адонц. ук. соч. стр. 145։

47 Խոսքը Սիտտասի մասին է, որին Պրոկոպիոսը հիշատակել է «Պարսկական պատերազմի մասին» աշխատության մեջ և այլուր։

48 Սխամալինիխոնը գտնվում էր ժամանակակից Ջիմլա գյուղի տեղում։

49 Հորոնոն ամրոցը գտնվում էր ժամանակակից Խալանեն խանլարի տեղում, երկու լեռնանցքների առաջ, որոնցից մեկը տանում է դեպի Բաբերդ, մյուսը՝ դեպի Երզնկա։

50 Օկենիտ ճաներն ապրում էին Բաբերդից հյուսիս, Ճորոխի արևմտյան վտակի շրջանում, Խարտ-ի դաշտավայրում։ Տե՛ս Н. Адонц, ук. соч., стр. 63։

51 Ժամանակակից Խարտը՝ Բաբերդից վերև, Ճորոխի արևմտյան վտակի վրա, Խարտ Օվասր-յում։ Տե՛ս Н. Адонц, ук. соч., стр. 62—63։

52 Հավանաբար գտնվում էր Պարխար լեռների շրջանում։ Տե՛ս Н. Адонц, стр. 63։

53 Կենան և Սիսիլիսոնը գտնվում էին Պարխար լեռների հյուսիսային վերջավորությունում։ Մանրամասն տե՛ս Н. Адонц, ук. соч., стр. 63—64։

54 Ցանղակոն (հունարեն Τζανζάκων։ Ադոնցն առաջարկում է ուղղել Τζατζάκων —Ցավզակոն)։ Սև ծովի ափին մոտ այժմ գտնվում է Ջավզագա գյուղը, Կարա-դերե գետի վրա, որն հավանաբար համապատասխանում է Պրոկոպիոսի հիշատակած Ցանզակոնի հետ։ Տե՛ս Н. Адонц, ук. соч., стр. 65։

55 Հայտնի չէ կոնկրետ ինչին է համապատասխանում։

56 Տե՛ս «Գոթական պատերազմի մասին» աշխատության Դ գիրքը, գլ. 12 (սույն աշխատության 268-րդ էջը)։

57 Տե՛ս «Գոթական պատերազմի մասին», Գիրք Դ, գլ. 4 (սույն աշխատության 248 էջը)։

58 Նկատի ունի վեստգոթերի թագավոր Թեոդորիքոս Ա-ին (419—451), նշանավոր Ալարիքոս Ա-ի թոռան։

## ՎԱՆԴԱԼԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

1 Ֆեդերատներ էին կոչվում բյուզանդական բանակում ծառայող օտարերկրացիները։ Նրանք ոչ միայն զինված էին իրենց ժողովրդին հատուկ զենքերով, այլև պահպանում էին իրենց սովորությունները, նիստն ու կացը, լեզուն, պատերազմ մղելու իրենց հատուկ եղանակը։ Նրանց ղեկավարները հասնում էին բարձր աստիճանների, տիրանում բարձր պաշտոնների՝ և՛ ռազմական, և՛ քաղաքական։ Նրանք խոշոր դեր էին խաղում պետության գործերում։ Սկսած Հուստինիանոսի ժամանակաշրջանից, ֆեդերատների հրամանատարները բյուզանդացիներ էին, իսկ զորքերի էթնիկական կազմն արդեն խառն էր, բացի օտարերկրացիներից, կային նաև բյուզանդացիներ։

2 Զորավար Դորոթեոսը մինչև 532 թ.՝ բյուզանդա-պարսկական հաշտության պայմանագրի կնքումը, կռվում էր պարսիկների դեմ որպես Հայաստանի զորավար և հմուտ պատերազմող (տե՛ս «Պարսկական պատերազմի մասին» Ա, 15)։ Նա ենթարկվում էր Սիտտասին։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ Դորոթեոսը Հայաստանի դուքսն էր, և ոչ զորավարը։ Հայաստանի զորավարը (magister militum per Armeniam) ինչպես Պրոկոպիոսն է ցույց տալիս, Սիտտասն էր։ Տե՛ս Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, стр. 135։ Դորոթեոսի Աֆրիկայում գործող հայկական զորամասը որակված է որպես ֆեդերատ (դաշնակցային), մի բան, որ վկայում է նրա ինքնուրույնության մասին։ Այդպիսի վիճակում էին նաև հայկական նախարարությունների (սատրապությունների) զորքերը։

3 Կավկանա քաղաքը այժմ կոչվում է Պորտո Լոմբարդո։

4 Բնագրում Καρχηδών։ Խոսքը Կարթագեն քաղաքի մասին է, Աֆրիկայի հյուսիսային ափին, ժամանակակից Թունիսում։

5 Հյուպասպիստ (հունարեն ὑπασπιστής) բառացի նշանակում է վահանակիր, բայց միաժամանակ նշանակում է թիկնապահ։

6 Դեկիմոն, այն է Decimum miliarium, Կարթագենից տաս մղոն հեռավորության վրա։

7 Դորիֆոր (հունարեն δορυφόρος) բառացի նշանակում է նիզակակիր, բայց միաժամանակ նշանակում է թիկնապահ։

8 Այս Արտավան Արշակունու մասին Պրոկոպիոս Կեսարացին հիշատակում է «Պարսկական պատերազմի մասին» աշխատության մեջ, Գիրք Բ, գլ. 3։

9 Բյուզակիոնը մավրուսիոսների մի շրջանն էր Լիբիայում։

10 Մավրուսիոսները հյուսիսային Աֆրիկայում ապրող բնիկ ժողովուրդն են։

## ԳՈԹԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍԻՆ

1 Խոսքը հայազգի հռչակավոր զորավար Նարսես Ներքինու մասին է։

2 Պիկենոն (լատիներեն Picenum) քաղաք Միջին Իտալիայի արևելքում։

3 Խոսքը Ներսես և Հրահատ Կամսարականների մասին է։

4 Ավքսիմոս քաղաքը այժմ կոչվում է Օսիմո։

5 Ժամանակակից Ռիմինին։

6 Ալարիքոս Բ-ը, Վեստգոթերի թագավոր (484—507 թթ.)։

7 Ռավեննա, նշանավոր քաղաք Ադրիատիկ ծովից 8 կիլոմետր հեռավորության վրա, Ֆերրարա-Ռիմինի ճանապարհին։ Հայտնի է իր նշանավոր պատմական հուշարձաններով։

8 Ժամանակակից Միլան քաղաքը։

9 Լիգուրիա, նահանգ Իտալիայի հյուսիս-արևմուտքում։ Կենտրոնն է Մեդիոլանոն (Միլան) քաղաքը։

10 Ուրբիվենտոն, հռոմայեցիների Urbus Vetus, այժմ Օրվիետո։

11 Էմիլիա երկիր, շրջան հյուսիսային Իտալիայում, Պո գետի աջ ափին։

12 Պերանիոսը ծագումով իբերացի էր։ Նրա սկզբնական գործունեության մասին Բյուզանդիոնում Պրոկոպիոսը հիշատակում է «Պարսկական պատերազմի մասին» աշխատության մեջ։ Տե՛ս Գիրք Ա, գլուխ 12, գիրք Բ, գլ. 24, 25, 26—28։

13 Այժմ կոչվում է Ուրբինո։
14 Կայսենա (Կեսենա), ամրոց հյուսիսային Իտալիայում, Ռավեննայից 300 ասպարեզ հեռավորության վրա, ինչպես վկայում է Պրոկոպիոսը։
15 Ֆորոկորնելիս (Forum Cornelii) քաղաք հյուսիսային Իտալիայում, Ռավեննայից մի փոքր արևմուտք, այժմ Իմոլա։
16 Բնագրում Ἀρταβάζης — Արտավազդ։
17 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին» Գիրք Բ, գլուխ 19։ Նաև «Գաղտնի պատմություն» գլուխ 2։
18 Վերոնա, Իտալիայի նշանավոր քաղաք, Միլանից 150 կմ. դեպի արևելք։
19 Ժամանակակից Պո գետը։
20 Այժմ կոչվում է Ֆաենցա։
21 Իլլիրիայի քաղաք, Ադրիատիկ ծովի ափին։
22 Հռոմը կառուցված է այս Տիբերիս գետի վրա։ Այժմ այն կոչվում է Տիբր։
23 Հռոմի նավահանգիստը։
24 Քաղաք Տիբրի գետաբերանի մոտ։
25 Գիլակիոս (հունարեն Γιλάκιος) հայկական Գլակ անունն է։ Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Ա, Երևան, 1942, էջ 477, Ֆ. Յուստին սխալմամբ կարծում է, որ Գիլակիոս նշանակում է Գիլանցի։ Տե՛ս F. Justi, Iranisches Namenbuch, S. 115 B.
26 Դրիունտ, նավահանգիստ հարավային Իտալիայում։
27 Բրենտեսիոն, քաղաք Կալաբրիայում, ժամանակակից Բրինդիզին։
28 Քաղաք Կալաբրիայում։
29 Տե՛ս «Վանդալական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 28։
30 Տե՛ս «Վանդալական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 28։
31 Պրոկոպիոսը պարսկահայք տակ նկատի ունի Պարսկաստանին ենթակա Հայաստանի բնակչին։
32 Կեֆալոնիա, կղզի Հոնիական ծովում։
33 Կալաբրիա, Ապենինյան թերակղզու ամենահարավային ծայրամասը։
34 Այժմ կոչվում է Մելիդա, Դալմատիայի մի կղզի։
35 Պարսկական անուն, որ տարածված է նաև հայերի մոտ Խորեն ձևով։ Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատոր Բ, Երևան, 1944, էջ 543։
36 Պրոկոպիոսը նկատի ունի Քսենոփոնի Անաբազիսը (Դ, 8, 22) և Արրիանոսի «Պերիպլուս»-ը (ԺԱ), որոնք ցույց են տալիս, որ կոլխերը տրապիզոնցիների հարևան են։
37 Հունարեն Ἄκαμψις։ Պրոկոպիոսը ստուգաբանում է κάμπτω բայից, որ նշանակում է «ծռել», «հաղթահարել»։ Առաջին Α-ն ժխտական մասնիկ է, իհարկե, ժողովրդական ստուգաբանություն է։
38 Այժմ կոչվում է Ախավա։
39 Բնագրում Ἀψαροῦς։
40 Խոսքը Ճորոխ պահակի մասին է։
41 Դարյալի կիրճը։
42 Խոսքը արխայների մասին է։
43 Ժամանակակից Սուխումին ու Պիցունդան։
44 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, գլ. 17։
45 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 30։
46 Հունարեն Τραχεῖα. նշանակում է խորտուբորտ, քարքարոտ, անհարթ։

47 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 28:
48 Բնագրում ʽΡέων:
49 Բնագրում Σαραπανίς. ժամանակակից Շորապանին:
50 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Ա, գլ. 15:
51 Խոսքը Քութայիս քաղաքի մասին է:
52 Նկատի ունի Այետեսին, Մեգեյայի հորը, արգոնավորդների մասին առասպելի հերոսներից մեկին:
53 552 թ.:
54 Ժամանակակից Պլովդիվ քաղաքը Բուլղարիայում:
55 Կրոտոն քաղաքը գտնվում էր ժամանակակից Կալաբրիայում:
56 551 թ.:
57 Բնագրում Τουσκία. համապատասխանում է ժամանակակից Տոսկանային:
58 Մ. Ջամչյանը ենթադրում է, որ դա հայկական Ընձյուղ (ծիլ) բառից է: Տե՛ս նրա «Պատմություն Հայոց», հատ. Բ, էջ 272: Հ. Աճառյանը գտնում է, որ դրա հայերեն ձեն է Ընջյուղ (երինջ բառից): 5-րդ դարում Եղիշեն հիշատակում է ոմն Ընջյուղի, Վասակ Սյունեցու կողմնակիցների թվում: Տե՛ս Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Բ, էջ 239—240:
59 553 թ.:

## «ԳԱՂՏՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ»

1 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 19:
2 Այսինքն «Գաղտնի պատմության» առաջաբանում:
3 «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 17:
4 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 13:
5 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 1:
6 Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 21:
7 Ստրատիոտները բյուզանդական զինվորականներն էին, որոնք բանակում կամ նավատորմիղում ծառայելու համար ստանում էին պետությունից հողամաս:
8 Լատիներեն Limitaneus, այդպես էին կոչվում բյուզանդական սահմանապահները: Հետագայում հունարեն կոչվում էին ակրիտասներ:

## Հ Ա Վ Ե Լ Վ Ա Ծ

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ ՀՐՈՎԱՐՏԱԿՆԵՐԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

1 Corpus Iuris Civilis, vol. II, Codex Iustinianus, recognovit et retractavit *Paulus Kreuger*, Berolini, 1959, I, 29, 5, p. 82։ *Հրովարտակը հրապարակվել է Հուստինիանոսի գահակալության հենց սկզբում։ Տե՛ս Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 135։

2 *Խոսքը նշանավոր զորավար, հայազգի Սիտտասի մասին է։*

3 Corpus Iuris Civilis, vol. III, Novellae, Appendices, Edictum III de Armeniorum successione, p. 760—761։ *Հրապարակվել է 535 թ. հուլիսի, 23-ին։ Տե՛ս Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 184։

4 *Բնագրում չի պահպանվել այն անձնավորության անունը, որին է հասցեագրված սույն հրովարտակը։ Ն. Ադոնցի ենթադրությամբ, դա Արևելքի պրետորյան պրեֆեկտ Հովհաննեսն է, որին հասցեագրված է 31-րդ նովելլան։ Տե՛ս Н. Адонц*, Армения в эпоху Юстиниана, стр. 185։

5 *Հուստինիանոսը սույն հրովարտակը ուժի մեջ գնելով իր թագավորության սկզբից, 527 թ., բաղում դժվարությունների առաջ կանգնեց, որովհետև տեղում մեծ դժգոհություններ առաջացան։ Այդ պատճառով նա հաջորդ տարին ստիպված եղավ հրապարակել նույն հարցին վերաբերող մի նոր հրովարտակ, որով վերանայում էր այդ հարցը և հրովարտակը ուժի մեջ դնում նրա հրապարակման օրից, որովհետև, «անցյալի վրա այն տարածելը... առաջ կբերեր խառնաշփոթություն»։*

6 Corpus Iuris Civilis, vol. III, Novellae, Nov. XXI, p. 144—146։ *Հրապարակվել է 536 թ. մարտի 18-ին։ Տե՛ս* Ն. Ադոնց, *նշվ. աշխ., էջ 181։*

7 *14-րդ ինդիկտիոնը սկսվում էր 535 թ. սեպտեմբերից։*

8 *Բնագրում՝* γενεαρχικὰ χωρία։

9 Corpus Iuris Civilis, vol. III, Novellae, Nov. XXXI, p. 235—239։ *Հրապարակվել է 536 թ. մարտի 18-ին։ Տե՛ս* Ն. Ադոնց, *նշվ. աշխ., էջ 184։*

10 *Հուստինիանոսն անցկացնելով պրովինցիաների վերակառուցումը ղեկավարվում էր ոչ միայն վարչական դրդապատճառներով, այլև դատավարության շահերով։ Մինչև Հուստինիանոսը հռոմեական կայսրության մեջ դատավարությունը իրականացնում էր նույն ինքը պրովինցիայի ղեկավարը։ Յուրաքանչյուր ղեկավար միաժամանակ դատավոր էր։ Պրովինցիաներում կար դատարանային երեք աստիճան, համաձայն պրովինցիաների ղեկավարների երեք աստիճանների. օրդինար կամ կլարիսիմային, սպեկտաբիլային և իլլյուստրական։ Հուստինիանոսի ռեֆորմների հետևանքով կառավարիչները բարձրացան սպեկտաբիլային աստիճանի, այսինքն նույն ժամանակ դարձան* judices spectabiles։ *Մինչև 500 սոլիդ հայցագին ունեցող գործերի մասին նրա վճիռը վերջնական էր։ Տե՛ս* Ն. Ադոնց, *նշվ. աշխ., էջ 163—164։*

11 *Օրդինար դատավորների վճիռ մինչև 300 սոլիդ հայցագին ունեցող գործերի մասին վերջնական էր։ Տե՛ս* Ն. Ադոնց, *նշվ. աշխ., էջ 164։*

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

23—482

# ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



(Քարտեզների հեղինակ Jean-Rémy Palanque։ Վերցված են հետևյալ հրատարակությունից. **Ernest Stein**, Histoire du Bas-Empire, tome II, De la disparition de l'empire d'Occident a la mort de Justinien (476–565), Paris-Bruxelles-Amsterdam, 1949):

## ՍՈՒՅՆ ՄԱՏԵՆԱՇԱՐՈՎ ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ

1. Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքերեն բնագրերից, ներածությունով, ծանոթագրություններով, տերմինաբանական բառարանով և հավելվածով, հատոր Ա, կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, Երևան, 1961։
2. Թուրքական աղբյուրները Հայաստանի, հայերի և Անդրկովկասի մյուս ժողովուրդների մասին։ Թարգմանություն թուրքական բնագրերից, ներածական ակնարկներով, ծանոթագրություններով և հավելվածով, հատոր Բ, կազմեց Ա. Խ. Սաֆրաստյան, Երևան, 1964։
3. Արաբական աղբյուրները Հայաստանի և հարևան երկրների մասին, կազմեց Հ. Թ. Նալբանդյան, Երևան, 1965։
4. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատոր 4։ Թուրքական աղբյուրներ, գիրք Գ, Էվլիյա Չելեբի։ Թարգմանություն բնագրից, առաջաբան և ծանոթագրություններ Ա. Խ. Սաֆրաստյանի, Երևան, 1967։

Տպագրվում է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի
պատմության ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

*Հրատ. խմբագիր՝ Ա. Հ. Շաղզամյան*
*Նկարչական ձևավորումը՝ Կ. Կ. Ղաֆադարյանի*
*Տեխ. խմբագիր՝ Մ. Ա. Կափլանյան*
*Սրբագրիչ՝ Ա. Հ. Զոլախյան*

*ՎՖ 04312, հրատ. 2668, խՀի № 1015, պատվեր № 482, տպաքանակ 2000*

*Հանձնված է արտադրության 26/I 1966 թ.։*
*Ստորագրված է տպագրության 4/II 1967 թ.։*
*Տպագրական 22,75 մամուլ+3 թարտեզ, հրատարակչական 20,2 մամուլ*
*թուղթ № 1, 60×90 $^{1}/_{16}$. Գինը 1 ռ. 47 կոպ.։*

*Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակչության*
*Էջմիածնի տպարան*

Տպագրվում է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի
պատմության ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

Հրատ. խմբագիր՝ Ա. Հ. Շաղզամյան
Նկարչական ձևավորումը՝ Կ. Կ. Ղաֆադարյանի
Տեխ. խմբագիր՝ Մ. Ա. Կափլանյան
Սրրագրիչ՝ Ա. Հ. Զոլախյան

ՎՖ 04312, հրատ. 2668, խՀխ № 1015, պատվեր № 482, տպաքանակ 2000

Հանձնված է արտադրության 26/I 1966 թ.։
Ստորագրված է տպագրության 4/II 1967 թ.։
Տպագրական 22,75 մամուլ+3 քարտեզ, հրատարակչական 20,2 մամուլ
Թուղթ № 1, 60×90 1/16։ Գինը 1 ռ. 47 կոպ.։

Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակչության
էջմիածնի տպարան։


FINES ORIENTALES
IMPERII ROMANI
SYRIA,
ARMENIA, MESOPOTAMIA
0
300 km
Unoguris
ARCHEOPOLIS
LAZICA
Phasis
(Sebastopolis)
Petra
Rhodopolis
Iberi
Trapezus
Tzani
Anglon
(Eschmiadzin)
(Dvin)
Amasia
Neocaesarea
Nicopolis
Satala
Theodosiopolis
PERSARMENIA
SOPHANENA
SOPHENA
(Achtichat)
Citharizon
Caesarea
Cappadociae
Melitena
Martyropolis
ARZANENA
Amida
ATROPATENA
Samosata
Gazaca
Podandus
Anazarbus
Constantina
Sisaurana
Edessa
Doliche
Dara (Anastasiopolis)
Nisibis
Tarsus
Mopsuestia
Carrhae
Cyrrhus
Europus
Resaina (Theodosiopolis)
Pompeiopolis
Alexandria
Claudiopolis
Hierapolis
Corycus
Seleucia Isauriae
Beroea
Seleucia
ad Orontem
Antiochia
Barbalisus
Callinicum
Chalcis
Sura
ASSYRIA
Apamea
Sergiopolis
Laodicaea
Orontes
Circesium
Gabala
Tigris
Emesa
Palmyra
Lakhmidae
Euphrates
Berytus
Heliopolis
Chalcis
CTESIPHON
Seleucia
Sidon
Damascus
Tyrus
Ghassanidae
Scythopolis
Bostra
Caesarea
Palaestinae
Samaria
Neapolis (Sichem)


ITALIA
ET
AFRICA
TEMPORE JUSTINIANI
0
600 km
GALLIA
DALMATIA
CORSICA
SARDINIA
SICILIA
Rhodanus
Addua
Forum Julii
Tridentum
Aquileia
Tarvisium
Mediolanum
Brixia
Ticinum (Pavia)
Ticinus
Cremona
Mincius
Verona
Atagis
Hasta
Padus
Placentia
Padus
Pollentia
Tanarus
Orba
Parma
Genua
Renus
Pola
Bononia
RAVENNA
Faventia
Caesena
Mucellium
Albingaunum
Ariminum (Rimini)
Faesulae
S. Leo di Montefeltre
Pisaurum
Luca
Arnus
Florentia
(Urbino)
Sena Gallica
Ancona
Petra pertusa
Auximum (Osimo)
Salona
Sentinum
Perusia
Assisium
Firmum (Fermo)
Clusium
Volsinii (Orvieto)
Nursia
Asculum
(Todi)
Spoletium
Lacus Volsinianus (Bolsena)
Narnia
Tiberis
Centumcellae
Tibur
Portus
ROMA
Mons Garganus
Ostia
Casinum
Liris
Antium
Casilinum
Tarracina
Beneventum
Volturnus
Capua
Compsa
Cumae
Nola
Neapolis
Mons Lactarius
(Acerenza)
Sarnus
Brindisium
Tarentum
Hydruntum (Otranto)
Caralis
Acherontia
Croton
Vivarium
Vibo (Monteleone)
Messana
Panormus
Rhegium
Lilybaeum
Catana
Syracusae
Hippo Regius
Carthago
Mons Pappua (?)
Decimum
Bulla Regia
Tricamarum
Ampsagus
Cirta
Bagradas
Thacia
Tipasa
Sicca Veneria
Laribus
Hadrumetum
Bagae
Ammaedara
Thapsus
Mascula
Thevesta
Thamugadi
Cillium
Caput Vada
Ruspa
Campi Catonis (?)
Thelepta
Justinianopolis
Capsa
Lariscus
Marta


IMPERIUM ROMANUM
CIRCA ANNUM 560 POST CHRISTUM
Tabulae modulus:
0
1000 Km.
fines diocesium seu regnorum barbarorum
Fines provinciarum
Anti
Nomina populorum barbarorum extra Imperium romanum
"Quaestura exercitus"
REGNUM FRANCORUM
REGNUM VISIGOTHORUM
Remi
Parisii
Sequana
Mosa
Treveri
Rhenus
Albis
Viadua
Vistula
Liger
Vouillé
Garunna
Tolosa
Lugdunum
Vienna
Agathe
Narbona
Arelate
Massilia
Hiberus
Tagus
Toletum
Ossonoba
Hispalis
Baetis
Corduba
Seguntia
Asidona
Malaca
Basti
Carthago
HISPANIA
Septem
TINGITANA
CAESARIENSIS
MAURETANIA
Mauri
SITIFENSIS
Sitifis
Saldae
Cirta
NUMIDIA
AFRICA
Bagradas
Utica
Carthago
BYZACIUM
Hadrumetum
TRIPOLITANA
Leptis magna
Levathi
CORSICA
SARDINIA
Caralis
I. BALEARES
I. PITYUSAE
Baiovari
Rugi
Heruli
RAETIA
Alamanni
NORICUM
Longobardi
Heruli
PANNONIA
Gepidi
Avari
Bulgari
Anti
Sclaveni
LIGURIA
ALPES COTTIAE
Genua
VENETIA
HISTRIA
Aquileia
Mediolanum
AEMILIA
Ravenna
FLAMINIA
TUSCIA
PICENUM
Roma
VALERIA
SAMNIUM
CAMPANIA
Neapolis
APULIA-CALABRIA
LUCANIA
Tarentum
BRUTIUM
SICILIA
Panormus
Catana
Syracusae
DALMATIA
Salona
Sirmium
MOESIA I
DACIA RIP.
PRAEVALITANA
Scupi
EPIRUS
Dyrrachium
EPIRUS NOVA
EPIRUS VETUS
Nicopolis
MACEDONIA
Thessalonica
THESSALIA
ACHAIA
Corinthus
CRETA
Gortyna
SCYTHIA
Tomi
MOESIA II
Dionysopolis
Odessus
HAEMIMONTUS
THRACIA
Philippopolis
Hadrianopolis
RHODOPE
EUROPA
Constantinopolis
Chalcedon
Nicomedia
BITHYNIA
HONORIAS
PAPHLAGONIA
HELENOPONTUS
ARMENIA I
ARMENIA II
ARMENIA III
ARMENIA IV
HELLESPONTUS
Cyzicus
LYDIA
PHRYGIA SALUTARIS
GALATIA I
GALATIA II
CAPPADOCIA I
CAPPADOCIA II
Caesarea
PISIDIA
Iconium
LYCAONIA
CILICIA
PAMPHYLIA
ISAURIA
LYCIA
CARIA
Ephesus
Rhodus
CYPRUS
Salamis
Paphos
MESOPOTAMIA
OSRHOENE
Edessa
Nisibis
EUPHRATENSIS
SYRIA
Antiochia
Apamea
Palmyra
Laodicea
PHOENICE LIBANENSIS
Damascus
Berytus
Tyrus
Caesarea
PALAESTINA I
PALAESTINA II
PALAESTINA III
ARABIA
Bostra
Hierosolyma
Joppe
Gaza
Alexandria
AEGYPTUS
AUGUSTAMNICA
Pelusium
Clysma
Aila
LIBYA SUP.
LIBYA INF.
Cyrene
ARCADIA
THEBAIS INF.
Panopolis
THEBAIS SUP.
Oasis major
Philae
Nilus
Angila
Mazices
Lakhmidae
Ghassanidae
Kinditae
Apkhazi
LAZICA
Phasis
IBERIA
Archeopolis
Pityus
Sebastopolis
Petra
Trapezus
Theodosiopolis
Cyrus
Araxes
Anglon
Dvin
Tigris
Euphrates
Chersonesus
Bosporus
Trapezitae
Kotriguri
Utiguri
Hunni Sabiri
Tanais
Borysthenes
Tyras
Danubius